Tankaran

Museu

I

# ԹԱՆԳԱՐԱՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՆԱԽՆԵԱՑ, 1.)

To the memory of
Megurdich Amir.

Ի ՅԻՇԱՏԱԿ

ՄԿՐՏՉԻ ԷՄԻՆ

# ԹԱՆԳԱՐԱՆ

Horsepian Sargis

Museum of Old and Comparatively Recent Works.

I

The Apocryphal Books of the Old Testament

Venice

St. Lazarus

1896.

# ԹԱՆԳԱՐԱՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՆԱԽՆԵԱՑ



## Ա.

## ԱՆԿԱՆՈՆ ԳԻՐՔ

### ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ





ՎԵՆԵՏԻԿ, Ս. ՂԱԶԱՐ

1896

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

**ՔԱՆԻ՛Ք** արդեօք ի խորշս ամայացեալ վանօրէից թաքունք կամ ի ծերպս և ի դեռբուկս մթասոյզք՝ գանձք բանաւորք, զորդիսն ասեմ զնախնեացս արգասու մտաց, իսկապէս գիրք և թարգմանութիւնք, զուցէ և ըստ երբեմն արդար ստգտանաց Փարպեցւոյն [1] բորբոսեալք և ցեցակերք, լուսոյ և գթոյ կարօտք, որպէս և ինքեանց՝ ուսումնատենչքն։ Քանիք դարձեալ ձիւսակք և քանդակք մատանց նոցին ճարտարք՝ եղծք և ցիրք յուպէտ յուկամ՝ ի սրատեսից անգամ վրիպեալք ի բբաց, որովք էր արդեօք մարթ զոչ սակաւս ի մթութեանց դպրութեանս բացափայլել, և զդատարկս լնուլ զպատմութեան։ Դոցին անձա՝ ոչ մերազնեայքս եւեթ այլ և յօտարաց իսկ շատք ի գիւտ և ի խնդիր փութացեալք, ոչինչ զծախս և զանձանց իսկ վտանգս գրելով, մուտ և ել ի վանս և ի գրանոցս առնեն յո և է, ձմուտք բարբառոյս մերոյ և քան զմեզ ընդելագոյնք պատմութեան, ի գրչագիրս և յարձանագիրս դեգերեալք, միայն զի նոր ինչ և անյայտ գտանիցեն՝ փարթար և գրախեց մի, շամ է թէ աղօտ իմն սփռեսցեն նշոյլ ի խնդիրսն՝ յորս

1. Ղ. Փարպեցի, Պատմութիւն և Թուղթ. Տպ. Վենետիկ 1890, էջ 592։

թարթափեալ կամ նոցայն և այլոց յոլովից միտք: Հարկ է
ապա այդպիսեօք ճոխացելոցն գրչագրովք մի՛ յանձանց
եւեթ վարել առ ի պէտս, և կամ՝ որ յոռեգոյն է՝ լի-
նել քանքարաթաքոյցս և ընդ գրուանաւ իսկ ծածկել, ըստ
տէրունեան մեղադրանացն, այլ տալ զնոսին ի լոյս՝ ի վա-
յելս բանասիրաց:

Ի սոյն դէտակն Միաբանութիւնս՝ անդստին ի հաստա-
տութենէ իւրմէ՝ փոյթ կալաւ հրատարակել ընտրանաւ յեր-
կասիրութեանց նախնեացս, եթէ՛ զբնիկ և եթէ զթարգ-
մանօրէն գրութիւնս, պէսպէս անուամբք. **Մատենա-
գրութիւնք նախնեաց**, **Ընտիր մատենագիրք** և **Սոփերք
հայկականք**: Եւ ցայս վայր յօգտաւէտ գործոյ այտի ոչ
եղեւ ձեռնթափ, ստէպ նորանորս ընծայէ ընթերցա-
սիրացն ի մեծագանձ մթերից անտի նախնեացս ընտիր
վաստակոց, մինչ զի և սպառելոցն՝ երկիցս և երիցս ան-
ցանել ընդ մամուլ, զոր է հաւաստել կամեցողացն: Զար-
դիս յայլ նորագոյն՝ ոչ ինչ ընդհատ կարեւոր և շայեկան՝
մխեցաք ի գործ, այս է տալ ի լոյս՝ յուրոյն հատորս՝ զաստ
անդ ցրուեալ հատուածս գրոց կամ ճառից ի գրչագիր օ-
րինակս Մատենադարանի վանացս՝ զչեւ հրատարակեալսն,
ընդ խորագրաւ «**Թանգարան հին եւ նոր նախնեաց**»,
յանկանոն գրոց առեալ սկիզբն Հնոյ Կտակին:

Առ այս ոչ սակաւ յորդոր և սատար գտաւ, թո՛ղ
զայլս ի մերայոց կամ յօտար բանասիրաց, հռչակեալն իւ-
րովք պէսպէս և հմուտ երկասիրութեամբք՝ հանգուցեալ
**Պ. Մկրտիչ Էմին**, ուսուցիչ արեւելեան լեզուաց ի Լազա-
րեան ճեմարանի որ ի Մոսկուա Ռուսաց: Նոյն ինքն, որ
հետախոյզ գրչաւ զքազում վէպս և զաւանդութիւնս ազ-
գիս հանեալ ի վեր, և օժանդակ գտեալ բազմօք և երախ-
տաւոր դպրութեանս՝ ոչ դոյզն ինչ յաւել անձին պար-
ծանս, գեղեցիկ իմն յղացեալ ի մտի խորհուրդ ի վախճան
կենացն, որով և անեղծ պահեսցի յիշատակ նորա ի մա-

հուամէ, և ամենեքին կացցէ ամուն նորա զոյգ ընդ համ֊բաւոյն, և դասեսցի ի կարգս ազգասէր և ուսումնասէր Բարեբարաց Ուխտիս: Քանզի զատ յայլոց՝ կտակագրեաց Միաբանութեանս գումար ինչ դրամոյ, տասանց հազարաց զոգցես խտալական լիրայից, որոյ տոկոսեօքն տարեւորօք հոգասցին ծախք հրատարակութեան անտիպ գրութեանց նախնեացս, որպէս է տեսանել ի Ժ. Յօդուածի նորուն կտակին՝ հրատարակելոյ առ ի մէնջ ի **Բազմավէպ** հան֊դիսի (1893 ամին յէջս 441-442):

Կարեւոր վարկանիմք աստէն սուղ բանիւք տալ տեղե֊կութիւնս զգլխաւոր գրչագիր օրինակացն, յորոց է մեր զառաջակայս հատոր քաղեալ, այլում թողեալ պատեհի և ի դոյն հմտագունի՝ զմանրակրկիտ և զխնամով ուսում֊նասիրութիւն Անկանոն գրոցս[1]:

ԱԴԱՄ ԳԻՐՔ[2].— Ա. օրինակ Ադամայ գրոց, զոր Ա տառիւ նշանակեմք, գտանէր ի կարգի քարոզից Վարդանայ Այ֊գեկցոյ, նոտրագիր, երկիջեան, գրեալ ի վերայ թղթոյ. չափ գրչագրին $4^{1}/_{2}\times15$. հրդմտ. իսկ թիւն 729, անթուական: Բայց ուրեք ուրեք զոն յիշատակարանք ստացողի գրոցս, որ կոչի Մելքիսէթ ղարսեցի, կրօնաւոր և սարկաւագ, ու֊սուցիչ նորա Սաեփանոս քահանայ: Դարձեալ ի գրչագրիս գտանին՝ **Պատմութիւն Ստեղծման և յանցման Ադա֊մայ.— Պատմութիւն ելանելոյն Ադամայ ի դրախտէն.— Այս է պատմութիւն որդւոցն Ադամայ՝ Աբելի և Կայե֊նի.— Վասն աւետեացն Սեթայ զոր պարտ է մեզ ունկն դնել**: Զայսոսիկ է գտանել ի Յաւելուածի հատորիս, յորում

1. Հրատարակեցան ուրոյն ուսումնասիրութիւնք Անկանոն գրոց արարեալք ի Հ. Բ. Վ. Սարգիսեանէ:

2. Զայս մեզէն եդաք, առեալ ի ցանկէ Ս. Գրոց՝ Սարգսեանց վար֊դապետի. իսկ զբուն խորագիրսն կարգեցաք ի ծանօթութեան մատենիս յէջ. 1:

գտանին դարձեալ առաքելայօղ բանք զգալստեան Փրկչին, զծրեշտակաց, և ազգի ազգի մեկնութիւնք բանից Ս. Գրոց ի ձեւ քարոզի. գոն եւս կրկին ցուցակք Ս. Գրոց, մին յանուն Անանիայ Շիրակունոյ, և միւս՝ յանուն մեծին Վարդանայ: Ի գրչութեանն գոյին ինչ ինչ վրիպակք, զորս համեմատեալ ընդ այլ տեղիսն ուղղեցաք:

Զերկրորդ օրինակ գլոց Աղամայ, զոր Բ տառիւ նշանակեմք, հանաք յԼԱ **ճառընտրէ**, բոլորգիր, երկսիւնեան, գրեալ ի վերայ թղթոյ, չափ գրչագրին 8×25 հրդմս. թիւ 633. անթուական, որով և զստոյգ ժամանակէ գրութեան սորին հաւաստեաւ չունիմք ասել. այսչափ ինչ միայն՝ զի գրեալ է յառաջ քան զթուականն Հայոց ՋՁԸ, զի ի 44 էջ գրչագրիս՝ ի յետնոց ոք Մկրտիչ անուն՝ այսպէս ունի գրեալ. «**Ես Մկրտիչ վարդապետս հանդիպեցայ ի Սիս քուշին ՋՁԸ** (1539) **ի փետրուար ամսոյ**»: Դարձեալ յաւարտ գրչագրիս գտանի նոտրագիր դէպք ինն արկածից գրեալ. «Ինն հարիւր եօթանասուն և վեց (1527) Քաւրսէտին ճելալայ ի Սիս քաղաք, մարդն փախաւ ի բերդն ելաւ, շատ աւերում եղաւ, նա Աստուած ազատեց զՍիս քաղաքն ի ձեռն անօրէն Քաւրսէաւէ»: Գոն ի սմա համառօտ յիշատակարանք. գրիչն է Կոստանդին ումն, և ստացողն՝ Հեթում քահանայ: Սոյն օրինակ ընտրելագոյն քան զայլսն է գրչութեամբ և իմաստիւք, բաց ի պատահական վրիպակաց ինչ՝ որոց մարթ է հանդիպել առ հասարակ յամենայն գրչագիրս:

Զերրորդ օրինակ գրոցն Աղամայ, Գ տառիւ նշանակեալ, ընկալաք ի հայագիտէն Կոնիբերէ, որում հրապարակաւ յայտնեմք զշնորհակալիս մեր՝ երախտապարտք ազնուութեան նորին: Գրչագիրն լուսագրեալ էր ի մատենադարանէն Էջմիածնի. գեղեցիկ գրչութեամբ՝ բոլորգիր, զորոյ անգիտանամք զժամանակ գրչութեան, և ոչ անսխալ՝ մանաւանդ ի վերջս անցեալ դերբայից. զի գը֊

րեա թէ ամենայն ուրեք փոխանակ ասելոյ « կամէր սպա_
նանել » ունի « կամէր սպանեալ » ։ Ստացող գրչագրիս
լեալ է Մանուեսի Գրիգոր ոմն, որպէս յայտ է ի փոքր յի_
շատակարանէն ։

ԿՏԱԿԳ ԵՐԿՈՏԱՍԱՆ ՆԱՀԱՊԵՏԱՑ ։ Առաջին օրինակ
կտակաց երկոտասան նահապետաց է ժ Աստուածաշնչին,
զոր ընագիր կոչեալ՝ Բ՝ տառիւք նշանակեմք․ փոքր բոլորգիր,
գրեալ ի վերայ թղթոյ, երկիշեան, չափ գրչագրին 6×22․
հրդմն․ թիւ 280 ։ Ցստակ գլուխ թեումբ և զոգ ամսոյ մարթ
է կոչել զսա ի կտակս նահապետաց, և ուրեք ընդար_
ձակագոյն քան զերկրորդ և զերրորդ օրինակս, առաւել
համաձայն յոյն բնագրին և չորրորդ և հինգերորդ օրինա_
կացն ։ Պատահեալ երբեմն մանունք վրիպակաց, ուղղե_
ցաք յայնցանէ զոչ կարեւորն և զդուզնաքեայս՝ կամ ըստ
այլոց տեղեաց և կամ ըստ այլոց օրինակաց, իսկ զայլսն
նշանակեցաք ստորեւ մասանցն՝ պասակաւ կայլով գրչու_
թեանն. զայս օրինակ վարեցաք ամենայն ուրեք։ Ունի կրկին
յիշատակարանս՝ զգրչին և զստացողին՝ որ է Մկրտիչ եպիս_
կոպոս, յորս զոյ տեսանել զժամանակ ընդօրինակութեան
մատենիս, սկսեալ ի ՊԿԷ (1418) ի ձեռն Կարապետի ու_
րումն և աւարտեալ ի ՊՀԱ (1422) ի Խլաթ ։ Առաջին ստա_
ցող սորա էր Յովհաննէս ոմն կրօնաւոր․ ապա եթող զայն
Մկրտչի Նաղաշայ, որ և յետոյ եպիսկոպոս Ամթայ և
Մերտինոյ․ և սա փաձառեաց զգիրս՝ ձեռամբ աշակերտի
Առաքել վարդապետի ։ Գտանին ի սմա Պատմութիւն Ա_
սանեթայ և այլ անկանոն գիրք, զորս յառաջիկայս տես_
ցուք ։ Ի վերջ մասենիս պասմէ զյարձակումն բռնաւորաց
այնր դալու և զգերութիւն ազգին ։

Երկրորդ օրինակ կտակաց երկոտասան նահապետաց, Ա
տառիւ նշանեալ ի մէնջ, է ժԶ Հաւաքումն բանից նախ_
նեաց, բոլորգիր, գրեալ ի վերայ թղթոյ, չափ գրչագրին

10×13 հրդմտ. թիւ 345: Խոշորագիր և սակաւիկ մի եւս դժուարընթեռնլի. չգոյր զանազանութիւն **Ե** և **Է** տառից. վարեալ փոփոխակի լծորդ տառիւք՝ դնէ **Գ** փոխանակ Կի, **Տ** փոխանակ Դի, և այլն. վրիպէ և ուրեք ուրեք յուղղագրութիւնս տառից, և երբեմն այլապէս գրէ, զոր օրինակ՝ Եգ–պտոս գրէ փոխանակ Եգիպտոսի: Գրեալ է ի թուին Հայոց ՈԿԹ (1220) ձեռամբ Վարդանայ ուրումն որ ի վերջկոյս ամենայն հատուածոց նոյնաձեւ տառիւք դրոշմէ զանուն իւր: Թէպէտ ի յիշատակարանին ընթեռնումք « Բարսեղ եպս... ջան եղեալ իմ **Գրեցի** զմատեանս Աստուածաշունչ ». սակայն, յէջն 15, Բարսեղ եպիսկոպոսն ասի լինել ստացող գրոցն և ոչ գրիչ. ուստի **Գրեցի** բառն կամ իմանալի է իբր « ետու գրել », և կամ վրիպակ գրչին. քանզի մի ի թղթոցն և յիշատակարանն գլխովին՝ թերեւս կորուսեալք յառաջն՝ յետոյ ուրեմն կրկին գրեալ և յաւելեալ են ի վերջ գրոցն: Ի կտակս Տիմոթէի և Ղեւեայ գոյին յապաւմունք, նմին իրի զհամառօտսն կարգեցաք հանդէպ ընդարձակացն: Դարձեալ, գոն ի սմա այլ և այլ բանք զառաքելոց և զմարգարէից, և **Պատմութիւն Երեմիայ մարգարէի**, զոր ի վերջ մասանցն գտցեն ընթերցողք:

Չորրորդ օրինակ կտակաց երկոտասան նահապետաց, զոր Բ տառիւ նշանակեմք, քաղեցաք յանթուական գրչագրէ իմեքէ՝ սովին խորագրաւ. « **Ասանէր, կտակ ԺԲ նահապետաց և Պատմութիւն Հացիւնեաց խաչի** » և այլն. բոլորգիր, գրեալ ի վերայ թղթոյ, երկիջեան. թիւ գրչագրիս 679 և չափ $5^1/_2 \times 18^1/_2$ հրդմտր. դիւրընթեռնլի, գրչութիւն սորա նման է գրութեանց ԺԵ դարու. ուստի հաւանական թուի մեզ ժամանակ գրութեան սորա լինել ի նմին իսկ դարու և կամ ի սկիզբն ԺԶին: Առաւել համաձայն գտանի սա երկրորդ օրինակին, բայց և ուրեք զարտուղի յայնմանէ, շռայլ ի բացատրութիւնս բանից, յաճախ կրկնելով

զձոմանից բառսն․ նոյնգունակ և սա վարէ փոփոխակի զկծորդ տառս:

Չորրորդ օրինակ կտակաց նահապետաց, զոր Դ տառ֊ ռիւ նշանակեմք, է Դ Աստուածաշունչ, երկինեան, չափ իւրաքանչիւր ինից 5×20 հարիւրորդամետր, փոքր բոլոր֊ գիր, գրեալ ի վերայ մագաղաթի՝ գեղեցիկ գրչութեամբ, թիւ գրչագրին 229: Ի կտակս նահապետաց համաձայն գտանի բնագիրն օրինակին և հինգերորդին․ գոն ի սմա այլ Անկանոն գիրք, զոր յառաջիկայս տեսցուք: Գրեալ է սա ի թուին Հայոց ՌՃԴ (1655) ի Մարկոս գրչէ․ իսկ նա֊ խագաղափար սորա ի թուին հայոց ՌԿԸ (1619) ի Լով քաղաք Լեհաստանի, որոյ գրիչն է Ղազարոս ոմն, ընդ որոյ ձեռամբ վաստակելով այլ եւս չորք անձինք՝ յընթացս չորից ամաց՝ հանեն ի գլուխ․ պարձեալ ի գրչագրիս գտանին այլ և այլ ցանկք Ս․ Գրոց, և անուանց գաւեղց ի Ս․ Գիրս, և այլն:

Հինգերորդ օրինակ կտակաց նահապետաց, Դ տառիւ նշանակեալ, է Թ Աստուածաշունչ մատենադարանիս․ երկ֊ ինեան, չափ իւրաքանչիւր ինից 6×20 հրդմոր․ իսկ թիւն 1366․ փոքր բոլորգիր, գրեալ ի վերայ թղթոյ․ գրիչն է Եզե֊ կիէլ ոմն, անթուական․ թէև ի համգամանաց գրչութեան թուի մեզ գուշակել զայն ԺԶ դարու գրութիւն, թերեւս և յաշխարհին Լեհաց, զի ի լուսանցս ուրեք ուրեք դնէ՝ Ֆո․ օրինակ՝ (այսպէս ունի): Ոչ ինչ տարբերի սա ի չորրորդ օրինակէ որ է Դ Աստուածաշնչէն․ թուին երկոքին եւս ի միոյ օրինակէ գաղափարեալք:

**ԱՍԱՆԷԹ**. — Զառաջին օրինակ գրոց Ասանեթայ, Ա տառիւ նշանակեալ, գտաք ի ԺԶ ճառընտրի մատե֊ նադարանի վանացս, յոր իբր յաւելուած խոն կցեալ էր, ի ձեռն միոյ ի հարց մերոց ընդօրինակեալ ի մատե֊ նադարանէ Վատիկանու, որ և ամսւ յառաջ հրատարա֊

կեցու ի Բավմավիկի: Զա՛ ոչ եթէ իբր ընտրելագոյն քան զայլս՝ կալաք մեզ առաջնորդ, այլ զի զմիանգամ ի լոյս ընծայեալն ոչ կամեցաք փոփոխել. սակայն ուրեք ուրեք զվրիպակսն ուղղեցաք ըստ այլոց տեղեաց և ըստ այլոց օ_րինակաց. ապա բանասիրացն հարկ է առաւել ուշ դնել տարբերութեանց գրչագրաց՝ քան բնագրին, որ սխալա_գիր էր յոյժ:

Զերկրորդ օրինակ գրոց Ասանեթայ, Բ տառիւ նշանա_կեալ, տե՛ս յերրորդ օրինակի կտակի երկոտասան նա_հապետացն Բ տառիւ նշանակելոյ. էջ ժ:

Երրորդ օրինակ գրոցն Ասանեթայ, Գ տառիւ նշանա_կեալ, է Ժ. Աստուածաշունչ. զգրչագրէն սորա տես ի կտակի երկոտասան նահապետաց՝ Բնագիր (Բն) կոչեցեալ ի մէնջ. էջ Բ:

Չորրորդ օրինակ գրոցն Ասանեթայ, գրեալ ի կարգի խրատուց Գէորգայ Սկեւռացոյ, նոտրագիր, փոքրադիր, և ան_թուական, յամենայնի զոյգ ընդ երրորդ օրինակին ըն_թանայ՝ բաց ի վրիպակաց, զի սխալագիր էր յոյժ:

Հինգերորդ օրինակ գրոցն Ասանեթայ է Քաղուածք Յայսմաւուրաց, թիւ 1369, նոտրագիր, անթուական, գրիչ սորա է Յուսիկ ոմն. դիւրընթեռնլի՝ բայց ոչ զերծ ի վրիպա_կաց: Ամենայն ուրեք զերկբարբառն աւ փոխէ օ, որպէս՝ հրամանաւ՝ հրամանօ, ամաւ՝ ամօ, և այլն: Զայս գրչագիր յետոյ ուրեմն գտեալ մեր՝ ոչ կարացաք դնել զտարբե_րութիւնս ընթերցուածոց, զի և կարեւորք ինչ չէին:

Վեցերորդ օրինակ գրոցն Ասանեթայ է Դ Աստուա_ծաշունչ, զորմէ տես ի կտակի երկոտասան նահապետաց, էջ Ժ. ապա ուրեմն զայն օրինակ գտեալ մեր՝ չմարթա_ցաք դնել զտարբերութիւնս գրչագրաց. սակայն այս ինչ յայտ լիցի, զի որպէս ի կտակս նահապետաց առաւել համաձայն էր ընդ Ժ Աստուածաշնչի, այսպէս և ի գիրս Ասանեթայ:

**ՄԱՀ ՄԱՐԳԱՐԷԻՑ.** — *Բնագիր կալաք Մահու Մարգարէից*՝ զԱռաջին օրինակ Աստուածաշունչ մատենիցն՝ որ ի մերում մատենադարանի. թիւ գրչագրին 1508: Մատեանս գրեալ է ի վերայ ընտիր և փայլուն մագաղաթի, չափ մեծութեան 21×18 հրդմ. երկիջեան, բոլորգիր գեղեցիկ, գործ ճարտար ձեռաց Յովհաննու ուրումն. ժամանակ գրութեան ՉԿԸ (1319), իսկ տեղին՝ ուր գրեցաւն՝ անյայտ. գրիչ մատենիս Յովհաննէս՝ գաղափարեալ է զմատեանս զայս յօրինակէն Գէորգայ վարդապետին, որպէս ըզկնի մարգարէութեան Եզեկիելի յիշատակէ ասելով. «Փառք սուրբ Երրորդութեան յաւիտեանս յաւիտ.. Ես մեղաւորս Յոհաննէս ըստ կարի զփափաքս իմ լցի յանկ եւանելովն Աստուծոյ, զի յանարժանէս թերեւս արժանաւոր այս գործք եղեւ յանկեալն. և զայս ոչ ասեմ վասն գեղապանծոյն շարագրութեանցս, այլ վասն ազնիւ աւրինակիս զոր սուրբ և երանեալ վարդապետին Գէորգեա ձեռացն շարահիւսեալք էին. աղաչեմ զժառանգաւղսդ, եւս և զհանդիպաւղսդ ներէք սղալմանս ի սա, և սիրով ուղղեցէք. և միոյ Տէր ողորմի արժանի արարէք զողորմելի գրիչս Յոհ. եւ զծն. և զեղբ.»: Ի բանից Յոհաննու «ազնիւ աւրինակիս», որպէս և այլուր դրուատէ, յայտ է թէ՝ քան զամենայն Աստուածաշունչ մատեանս սա է ընտրելագոյն, ուստի և իրաւամբ կալաք զսա իբր առաջնորդ և կամ լաւ եւս բնագիր Մահու Մարգարէիցն:

Տարբերութիւնք գրչագրացն ի ստորեւ իջիցն եղեալ են ըստ այլոց Աստուածաշունչ մատենից զուելոց ի մատենադարանի վանացս, ըստ իւրաքանչիւր գրչահամարի: Մահ մարգարէից Եզեկիելի և Դանիելի, որ ի գրչահամարն ԺԸ, տարբերէր ոչ սակաւ ի բնագրէն, ուստի պատշաճ դատեցաք առ ընթեր բնագրին դնել և զայս: ԶՄահ մարգարէիցն է գտանել և յամենայն տպագիր և ի գրչագիր Յայսմաւուրքս մատեանս. այլ զի մի՛ կարի իմն ծանրաբեռնեսցուք աւե-

լորդօք զդրօշակս մատենին, շատացաք նշանակել զտարբե֊
րութիւնն՝ միայն յԱստուածաշունչ մատենից:

**ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԻՍԻ.** — Առաջին օրինակ **Ա** տառիւ
նշանակեալ, է *Քաղուածոյ բանք Ցայսմաւուրաց*, և այլն.
զգրչագրէն սորա տես յԱռաճէժ, հինգերորդ օրինակ,
էջ ԺԲ:

Երկրորդ օրինակ, **Բ** տառիւ նշանակեալ, էր *Ճառընտիր*
**ԻԴ.** թիւ 1447, թղթեայ, երկինչեան, բոլորգիր, թերի յետին
մասն յիշատակարանին, ուստի հաւաստեաւ չունիմք ասել
թէ յորում ժամանակի գրեցաւ. տեղի գրութեան սորա
Արճակ կամ Արծակ՝ մենաստանն Վասպուրականի, գրիչն
Կարապետ ոմն, և ստացողն՝ Ցակոբ եպիսկոպոս. զոյին ինչ
ինչ վրիպակք, զորս համեմատեալ ընդ այլոց տեղեաց
ուղղեցաք:

**ՎԱՍՆ ՍՈՂՈՄՈՆԻ ԱՐՔԱՅԻ:** — Առաջին օրինակ հա֊
տուածոյս, **Ա** տառիւ նշանակեալ, է **Ժ** *Աստուածաշունչ*
մատենադարանի վանացս, զորմէ տես յէջ **Ը.** *Կոչակ եր֊
կուսասն նահապետաց*, *Բնագիր*:

Երկրորդ օրինակն է՝ *Թուղթք* Ս. Ն. Շնորհալւոյ և ժո֊
ղովոյն Հռոմկլայ. ի սկին զտանի եւս *Վասն գրեանցն
Սողոմոնի*:

**ՀԱՐՑՄՈՒՆՔ ԴՇԽՈՅԻՆ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ՍՈՂՈՄՈ֊
ՆԻ ՈՐԴԻՈՑ ԴԱՒԹԻ.** — Կրկին էին գրչագիրք հատուածոյս.
**Ա** օրինակն է **ԻԵ** *Ունկնդիրն*, գրեալ ի թուին Հայոց
ՊԺԸ (1369) յԱտոմ գրչէ յԱղթամար. բոլորգիր և սխա֊
լագիր յոյժ:

Երկրորդ օրինակն՝ **ԻԷ** *Ունկնդիրն*, բոլորգիր, անթուա֊
կան. համեմատեալ չգտաք բնաւ տարբերութիւնս ընթեր֊
ցուածոց:

ՅԱՂԱԳՍ ԳՐԵԱՆՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ. — Ջկատարիկս զա֊ղափարեցաք յԱ Ոսկեփորիկէ, ճոխագիր և սխալագիր. սա կրէ զանուն Եփրեմի. զյայտնի վրիպակս ուղղեցաք համեմատեալ ընդ այլոց տեղեաց:

ՎԱՍՆ ԳՐԵԱՆՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ. — Ջգրչագրէն սորա տես Վասն Սողոմոնի արքայի, Բ. օրինակ. էջ ԺԳ:

ԱՂՕԹՔ ՄԱՆԱՍԷԻ ԹԱԳԱՒՈՐԻ. — Ջչլական երկ թա֊գաւորիս զասանի յամենայն ժամագիրս և յամենայն ա֊ղօթագիրս նախնեաց մերոց, ոչ միայն ի գրչագիրս՝ այլ և յամենայն սպագիրս, որ և քաջայայտ է ամենեցուն. յոր սակս և աւելորդ դնել զտարբերութիւնսն:

ՏԵՍԻԼ ԴԱՆԻԷԼԻ ԵՕԹՆԵՐՈՐԴ: — Կրկին են գրչագիրք մեր. մին՝ որոյ թերթի են բառք ինչ՝ զաղափարեալ ի միոյ ի Հարց մերոց յԱստուածաշնչէ զտեալոյ ի պալատան արք֊եպիսկոպոսին Կանդաբրիոյ ի Լոնդրա, թուի գրեալ ի կէս ԺԵ դարու ի մարտար գրչէ:

Երկրորդ օրինակն, զոր այժմ ուրեմն զտաք ի մատե֊նադարանիս, է Ը Աստուածաշունչ, փոքր բոլորգիր, թըղ֊թեայ, երկիւեան, յայլ և յայլ ժամանակս գրեալ. բայց կատակարանն կրկին գրչաց է գործ. ստացողն է Գրիգոր ոմն քահանայ, զոր յայժ դրուատէ գրիչն. գրեալ ի թուին Հայոց ՉՂ (1341) ի քաղաքն Սուլտանիայ: Ջկնի, երեք֊տասան ամաց Եփրեմ քահանայ՝ ուղղի վերոյիշեալ Գրի֊գորի քահանայի՝ նուիրէ զայն սուրբ Նշանին Վարագայ և նորին եկեղեցւոյ: Սա՝ թէպէտ համառօտ՝ սակայն լրա֊ցուցիչ է առաջնոյն, և զտեալ ինչ ինչ տարբերութիւնս ընթերցուածոց, հարկ համարեցաք կրկին ի լոյս ընծայել առ ի ալէսս բանասիրաց՝ որոց կամ իցէ դեգերել յայս ազգ գիտութեան. տես յէջ 387:

**ԵԶՐ ԵՐՐՈՐԴ.** — *Տես զգրչագրաց սորա յէջ 251։*

**ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԻՒՆ ԵԶՐԻ,** *և այլն. Գրչագիրն՝ յորմէ հանեալ զսա՝ էր* **ԿԸ** ***Մաշտոց*** *բոլորգիր, գրեալ* ***յԱստուծածայր*** *անապատի Ծոփաց, ի թուին Հայոց ՈԾԷ* (1108)*: Այս հարցաքննութիւն գտանէր միայն ի սմին եւեթ գրչագրի յաւարտ նորին:*

**ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՌՕՏ ԵՂԻԱՅԻ ՄԱՐԳԱՐԷԻ.** — *Գաղափարեցաք զսա ի* **ԻԴ** ***Ոսկեփորիկ*** *մատենադարանի վանացս, բոլորգիր, ելկիշեան, թղթեայ, գրեալ ի թուին Հայոց ՌՀԶ* (1623)*, ի Մկրտչէ ումեմնէ. ստացողն՝ Տիրացու և պարոն Աւագ. ուրեք վրիպի յուղղագրութենէ տառից: Գտանի ի սմա և* ***Քարոզ Յովնանու Մարգարէի****, զոր տպագրեալ եմք յէջ 342։*

**ՎԱՍՆ ԵՐԵՄԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ Ի ԳՐՈՑՆ ԲԱՐՈՒՔԱՅ.**
**Ա.** *օրինակ է* **ԺԶ** ***Հաւաքումն բանից նախնեաց****, զորմէ տես յէջ* **Ի***, կտակ երկուսասան նահապետաց,* **Ա.** *տառիւ նշանակեալ:*

*Զերկրորդ օրինակն առաք յԱրարատ ամսաթերթէ. թիւ Գ. 1895.*

*Զերրորդն տպագրեցաք ուրոյն, զի զանազանէր յոյժ յայլոց օրինակաց: Գրչագիր սորա է* **ԻԴ** ***Ճառընտիրն****, զորմէ տես* ***Պատմութիւն Մովսիսի****, յէջ ԺԲ, նշանակեալ* **Բ** *տառիւ:*

**Դ.** *Գոյր այլ եւս միւս օրինակ նովին պարունակութեամբ, և այլազգ շարադրութեամբ, և քանզի գաղափարեալ էր ի յետին ժամանակս, աւելորդ վարկաք ի լոյս ընծայել զայն:*

**ՏԵՍԻԼ ԵՆՈՎՔԱՅ ԱՐԴԱՐՈՅՆ.** — *Առաք յԱրարատ ամսաթերթէ, 1895. թիւ 12.*

*Հ. **Սարգիս Յովսէփեանց***

# ԱՆԿԱՆՈՆ ԳԻՐՔ
# ՀԻՆ ԿՏԱԿԱՐԱՆԱՑ

---

## Ա

### ԳԻՐՔ ԱԴԱՄԱՑ [1]



ՄՈՒԾԱՆ Ադամ զկին իւր զԵւա և գնաց ի տեղի մի՝ որ էր ի կողմանս արեւելից, դէմ յանդիման դրախտին փափկութեան [2], և բնակեալ եղեւ անդ զամս ութեւտասն և ամիսս երկուս ։ Եւ յետ այսորիկ մերձեցաւ Ադամ յԵւա կինն իւր՝ և յղացաւ և ծնաւ երկուս որդիս. զանդրանիկն որ կոչի Կայէն՝ և զբարեխորհն որ կոչի Հաբէլ ։ Իսկ յետ այսորիկ մինչդեռ ննջէին Ադամ և կինն իւր, ետես [3] Եւա տեսիլ. յայնժամ զարթոյց [4] զԱդամ և զտեսիլն պատմէր նմա, և ասէր այսպէս. Տէր իմ, տեսանէի ի տեսլեան [5] գիշերիս, զի արիւն

1. Ա. օրինակն ունի այսպէս. Այս է պատմութիւն վարուցն Ադամայ և Եւայի՝ զկնի ելանելոյ նոցա ի դրախտէն փափկութեան, որպէս անուանէ երկիրն դրդմութեան ։
Բ. Պատմութիւն վարուցն Ադամայ և Եւայի նախաստեղծիցն՝ որ յայտնեցաւ հրամանաւն Աստուծոյ ի ձեռն Միքայելի հրեշտակապետին՝ մեծին մարգարէին Մովսէսի, որ զաստուածային տախտակն ընկալաւ. զոր նոր թարգմանեաց հաքեաւր տէրն Սիմէոն յԵրուսաղէմ ։
2. Բ. չունի փափկութեան ։
3. Բ. չունի եղեւ Եւա տեսել ։
4. Բ. զարթուցեալ Եւայէ. (իսկ Գ. Եւա) տեսել զպատկեր Ադամայ (Դ. Ադամայ). և ..
5. Բ. ի տեսլեանն յայսմ գիշերի ։

որդւոյն մերում Հաբելի լցեալ լինէր ի բերան Կա֊ յենի եղբօր իւրում. և[1] նա ըմբէր զարիւն եղբօր իւրում. իսկ Հաբէլ աղաչէր զնա թողուլ նմա սա֊ կաւիկ մի յարենէ անտի, և նա ոչ լինէր նմա ուն֊ կընդիր՝ այլ վաղվաղակի ըմպէր զամենայն, և ոչ միայր արիւն ի փորի նորա՝ այլ արտաքս փսխէր զա֊ մենայն: Իբրեւ լուաւ զայս Ադամ, ասէ ցնա. Յա֊ րուցեալ երթիցուք տեսանել զորդեակն[2] մեր՝ եթէ զի՞նչ պատահեալ իցէ[3] նոցա. մի՞ թէ թշնամի մար֊ տընչիցէ[4] ընդ նոսա: Եւ[5] գնացին գտին զի սպա֊ նեալ էր[6] Հաբէլ ի ձեռաց եղբօր իւրոյ Կայենի[7]: Եւ ասէ Աստուած ցհրեշտակապետն Միքայէլ. Ե՛րթ և ասա ցԱդամ, եթէ զխորհուրդ տեսլեանդ զոր տեսեր՝ մի՛ պատմեր որդւոյդ[8] Կայենի, վասն զի որդի[9] է կորըս֊ տեան. և ցԱդամ ասա. Եւ դու մի՛ տրտմիր՝ զի տացէ[10] քեզ Աստուած փոխանակ որդւոյ քո Աբելի այլ որդի՝ որ պատմեսցէ քեզ զամենայն զոր ինչ առնելոց է[11], և դու մի՛ ինչ ասասցես դմա[12]: Իսկ Ադամ պահէր զա֊ մենայն ասացեալսն ի սրտի իւրում, նոյնպէս և կինն: Բայց Եւա հանապազ ունելով զտրտմութիւնն վասն որդւոյն իւրոյ[13] Կայենի:

Իսկ յետ այսորիկ դարձեալ մերձեցաւ Ադամ յԵւա կինն իւր և յղացաւ և ծնաւ զՍէթ: Եւ ասէ Ադամ ցԵւա. Ահա ծնաք որդի փոխանակ Հաբելի զոր եսպան Կայէն. արդ՝յարուցեալ տացուք փառս և օրհ֊

1. Բ. չունի աստի մինչև եղ֊ բօր իւրում:
2. Բ. զօրդեակն:
3. Բ. է:
4. Բ. մարտնչիցէ:
5. Բ. և իբրև:
6. Բ և Գ. լինէր:
7. Բ. յաւելու ծաղախաղով:
8. Բ. որդւոյն քո. Գ. քում:
9. Բ. նա է որդի խորոտեան և ցասման, և դու մի...
10. Բ. զի տայ քեզ փոխանակ այլ որդի. իսկ Գ. զի տացէ քեզ փոխանակ դորա այլ որդի:
11. Բ և Գ. իցեմ:
12. Բ և Գ. յաւելուն զայս տառ֊ ցեալ հրեշտակապետին Միքա֊ յելի հրամանաւն Աստուծոյ Ա֊ դամայ. Գ. ցԱդամ:
13. Բ. որդւոյն իւրոյ Աբելի. իսկ Գ. որդւոյն իւրեանց Հա֊ բելի:

նութիւն [1] Աստուծոյ։ Եւ եղեն Ադամայ որդիք երեսուն, և ժամանակս [2] կենաց նորա զոր եկաց ի վերայ երկրի՝ ինն հարիւր և երեսուն ամք։ Եւ յետ այսորիկ եղեւ նմա հիւանդանալ սակաւ մի, և գոչեաց ի ձայն մեծ և ասէ. Ժողովեսցին ամենայն որդիք իմ ի միասին առաջի իմ՝ զի տեսից զնոսա յառաջ քան զվաղճան [3] իմ։ Եւ ժողովեցան ամենեքեան. քանզի [4] բնակեալ էին նոքա առանձինն մի մի յիւրաքանչիւր տեղիս։ Յայնժամ ասէ Սէթ [5] ցԱդամ հայր իւր. Ո՛վ հայր իմ, զի՞նչ է [6] հիւանդութիւն խօթութեանդ քո։ Եւ նա [7] պատասխանի տուեալ ասէ ցնա. Յաւք բազումք և անհնարինք պաշարեցին զիս, ո՛վ որդեակ իմ։ Ասէ ցնա Սէթ. Ո՛վ հայր իմ, մի՛ թէ զմտաւ ածեալ իցես զփափկութիւն [8] և զվայելչութիւն դրախտին Աստուծոյ, և զպէսպէս զանազանութիւն պտղոցն՝ յորմէ հանապազ ճաշակէիր, և վասն այնր տրտմութեան [9] է հիւանդութիւնդ քո. և եթէ այդ այդպէս իցէ, ո՛վ հայր իմ, ասա ինձ և ես երթայց [10] բերից քեզ ի պտղոյ դրախտին կենաց. զի երթայց արկից հող ի գլուխ իմ, և լացից առաջի նորա և աղաչեցից զՏէր Աստուած. և Տէր լուէ ձայնի [11] աղաչանաց ծառայի իւրոյ. և առաքէ [12] զհրեշտակս իւր և կատարեսցէ զխնդրուածս իմ. և բերից քեզ ի պտղոյ դրախտին կենաց կերակուր քեզ [13]. զի ճաշակեալ կերիցես [14] և ողջասցիս ի հիւանդութենէդ քումմէ։ Ասէ [15] Ադամ. Ոչ այդպէս իցէ, որդեակ իմ

1. Բ. փոհոսթեան։
2. Բ. ժամանակ աւուրց կենացն Ադամայ ինն հարիւր երեսուն և երկու։
3. Բ և Գ. զվաղճանէն։
4. Բ. զի։
5. Բ և Գ. Սեթ որդին իւր ցԱդամ. ո՛վ։
6. Բ. չունի է։
7. Բ և Գ. նորա։
8. Բ. զփափկութեան վայելչութեան։
9. Բ. տրտմութենէ։
10. Բ. երթեալ։
11. Բ. չունի ձայնի։
12. Բ. առաքեսցէ։
13. Բ. չունի քեզ։
14. Բ և Գ. չունին կերիցես։
15. Բ և Գ. յաւելուն ցնա։

Սէթ. այլ հիւանդութիւնք բազումք և ցաւք անհնարինք նեղեն զիս։ Ասէ ցնա Սէթ. Եւ ո՞րպէս եղեն[1] ցաւք հիւանդութեանդ քում, պատմեա ինձ հայր իմ։ Ասէ ցնա Ադամ. Լուր ինձ, որդեակ իմ, հեզութեամբ. յորժամ ստեղծ զիս Աստուած և զմայրդ ձեր զԵւա, յաղագս որոյ և մեռանիմ իսկ, ետ մեզ Աստուած[2] հրաման յամենայն պտղոյ դրախտին ճաշակել[3] և վայելել, իսկ ի միոյ ծառոյ[4] հրամայեաց ոչ ճաշակել ի նմանէ. և ասաց[5] ցիս. զի թէ ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռանիցիք։ Եւ մերձ լինէր ժամն այն՝ յորժամ հրեշտակք ակն ունին[6] մօրդ ձերում Եւայի՝ տանել զնա[7] առաջի Տեառն յերկրպագութիւն։ Եւ իբրև հրեշտակքն հեռացան ի նմանէ, յայնժամ իմացեալ թշնամւոյն եթէ ոչ ես եմ մերձ՝ և ոչ հրեշտակքն, յայնժամ եկեալ խօսեցաւ ընդ նմա[8], և ետ նմա ի պտղոյ անտի և եկեր, և[9] տուեալ ինձ՝ ես եւս կերայ։ Յայնժամ բարկացաւ[10] Աստուած ի վերայ մեր և նոյնժամայն[11] եկն ի դրախտ անդր, և ձայն ետ ինձ Տէր ահաւոր ձայնիւ, և ասէ. Ադամ, ո՞ւր ես, զի՞ թաքչիս յերեսաց իմոց՝ քանզի ոչ կարէ թաքչել տուն ի շինողէ իւրմէ. այլ քանզի անցաք զպատուիրանաւ իմով՝ և զհրամանս[12] իմ ոչ պահեցիք, և ահա ածից ի վերայ մարմնոյ քոյ հալածանս և ցաւս բազումս իբրև զեօթանասունս։ Եւ լինիցի առաջին ցաւք[13] հարուածոց քոց՝ նեղութիւն աչաց, իսկ երկրորդն հարածք[14] լսելեացն. և այնպէս մի ըստ միո-

1. Բ. եղև։
2. Բ և Գ. չունին Աստուած։
3. Բ. յաւելու ի նմանէ։
4. Բ. յաւելու պտղոյն։
5. Գ. ասէ։
6. Բ. ունէին։
7. Բ և Գ. զդա։
8. Բ. յաւելու և պատրեաց զնա։
9. Բ. և նա եր ինձ և կերայ։ Գ. և տա եկեալ ետ ինձ և կերայ։
10. Բ և Գ. բարկացեալ Աստուածոյ։
11. Գ. և ի նոյն ժամն։
12. Բ. զպատուիրանս։
13. Բ. ցաւ։
14. Բ. հարուած ու. իսկ Գ. հարուածք։

*չէ եղիցին ցաւք և հարուածք ամենայն անդամոց քոց։*

*Եւ զայս ամենայն իբրեւ ասաց Ադամ ցորդին,[1] յոգւոց եհան յոյժ և ասէ. Զի՞նչ արարից, զի ի մեծ տրտմութիւն է անձն իմ։ Իսկ Եւա[2] լացեալ յոյժ և ասէ ցԱդամ. Տէր[3] իմ, տուր ինձ զկէս ցաւոց անձինդ քո՝ և ես բարձից զնոսա, վասն զի յաղագս իմ եղեւ քեզ այդ, և վասն իմ իցես յաշխատութեանդ։ Եւ ասէ ցնա Ադամ. Յարուցեալ դու և որդիդ քո Սէթ, երթիջիք մերձ առ դրախտն, արկջիք հող ի գլուխ[4] ձեր, և ողբասջիք յոյժ լալով, և աղաչեցէք զԱստուած՝ զի թերեւս գթասցի ի վերայ իմ, և առաքեսցէ զհրեշտակ իւր ի դրախտն փափկութեան, և տացէ ինձ ի պտղոյն[5] յորմէ ելանէ օծումն ողորմութեան. և օծանիցէք նովաւ զանձն իմ, զի թերեւս ապաքինացայց ի ցաւոց աստի։ Իսկ նոցա յարուցեալ երթային յանդիման դրախտին. և յորժամ երթային ի ճանապարհին, յայնժամ նայեցեալ Եւա տեսանէր զորդին իւր զՍէթ՝ զի գազան մի մարտնչէր ընդ նմա. եղաց Եւա դառնապէս[6], և ասէ. Վա՜յ ինձ, վայ ինձ, վայ ինձ. զի թէ լինիցի հասանել ինձ ի յարութեան աւուրն ամենայն մեղօքս՝[7] ի ծննդոց իմոց եկին ինձ[8] յանէծս, և ասիցեն թէ անիծեալ լիցի Եւա՝ զի ոչ պահեաց զպահպանութիւն Տեառն Աստուծոյ իւրոյ. և յաղագս այսորիկ մեք ամենեքին[9] մահու մեռանիցիմք։ Եւ հայեցեալ Եւա ի գազանն յայն, և ասէ. Ո՛վ գազան չար, ո՞չ երկնչիս մարտնչելով ընդ պատկերիդ Աստուծոյ։ Յայնժամ գոչեաց գազանն այն, և ասէ.*

1. Բ. ցորդին (Գ. ևս ցորդին) էր և յոգւոց։
2. Բ. Եւայի։
3. Բ և Գ. տէրիմ, յարէցես (Գ. յարուցեալ) և զկէս ցաւոց անձինքո տացես ինձ, և։
4. Բ և Գ. ի վերայ գլխոյ ձերոյ։
5. Բ. ի ծառոյն։
6. Բ. չունէր դառնապէս։
7. Բ. յաւելու որք. Գ. ամենայն մեղաւորք։
8. Բ. չունէր ինչ։
9. Բ. ամենեքեան... մեռանիմք։

Ո՛վ կին դու, ոչ եթէ ի մէնջ եղեւ սկիզբն ապաշխարութեան՝ այլ ի քէն. վասն զի սկիզբն արձակման գազանաց ի քէն եղեւ. քանզի ահա որպէս բացաւ բերան քո ուտել ի պտղոյ ծառոյն՝ յորմէ հրամայեաց ձեզ Աստուած չուտել ի նմանէ, և[1] դու կերար և յանցեար զպատուիրանաւն Աստուծոյ, յայնժամ բնութիւնս մեր փոխեցաւ յանհնազանդութիւն մարդկան: Եւ արդ մի՛ այսուհետեւ վիճաբաներ ընդ իս՝ այլ լուեա՛. զի[2] ոչ կարես դիմանալ ինձ եթէ սկսանիմ յանդիմանել զքեզ: Իսկ Սէթ ասէ ցգազանն. Փակեա՛ զբերան քո և լուեա՛ և ի բաց կաց ի պատկերէս Աստուծոյ՝ մինչեւ յօրն դատաստանին: Յայնժամ ասէ գազանն այն ցՍէթ. Ահա ի բաց կամ ի պատկերէդ Աստուծոյ՝ և երթամ ի բնակութիւն իմ: Իսկ Սէթ և մայր իւր Եւա հրաժարեալք ի գազանէն՝ երթային մերձ առ դրախտն Տեառն, և ողբալով լային և աղաչէին զՏէր՝[3] զի առաքեսցէ զհրեշտակս իւր և տացէ նոցա զօծումն ողորմութեան: Եւ առաքեաց Տէր զհրեշտակապետն իւր[4] Միքայէլ, և ասէ ցՍէթ. Այր Աստուծոյ, մի՛ աշխատիր[5] վասն խնդրուածոյդ այդորիկ, յաղագս առնլոյ քեզ յօծմանէ ծառոյն ողորմութեան՝ զի օծանիցես նովաւ զհայր քո զԱդամ. զի այժմ ոչ լինիցի այդ, այլ երթեալ տեսցես զհայր քո վաղճանեալ ի ժամանակեայ կենաց իւրոց. և զի մերձեալ է ժամանակ նորա, քանզի զկնի երից աւուրց փոխեսցի, և տեսանիցես զվերափոխումն նորա փառաւոր և սոսկալի:

Զայս իբրեւ ասաց հրեշտակն Տեառն՝ վերացաւ ի նոցանէ յերկինս. իսկ Սէթ և մայր նորա դարձեալ եկին ուր անկեալ դնէր Ադամ հիւանդացեալ: Եւ ասէ Ադամ ցԵւա. Ո՛վ Եւա, զի՞նչ գործեցեր դու ընդ իս, զի ածեր ի վերայ իմ ցաւումն մեծ, որ և

1. Բ. յաւելու. քանզի դու յորժամ [illegible] և [illegible] է պտղոյն և կերար և յանցեար:
2. Բ. վասն զի:
3. Բ. զԱստուած:
4. Գ. չունի իւր:
5. Բ. յաւելու աղաչելով զԱստուած:

մահ ժառանգել ունի[1] զամենայն ազգս ծննդոց ի-մոց[2]։ Պատասխանի տուեալ[3] ասէ ցնա. Վա՜յ ինձ, վայ ինձ հազար[4] բերան, վասն զի պարտաւորեցայ հաւատալով բանից խաբէութեան օձին։

Եւ իբրև ասաց[5] զայս Եւա, սկսաւ ի միասին լալ և ողբալ դառնապէս. և իբրև դադարեցան յողբալոյ անտի՝ յահագին տրտմութենէն յաղթեալ Ադամայ՝ ի քուն նիրհէր։ Իսկ որդիք նորա հանդերձ Եւայիւ նստէին շուրջ զմահճօք հօրն իւրեանց՝ և ողբային յոյժ։ Ասէ ցնոսա մայրն իւրեանց Եւա. Որդեակք, ահաւասիկ հայրն ձեր մեռանի և ես իսկ ընդ նմին. և արդ, որդեակք իմ, լուարուք ինձ և[6] պատմեցից ձեզ զնախանձ և զչարութիւն թշնամւոյն, եթէ որպի-սի՜ հնարիւք[7] խաբէութեամբ զրկեաց զմեզ ի դրախ-տէն փափկութեան և ի յաւիտենական կենացն։ Եւ սկսաւ ասել այսպէս. Յստեղծ մարդասէր և ողոր-մածն Աստուած[8] զհայրն ձեր զԱդամ և զիս ի կո-ղից, և եդ զմեզ ի դրախտին փափկութեան՝ տիրել և իշխել ամենայն տնկոցն[9] ի նմա. իսկ ի միոյ ծա-ռոյ հրամայեաց ի բաց կալ ի նմանէ։ Տեսեալ սա-տանայ զփառս և զպատիւն մեր[10], և գտեալ զօձն միայն իմաստնագոյն քան զամենայն գազան[11] ի վե-րայ երկրի, և մերձ եղեալ առ նա և ասէ. Տեսա-նեմ զքեզ իմաստնագոյն քան զամենայն գազան, և կամիմ յայտնել քեզ զխորհուրդս սրտի իմոյ[12]։ Ասէ

1. Յաւելու ունի՝ ըստ Բ. օրինակին։
2. Բ. ծերոց։
3. Բ. յաւելու Եւա։
4. Բ և Գ. չունին հազար բերան։
5. Աստ եղաւ ըստ Բ և Գ. օրինակաց, զի Ա. ունէր սկսաւ։
6. Բ. չունի և պատմեցից ձեզ։
7. Բ. յաւելու որդւոց։
8. Բ և Գ. Աստուած զնա և զհայր ձեր զԱդամ, և եդ։
9. Բ. յաւելու որ։
10. Բ. յաւելու զոր պատրաստեաց մեզ Աստուած, նախանձեցաւ ընդ պատիւն մեր։
11. Բ. յաւելու որ են ի վերայ ամենայն երկրի. Գ. փոխեալ զօձն իմաստնագոյն գազան որ են ի վերայ ամենայն երկրի։
12. Բ. յաւելու և ծառայել. Գ. և ծառայեալ եղէ։

ցօձն. Տեսանե՞ս եթէ ո՛րչափ պատուոյ[1] արժանի ե֊
ղեւ մարդն յԱստուծոյ. իսկ մեք անարգեցաք. արդ
լուր ինձ, և եկ երթիցուք արտաքսել զնա[2] ի դրախ֊
տէն՝ յորմէ մեք արտաքսեցաք յաղագս նորա։ Ասէ
օձն ցնա. Երկնչիմ գործել զայդ, զի մի բարկասցի
Տէր ի վերայ իմ։ Ասէ ցնա սատանայ. Մի՛ երկնչիր
յաղագս այդորիկ, այլ դու միայն անօթ լեր ինձ,
և ես խօսեցայց բերանով քոյով[3] առ ի պատրել
զնոսա։ Եւ առժամայն կախեալ[4] օձն անկանէր զպա֊
րըսպաւ դրախտին. և իբրեւ ելանէին հրեշտակքն
յերկրպագութիւն Աստուծոյ[5], և յայնժամ սատա֊
նայ[6] եղեալ ի կերպարանս հրեշտակի՝ երգէր[7]
զերգս օրհնութեան։ Եւ ես հայեցեալ տեսանէի զնա
ի պարսպի անդ ի կերպարանս[8] հրեշտակի. և նա
ձայն[9] տուեալ ասէ ցիս. Դո՞ւ ես Եւա։ Եւ ես ա֊
սեմ. Այո՛ ես իցեմ։ Եւ ասէ ցիս. Զի՞նչ առնիցես ի
դրախտի այդր։ Եւ ասեմ ցնա. Աստուած եդ զիս[10]
աստ։ Եւ զի՞մ րդ հրամայեաց ձեզ Աստուած ոչ ու֊
տել յամենայն ծառոցդ որ ի դրախտիդ այդր են։
Եւ ասեմ ցնա. Ոչ այդպէս է, այլ յամենայնէ ուտեմք՝
բայց[11] ի միոյ ծառոյ, որ է ի մէջ դրախտին, զոր
հրամայեաց մեզ Աստուած ոչ ուտել ի նմանէ, ասե֊
լով ցմեզ. Եթէ ուտիցէք ի նմանէ մահու մեռանի֊
ցիք։ Յայնժամ ասէ ցիս օձն. Կենդանի է Աստուած,
վասն զի յոյժ տրտմութիւն ունի[12] անձն իմ վասն
ձեր, և ոչ կամիմ զտգիտանալդ ձեր. արդ ա՛ռ և
կեր ի պտղոյ անտի, և յայնժամ ապա գիտասցես

1. Բ. փառաց. իսկ Գ. չունի ոչ պատուոյ և ոչ փառաց։
2. Բ. զնոսա։
3. Բ. քով բանն մի առ ի.... զնա։
4. Բ. կանխեալ։
5. Բ. Տեառն Աստուծոյ։
6. Բ. գայր սատանայ չեալ. Գ. եւ զնէ չեալ։
7. Բ. և ընդ հրեշտակս երգէր զերգս օրհ...։
8. Գ. ի կերպս։
9. Բ. յայտնեալ։
10. Բ. զձեզ։
11. Բ. բայց միայն ի միոյ։
12. Բ. ի ինչ վասն..։

զպատիւ ծառայդ ։ Եւ ես ասեմ ցնա . Երկնչիմ զի[1] գուցէ բարկասցի Տէր ի վերայ մեր՝ որպէս և հրամայեաց մեզ ։ Եւ նա ասէ ցիս . Մի՛ երկնչիր , զի յորժամ ուտիցես ի նմանէ , բանայցեն աչք քո առ ի ճանաչել զբարի և զչար , քանզի գիտէր Աստուած , թէ յորժամ ուտիցէք ի նմանէ լինիք իբրև զԱստուած[2] ճանաչել զբարի և զչար . և նախանձեալ ընդ ձեզ՝ վասն այնր ոչ ետ ձեզ հրաման ուտել ի դմանէ[3] . և արդ դու առեալ կերիցես ի պտղոյն , և տեսանիցես զփառս վեհագոյնս ։ Եւ իբրև լուայ զասացեալսն ի նմանէ՝ բացի զդուռն դրախտին և մտայ[4] ի դրախտն փափկութեան , քանզի արտաքոյ կայի յորժամ խօսեցաւ օձն ընդ իս ։ Իսկ նա[5] զհետ իմ մտեալ՝ ասէ ցիս . Եկ զկնի իմ , ես տաց քեզ ի պտղոյ անտի . և սկսաւ գնալ առաջի իմ և ես զհետ նորա ։ Եւ իբրև գնացաք առ[6] սակաւիկ մի , դարձաւ յետս , և ասէ ցիս խաբէութեամբ . Ոչ տաց քեզ ի պտղոյն յայնմանէ ուտել՝ եթէ ոչ երդնուցուս ինձ , զի յորժամ ուտիցես դու՝ տացես և առն քո ուտել ի նմանէ ։ Եւ իմ ինչ ոչ իմանալով զպատրողական[7] բանս նորա , և ես ասեմ ցնա , եթէ Ոչ գիտեմ թէ որպէս երդնուցում քեզ , բայց զոր ինչ գիտեմ ասացից . և արդ երդնում քեզ յաթոռն տէրունական , և ի քերոբէքն որ բարձեալ ունին զնա , և ի փայտն կենաց , զի յորժամ կերայց ես , և տաց առն իմում[8] ։ Եւ իբրև լուաւ զերդումն զոր երդուայ նմա՝ եկն նոյնժամայն մերձեցաւ ի ծառն , և առեալ ետ ինձ ի պտղոյ անտի զծնունդս չարութեան իւրոյ , այսինքն զցանկութիւն . քանզի ցանկութիւնն է առաջնորդ ամենայն մեղաց ։ Եւ կալեալ նորա զճղոյ ծառոյն գիտութեանն և

1 . Բ և Գ . զի մի [illegible] ։
2 . Բ . զինքն ։
3 . Գ . ի նմանէ ։
4 . Բ . մտի ։
5 . Բ և Գ . նորա ։
6 . Բ . չունի առ ։
7 . Բ և Գ . յաւելուն խաբէու-
թեան ։
8 . Բ և Գ . յաւելուն որպէս և
առաջնորդ ։

խոնարհեցուցանէր յերկիր, ես[1] առեալ կերայ ի պըտղոյ անտի, և առժամայն բացան աչք իմ, և գիտացի և ծանեայ թէ մերկ եմ յարդարութենէ յորմէ՝ զգեցեալ ունէի, և լացի դառնապէս. և ասեմ[2] ցնա. Օձն, զի՞ արարեր զայդ, ո՛վ[3] ծնունդ չարութեան. զի պատրեցեր և զրկեցեր զիս ի փառաց զոր ունէի։ Լացի յոյժ վասն երդմանն զոր երդուայ նմա. իսկ նորա զայս լուեալ՝ ելանէր ի դրախտէն[4] և առժամայն լինէր աներևոյթ։ Եւ ես խնդրէի տերևս ինչ առ ի ծածկել զմերկութիւն մարմնոյ իմոյ՝ և ոչ գտանէի, քանզի ոչ դադարէին ի վերայ մարմնոյս[5] տերև ծառոցն ամենեցուն, բայց միայն թզենւոյն. զոր առեալ ափածայ և ծածկեցի զմերկութիւն մարմնոյն իմոյ. և ձայն տուեալ իմ հօր ձերում և ասեմ. Ադամ, ո՞ւր ես՝ արի եկ առ իս՝ և[6] ցուցից քեզ զիրս զարմանալիս։ Եւ իբրև եկն առ իս հայրդ ձեր, ասեմ ցնա բանս անօրէնութեան՝ որք և արտաքսեցին զմեզ ի փառաց անտի. և բացի զբերան իմ, զի սատանայ տայր ինձ խօսել զբանս հայհոյութեան և զարհամարհանաց. և ասեմ ցնա. Եկ տէր իմ Ադամ և լուր բանից իմոց, և կերիցես ի ծառոյս յորմէ հրամայեաց[7] մեզ Աստուած չուտել ի նմանէ, դու կեր[8] և լինիցիս Աստուած։ Պատասխանի տուեալ[9] հօրն ձերում և ասէ ցիս. Երկնչիմ զի[10] բարկացի Աստուած ի վերայ իմ։ Եւ ես ասեմ ցնա. Մի՛ երկնչիր, զի յորժամ ուտիցես ի նմանէ՝ լինիցի քեզ ճանաչել զբարի և զչար։ Եւ նորա լուեալ պատրողական բանից իմոց՝ և ճաշակեաց ի պտղոյ անտի, և առժամայն բացան աչք նորա՝ և ծանեաւ զմերկութիւն անձին իւրոյ. և ասէ ցիս. Ո՛վ կին դու, զի՞նչ գործե-

1. Բ և Գ. իմ։
2. Բ և Գ. ասեմ ցօձն, զի՞։
3. յԲ. չիք ո՛վ։
4. Գ. յաւելու անդի։
5. Բ և Գ. մարմնոյ իմոյ։
6. Բ. և իս։
7. Բ. պատուիրեաց։
8. Բ և Գ. չուտիցես դու կեր։
9. Բ. ետ հայր ձեր։
10. Բ. մ... մեր. Գ. զի մ։

ցեր զայդ ընդ իս՝ և զրկեցեր զիս[1] ի փառացն Աստուծոյ: Եւ առժամայն լուաք զձայն Միքայելի հրեշտակապետին, զի փող հարկանէր[2] ասելով ցհրեշտակսն ամենայն, եթէ. Այսպէս ասէ Տէր զօրութեանց. եկայք ամենեքեան ընդ իս երթիցուք ի դրախտ անդր, և լուարուք զդատաստանն զոր կամեցիմ[3] դատել զԱդամ և զԵւա: Եւ մեք իբրև լուաք զձայն փողոյն հրեշտակապետին Միքայելի և զասացեալսն ի նմանէ, ասեմք ցմիմեանս. Ահաւասիկ Տէրն գալոց է ի դրախտ այսր[4] առ ի դատել զմեզ, եկայք[5] յո՞ թաքիցուք:

Եւ եկն Տէր Աստուած ի դրախտն՝ նստելով ի վերայ կառաց քերոբէականաց, և հրեշտակք և ամենայն զօրութիւնք[6] առաջի նորա մատուցանէին զօրհնութիւն[7]. և իբրև եմուտ Տէր Աստուած ի դրախտ անդր, նոյնժամայն ծաղկեցան[8] ծառքն ամենայն որ շուրջ էին զԱդամաւ և որ[9] զինեւ. իսկ աթոռ աստուածութեան եդաւ առ ծառոյն կենաց: Եւ Տէր Աստուած ձայն հոր ձերում Ադամայ, և ասէ. Ադամ ո՞ւր ես թաքուցեալ. և արդ կարծես[10] զքեզ թաքուցեալ յամենատես աչաց իմոց, զի ոչ կարիցեմ գտանել զքեզ, քանզի ոչ թաքչի տուն ի շինողէ իւրմէ: Յայնժամ պատասխանի տուեալ հոր ձերում և ասէ. Տէր իմ, ոչ եթէ թաքչիմք[11] ի քէն՝ կարծելով թէ այլ ոչ գտանես[12] զմեզ. այլ երկնչիմք ի քէն՝ քանզի մերկ էաք: Ասէ ցնա Աստուած. Ո՞վ պատմեաց քեզ եթէ մերկ ես, բայց եթէ անցեր զպատուիրանաւ իմով՝ զոր ետու քեզ և ոչ պահեցեր զնա: Յայնժամ

1. Բ. զնոյն:
2. Բ և Գ. հարկանելով, ասէր:
3. Բ. կամիմ դատել զԱդամ. Գ. ես չունիմ և զԵւա:
4. Բ. առ:
5. Բ և Գ. և երկեաք յոյժ և թաքեաք:
6. յԲ և յԳ. պակասէ զօրութիւնք:
7. Բ. յաւելու նմա:
8. Բ. ծաղկեցան:
9. Բ և Գ. նոյնպէս և որ շուրջ էոյքն զինև:
10. Բ. կարծես դու թաքչել:
11. Բ. թաքչիմ:
12. Բ և Գ. գտանիցես:

Հայրդ ձեր զմտաւ ածեալ զբանն իմ զոր ասացի նմա, թէ աներկիւղ պահեցից զքեզ առաջի Աստուծոյ. դարձաւ յիս և ասէ. Ընդէ՞ր գործեցեր դու զայս։ Եւ ես ասեմ ցնա. Տէր, օձն պատրեաց զիս։ Յայնժամ ասէ Տէր Աստուած ցհայրն ձեր Ադամ. Փոխանակ զի արարեր դու զայդ և ոչ պահեցեր զպատուիրանս իմ՝ և լուար ձայնի կնոջ քո. անիծեալ լիցի երկիր ի գործս քո, զի գործեսցես զդա և ոչ տացէ զօրութիւնս իւր, այլ փուշ և տատասկ բուսցի քեզ, և քրտամբ երեսաց քոց կերիցես զհաց քո։ Եւ դարձեալ ցօձն՝ ասէ ցնա. Փոխանակ զի գործեցեր դու զայդ՝ և եղեր անօթ չարութեան և պատրեցեր[1] զուղիղս սրտիւ, անիծեալ լիցիս դու յամենայն գազանաց և յանասնոց, և զրկեսցիս ի կերակրոյ քումմէ՝ յորմէ կերակրէիր. և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց, և ի վերայ պորտոյ և որովայնի քո գնասցես, և զրկեսցիս ի ձեռաց և յոտից քոց, և ոչ թողցի քեզ ունկն՝ և ոչ թեւք և ոչ այլ ինչ յանդամոց քոց՝ զոր ունիցիս. փոխանակ զի չար հնարիւք քոյով պատրեալ խաբեցեր զդոսա, և արարեր արտաքոյ լինելոյ[2] սոցա ի դրախտէն փափկութեան։ Եւ եդից զթշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջդ, ի մէջ զաւակի քո և ի մէջ զաւակի դորա. Նոքա սպասեսցեն քում գլխոյդ և դու սպասեսցես նոցա գարշապարացն՝[3] մինչեւ յօրն դատաստանին։ Եւ դարձեալ Տէր ասէ ցիս. Փոխանակ զի լուար օձիդ այդմիկ՝ արհամարհելով զպատուիրանս իմ. եղիցիս դու յաշխատութիւնս անոտիս[4] և ի ցաւս անբառնալիս. ծնցիս որդիս բազում տրտմութեամբ, և յերկունս քո նեղեսցիս, և ի կեանս քո և ի նեղութիւնս քո խոստովան լինիցիս և ասասցես, թէ Տէր, Տէր փրկեա զիս այժմիկ, և այլ ոչ դարձայց ի նոյն՝ մեղան-

1. Առ Բ և Գ. փոխանակ պատրեցերի զնեն պարտեցեր. և յետոյ երկրեան և ս փոխանակ պատրելի զնեն պարտեալ:

2. Բ. լինել այսմ դրախտի:

3. Բ և Գ. գարշապարն:

4. յԲ և յԳ. չէք անոտս:

չել ի մարմինս իմ. և այնպէս ի բանից քոց դատե֊ ցայց զքեզ՝ յաղագս թշնամութեանց զոր սերմանեաց ի քեզ թշնամին. և եղիցի դարձ քո առ այր քո և նա իշխեսցէ քեզ։

Եւ յետ այսորիկ հրաման ետ Տէր հրեշտակաց իւ֊ րոց[1] հանել զմեզ ի դրախտէն փափկութեան։ Եւ իբ֊ րեւ հանեալ տանէին զմեզ՝ ողբայաք յոյժ և լայաք դառնապէս. և ասէ հայրդ ձեր Ադամ. Թոյլ տուք ինձ սակաւիկ մի զի աղաչեցից զմարդասէրն Աս֊ տուած, զի թերեւս գթասցի ի վերայ իմ՝ զի ես միայն մեղայ. և[2] թոյլ ետուն նմա հրեշտակքն որ[3] հանէին զմեզ։ Եւ գոչեաց Ադամ ողբալով ի ձայն մեծ և ասէ. Թող ինձ Տէր զյանցանսն իմ զոր ինչ գործեցի։ Յայնժամ ասէ Տէր ցհրեշտակս[4] իւր. Ընդէ՞ր թո֊ ղացուցէք չարտաքսելոյ[5] զդոսա ի դրախտէդ. մի՛ թէ ե՞ս ինձէն[6] արարի՝ կամ անիրաւութեամբ[7] դատեցի զդոսա։ Իսկ հրեշտակացն անկեալ ի վերայ երեսաց իւրեանց, և ասեն. Արդար ես դու Տէր և ուղիղ են դատաստանք քո. և դարձեալ Տէր յԱդամ և ասէ[8]. Ոչ թողից զքեզ յայսմ հետէ լինել[9] ի դրախտի աստ։ Պատասխանի տուեալ Ադամ և ասէ ցՏէր. Տէր իմ և Աստուած, աղաչեմ զքեզ[10] պարգեւեա ինձ ի տըն֊ կոյն կենաց՝ զի ուտիցեմ ի նմանէ յառաջագոյն քան զելանելն իմ ի դրախտէն կենաց։ Դարձեալ խօ֊ սեցաւ Աստուած ընդ[11] Ադամայ և ասէ. Այժմ ոչ առնուցուս ի դմանէ, քանզի հրամայեցաք քերով֊ բէիցն[12] բոցեղէն սրովն պահել զճանապարհ կենաց, զի մի՛ ճաշակեսցես ի նմանէ և անմահ մնասցես ի

1. Գ. յաւելու սրբոց։
2. Բ. և ադա։
3. Բ և Գ. առ ի հանելոյ զմեզ։
4. Բ. ընդ հրեշտակսն։
5. Բ և Գ. չարտաքսել։
6. Բ. ես ինչ։
7. Բ և Գ. անիրաւ։
8. Բ և Գ. յաւելուն ցնա։
9. Գ. յաւելու տեղ։
10. Բ. յաւելու ձայն։
11. Բ. ցԱդամ։
12. Բ. սերոբէիցն։

յաւիտեան. այլ եղիցի ընդ քեզ մարմին քո[1] զոր սերմանեաց ի քեզ Թշնամին, և յորժամ հրաժարեսցես դու ի դրախտէս և պահեսցես զանձն քո յամենայն չարութենէ, և զմտաւ ածիցես զմահ զկնի վախճանելոյ քո, ի լինել յարութեանն յարուցանելոյ[2] զքեզ, և յայնժամ տաց քեզ ի պտղոյն կենաց, և մնասցես անմահ յաւիտեան։ Եւ զայս ասացեալ Տէրն, հրաման ետ հրեշտակաց արտաքս[3] հանել զմեզ ի դրախտէ անտի. և ապա հայրն ձեր Ադամ ելաց պառնապէս[4] ի դրախտին առաջի հրեշտակացն։ Եւ ասեն ցնա հրեշտակքն. Զի՞նչ կամիս զի արասցուք քեզ, Ադամ։ Պատասխանի ետ[5] և ասէ ցհրեշտակսն. Գիտեմ զի այժմ հանէք զիս, այլ Թողացուցէք[6] ինձ զի առից անուշահոտ ինչ ի դրախտէ աստի՝ զի յորժամ լինիցիմ արտաքս[7] ի սմանէ և մատուցանեմ պատարագ Աստուծոյ, և Տէր լուիցէ խնդրուածաց իմոց։ Իսկ հրեշտակք մատուցեալք առ Տէր և ասեն. Ո՞յէլ[8] Ո՞յէլ՝ որ Թարգմանի Թագաւոր յաւիտենական. և հրամայեաց տալ Ադամայ խունկս անուշահոտութեան ի դրախտէ անտի. և հրամայեաց Տէր Աստուած ածել զԱդամ առաջի իւր՝ զի առնուցու խունկս անուշահոտութեան, և զսերմանիս կերակրոց իւրեանց։ Եւ Թոյլ տուեալ հրեշտակացն. եկեալ Ադամ առաջի Տեառն, և Տէր Աստուած հրամայեաց տալ նմա չորք իրք, որ են այսոքիկ. կրաւկոն[9] որ է զափարան, և նարդոսն՝ որ է փայլասենի[10], կալամոն՝ որ է եղէգն, և կինամոն՝ որ է դարսենի[11], և այլ բազում սերմանիս ի կերակուրս մեր։ Իբրեւ զայն ամենայն առաք՝[12] ելաք ի դրախտէ անտի. և տեսանէաք եդեալ զմեզ

1. Բ. մարմին քո։
2. Բ. յարուցանելոյ։
3. Բ. չունի արտաքս։
4. Բ. չունի պառնապէս։
5. Բ. ետ Ադամ։
6. Բ. Թոյլ տուր ինձ։
7. Գ. արտաքոյ։
8. Բ. Իոէլ, Իոէլ։
9. Բ. Կրաւկոն որ է զափարան։
10. Բ. բալասենի։
11. Բ և Գ. դարիսենի։
12. Բ և Գ. առ։

յերկրիս յայսմիկ։ Եւ արդ, որդեակք իմ, պատմեցի ձեզ կարգաւ[1] յաղագս ամենայնի և յաղագս խարդախութեան թշնամւոյն, եթէ ո՞րպէս խաբէութեամբ արտաքսեաց զմեզ. իսկ դուք ահաւասիկ զգոյշ լերուք զի մի՛ և դուք զրկեսջիք ի փառացն Աստուծոյ։

Եւ զայս ամենայն պատուիրեաց Եւա որդւոց իւրոց, և Ադամ կայր առաջի նոցա եղեալ[2] ի ցաւս հիւանդութեան իւրում. իսկ Եւա և որդիք իւր սկսան լալ և ողբալ։ Եւ յորժամ լռեցին, զարթեաւ[3] Ադամ ի քնոյ իւրմէ՝ և ասէ ցնա Եւա. Ընդէ՞ր մեռանիս դու և ես կամ կենդանի, տէր իմ. և կամ քանի՞ ժամանակ զամ[4] զհետ վախճանելոյդ քում՝ ծանո՛ ինձ զճշմարիտն։ Ասէ Ադամ ցԵւա. Ոչ ինչ[5] փոյթ է քեզ հարցանել վասն այդոցիկ, վասն զի մի՛ յապաղեսցես դու գալ զկնի իմ, այլ հաւասար մեռանիցիմք ի միասին, և դիցեն զքեզ մերձ առ իս ի նմին տեղւոջ։ Եւ յորժամ մեռանիցիմ ես ծածկեա զիս՝ և մի՛ զոք թողուցուս տեսանել զիս յորդւոց քոց, մինչև հրեշտակն հրամայեսցէ թէ զի՞նչ պարտ իցէ առնել վասն իմ. քանզի ոչ անտես առնէ զիս Աստուած, այլ խնդրէ զանօթս իւր զոր ստեղծ։ Եւ արդ յարուցեալ յաղօթս կացցես՝ մինչև ելանիցէ հոգի իմ ի ձեռն Տեառն իմոյ տուողին ինձ զսա. ո՛հ, քանզի ոչ գիտեմ թէ ո՞րպէս հանդիպեցայց ստեղծողին. մի՛ թէ բարկանայցէ՞ ի վերայ իմ. և կամ թէ դարձցի՞[6] և ողորմեսցի ինձ գթութեամբն իւրով։ Յայնժամ յարուցեալ Եւա ելանէր արտաքս, և անկեալ ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ լայր և ողբայր դառնապէս, և ասէր այսպէս. Մեղայ քեզ Աստուած, մեղայ քեզ, հայր ամենեցուն, մեղայ քեզ Տէր[7], մեղայ քեզ մարդասէր, մեղայ սերոբէից քոց, մեղայ անշարժ աթոռոյ քոյ, մեղայ քեզ Տէր, մեղայ և սրբութեանն սրբոց քոց,

1. Գ. չունի կարգաւ։
2. Բ. չունի եղեալ։
3. Բ. զարթնոյր։
4. Գ. կամ։
5. Բ. զԵւա. ի՞նչ փոյթ։
6. Բ. դարձցի՞ ողորմեսցէ։
7. Բ. յաւելու մեղայ և հրեշտակաց քոց։

մեղայ քեզ Տէր մեղայ յերկինս և առաջի քո Տէր. քանզի ամենայն մեղք և անօրէնութիւն յինէն սկըզբնաւորեցաւ յաշխարհս[1]։ Եւ իբրեւ զայս աղօթս մատուցանէր Եւա, եկն առ նա հրեշտակն Տեառն մարդկային տեսլեամբ՝ և յարուցեալ զնա ի գետնոյն՝ ասէ ցնա. Արի կաց կին դու յերկրպագութենէ քումմէ, զի ահա Ադամ այր քո փոխեցաւ ի մարմնոյ իւրմէ, և դու հայեաց և տես[2] զի հոգի նորա համբառնայ յերկինս առ արարիչն իւր յանդիման լինել։ Իսկ Եւա յարուցեալ, ձեռօքն իւրովք մաքրէր[3] զերեսս իւր ի բազում արտասուացն, և քանզի էին աչք նորա այտուցեալ ի լալոյն։ Եւ համբարձեալ զաչս իւր յերկինս՝ տեսանէր կառս հրեղէնս ամբարձեալ ի չորից կենդանեաց հրեղինաց, զորոյ լեզու մարդկան[4] ոչ կարէ պատմել զվայելչութիւն փառաց նորա. և տանէին զհոգի նորա ի տեղին՝ յորում կայ[5] Ադամ մարմնովն, և հրեշտակք[6] առաջի կառացն. և իբրեւ մերձեցան յայն տեղին, եկաց կառքն հանդերձ քերոբէիւքն, և Ադամ ի վերայ նոցա, տեսանէր և բուրվառս ոսկիս, և երիս հովանոցս, և հրեշտակք[7] գնային խունկս անուշս և բուրվառս առնուին, և երթային[8] փութանակի ի խորանն սուրբ, և բորբոքեալ զհուրն՝ արկանէին խունկս[9] ի բուրվառն, և ծուխ խնկոցն այնպէս ելանէր՝ որպէս թէ ծածկէր զհաստատութիւն երկնից. և խոնարհեալ երկիր պագանէին Աստուծոյ հրեշտակք ամենայն աղաղակելով՝ և ասէին. Ելիայէլ[10], որ թարգմանի, Տէր թագաւոր յաւիտենից թողու-

1. Բ. յինէն սկզբնաւորեցան յաշխարհէ։
2. Բ և Գ. տես զհոգի նորա ամբառնալով։
3. Բ. մաքրէր զարտասուս յերեսաց իւրոց։
4. Բ և Գ. մարդկան ոչ կարանայ առ ի պատմել։
5. Գ. կայր։
6. Բ. հրեշտակք երթային առաջի նորա կառացն։
7. Բ. հրեշտակս զի տային աւելով խունկս. Գ. զի տային.
8. Բ. յաւելու առաջի նորա։
9. Գ. զխունկն ի բուրվառան։
10. Բ. Իլէաէլ։

թիւն շնորհեա Ադամայ.[1] և գործոյ անարատ ձեռաց քոց:

Տեսանէր Սէթ այլ եւս սքանչելիս[2] առաջի Աստուծոյ, և լայր դառնապէս: Դարձաւ[3] Եւա՝ ձայն ետ որդւոյ իւրոյ Սեթայ, և ասէ. Որդեակ իմ, արի՛, կաց ի վերայ մարմնոյ հօր քոյ[4], և տես զհրաշալի տեսիլն զոր ոչ ոք ետես. և տես, թէ որպէս աղաչեն հրեշտակք ամենայն զՏէր՝ յաղագս հօրն քում Ադամայ: Իսկ Սէթ յարուցեալ երթայր առ մայրն իւր. և ասէ ցնա. Ընդէ՞ր լաս, մայր իմ: Պատասխանի ետ նմա մայրն իւր և ասէ. Նայեա ի վեր. և տես աչօք քոյովք զհաստատութիւն երկնից բացեալ՝ և[5] զանձն հօր քո, թէ որպէս անկեալ կայ առաջի Աստուծոյ ի վերայ երեսաց իւրոց. և հրեշտակք[6] եւս զի աղաչէին զՏէր վասն նորա ասելով այսպէս. Թողութիւն շնորհեա, Տէր, Ադամայ, որ Աստուածդ ես անոխակալ և Տէր ես ամենեցուն, քանզի պատկեր քոյ է: Արդ, որդեակ իմ Սէթ, զի՞նչ[7] լինիցիմ ես եղկելիս՝ յորժամ տանիցեն զիս առաջի աներեւութին Աստուծոյ. և արդ, ո՞վ լիցեն երկու արքն այնոքիկ Եթովպացիքն[8] որ կան առաջի Աստուծոյ, աղաչելով զնա յաղագս հօրն քո Ադամայ: Ասէ ցնա Սէթ. Ո՛վ մայր իմ, արքն այնոքիկ[9] զոր տեսանես՝ արեգակն և լուսին են, որ կան և աղաչեն զԱստուած՝ անկեալք ի վերայ երեսաց իւրեանց՝ յաղագս հօրն իմոյ Ադա-

1. Բ և Գ. յաւելուն՝ քանզի պատկեր քո և գործք անարատք:
2. Բ. յաւելու՝ [illegible] և զարմանալիս:
3. Բ. Եւ դարձեալ ձայն որդւոյն Սեթայ որդւոյ իւրում և ասէ. Գ. եւս զնէ և դարձեալ.. իւրում:
4. Բ. քոյ, և եկ տես զօ, և տես զոր ոչ ոք երբէք է տեսեալ աչօք իւրովք. Գ. զնէ եկ տես զօ և տես զոր ոչ ոք եւ տեսեալ աչօք իւրովք, և տես որպէս..:
5. Բ. և տես.
6. Բ. և հրեշտակք ամենայն, զինիկ Գ. հրեշտակացն ամենայն:
7. Բ և Գ. զի՞նչ լինիցի ինձ յորժամ հասցեմ առաջի:
8. Գ. Եթովպացիքն:
9. Բ. յաւելու Եթովպացիք:

մայ: Եւ ասէ ցնա Եւա. ո՞ւր իցէ լոյս նոցա, զիա՞րդ մթացեալ[1] երեւին: Պատասխանի ետ Սէթ և ասէ. Ոչ եթէ ի բաց եղեալ է լոյսն ի նոցանէ, այլ ոչ երեւի լոյս նոցա առաջի Հօրն լուսոյ, վասն զի ծածկի պայծառութիւն նոցա ի փառաց և ի մեծապայծառութենէ[2] յերեսաց Հօրն Աստուծոյ[3]:

Իբրեւ զայս խօսէր[4] Սէթ ընդ մայրն իւր Եւա՝ յանկարծակի մի ոմն ի հրեշտակացն հնչեաց[5] զփողն, և առժամայն յարեան հրեշտակք ամենայն՝ որք անկեալ դնէին[6] ի վերայ երեսաց իւրեանց առաջի Աստուծոյ. և գոչէին մեծաձայն[7] հնչմամբ և ասէին. Օրհնեալ են փառք Տեառն յարարածոց իւրոց, վասն զի ողորմեցաւ ստեղծուածոյ ձեռաց իւրոց՝ Ադամայ: Եւ զայս իբրեւ աղաղակեցին հրեշտակք, եկն մի ոմն ի վեցթեւեան սրովբէիցն, և յափշտակեաց զԱդամ և տարաւ զնա ի ծովն անձեռագործ, և լուաց զնա երիցս անգամ, և դարձեալ եբեր և եդ զնա առաջի Աստուծոյ. և արարեալ նորա ժամս երիս[8] անկեալ ի վերայ երեսաց իւրոց յերկիր: Իսկ յետ այսորիկ արձակեալ զձեռն իւր որ հայրն է ամենեցուն՝ որ կայր նստեալ ի վերայ աթոռոյ իւրոյ, և առեալ զԱդամ ետ զնա ի ձեռն Միքայելի հրեշտակապետին, ասելով ցնա. Տար զդա յերկրորդ յերկինս, հանգո՛ մինչեւ յօրն մեծի նորոգման. զի[9] կամիմ առնել զփրկութիւն յերկրի՝ յաղագս Ադամայ և ամենայն ծննդոց իւրոց:

Յայնժամ առեալ զԱդամ Միքայէլ հրեշտակապետն և տարեալ հանգոյց[10] զնա. ուր հրամայեաց նմա Աստուած. և ամենայն հրեշտակքն երգէին զօրհնաբանութիւնս և զերգս հրեշտակականս. զարմանային ընդ

1. Գ. մթնացեալ:
2. Բ. և է պայծառութենէ Հօրն:
3. Գ. լուսոյ:
4. Բ. տեսեր Սէթ զմայրն:
5. Բ. հնչեցոյց:
6. Բ և Գ. չոքին:
7. Բ և Գ. հնչմամբ ձայնիւ է յոյժ ահաւոր, որ և:
8. Ամենեքեան դնեն երեսս:
9. Բ և Գ. զոր:
10. Բ և Գ. հանգուցանէր:

մարդասիրութիւնն Աստուծոյ և ընդ [1] առնել զթողութիւն Ադամայ։ Իսկ յետ անչափ խնդութեանս որ լինէր վասն [2] Ադամայ, խօսեցաւ Միքայէլ հրեշտակապետն ցՀայրն լուսոյ վասն [3] Ադամայ. և ասէ. Տէր, ժողովեցին հրեշտակք ամենայն առաջի Աստուծոյ, իւրաքանչիւր ոք ըստ կարգի իւրում։ Եւ ժողովեցան ամենեքեան. ոմանք զբուրվառս ի ձեռն [4] ունելով, և ոմանք քնարս և փողս հնչէին [5]։ Եւ ահա Տէրն համբարձաւ [6] փառօք ի վերայ չորից հողմոց, և սերովբէք բուռն հարեալ ունէին զհողմոց, և հրեշտակք յերկնից իջանէին [7], և գային առաջի Նորա ամենեքեան, և իջանէին յերկիր ի տեղւոջն յայնմիկ, յորում կայր անկեալ մարմին Ադամայ. և անտի երթեալ Տէրն մտանէր ի դրախտն [8] երկնաւոր զօրօքն։ Ցայնժամ տունկք և ծառք [9] ծաղկեալ պտղաբերէին առ հասարակ, և բուրէր անուշահոտութիւն. մինչեւ ամենեցուն որ ծնեալ էին յԱդամայ, թմբրեալք լինէին, և ի քուն ննջէին ի բուրմանէ անուշահոտ ծաղկանց դրախտին. բայց միայն Սէթ [10] որ ոչ թմբրեցաւ. քանզի Տէր կամեցաւ ցուցանել նմա զքանչելիսն զոր գործելոց էր։ Իսկ Տէր Աստուած նայեցեալ տեսանէր զմարմինն Ադամայ այնպէս յերկիր անկեալ, տրտմեալ լինէր յոյժ՝ մարդասիրութեամբն իւրով, և ասէ. Ո՜վ Ադամ. ընդէ՞ր գործեցեր զայդ, զի թէ պահեալ էիր զպատուիրանս զոր ետու քեզ, ոչ ուրախ լինէին այնոքիկ՝ որք ածին զքեզ ի տեղիդ յայդմիկ. բայց այժմ ասեմ քեզ, զի յորժամ փրկութիւն իմ յայտնեցի աշխարհի, զու-

1. Ա և Գ. ունէին այսպէս. և զընդունել ի թողութեան Աստուծոյ. իսկ մեք եդաք ըստ Բ. օրինակին։
2. Բ. չունի վասն։
3. Բ. չունի վասն Ադամայ։
4. Բ. ունելով ի ձեռս իւրեանց։
5. Բ և Գ. չունին հնչէին։
6. Բ. Եւ համբարձաւ յերկինս ի վերայ։
7. Բ. իջեալ էին առաջի Նորա, և գային ամենեքեան։
8. Բ. յաւելու հանդերձ։
9. Բ. յաւելու դրախտին։
10. Բ և Գ. ի Սեթայ,

րախութիւն նոցա դարձուցից ի տրտմութիւն, իսկ զտրտմութիւն քո դարձուցից յուրախութիւն։ Զի զքեզ դարձուցանեմ յառաջին փառսն քո, և նստուցանեմ զքեզ յաթոռ պատրողին քո. և նա եկեացէ յայդմ տեղիդ՝ յորում դու կաս անկեալ[1] այժմիկ. և տեսանելով զքեզ վերագոյն եղեալ քան զինքն, և ապա դատապարտեալ[2] տեսանէ զինքն և զամենայն կամարարս իւր. յայնժամ առաքեմ զնոսա ի գեհեն հրոյ՝ և զարհուրեսցին յոյժ, և տրտմիցի ի տեսանելն զքեզ նստեալ ի յաթոռ նորա։

Եւ իբրև խօսեցաւ Աստուած զբանս զայս ընդ[3] Ադամայ, դարձեալ Աստուած առէ ցհրեշտակապետն Միքայէլ. Երթ յարքայութիւն որ է յերկինս, և առցես անտի երիս պատատուակալս ի սպիտակս և ծիրանիս, և բերցես այսր. և նա[4] երթեալ կատարէ զհրամայեալն ի Տեառնէ։ Եւ հրամայեաց Աստուած Միքայելի հրեշտակապետին[5] պատել զմարմինն Ադամայ, ասելով այսպէս. Սփռեցէք զպատատուակալդ զայդոսիկ և պատեցէք զդա, և բերջիք յիւղոյն օծման անուշահոտութեանն, և արկջիք ի վերայ դորա. և արարին հրեշտակապետքն Միքայէլ՝[6] և Ուրիէլ որպէս հրամայեաց նոցա Տէր։ Եւ իբրև պատեցին զմարմինն Ադամայ, հրամայեաց Աստուած ածել զմարմինն Աբելի արդարոյ, և նոքա բերին[7] և եդին առաջի Աստուծոյ. և հրամայեաց Աստուած բերել[8] պատատուակալս՝ և պատել զմարմին Հաբելի արդարոյ. վասն զի ոչ էր պատեալ յումեքէ մարմինն նորա՝ յօրէ

1. Բ. չունի անկեալ։
2. Բ և Գ. դատապարտեալ ենք և անձնայն կամարարս իւր, և առաքին ի հուրն գեհենին (Գ. ի գեհեն հրոյ և զանձնայն) և տեսանելով զքեզ նստեալ։
3. Բ և Գ. զԱդամ, դարձեալ առէ։
4. Բ և Գ. նորա.. կատարեր։
5. Բ. յաւելու և Գաբրիէլի հրեշտակապետին և Ուրիէլի հրեշտակապետին։
6. Բ. չունի Միքայէլ և Ուրիէլ։
7. Բ. բերել։
8. Բ և Գ. յաւելուն ոսկեղէն։

յորմէ[1] եսպան զնա եղբայր նորա Կայէն. քանզի և ինքն իսկ Կայէն կամեցաւ սպանել զնա՝ և ոչ կարաց. զի երկիր ոչ ընդունէր զմարմին նորա. այլ լինէր ձայն գոչման[2] առ նա. եւ եթէ. Ոչ կամիմ ընդունել զմարմին[3] ամենայն, յառաջ քան զմարմին նախաստեղծին, որ առաւ յինէն. և առեալ հրեշտակին[4] զմարմին Հաբելի և եդ ի վերայ վիմի միոյ՝ մինչև թաղեցին զմարմին Ադամայ։ Իսկ Տէր Աստուած հրամայեաց հրեշտակացն[5] բառնալ զմարմինս նոցա և տանել ի կողմանս դրախտին՝ ի տեղւոջն յայնմիկ, յորում առեալ էր զհողն Աստուած, և ստեղծեալ զԱդամ. և հրաման ետ հատանել զերկիրն՝ և թաղել զնոսա ի միասին։ Եւ հրաման ետ Տէր եօթանց սրբոց[6] հրեշտակապետացն, զի երթեալ բերցեն յարքայութենէ անտի անուշահոտութիւնս բազում. և երթեալ հրեշտակապետաց բերին որպէս հրամայեաց Տէր, և եդին զանուշահոտսն ի տեղւոջն՝ յորում հրամայեաց իջուցանել զմարմինս նոցա։ Եւ ապա առեալ զմարմին երկոցունցն, և եդին ի տեղւոջն՝ յորում հատին զգերեզմանն, և ծածկեցին հողով. և ձայն ետ Տէր Աստուած մարմնոյն Ադամայ, և ասէ. Ադամ, Ադամ։ Իսկ նորա ձայն տուեալ ասէ. Ահաւասիկ եմ Տէր։ Եւ ասէ Տէր. Յառաջագոյն ասացի քեզ՝ թէ հող էիր և ի հող դարձցիս. իսկ այժմ[7] աւետարանեմ քեզ զզօրութիւն[8] իմ, և ընդ ամենայն ազգ որդւոց մարդկան՝ որք են ի ծննդոց քոց։ Իբրև ասաց զայս, արար Տէր Աստուած նշան եռանկիւնի, և այնու կնքեաց զգերեզմանս նոցա, զի մի՛ ոք մերձեսցի ան-

1. Բ. յորում։
2. Գ. յաւելու չերկրի։
3. Ա և Գ. օրինակք ունէին զմարմին նախաստեղծիցն որ առնաւքն յինէն. իսկ մեք ուղղեցաք ըստ Բ. օրինակին։
4. Բ. ուղղագոյն դնէ և առեալ հրեշտակացն զմարմին Աբելի և եդին ի վերայ։
5. Բ. յաւելու յետ դադարելոյ մարմնոյ նոցա։
6. ԺԲ. չիք. սրբոց։
7. Յօրինակս յայժ էր՝ մեք ուղղեցաք այժմ։
8. Բ. զյարութիւն և։

դըր զաւուրս վեց՝ մինչեւ դարձցի հող ուստի առաւ։

Եւ իբրեւ կատարեաց զայս ամենայն, համբարձաւ փառօք Տէրն մեր յերկինս։ Իսկ Եւա ոչ իմացեալ եթէ [1] ո՞ւր եղաւ մարմին նորա՝ լի լինէր տրտմութեամբ մեծաւ, և լայր դառնապէս յաղագս մահուան նորա, և դարձեալ յաղագս ոչ գիտելոյ զմարմին նորա, եթէ զի՞նչ եղեւ. քանզի որպէս ասացաք յառաջագոյն՝ թէ ամենեքի նթմբրեալք էին հանդերձ Եւայիւ ի ժամուն յայնմիկ՝ յորում [2] էջ Տէրն ի դրախտն վայելչութեան՝ յաղագս մարմնոյն Ադամայ և արդ եղեն հրաշքս այս ամենայն, և ոչ ոք գիտաց ի նոցանէ՝ բայց միայն Սէթ որդի նորա։

Իսկ յետ այսորիկ իբրեւ եհաս ժամ [3] վախճանի Եւայի, յարուցեալ իսկ ինքնին եկաց յաղօթս արտասուօք, և ասէ. Տէր Աստուած ամենայն բնութեանց [4], արարիչ ամենայն արարածոց, մի՛ որոշեր զիս ի մարմնոյ ծառայի քո Ադամայ, քանզի դու իսկ առեր զիս ի մարմնոյն Ադամայ և յոսկերաց նորա՝ և ստեղծեր [5]. աղաչեմ զքեզ արա արժանի զիս զանարժանս, և զմեղուցեալ մարմին աղախնոյ քոյ՝ ոչ որոշել ի մարմնոյ Ադամայ, որպէս յառաջագոյն էի ի դրախտի անդ ընդ նմա. քանզի և յանցանելն մեր զպատուիրանաւ քո՝ ոչ բաժանեցաք ի միմեանց [6]։

Եւ իբրեւ կատարեաց զաղօթս զայս՝ հայեցաւ յերկինս և բախեաց զկուրծսն իւր՝ և ասէ. Ո՛վ Տէր իմ և Աստուածդ ամենեցուն, ընկալ զոգի իմ խաղաղութեամբ. և զայս ասացեալ ննջեաց՝ աւանդելով զհոգին իւր ի ձեռս հրեշտակաց։ Իսկ յետ այսորիկ Միքայէլ հրեշտակապետն՝ հանդերձ երեք հրեշտակապետօքն. բարձեալ զմարմինն Եւայի, և տա-

1. Բ. յաւելու. Թէ զինչ եղեւ Ադամայ և կամ Սէթ։
2. Բ. յորժամ։
3. Բ. ժամանակ։
4. Բ. բնութեանց արարածոց։
5. Բ. ստեղծեր զիս զանարժանս և այլն..։
6. Բ. յաւելու. Նորին և ասէ Տէր Աստուած իմ մի՛ որոշեր զմեզ ի միմեանց։

րեալ թաղեցին ի տեղւոջն՝ յորում կայր մարմինն Ադամայ և Աբելի արդարոյ։ Յետ այսորիկ ձայն ետ Միքայէլ հրեշտակապետն առ Սէթ և ասէ. Այսպէս [1] թաղեսցես զամենայն մարդ վախճանեալ, մինչև յօր միւսանգամ գալստեանն և յարութեանն. և այսպէս եղեալ զօրէնս ասէ, ցնա. Յեօթներորդումն աւուր հանգիցես և ուրախ լինիցիս ի նմա, զի յայսմ աւուր Աստուած և ամենայն հրեշտակք նորա ուրախ լինիցիմք հանդերձ [2] ամենայն հոգօք արդարոց՝ որք իցեն վերայ երկրի։ Եւ զայս իբրև ասաց Միքայէլ հրեշտակապետն ցՍէթ, և առժամայն համբարձաւ յերկինս, հանդերձ երեք հրեշտակօքն, գոհաբանելով և փառաւորելով զԱստուած. և երգէին զերգս ասելով. Ալէլուիա, ալէլուիա, ալէլուիա, սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօրութեանց։

1. Բ. յաւելու պատփչէալ:

2. Բ. հանդերձ առաքինութեամբ ամենայն հրեշտակաց արդարոցն:



# Բ

## ՄԱՀ ԱԴԱՄԱՅ

ԶԳԻՐՍ արարածոց հաստատեաց Մովսէս, ոչ ինչ յիշէ զմահուանն Ադամայ՝ այլ սակաւ, թէ եկաց Ադամ ինն հարիւր ամ. ի պատմութիւնն Յունաց Թացորդացն գտեալ այսպէս գրեալ վասն Նախաստեղծիցն:

Յետ մախանացն և չարին, ելեալ Ադամ բնակի յանդիման դրախտին, և լալով ոչ ինչ ճաշակեալ կերակուր հինգ օր, մինչ ի գալն հրեշտակին. և մխիթարեալ զնոսա և ցուցանէ նմա զգործս աշխատութեան, և բերէ նմա հրեշտակն զգործիս դարբնութեան, զունելիս և զկռանն, և գործակից լինելով ուսուցանէ հրամանաւն Աստուծոյ. զոր և յետոյ Թոբել ի Թոռանց Ադամայ եղեւ դարբին ճարտար՝ երկաթի և պղնձոյ, և ոչ եւս եկաց հանճարեղ որպէս զԹոբել: Եւ յետ այնորիկ մերձեցաւ առ Եւա, և յղացաւ Եւա և ծնաւ յոյժ տառապանօք՝ զԿային և զդուստր Կայինան, որ թարգմանի նախանձ. այսինքն է, նախանձ բանսարկուին հասոյց ինձ զայս. և յետ այնորիկ ծնանի զԱբել որ թարգմանի սուգ, և դուստր մի անուն Եմա: Եւ յետ այնորիկ ծնանի զՍէթ, որ թարգմանի մխիթար, վասն մահուանն Աբելի, դուստր մի Եսթերա: Եւ առնու Սէթ զշնորհս Հաբելայ և լինի

հօվիւ խաշանց։ Եւ զուարճանայր Ադամ ընդ Սէթ և սիրէր զնա։

Եւ եղեւ Ադամ հինգհարիւր ամաց. և Սեթայ ծնան ուստերք և դստերք և աճէին. և յաւուր միում էր Եւա ի տուն որդւոյն իւրոյ Սեթայ. և հարցանէր Սէթ զմայրն իւր Եւա զպատճառս մեղացն որ եղին ի դրախտին. և պատմէր ըստ կարգի։ Եւ երդուաւ Սէթ յԱստուած՝ ոչ ճաշակել պտուղ զամենայն աւուրս կենաց իւրոց. և իբրեւ դադարեցին ի խօսիցն ննջեցին և տեսանէին յերազին՝ զԱդամ իբրեւ զլոյս, որպէս զառաջին որ ի դրախտն էին, բայց որպէս տխուր. և տանէին զնա ի տանէն որպէս բռնութեամբ. և երթայր Եւա յերազին զկնի, տեսանել թէ ո՞ւր տանիցին զԱդամ։ Եւ հանեն զնա ի բարձր լուսեղէն տաճար, և անդ նստին աթոռով ի բարձր լուսեղէն դահոյս՝ արք երեք լուսեղէնք, և շուրջ զաթոռովն սպասաւորք բազումք, երիտասարդք ի հանդերձս փայլուն. և ածին զԱդամ մօտ ի դուռն տաճարին, և դարձեալ փութով շրջեցուցին, և ի բաց վարեցին որպէս բռնութեամբ. և գնաց Ադամ տխուր. յանկարծակի յարեաւ մինն ի յերից արանցն, որ նստէին յաթոռն՝ և բարեխօսէր առ ընկերսն։ Եւ առեալ երիցն իբր դաղտ խորհուրդ յայլոց սպասաւորացն ի ծածուկ. և էջ այրն որ յարեաւ յաթոռոյն, և գայ փութով զհետ Ադամայ, և գտանէ զԱդամ մօտ առ Եւա իբրեւ տըրտում, և առեալ զձեռացն, կոչէր զնա. և տանի ածէ ի տաճարն և նստուցանէ յաթոռ. և խօսէր ցնա քաղցըրութեամբ և զուարճանայր Եւա, և երթայր զհետ Ադամայ տեսանել թէ զի՞նչ կամիցին առնել զնա։

Իսկ Սէթ որդի նորա զարթուցեալ տեսանէ զմայրն զի դողայր ընդ քուն, և խթեալ ի նա զարթոյց, և յարուցեալ դողմամբ Եւա՝ պատմէ որդւոյ իւրոյ զտեսիլն։ Եւ առաւօտուն յարուցեալ գան Եւա և Սէթ առ Ադամ և գտանեն զնա հիւանդ ի մահիճս. և նստան շուրջ զնովաւ, և ժողովեցան ազգն ամենայն և պատմեցին նմա զնոյն տեսիլն Եւայի. և պատմեաց և Սէթ զիւրեանցն և սկսան լալ. և աղաչեաց Ադամ զԱստուած

մի՛ թողուր զիս միայն. այլ որպէս ի միասին ելաք ի դրախտէն, ի միասին մեռցուք: Եւ եդ պատուէր որդւոյ իւրում Սեթայ և հանգեաւ Ադամ. և լացին զնա Եւա և Սէթ և որդիքն ամենայն: Եւ յերրորդ պահու աւուրն թմրեցաւ Եւա ի տրտմութենէն. և եդ զգլուխ իւր ի վերայ Ադամայ և եհան զոգին. և անկեալ Սէթ ի վերայ մօր իւրոյ՝ գիրկս էարկ զպարանոցաւն. Զի՞ է քեզ մայր իմ, և ասես թէ մեռաւ, անկեալ ի վերայ երեսաց իւրոց լայր դառնապէս. և դուստրն Եմա կտրեաց զհերս իւր ի վերայ մօրն, և լացին զօրն ողջոյն և յերեկունն և գիշերն: Եւ ի մէջ գիշերին տեսանեն զԱդամ և զԵւա ի մութ տան ի սուգ. և ահա տեսանէր կին մի գեղեցիկ, և ունէր մանուկ փոքրիկ ի գիրկն, և մտանէ առ Եւա, և նա մօտ առ նմա. և յանկարծակի լոյս փայլեաց ի մանկանէն և ելից զամենայն տունն:

Եւ ընկալեալ Եւա զտղայն ի գիրկս իւր՝ լայր դառնապէս և զուարճանայր. և յարուցեալ Եմա, յարուցեալ և Սէթ, և պատմեցին միմեանց զտեսիլն, և ուրախացեալ մխիթարեցան: Եւ յառաջին պահու աւուրն երեւի հրեշտակ Աստուծոյ յայտնապէս, և հրամայէ բանալ զերկիր և դնել զԱդամ և զԵւա. և արարին այնպէս. և եդաւ Ադամ ի գերեզմանին. մինչեւ ընկալաւ Նոյ հրաման ի հրեշտակէն, որ եցոյց բանալ տեղին և առնուլ ի տապանն զոսկերսն Ադամայ և Եւայի:



# Գ

# ԿՏԱԿՔ ՆԱՀԱՊԵՏԱՑ

---

## ԿՏԱԿ ՌՈՒԲԵՆԻ [1]



ՀՐԱՄԱՆ կտակի Ռուբենի, զոր [2] պատուիրեաց որդւոց իւրոց զկնի երկրորդ ամին [3] վախճանելոյն Յովսեփայ, մինչդեռ էր ի հիւանդութեան: Ժողովեցան որդիք նորա և որդիք որդւոց նորա [4] տեսանել զնա. և նա յարուցեալ նստաւ և ասէ ցնոսա. Որդեակք իմ, ես ահաւասիկ մեռանիմ և գնամ զկնի հարցն [5] իմոց: Եւ տեսեալ զՅուդա և զԳադ և զԱսեր զեղբարս իւր, և [6] ասէ ցնոսա. Յարուցէք զիս եղբարք իմ, զի ասացից ցեղբարս [7] իմ և ցորդիս իմ՝ զոր [8] ինչ ունիմ ի ծածուկ ի սրտի իմում. վասն զի նուազեալ [9] եմ ես արդ յայսմ հետէ,

1. Բն. չունի. Ա. Գիրք Հայորդաց խօսք Ռուբենի կտակ. Բ. Կտակ և խօսք Ռուբենի է Հայորդաց եբրոյ. Գ. Կտակ Ռուբենի Ա:
2. Ա և Բ. որդիս:
3. Ա և Գ. ամի:
4. Ա. Նորա, և ասէ որդւոցն.. վախճանին և.. Բ. Նորա տեսանել.. և Ռուբէն ասէ.. վախճանին և. Գ. չունի Ռուբէն:
5. Ա և Բ. հարց:
6. Ասէ չունին և:
7. Ա. ցեղբարցն.. և ցորդիսն. Բ. ցեղբարսդ, ցորդիսդ. Գ. ցորդիս:
8. Ա և Գ. որ:
9. Գ և Դ. Նուաղեալ:

և յարուցեալ համբուրեաց զնոսա, և լացեալ [1] ասաց. Լուարուք որդեակք [2], և ունկն դիք Ռուբենի հօր ձերոյ, զոր ինչ պատուիրեմ ձեզ. և ահա ես ի վկայութիւն կոչեմ [3] ձեզ այսօր զԱստուած երկնից, զի մի գնայցէք անգիտութեամբ և երիտասարդութեամբ [4] յոր հեղայ ես և պղծեցի զանկողին հօր [5] իմոյ Յակոբայ. վասն որոյ և ասեմ իսկ ձեզ, վիրաւորեցայ ես մեծամեծս [6] ի կուշտս իմ զամս եւթն, և եթէ ոչ Յակովբայ հօր [7] իմոյ աղօթեալ էր վասն [8] իմ առ Տէր, կամէր Տէր սատակել [9] զիս. և [10] էի ես ամաց երեսնից յորժամ գործեցի զչարիսն զայն առաջի Տեառն, և զեւթն ամիս հիւանդացայ մերձ [11] ի մահ: Եւ զկնի այսորիկ՝ յօժարութեամբ մտաց իմոց՝ ապաշխարեցի առաջի Տեառն զամս [12] եւթն. և գինի և ցքի ոչ արբի, և միս ոչ եմուտ ի բերան իմ. և զամենայն հաց ցանկութեան ոչ կերայ, սգալով ի վերայ մեղաց իմոց, վասն զի մեծամեծք էին, և ոչ երբէք յԻսրայելի [13] եղեալ էր այնպիսի: Եւ արդ [14] լուարուք ինձ որդեակք իմ զոր տեսի [15] վասն եւթն չնչոյ [16] մոլորութեան յապաշխարութեան [17] իմում. վասն զի եւթն շունչք [18] տուեալ են ընդդէմ մարդոյ ի բելիարայ [19], և նոքա են գլուխք [20] գործոց մարդկութեան [21]: Եւ

1. Ա. լալով ասէր:
2. Ի բնագրին և ի Դ. եղբարք իմ էր, այլ մեք ուղղեցաք ըստ Ա և Բ. օրինակաց. իսկ Գ. ունի եղբարք իմ և որդիք իմ:
3. Ա. կոչեմ զԱստուած երկնից այսօր. յԲ. պակասէ այսօր.
4. յԲ. պակասէ երիտասարդութեամբ:
5. Գ. հօրն:
6. Ա և Գ. վէրս մեծամեծս:
7. Գ. հօրն:
8. յԲ. պակասէ վասն իմ:
9. Ա և Բ. սպանանել:
10. Ա. Բ և Դ. զի:
11. Ա և Բ. մինչև:
12. Ա. Բ և Դ. զեօթն ամ. իսկ Գ. զեօթն ամ առաջի Տեառն:
13. Ա և Բ. յԻսրայէլի լեալ էր:
14. Ա. Բ. Գ և Դ. այժմ:
15. յԱ և յԲ. պակասին զոր տեսի ես:
16. Ա և Բ. շնչոյն:
17. Ա և Բ. յապաշխարութեանն:
18. Ա. շունչ:
19. Ա. Բ. Գ և Դ. ի բելիարե:
20. Ա. գլուխ:
21. Ա. Բ և Գ. մանկութեան:

դարձեալ եւթն շունչ տուեալ[1] ի վերայ ամենայն արարածոց, զի ելիցին ի նոսա ամենայն գործք մարդկան։

Նախ[2] ոգի[3] կենդանութեան, յորում հաստատեալ են ամենայն արարածք[4]. երկրորդ, հոգի տեսողութեան յորում է[5] ցանկութիւն. երրորդ[6] հոգի լսողութեան, յորմէ լուեալ է վարդապետութիւն. չորրորդն, հոտոտելիք, յորմէ տուեալ են ճաշակելիք ի[7] ձկտումն ոգւոյն[8] և շնչոյն. հինգերորդն, խօսողութեան՝ յորմէ լինի գիտութիւն. վեցերորդն, հոգի ճաշակողութեան[9], յորմէ լինի կերակուր մարդկան և ըմպելի, և զօրութիւն ի նմա ստեղծեալ է. վասն զի կերակուր է կարողութիւն[10]. եւթներորդն, հոգի[11] սերմանողութեան և սիրոյ, որով մերձենալ առ իրեարս ի ձեռն ախտական[12] սիրոյ, որով լինի[13] մեղքն. վասն այսորիկ զկնի այսր ամենայնի ստեղծմանց և առաջինն[14] ի մանկութեանց. վասն զի անգիտութեամբ է լցեալ, և առ մանկութեան ճանապարհ հորդէ իբրև կուրի ի խորխորատ, և որպէս[15] անասնոյ ի վախից։ Եւ ի վերայ այսր ամենայնի ութերորդ, հոգի քնոյ, յորմէ ստեղծեալ եղեւ հաստատութիւն բնութեան[16] և կերպարան մահուան։ Արդ ընդ այս եւթն հոգիս խառնակի ոգին[17] մոլորութեան. առաջին, պոռնկութեան շունչն ի բնութեան[18] և ի զգայլեան է. երկրորդն,

1. Ա. տուեալ են։
2. Բ. Նախ առաջին։
3. Ա. Բ. Գ և Դ. հոգի։
4. Ա և Բ. արարածք ամենայն։
5. յԳ և ի Դ պակասէ է։
6. Բ. երրորդն, չորրորդն։
7. Գ. և է։
8. Ա և Բ. ոգւոյ և շնչոյ։
9. Ա. ճաշակելեացն՝ յորում. Բ. յորում։
10. Ա և Բ. ուղղագոյն ևս զնէն կոյր զօրութեան։
11. Բ. ի հոգի։
12. Ա և Բ. ախորժական։
13. յԱ. յԲ. յԳ և ի Դ. պակասէ, որով լինի։
14. Գ. և առաջինն,
15. Ա. Բ. Գ և Դ իբրև։
16. Ա և Բ. բնաւորութեան, և պակասի ի սոսա և կերպարան մահուան. բայց Գ. կերպարանք մահուան։
17. Գ. հոգին։
18. Ա և Բ. ի բնաւորութեան և ի զգալեաց։

ագահութեան շունչն յորովայնին է. երրորդն, կռուողութեան շունչն ի լերդին[1] և ի լեղուղջն է. չորրորդ, շունչն հաճողութեան ի մեքենագործութեանն գեղեցիկ երեւեցի. հինգերորդ, շունչն ամբարտաւանութեան[2], զի պարծեցեալ մեծամեծս խորհեսցի[3]. վեցերորդն, շունչն խստաբանութեան, ի կորըստեան[4] և ի նախանձու ստեղծաբանել[5] և թաքուցանել գործս յազգականաց[6] և յընտանեաց իւրոց. եւթներորդ, շունչն ապիրատութեան, յորմէ գողութիւն և զրկումն, զի արասցէ հեշտութիւն սրտից նոցա. վասն զի ապիրատութիւն գործակից լինի ամենայն շնչոցն ի տուր և յառնս: Եւ ի վերայ այսր ամենայնի ընդ շունչն ութերորդ այլ շունչն ժողովեալ[7] է, որ է մոլորութեան[8] և երեւութից. և այսպէս կորնչի[9] ամենայն երիտասարդութիւն: Վասն զի խաւարեալ զմիտսն[10] ի ճշմարտութենէն՝ և ոչ իմացեալ զօրէնսն[11] Աստուծոյ, և[12] ոչ լուեալ խրատու հարցն[13] իւրոց, զոր օրինակ և ես մոլորեցայ ի մանկութեան իմում:

Եւ այժմ, որդեակք իմ, զճշմարտութիւն սիրեցէք, և նա եղիցի ձեզ պահապան. և արդ[14] ուսուցանեմ ձեզ լուարուք Ռուբենի հօր ձերոյ, և մի հայիք յերեսս[15] կանանց, և մի խորհրդակից լինիք ընդ տանականայս[16], և մի զննէք զգեղս[17] և զգործս, զի ե-

1. Ա. լերդն և. Բ. լեարդն, և միասին զնոսին լեղին է:
2. Բ. ամբարտաւանութեան է:
3. Բ. խորհեցայ:
4. Բ. և կորստեան և նախանձու:
5. Ա. Բ. Գ և Դ. ստեղծաբանել բանս:
6. Ա և Բ. յազգաց (իսկ Յոյնն է ֆիւսայէ):
7. Ա. ժողովել. Բ. ժողովեալ:
8. Բ. մոլորութեան աներեւութից:
9. Ուղղեցաւ ըստ Ա. Բ և Գ. զի բնագիրն ունէր կորչէ:
10. Գ. զմիտս.
11. Գ. զօրէնս Տեառն:
12. Գ և Դ. և ոչ խրատեալ ի հարց իւրոց:
13. Ա և Բ. հարց իւրոց:
14. Բ. Գ և Դ. և ուսուցանեմ. իսկ Ա. չունի և:
15. Ա. Բ և Դ. ի դէմս կանանց. Բ. ի դէմ:
16. Գ. ընդ տանականաց:
17. Ա. Բ. Գ և Դ. զգործս կանանց:

թէ [1] իմ ոչ էր տեսեալ զԲաղլա զի լուանայր ի ծա– ծուկ տեղւոջ՝ [2] ոչ երբէք անկանէ ի [3] ի մեղս մեծա– մեծս. վասն զի պաշարեալ իմոցս [4] մտաց ի մերկու– թիւնս կանանց [5], և ոչ արար ինձ թոյլ՝ մինչև գոր– ծեցի զպղծութիւնն: Արդ մինչդեռ երթեալ էր հայր [6] իմ Յակովբ առ Իսահակ հայր իւր, և մինչդեռ էաք մեք ի Գադեր մերձ յԵփրաթա [7] Բենիամինի, էր Բալլա արբեալ՝ և ննջէր մերկացեալ ի հանդերձից [8], և էր [9] ի սենեկի, և իմ մտեալ և տեսեալ զմեր– կութիւն նորա՝ գործեցի զանօրէնութիւնն [10], և թո– ղեալ զնա ի քուն՝ ելեալ գնացի: Եւ վաղվաղակի հրեշտակ Տեառն յայտնեաց Յակոբայ հօր իմոյ՝ վասն ամպարշտութեան իմոյ՝ զոր արարի. և եկեալ Յակոբ սգայր վասն իմ, ոչ [11] ևս մերձեցեալ ի Բալլա: Եւ [12] արդ մի՛ հայիք ի գեղեցկութիւն կանանց, և մի՛ զմտաւ ածէք վասն գործոց նոցա. այլ գնացէք պարզ մտօք երկիւղիւն Տեառն, և աշխատեցարուք ի գործս ար– դարութեան. և ի խնդիր լերուք ուսմանց և հովուու– թեան ձերում, [13] մինչև [14] Տէր տացէ ձեզ ամուսին՝ զոր ինքն [15] կամեսցի. զի մի՛ կրեսջիք զայն զոր ես [16] կրեցի: Զի մինչ [17] ի վախճան հօր իմոյ ոչ ունէի հա– մարձակութիւն հայել ընդ յերեսս Յակովբայ հօր իմոյ, և կամ խօսել համարձակ ընդ եղբարս իմ վասն նախատանաց իմոց, զի մինչև յոյժ խիղճ մտաց ի– մոց պաշարեաց զիս վասն մեղաց իմոց. և հօր իմոյ [18]

1. Ա. զի թէ. Բ. զի թէ ունէի ես:
2. Բ. տեղւոջն:
3. Ա. անկեալ եի:
4. Բ և Գ. իմոց մտացս ի մերկու– թեանս. իսկ Ա. իմոցս մտացս:
5. Ա և Բ. ի բազում ուրեք գտանեն կանոց, քան թէ կանանց:
6. Ա և Բ. հայրն:
7. Ա. յԱփրաթայ:
8. Բ. Գ և Դ. ի հանդերձոյ:
9. Բ. և եր նա ի սենեկի:
10. Գ. զշնորհութիւն:
11. Բ. և ոչ ևս
12. յԱ. յԲ. յԳ և յԴ. պակա– սէ և:
13. Ա. ձերոյ:
14. Ա. մինչ:
15. Բ. զոր և ինքն:
16. Բ. ես կրեցի:
17. Ա. Բ և Գ. մինչև:
18. Ա և Դ. հօր իմում. իսկ Բ. հայրն իմ:

դրդուեցան, և առնէին խորհրդովք[1] զգործն՝ և կեր-պարանէին ի նմանութիւն մարդկան, և ի մերձենալ[2] արանց նոցա, երեւէին ընդ նոսա. և նոցա ցանկացեալ միտք երեւութիցն նոցա, ծնանէին զհսկայսն. վասն զի երեւէին նոցա զուարթունք[3] որպէս թէ հասանէին յերկինս:

Արդ պահեցէք զձեզ ի պոռնկութենէ. և եթէ կամիք սուրբ լինել մտօք՝ պահեցէք զզգայութիւնս[4] ձեր յամենայն իգաց. և նոցա պատուէր տուք մի մերկանալ[5] արանց իւրեանց՝ զի և նոքա յստակ լինիցին[6] միտք. վասն փութապէս[7] պատահմանցն՝ թէպէտ և չգործիցի ամբարշտութիւնն՝ սակայն նոցա է ախտ պիղծ[8] և ձեզ[9] թշնամանք մեծ: Վասն զի պոռնկութիւն և ոչ մի ինչ[10] բարեպաշտութիւն ունի յինքեան[11]. և ամենայն նախանձ բնակեալ է ի ցանկութիւն[12] նորա. վասն[13] այսորիկ և դուք նախանձեցարուք և ի խնդիր լերուք բարձրանալ քան ըզնոսա: Այլ թէպէտ և խնդրիցէք՝ ոչ կարիցէք[14] քան զնոսա. վասն զի Աստուած արար ընտրութիւն ի մէջ նոցա և Ղեւեայ, զի[15] նա ծանուցանէ զօրէնս Տեառն. եւ Տէր զիշխանութիւնն և զկնի նորա Յուդայի և ինձ և Դանայ և Յովսեփայ՝ զկնի նոցա իշխանս: Վասն[16] այսորիկ հրաման տամ ձեզ լսել

1. Բ և Գ. խորհրդովք. Բ. ըղգործս:
2. Բն և Ա. և մերձենալ:
3. Գ և Դ. զուարթութեանն:
4. Ա և Բ. զանձինս ձեր և զզգայլիս.. բայց Գ և Դ. զզգալիս ձեր:
5. Ա և Բ. մերձ լինել:
6. Ա. Բ. Գ և Դ. լիցին:
7. Բ. ի փառաւորելս:
8. Ա. Բ. Գ և Դ. մեծ:
9. Ա և Բ. մեզ. բայց Գ. և ձեր թշնամանք:
10. ԺԳ և ԺԴ. պակասէ բառս ինչ:
11. Բ. յինքեանն:
12. Ա. Բ. Գ և Դ. ի ցանկութեան նոցա.
13. Ա. Բ. Գ և Դ. յայնժամ:
14. Ա. խնդրեցէք. Բ. խնդրեսջիք:
15. ԺԱ. ԺԲ. ԺԳ և ԺԴ. պակասին զի նա ծանուցանէ զօրէնս Տեառն:
16. Ա. և յայնժամ. բայց Բ. Գ և Դ յայնժամ:

Ղևեայ, զի նա ծանուցանէ[1] և կատարեսցէ ի դա-տաստանս և յիրաւունս, և ողջակէզս մատուսցէ վասն ամենայն Իսրայելի. մինչև ի վախճան ժամանա-կաց քահանայանալ ուխտին[2] Քրիստոսի՝ զոր ասաց Տէրն։

Երդմնեցուցանեմ զձեզ յԱստուածն երկնից՝ զի գնայցէք ճշմարտութեամբ իւրաքանչիւր ոք[3] ընդ ըն-կերի իւրում. սէր ունիցիք ընդ եղբարս ձեր. և առ[4] Ղևի մերձեցարուք խոնարհ սրտիւ[5], զի ընկալջիք օրհնութիւն ի բերանոյ նորա[6]. վասն զի[7] նա օրհ-նեսցէ զԻսրայէլ և զՅուդա. զի նովաւ ընտրեաց Տէր թագաւորել ամենայն ժողովրդեանն. և երկիր պագ-ջիք զաւակի նորա, զի վասն ձեր մեռցին ի պատերազ-մունս յերևելիս և յաներևոյթս, և եղիցին ի միջի ձերում թագաւորք յաւիտենականք։

Եւ վախճանեցաւ Ռուբէն՝ պատուիրան թողեալ զայս որդւոց իւրոց. և եդին զնա ի տապանի յԵգիպ-տոս[8], ի ժամանակին[9] յորում հանին զնա յերկրէն Եգիպտացւոց. և թաղեցին զնա յայրին կրկնում ուր էին հարքն իւրեանց։

1. Ա. Բ. և զի նա ծանուցէ զօրէնս Տեառն. իսկ Գ և Դ. զօրէնս Տեառն։
2. Ա. ուխտին զոր ասաց նմա Տէր։
3. Ա. Բ և Գ. չունի ոք։
4. Բ. որդւոց Ղևեայ։
5. Ա և Բ. սրտիւք։
6. Բ. նոցա.. նոքա օրհնեսցեն։
7. Գ. զի։
8. Ա. Բ. Գ և Դ. չունին յԵ-գիպտոս։
9. Ա. Բ. Գ և Դ. ի ժամանակս յորս։



# ԿՏԱԿ ՇՄԱՒՈՆԻ[1]

---

*ԸՍՏ Ա ԵՒ Բ. ՕՐԻՆԱԿԱՑ*

ՀՐԱՄԱՆ կտակի Շմաւոնի, զոր խօսեցաւ որդւոց իւրոց՝ յորժամ մերձ էր ի մեռանել, յետ հարիւր քսան և հինգ ամի կենաց իւրոց, և յերկրորդ ամի յորժամ վախճանեցաւ Յովսէփ։ Եկին որդիք նորա տեսանել զնա մինչ դեռ էր ի հիւանդութեանն։ Եւ Շմաւոն զօրացեալ նստաւ և համբուրեաց զնոսա և ասէ. Լուարուք ինձ, որդեակք իմ, լուարուք Շմաւոնի հօր ձերում, զոր ինչ ունիմ ի սրտի իմում պատմել ձեզ։ Ես ծնեալ եղէ ի Յակովբայ հօրէ իմմէ որդի երկրորդ, և Լիա մայր իմ կոչեաց զանուն իմ Շմաւոն. և լուաւ Տէր աղօթից մօր իմոյ։ Եւ եղէ ես զօրաւոր յոյժ. ոչ զարհուրեցայ ի գործոյ՝ ոչ երկեայ յիրաց ինչ. զի սիրտ իմ էր խիստ, և փոր իմ անշարժ, և աղիք իմ անվշտակից. և վասն զի զօրութիւնք ի բարձրելոյն տուեալ էր ամենայն մարդկան, ի հոգիս և ի մարմինս։ Եւ ես ի ժամանակին յայնմիկ նախանձեցայ ընդ Յովսեփու, քանզի սիրէր զնա հայրն իմ. ես հաստատեցի զսիրտ իմ ի վերայ Նո-

1. Ա և Բ. Կտակ Շմաւոնի որդւոյ Յակոբայ, որդւոյն Իսահակայ, որդւոյ Աբրահամու։

# ԿՏԱԿ ՇՄԱՒՈՆԻ

---

*ԸՍՏ ԲՆ. Գ ԵՒ Դ. ՕՐԻՆԱԿԱՑ*

ՀՐԱՄԱՆ բանից կտակի Շմաւոնի, զոր խօսեցաւ ընդ որդիսն իւր յառաջ քան զմեռանելն իւր, հարիւր և ի քսան ամի կենաց իւրոց՝ յամին յորում վախճանեցաւ Յովսէփ։ Եւ եկեալ[1] ժողովեցան որդիք նորա տեսանել զնա՝ մինչդեռ էր ի հիւանդութեան. և Շմաւոն զօրացեալ նստաւ և համբուրեաց զնոսա, և ասէ ցնոսա[2]. Լուարուք ինձ, որդեակք իմ, լուարուք հօր ձերոյ Շմաւոնի՝ զոր ինչ ունիմ ի սրտի իմում ասել[3] ձեզ։ Ես ծնեալ եղէ ի Յակոբայ հօրէ իմմէ երկրորդ որդի, և Լիա մայր իմ կոչեաց զանուն[4] իմ Շմաւոն, վասն զի լուաւ Տէր պաղատանաց նորա։ Զօրաւոր եղէ յոյժ, և ոչ զարհուրեցայ ես ի գործոյ և ոչ երկեայ յամենայն իրաց, վասն զի սիրտ իմ խիստ էր և լեարդ իմ անշարժ և աղիք իմ անվշտակից. և քանզի[5] զօրութիւն ի բարձրելոյն տուեալ են ամենայն մարդկան ի հոգիս և ի մարմինս։ Եւ ես ի ժամանակին յայնմիկ նախանձե-

1. Գ և Դ. Եկին տեսանել զնա։
2. ԺԲ և ԻԴ. չիք ցնոսա։
3. ԺԳ և ԻԴ. չիք ասել ձեզ։
4. Գ և Դ զնա։
5. Գ և Դ. վասն զի։

րա սպանանել զնա. վասն զի իշխանն մոլորութեան չարժեաց[1] զիս ի Նախանձ, և ոգին Նախանձու կուրացոյց զմիտս իմ, և ոչ տայր[2] հայել ինձ որպէս յեղբայր, և ոչ խնայել ի հայրն իմ Յակոբ ծերացեալն: Այլ Աստուած նորա, Աստուած հարց նորա՝ Յակոբայ, Իսահակայ և Աբրահամու՝ առաքեաց զհրեշտակ իւր և փրկեաց զնա ի ձեռաց իմոց:

Արդ յորժամ գնացի ես ի Սիկիմ բերել զդեղ[3] ոչխարաց հօտից մերոց, և Գովթայիմ[4], ուր էին պէտք մեր և ամենայն չուռմարանք. Յուդա եղբայրն մեր վաճառեաց զՅովսէփ Իսմայելացոցն: Եւ եկն Ռուբէն եղբայրն մեր և տրտմեցաւ. վասն զի ակն ունէր[5] ապրեցուցանել զնա և հասուցանել առ հայրն: Իսկ ես եկեալ բարկացայ ի վերայ նորա. եթէ զի՞ զնա կենդանի արձակեաց. և այսպէս բարկացայ ընդ[6] նմա ամիսս հինգ: Բայց սակայն և զիս խափանեաց Տէր, արգել զզօրութիւն[7] ձեռին իմոյ, և ցամաքեաց մինչև աւուրս երեսուն: Եւ ծանեայ ես, որդեակք իմ, եթէ վասն Յովսեփայ[8] դիպեցաւ ինձ. ապաշխարեալ լացի, և արտասուօք աղաչեցի զԱստուած, զի անդրէն հաստատեսցի ձեռն իմ յիս. և որոշեցայ ես ի Նախանձուէ, և յամենայն պղծութենէ. քանզի գիտացի եթէ չարիս խորհեցայ առաջի Աստուծոյ և հօրն մերոյ[9] Յակոբայ նախանձեալ ընդ եղբօրն իմոյ[10]:

Եւ այժմ, որդեակք իմ, պահեցէք զանձինս ձեր ի չնչոյ մոլորութենէ և ի Նախանձուէ. զի նախանձ տիրէ ի վերայ ամենայն մարդոյ, և ոչ տայ բարիս գործել. այլ արկանէ ի սիրտ մարդոյ յամենայն ժամ

1. Ա. տառապեցաւ յիս, և հո-գին Նախանձոյն:
2. Ա. տուեալ:
3. Յոյնն զնէ օծանս, իսկ Ա. գեղ:
4. Յոյնն Դովթայիմ:
5. Ա. չունէր ոչ ունէր:
6. Ա. ի վերայ նորա:
7. Ա. զզօրութիւն:
8. Ա. յաւելու այն:
9. Ա. իմոյ:
10. Ա. յաւելու Յովսեփու:

ցայ ընդ Յովսեփայ՝ վասն զի սիրէր զնա հայրն իմ, և հաստատեցաւ սիրտ իմ ի վերայ նորա սպանանել զնա. վասն զի հրեշտակն մոլորութեան առաքեաց առ[1] իս զոգին նախանձու՝ և կուրացոյց զմիտս իմ՝ ոչ տալ[2] հայել ինձ ի նա, իբրեւ յեղբայր, և ոչ խնայել ի Յակոբ հայր իմ։ Այլ Աստուած նոցա և Աստուած հարցն նոցա առաքեաց զհրեշտակ իւր՝ և փրկեաց զնա ի ձեռաց իմոց։

Արդ յորժամ գնացի ես ի Սիկիմ՝ բերել օծումն հօտիցն, և Ռուբէն ի գաւթի[3] մեռուս էր՝ ուր էին պէտքն մեր և ամենայն շտեմարանք մեր, և Յուդա եղբայր մեր վաճառեաց զնա Իսմայելացւոցն։ Եւ եկեալ Ռուբէն տրտմեցաւ, վասն զի ակն ունէր հաստուցանել զնա առ հայր իւր։ Իսկ ես բարկացայ ի վերայ Դանայ՝[4] զի կենդանի զնա արձակեաց. և եղէ ընդ նմա բարկացեալ ամիսս հինգ՝ յաղագս բանիցս այսոցիկ։ Բայց սակայն խափանեաց զիս Տէր՝ և արգել զյափշտակութիւն ձեռին իմում, վասն զի ձեռն իմ աջ ցամաքեալ եղեւ[5] մինչեւ յաւուրս վաթսուն։ Եւ ծանեայ, որդեակք իմ, որ վասն Յովսեփայ դիպեցաւ ինձ այն, և ապաշխարեալ լացի և արտասուեցի, և յաղօթս կացի առ Տէր՝ և անդրէն հաստատեցայ. և որոշեցայ յամենայն նախանձուէ և ի պղծութենէ. վասն զի գիտացի եթէ չարիս խորհեցայ առաջի Տեառն և Յակոբայ հօր իմոյ, վասն Յովսեփայ նախանձեալ ընդ եղբարս իմ։

Եւ արդ, որդեակք իմ, պահեցէք զանձինս ձեր[6] ի չնչոյն մոլորութենէ և ի նախանձուէ, վասն զի նախանձ տիրէ ի վերայ ամենայն մտացի[7] մարդոց՝ և ոչ տայ բարիս ինչ գործել. այլ յամենայն ժամ ար-

1. յԳ և իԴ. չիք առ իս։
2. Գ և Դ. տալոյ։
3. Ցայսն Ռուբէն ի Դովթայիմ էր։
4. Ցայսն Ցուդայ։
5. Գ և Դ. չինէր։
6. յԳ և իԴ. չիք զանձինս ձեր։
7. Գ և Դ. մարդոյ։

ապանանել զամենայն նախանձաւորս։ Իսկ նա երա֊
նելին հանապազ նմանեալ ծաղկի, և ես նախանձու
մաշեալ թառամէի։ Զերկուս զամս երկիւղիւն Տեառն
չարչարէի զանձն իմ պահօք. և ծանեայ թէ լուծումն
նախանձուն յերկիւղէն Տեառն եղեւ։ Զի թէ զՏէրն
ապաւէն ոք արասցէ, հեռանայ չար հոգին ի նմանէ,
և դադարէ ի նախանձուէ։

Եհարց զիս հայրն իմ, զի տեսանէր զիս տրտմեալ,
թէ [1] վասն է՞ր իցես տրտում յոյժ. և ես ասէի պատ֊
ճառանօք զցաւս լերդի իմոյ. քանզի սուգ ունէի առա֊
ւել [2] քան զամենայն եղբարսն իմ, զի ես եղէ պատ֊
ճառք վաճառմանն Յովսեփայ։ Քանզի յորժամ իջաք
մեք յԵգիպտոս, և Յովսէփ [3] կապեաց զիս միայն
իբրեւ զլրտես. և ես գիտացի եթէ յիրաւի կրեմ, և
ոչ տրտմեցայ։ Իսկ Յովսէփ էր այր բարի, և ունէր
հոգի Աստուծոյ. գթած էր և ողորմած, և ոչ եղեւ
չարայուշ առ իս, այլ սիրեաց զիս որպէս զայլ եղ֊
բարսն իմ։ Արդ, որդեակք իմ, պահեցէք զձեզ յա֊
մենայն չարութենէ [4] և ի նախանձուէ, և գնացէք
պարզմտութեամբ սրտիւ [5], զմտաւ ածելով զՅովսէփ
եղբայրն մեր. զի տացէ Աստուած շնորհս և փառս
և օրհնութիւնս ի գլուխս ձեր՝ զոր տեսէք ի Յովսէփ
արարեալ։ Զամենայն աւուրսն կենաց իւրոց ոչ նախան֊
ձեցաւ ընդ մեզ և ոչ արար ընդ մեզ՝ ըստ բանիցս այսո֊
ցիկ. այլ սիրեաց զմեզ որպէս զանձն իւր, և առաւել
փառաւորեաց զմեզ քան զորդիսն իւր. և շնորհեաց մեզ
ամենեցուն մեծութիւն անասնոց և պտղոց։ Եւ դուք,

1. յԱ. պակասէ տող մի։
2. Ա. եւս առաւել։
3. յԱ. չիք Յովսէփ։
4. Ա. չարախօսութենէ։
5. Ա. սուրբ սրտիւ... ածել։

կանէ ի սիրտ նորա սպանանել զնախանձաւորն. իսկ ընդ որում նախանձին, նա հանապազ ծաղկէ, և նախանձոտն մաշեալ թառամի։ Զամս երկուս երկիւղիւ Տեառն չարչարեցի զանձն իմ պահօք, և ծանեայ զի լուծումն նախանձուն յերկիւղէ Տեառն եղեւ. զի եթէ ոք զՏէր ապաւէն իւր[1] արասցէ, զերծանի չար[2] հոգին ի նմանէ, և լինի միաք նորա թեթեւ. և ապա վշտակից լինի նախանձոտին[3], և ոչ ըստգտանէ զայնոսիկ որ սիրեն զնա և այսպէս ապա դադարեալ լինի ի նախանձուէն։

Ապա[4] հարցանէր հայր իմ, վասն զի տեսանէր տրտմեալ զիս, և պատասխանի տայի նմա՝ և պատմէի զցաւս լերդի իմոյ. վասն զի սուգ ունէի ես քան զամենեսեան, զի ես էի պատճառ վաճառելոյն Յովսեփայ։ Եւ յորժամ իջաք յԵգիպտոս, և կապեաց զիս իբրեւ զլրտես, գիտացի[5] թէ յիրաւի կրեմ զայս՝ և ոչ տրտմեցայ։ Իսկ Յովսէփ էր այր բարի, և ունէր հոգի Աստուծոյ յինքեան. գթած էր և ողորմած, և ոչ եղեւ չարայուշ առ իս, այլ սիրեաց զիս իբրեւ զամենայն[6] եղբարսն իւր։ Արդ պահեցէք զձեզ, եղբարք և որդիք իմ, յամենայն նախանձուէ և ի չարակնութենէ, և գնացէք պարզմտութեամբ, և սուրբ սրտիւ զմտաւ ածելով զեղբայրն մեր զՅովսէփ. զի տացէ Աստուած շնորհս և օրհնութիւնս ի գլուխս ձեր՝ զոր օրինակ տեսէք զնա։ Վասն զի յամենայն աւուրս կենաց իւրոց ոչ նախատեաց զմեզ վասն բանիցս այսոցիկ. այլ սիրեաց զմեզ իբրեւ զանձն իւր և առաւել քան զորդիս իւր. և փառաւորեաց զմեզ մեծութեամբ անասնոց և պտղոց, և[7] զամենայն բարութիւնս շնորհեաց մեզ ամենեցուն։ Եւ դուք որդեակք

1. ԺԳ և ԻԴ. չիք իւր։
2. Գ և Դ. նա ի չար հոգւոյն, և։
3. Գ և Դ. նախանձորդն։
4. Գ և Դ. այսպէս, ապա։
5. Գ և Դ. զի գիտացի։
6. Գ և Դ. զայլ ամենայն։
7. ԺԳ և ԻԴ. չիք և զամենայն բարութիւնս։

որդեակք իմ, ի բաց եղերուք ի չար նախանձուէ. զի նախանձն զայրացուցանէ զմարդն, և ապականէ զհոգին, և ի թմբրութիւն[1] ածէ զմարդն։

Պահեցէք զձեզ ի պոռնկութենէ. զի նա մայր է ամենայն չարեաց. որոշեցուցանէ յԱստուծոյ, և մերձեցուցանէ բելիարայ։ Զի տեսի ես գրած գրոց Ենովքայ, զի որդիքն ձեր պոռնկութեամբ ապականեսցին, և ընդդէմ Ղեւեայ գնասցեն, որովք այլ ոչ կարասցեն կալ ընդդէմ Ղեւեայ, վասն զի զպատերազմն Տեառն պատերազմէին. և յաղթեսցէ բանակաց ձերոց։ Եւ եղիցին փառաւորք, և դուք սակաւաւորք ի մէջ Ղեւեայ և Յուդայի։ Եւ ոչ ոք ի ձէնջ եղիցի իշխան, որպէս և հայրն մեր Յակոբ մարգարէացաւ յօրհնութիւնսն իւրում։ Ահա ասացի ձեզ զամենայն գայթագղութիւնս որդւոց ձերոց։ Եթէ

1. Ա. Թմբրութիւն։

իմ սիրեսցէ[1] իւրաքանչիւր ոք զեղբայր իւր բարի մտօք, և ի բաց որոշեսցի ի ձէնջ ոգին նախանձու, վասն զի վայրեցուցանէ[2] նախանձ զմարմինն և ապականէ ըզ-հոգին. զի բարկութիւն և պատերազմունք են խոր-հուրդք նորա, և սրտմտութիւն զկծեցուցանէ և ի թմբրութիւն ածէ զմարդն. այլ և զքուն հատանէ և տատանումն տայ հոգւոյն[3] և դողումն մարմնոյն. զի և ի քուն նախանձ իմն չարութեան երեւոյթանայ և ճարակէ զնա. և չնչովք չարեօք յուղարկէ զոգի[4] նորա, և զարհուրեցուցանէ զմարմին նորա և խռո-վեցուցանէ[5] զմիտսն, և իբրեւ զչունչ իմն չար և թու-նաւոր ունելով ի յինքեան, այսպէս երեւի մարդ-կան։ Վասն այսորիկ Յովսէփ էր բարի և գեղեցիկ երեսօք, վասն զի ոչ ինչ տեսլեամբ բնակեալ ի նմա չարութիւն, զի զխռովութիւն սրտին[6] երեսքն երե-ւեցուցանեն։ Եւ արդ[7], որդեակք իմ, բարի արարէք զսիրտս ձեր առաջի Աստուծոյ՝ և ուղղեցէք զճանա-պարհս ձեր առաջի մարդկան։

Պահեցէք զձեզ ի պոռնկութենէ, վասն զի պոռն-կութիւն է մայր ամենայն չարեաց. որոշէ յԱստու-ծոյ և մերձեցուցանէ առ բելիար. վասն զի տեսի ի գրածս գրոյն Ենովքայ՝ զի որդիք ձեր պոռնկու-թեամբ կործանեսցին, և ընդ Ղեւեայ անիրաւես-ցին սրով, այլ ոչ կարասցեն կալ ընդդէմ Ղեւեայ. վասն զի զպատերազմ Տեառն պատերազմի և յաղ-թեսցէ բնակչաց ձերոց։ Եւ եղիցին սակաւաւորք բաժա-նեալք ի մէջ Յուդայ և Ղեւեայ. և ոչ ոք եղիցի ի ձէնջ իշխան՝ որպէս[8] և Յակոբ հայրն մեր մարգարէացաւ ի յօրհնելն իւրում։ Ահա ասացի ձեզ զամենայն զի արդարացայց ես ի մեղաց ձերոց։ Զի եթէ բառնայք

1. Սիրեսցէ չգտաք ի բնագրին յաւելաք ըստ Գ և Դ օրինակաց։
2. Գ և Դ. վայրենացուցանէ նա զմարմինն։
3. Գ և Դ. հոգւոյն։
4. Գ և Դ. զոգին։
5. Գ և Դ. խռովութեամբ զարհուրեցուցանէ զմիտսն։
6. Գ և Դ սրտային։
7. Գ և Դ. այժմ։
8. Գ և Դ. զոր օրինակ։

բառնայք զայս ի ձէնջ, որպէս զվարդ ծաղկեսցին ոսկերք իմ ի մէջ Իսրայելի՝ որպէս զշուշան ի մէջ Յակոբայ. և հոտն եղիցի որպէս զհոտ Լիբանանու[1]. և պատուեսցի որպէս մայրս սուրբս մինչեւ յաւիտեանս, և ոստք Յուդա մինչեւ ի հեռաստանէ եղիցին։ Յայնժամ կորիցէ զաւակ Քանանու, և մնացորդ ոչ եղիցի Ամաղեկայ, և ամենայն այլազգեացն։

Յայնժամ Սէթ փառաւորեսցի. զի Տէր Աստուած մեր երեւեսցի յերկրի իբրեւ զմարդ, և կեցուցանէ[2] ինքն միւսանգամ։ Յայնժամ տացին ամենայն հոգիք մոլորականք բելիարեանք ի կորուստ. և արդ[3] մի՛ թագաւորեսցեն ի վերայ չար ընչոյ[4]։ Յայնժամ յարիցուք ուրախութեամբ և օրհնեսցուք զբարձրեալն Նորա[5]. վասն զի Աստուած մարմին զգեցեալ և ընդ մարդկան կերակրեալ։

Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք, Ղեւեաւ և Յուդայիւ փրկեսջիք, զի[6] յազգէ նորա ծնցի Տէր Աստուած։ Մի՛ ամբառնայք ի վերայ երկուց եղբարցս այսոցիկ. վասն զի ի նոցանէ ծագեսցէ մեզ փրկութիւն։ Զի յարուսցէ Տէր ի Ղեւեայ[7] իբրեւ զքահանայապետ. և ի Յուդայէ[8] իբրեւ զթագաւոր, Աստուած և մարդ. և ապրեցուսցէ զամենայն մարդ և զազինս մարդկան։ Վասն այնորիկ ես պատուիրեմ ձեզ՝ զի և դուք պատուիրեսջիք որդւոց ձերոց. զի և նոքա պատուիրեսցեն որդւոց իւրեանց՝ զի պահեսցեն զպատուիրանս զայս յազգս իւրեանց։ Եւ իբրեւ[9] կատարեաց

1. Ա. Լիբանանի։
2. Ա. կեցուցանի։
3. յԱ. չիք արդ։
4. Ա. ընչոց։
5. յԱ. չիք Նորա։
6. յԱ. պակասէ տող մի։
7. Ա. Տէր Ղևի.
8. Ա. Յուդայի։
9. յԱ չիք իբրև։

ի ձէնջ զնախանձ և զամենայն խստապարանոցութիւն, իբրև զվարդ ծաղկեցին ոսկերք իմ ի մէջ Իսրայելի, և որպէս շուշան մարմինք իմ ի մէջ Յակոբայ, և բուրեացէ[1] հոտ իմ իբրև զհոտ Լիբանոսի, և բազմացին իբրև զմայրս սուրբս առ յինէն մինչև յաւիտեանս, և ոստք նորա մինչև ի հեռաստան եղիցին: Յայնժամ կորիցէ զաւակն Քանանու, և մնացորդք ոչ եղիցին Ամաղեկայ, և ամենայն Քետացիք սատակեսցին, և սատակեսցի երկիր Քամայ՝ և ամենայն ժողովուրդն կորիցէ. և յայնժամ դադարեսցէ ամենայն երկիր ի խռովութենէ որ[2] ի ներքոյ երկնից ի պատերազմաց:

Եւ յայնժամ Սէմ փառաւորեսցի, զի Տէր Աստուած մեծն Իսրայելի փառաւորեսցի յերկրի, և երևեսցի որպէս զմարդ. յայնմ[3] ժամանակի տացին ամենայն մոլորական ոգիքն ի կոխումն, և մարդիկ թագաւորեսցեն ամենայն չար շնչոյ. յայնժամ յարիցուք ուրախութեամբ և օրհնեսցուք զբարձրեալն ի սքանչելեաց նորա. վասն զի Աստուած մարմին զգեցեալ և ընդ մարդկան շրջեալ և կերակրեալ՝ կեցոյց զմարդիկ:

Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք ինձ՝[4] զի Ղևեաւ և Յուդայիւ փրկեսցուք, և մի համբառնայք ի վերայ երկուց եղբարցս այսոցիկ. վասն զի ի սոցանէ ծագեսցի մեզ փրկութիւն. զի յարիցէ Տէր ի Ղևեայ իբրև զքահանայապետ և ի Յուդայէ որպէս[5] թագաւոր, և է նա[6] Աստուած, և նա ապրեցուսցէ զամենայն ազգս և զազինս մարդկան: Վասն այսորիկ ես պատուիրեմ ձեզ՝ և դուք պատուիրեցէք[7] որդւոց ձերոց զի պահեսցեն զպատուիրանս յազգս իւրեանց: Եւ կատարեաց Շմաւոն զպատուէր[8] որդւոց իւրոց և ննջեաց ընդ հարս իւր հարիւր և քսան

1. ՅԳ և ի Դ. չիք բուրեացէ
2. Գ և Դ. և ամենայն որ ընդ ի ներքոյ:
3. Գ և Դ. յայնժամ:
4. Գ և Դ. լուարուք, և զի:
5. Գ և Դ. իբրև:
6. ՅԳ և ի Դ. չիք է նա:
7. Գ և Դ. պատուիրեսջիք:
8. Գ և Դ. զպատուիրանս:

Շմաւոն զպատուէրս [1] զայս որդւոց իւրոց, և ննջեաց ընդ հարս իւր ի հարիւր և ի քսան և հինգ ամի կենաց իւրոց, և եդին զնա ի տապանի յանփուտ փայտից [2], զի հանցեն զնա ի Քեբրոն: Եւ հանին զնա ի ծածուկ ի պատերազմին Եգիպտացւոցն. վասն զի զոսկերսն Յովսեփայ պահէին Եգիպտացիքն ի բնակարանս թագաւորականս: Զի ասէին Եգիպտացիքն և կախարդք նոցա, եթէ յելանել ոսկերացն Յովսեփու յԵգիպտոսէ՝ լինի ամենայն երկիրս խաւար և մրրիկ և մութն, մինչև ճրագօք եւս անգամ ոչ ոք ճանաչիցէ զեղբայր իւր: Եւ լացին որդիքն Շմաւոնի զհայրն իւրեանց. և էին յԵգիպտոս մինչև յօր ելից իւրեանց ի ձեռն Մովսիսի:

1. Ա. զպատուէրանս: 2. Ա. փայտի, զի հանցեն զոսկերս նորա:



և հինգ ամաց [1]. և եդին զնա ի փայտեայ տապանի՝ զի հանցեն զոսկերս նորա ի Քեբրոն ։ Եւ հանին զնա ի ծածուկ ի պատերազմէ Եգիպտացւոյն. վասն զի զոսկերսն Յովսեփայ պահէին ի չտեմարանս Թագաւորացն ։ Զի ասէին դիւթքն [2] և կախարդքն՝ եթէ յելանելն ոսկերացն Յովսեփայ յԵգիպտոսէ՝ եղիցի ամենայն Եգիպտոս [3] խաւար և մրրիկ, և հարուածք մեծամեծք յոյժ ամենայն Եգիպտոսի, մինչեւ ճրագօք եւս անգամ տեսանել ոչ կարասցեն իւրաքանչիւր ոք զեղբայր իւր ։ Եւ լացին [4] եղբարքն Շմաւոնի և որդիքն զհայրն իւրեանց. և էին յԵգիպտոս մինչեւ յաւուրս ելիցն իւրեանց ի ձեռն Մովսիսի ։

1. Գ և Դ. ամ չինաց խորոց ։
2. Եդաք ըստ Գ և Դ. օրինակաց դիւթքն՝ զի Բն. ունէր դեւքն ։
3. Գ և Դ. Երկիրս ։
4. Գ և Դ. լոյսն ։



# ԿՏԱԿ ՂԵՒԵԱՑ[1]

### ԸՍՏ Ա ԵՒ Բ. ՕՐԻՆԱԿԱՑ

Հրաման պատասխանոյ[2] բանիցն Ղեւեայ, զոր ետ որդւոց իւրոց՝ յառաջ քան զվախճանելն իւր. վասն ամենայնի զինչ և գործեցեն և որ ինչ և դիպեցի նոցա: Մինչեւ[3] էր ինքն. երեւեցաւ նմա տեսիլ եթէ հանդերձեալ ես[4] մեռանել: Կոչեաց առ ինքն զորդիս իւր. և իբրեւ ժողովեցան առ նա, ասէ ցնոսա. Ես Ղեւի ուրախութեամբ ծնեալ եղէ ի Խառան, և եկի ընդ հօր իմում ի Սիկիմ. և էի ես մանուկ քանամեայ՝ յորժամ արարաք վրէժխնդրութիւն ես և եղբայրն իմ Շմաւոն ընդ Ամուրհացիսն, վասն քեռն մերոյ Դինայի: Արդ[5] մինչ դեռ էի ես ի հօտին մերոյ, և տեսի[6] ես զամենայն մարդիկ՝ զի կորուսեալ

1. Ա և Բ. Կտակ Ղևեայ վասն քահանայութեան:
2. Բ. պատասխանոյ:
3. Բ. և մինչև:
4. Բ. Ես դու:
5. յԲ. աստի մինչև աղբերցոյս պակասէ:
6. Բ. տեսանէի:

# ԿՏԱԿ ՂԵՒԵԱՅ[1]

*ԸՍՏ ԲՆ. ԵՒ ԸՍՏ Գ. ԵՒ Դ. ՕՐԻՆԱԿԱՑ*

Հրաման պատասխանոյ բանիցն[2] Ղեւեայ՝ յառաջ քան զվախճանելն իւր, ըստ ամենայնի զոր ինչ արասցեն և որ ինչ դիպեսցի նոցա մինչև յօրն դատաստանի: Վասն զի[3] երեւեցաւ նմա, եթէ հանդերձեալ է մեռանել, վասն[4] որոյ ասաց ժողովել եղբարց և որդւոց իւրոց: Եւ եղև իբրև ժողովեցան՝ ասէ ցնոսա. Ես Ղեւի, ուրախութեամբ յղացեալ և ծնեալ եղէ ի Խառան. և յետ[5] ութ ամաց եկի ընդ հօր իմում ի Սիկիմ. և[6] մինչ դեռ էաք ի Սիկիմ. և էի ես մանուկ ամաց իբրև քսանից, յորժամ արարաք վրէժխնդրութիւն ես և Շմաւոն եղբայր իմ ընդ Ամուրհացիսն՝ վասն Դինայի քեռ մերոյ: Արդ յորժամ

1. Բն. Կտակ Ղեւեայ որդւոյն Յակոբայ, վասն քահանայութեան և ամբարտաւանութեան.
Գ և Դ. Կտակ Ղեւեայ վասն քահանայութեան և ամբարտաւանութեան:
2. Գ և Դ. յաւելուն զոր ինչ ետ որդւոց իւրոց:
3. Գ և Դ. յաւելուն չինդանի էր քնեալ՝ յորժամ հովուեաց զհօտսն ա-
րածեալ, և երեւեցաւ:
4. յԳ և ի Դ. պակասէ մինչև Եւ եղև:
5. Գ և Դ. չինի այսորիկ ինէ:
6. յԳ և ի Դ. չիք մինչ դեռ էաք ի Սիկիմ:

էին ճանապարհօք իւրեանց. և ես կայի յաղօթս առ Աստուած, և խնդրեցի ի Նմանէ զի ապրեցայց։ Ցայնժամ անկաւ ի վերայ իմ քուն, և տեսի[1] լեառն մի բարձր, և ես կայի ի վերայ լերինն, և ահա բացան ինձ երկինք՝ եկն առ իս հրեշտակ Աստուծոյ, և ասէ ցիս[2]. Դեւի եկ մուտ այսր. և մտեալ իմ յառաջին յերկինքն, և անցոյց տարաւ զիս մինչեւ յերկրորդ երկինսն[3]. և տեսի անդ ջուրս բազումս՝ զի կախեալ կային. և ասեմ ցնա. Զի՛նչ է այս տէր, և ասէ ցիս. Թէ անցես ընդ դա՝ կեցցես յանդիման Տեառն, և եղիցիս պաշտօնեայ Նորա՝ և զհանդերձեալ խորհուրդն Նորա յայտնեսցես մարդկան, և ի ձեռն քո և Յուդայի[4] երեւեսցի Տէր ի մէջ մարդկան։

Արդ լուր դու վասն տեսլեանդ որ երեւեցաւ քեզ. Առաջին երկինքն վասն այնորիկ որ խորհէիր ի քեզ, զի տեսանէիր զանիրաւութեան գործս մարդկան. իսկ երկրորդն ունի հուր և ձիւն և սառն յօր հրամանացն պատրաստեալ[5], իսկ սուրբն սրբոց ի վեր

1. Բ. տեսանէի։
2. ՅԲ. չէք ցես։
3. Բ. երկինքն։
4. Բ. յաւելու յորդին ցեր։
5. Բ. պատրաստեալ է։

Հովուէի ես յԱբէլմայում, հոգի իմաստութեան Տեառն եկն ի վերայ իմ. և տեսանէի զամենայն մարդիկ կորուսեալ[1] ճանապարհաց իւրեանց, և որպէս թէ պարիսպ շինեալ ընդ ինքեանս անիրաւութիւն, և բարձր[2] յաշտարակի նստեալ էին յանիրաւութեան։ Եւ տրտմեցայ[3] ես վասն որդւոց մարդկան, և յաղօթս կայի առ Տէր՝ զի ապրեցուսցէ զնոսա։ Յայնժամ անկաւ ի վերայ իմ քուն, և տեսի լեառն մի բարձր, լեառն[4] վահանաց, որ է յԱբէլմայում։ Եւ ահա բացան երկինք, և հրեշտակ Տեառն ասաց ցիս. Ղեւի, մուտ այսր[5]. և մտեալ իմ յառաջին երկնից՝ յերկրորդ երկինն, և տեսի անդ ջուր, զի կախեալ կայր ի մէջ երկոցունցն։ Եւ ես դարձեալ տեսի երկին լուսաւորագոյն՝ և զուարթագոյն քան զերկոսեանն. վասն զի բարձրութիւն իսկ էր ի նմա անբաւ։ Եւ ասեմ ցհրեշտակն. Ընդէ՞ր իսկ է այս այսպէս։ Եւ ասէ ցիս հրեշտակն. Մի՛ ինչ զարմանայր ընդ այդ, զի այլ եւս չորս երկինս տեսանես՝ զուարթագոյնս քան զսոսա և անհասս։ Զի եթէ ելեսցես անդր, մերձ ի Տէր կայցես, և պաշտօնեայ եղիցիս Տեառն[6], և զխորհուրդս նորա պատմեսցես մարդկան, և վասն փրկութեան Իսրայէլի քարոզեսցես։ Եւ գիտա[7] զի ի ձեռն քո և Յուդայի երեւեսցի Տէր ի մէջ մարդկան, և կեանք քո ի բաժին Տեառն, և նա եղիցի քեզ յագարակս այգեաց և պտղաբերաց, և ի գանձս[8] ոսկւոյ և արծաթոյ։

Արդ լուր վասն եւթն երկնիցն. Որ խոնարհագոյնն է՝ վասն այսորիկ է տխուր, զի տեսանէ զանիրաւութիւն մարդկան։ Իսկ երկրորդն ունի հուր և ձիւն և սառն[9]. յօր հրամանաց Տեառն՝ յարդար դատաստանին Աստուծոյ. և ի նմանէ են ամենայն շունչք՝ առ ընթացս

1. Գ և Դ. զի խորտակեալ էին։
2. Գ և Դ. որպէս աշխարհին նըստէր անիրաւութիւն։
3. Գ և Դ. դարձեալ էր վասն։
4. ՅԳ և ԻԴ չիք լեառն վահանաց։
5. Գ և Դ. չունին այսր։
6. ՅԳ և ԻԴ. չիք Տեառն։
7. ՅԳ և ԻԴ. չիք և գիրս։
8. ՅԳ և ԻԴ. չիք ի գանձս։
9. Գ և Դ. յաւելուն պատրաստ։

քան զամենայն սրբութիւնս է։ Իսկ զորք հրեշտակացն են սպասաւորք և փառաբանիչք Տեառն․ որք և պատգամաւորք իսկ են աստուածութեան։ Արդ յորժամ հայի Տէր յարարածս ամենայն, շարժին երկինք և երկիր և անդունդք․ իսկ որդիք մարդկան զայս ամենայն ոչ զգան․ արդ այժմ ծանիջիք, զի արասցէ Տէր վրէժխնդրութիւն որդւոց մարդկան, զի վէմք պատառեսցին, և արեգակն խաւարեսցի, և ջուրք ցամաքեսցին, և հուրն սպառնասցի, և ամենայն արարածք սատակեսցին․ և աներեւոյթ շունչք հալածեսցին, և դժոխք գերեսցի չարչարանօք բարձրելոյն։ Եւ ասացեալ զայս դարձեալ, ասէ ցիս․

Ահաւասիկ լուաւ բարձրեալն աղօթից քոց, և որոշեաց զքեզ յանօրէնութենէ, զի եղիցիս[1] ծառայ նմա, և սպասաւոր հաւատարիմ առաջի երեսաց նորա․ լոյս գիտութեան Տեառն լուսաւորէ զքեզ․ որպէս զարեգակն ծագեսցիս ամենայն զաւակին Իսրայելի։

1․ Բ․ [illegible] նմա ծառայ։

ի վրէժխնդրութիւն անօրինացն։ Եւ յերրորդին՝ են զօրութիւնք ժամանակաց, և կարգեալ են յարդար դատաստանին՝ առնել վրէժխնդրութիւն արդարոցն մոլորութեան՝ ի բեւլխարայ։ Իսկ չորրորդին, որ եթէ են ի վրանս Նորա սուրբք Աստուծոյ. քանզի որ եթէ ի վերն է քան զամենայն, հանգչին փառքն[1] Աստուծոյ ի սուրբն սրբոց, ի վեր քան զամենայն սրբութիւն։ Եւ զկնի Նորա հրեշտակք են՝ երեսաց Նորա պաշտօնեայք, քաւարանք առաջի Տեառն ի վերայ[2] գիտութեան արդարոց. և մատուցանեն հոտ անուշից Տեառն՝ բանական և առանց արեան պատարագ։ Իսկ ներքնումն են հրեշտակք, որ բերեն պատասխանիս հրեշտակացն՝ յերեսաց Տեառն։ Եւ զկնի սոցա՝ են աթոռք և իշխանութիւնք, յորում հանապազ օրհնութիւն մատուցանեն Աստուծոյ։ Արդ յորժամ հայեսցի ի մեզ Տէր, ամենեքեան մեք շարժիմք. երկինք և երկիր և անդունդք յերեսաց մեծութեան Նորա. իսկ որդիք մարդկան զայս ամենայն ոչ զգան. վասն[3] այնորիկ մեղանչեն և[4] զբարձրեալն բարկացուցանեն։ Արդ այժմ ծաներուք, զի արասցէ Տէր դատաստան ի վերայ որդւոց մարդկան։ Զի վէմք պատառեսցին, և արեգակն խաւարեսցի, և ջուրք ցամաքեսցին, և հուր ապիտակասցի, և ամենայն արարածք տատանեսցին. և դժոխք գերեսցին չարչարանօք բարձրելոյն և աներեւոյթք շունչքն հալեսցին[5]։ Իսկ մարդիկք անհաւատք՝ կայցեն ի նմին անիրաւութեան. վասն այսորիկ և տանջանօք դատեսցին։

Ահաւասիկ լուաւ բարձրեալն աղօթից քոց և ոբոշեաց զքեզ յանիրաւութենէ. զի եղիցիս Նմա ի ծառայ և յորդի և ի սպասաւոր երեսաց Նորա. և լոյս գիտութեան Նորա լուսաւորեացէ զքեզ՝ լուսաւոր[6] Յակոբայ. և որպէս զարեգակն ծագեսցիս յամենայն

1. Գ և Դ. մեծ փառքն։
2. Գ և Դ. յաւելուան աթոռոյն։
3. Գ և Դ. յաղագս։
4. Գ և Դ. չունին և զբարձրեալն բարկացուցանեն։
5. Գ և Դ. հալածեսցին։
6. ԺԳ. չիք լուսաւոր։

Եւ եղիցի ի վերջին աւուրս՝ առաքեսցէ Աստուած զոր-դին իւր փրկել զաշխարհս. և որդիք ձեր տացեն [1] ձեռս ի նա և խաչեսցեն զնա: Վասն այնորիկ տուան քեզ խորհուրդք և գիտութիւնք, զի խրատեսցես զորդիս քո ոչ մեղանչել ի նա. զի որք օրհնեն զնա օրհնեալ եղի-ցին. և որք անիծանեն՝ կորուսցեն [2] զանձինս իւրեանց:

Եւ ասացեալ զայս հրեշտակին [3], եբաց ինձ զդրունս երկնից, և տեսի ես զտաճարն սուրբ, և զբարձրեալն յաթոռ փառաց: Եւ ասէ ցիս. Ղեւի, քեզ ետու զօրհ-նութիւն քահանայութեան՝ մինչեւ եկից ես և երեւե-ցայց ի մէջ Իսրայելի: Եւ յետ այսորիկ ած զիս հրեշտակ Տեառն յերկիր, և ետ ինձ սուսեր և վահան, և ասէ ցիս. Երթ և արա վրէժխնդրութիւն Եգիպ-տացւոցն [4], վասն քեռն [5] քո՝ և ես եղէց ընդ քեզ, և ես կոտորեցից: Եւ ասեմ. Աղաչեմ զքեզ, տէր, ասա ինձ զանուն քո. զի կարդացից [6] առ քեզ յա-ւուր նեղութեան իմոյ: Եւ [7] ասէ. Ես եմ հրեշտակ պահապան գնդին Իսրայելի, զի մի սատակեսցին մին-չեւ ցվախճան. և զարթուցեալ ի քնոյն օրհնեցի զբարձ-րեալն:

Եւ մինչդեռ գայի ես առ հայրն իմ. գտի ես վա-հան [8] պղնձի, վասն այնորիկ կոչեցի զանուն լերին

1. Բ. արկցեն:
2. Ա. կորուսցէ զանձն իւր:
3. Ա. ամենայն սուրբք դնէ հրեշ-տակ.
4. Ա. զերաթէ ամենայն սուրբք փոխանակ Եգիպտացւոց դնէ Եքէմացւոց և մեք ըստ Բ. ե-դաք Եքէմացւոց:
5. Բ. քեռերն:
6. Բ. կարդասցիմ զանուամբ քո.
7. Բ. և նա:
8. Բ. յաւելու որ է. ասպար:

զաւակն Իսրայէլի, և տացի քեզ օրհնութիւն և ամենայն զաւակի քում, մինչև այց արասցէ Տէր ամենայն հեթանոսաց՝ գթութեամբ որդւոյ իւրոյ՝ յաւիտենից ժամանակաց։ Բայց որդիքն քո արկցեն զձեռս իւրեանց ի նա, և խաչեսցեն զնա. վասն այսորիկ տուաւ քեզ խորհուրդ և գիտութիւն՝ զի խրատեսցես զորդիս[1] վասն նորա. վասն զի՝ որ օրհնէ զնա՝ օրհնեալ եղիցի, և որ անիծանէ զնա՝ կորուսանէ զանձըն իւր։

Եւ եբաց ինձ հրեշտակն զդուռն երկնից, և տեսի զտաճարն սուրբ, և զբարձրեալն յաթոռ փառաց. և ասէր ցիս. Ղևի, քեզ տուեալ է զօրութիւն քահանայութեան, մինչև եկեալ բնակեսցայց ի մէջ Իսրայէլի։ Յայնժամ հրեշտակն ած զիս յերկիր, և ետ ինձ վահան և սուսեր, և ասէ ցիս. Արա վրէժխընդրութիւն ընդ Սիկիմացիսն՝ վասն Դինայի քեռ քոյ. և ես եղէց ընդ քեզ, վասն զի Տէր առաքեաց զիս. և կատարեցիս ի ժամանակին յայնմիկ ի մէջ որդւոցն Եմովրայ, զոր օրինակ գրեալ է ի տախտակսն երկնայինս։ Եւ ես ասեմ ցնա. Աղաչեմ զքեզ, տէր, ասա ինձ զանուն քո, և ես կարդացից առ քեզ յաւուր նեղութեան իմոյ։ Եւ ասաց. Ես եմ պահապան ազգին Իսրայելի, զի մի՛ սատակեսցին մինչ ի վախճան. վասն զի[2] չար շունչք ընդ նոսա կռուին։ Եւ զկնի այսորիկ զարթուցեալ ի քնոյն, օրհնեցի զբարձրեալն և զհրեշտակ իւր զպահապան Իսրայելի ազգին, և զամենայն դասս արդարոց։

Եւ մինչ դեռ գայի ես առ հայր իմ՝ գտի վահան մի պղնձի՝ վասն որոյ և լերինն իսկ վահան[3] անուն կո-

1. Գ և Դ զորդիս քո։
2. Գ և Դ. յաւելուն ամենայն։
3. Գ և Դ. վահան անուն կոչիր

այնորիկ վահան, որ է մերձ ի Գեբաղ յաջոյ[1] կողմն Աբինայ. և պահեցի զբանս զայսոսիկ ի սրտի իմում։ Եւ ես խորհեցայ ընդ հօր իմոյ[2] և ընդ Ռուբենի եղբօր իմոյ, զի ասասցեն ցորդիսն Եմովրայ՝ զի թլփատեսցեն զմարմինս իւրեանց. և նախանձեցայ ես վասն նախատանացն քեռն[3] իմոյ, և կոտորեցի զՍիկիմացիսն յառաջագոյն, և Շմաւոն[4] զԱմովրհացիսն։ Եւ զկնի այսորիկ՝ եկին[5] եղբարքն մեր և հարին զքաղաքն բերանով սրոյ։ Եւ լուեալ հօրն մերում տրտմեցաւ, վասն զի ընկալան յառաջագոյն զթլփատութիւն, և յետոյ վախճանեցան, վասն որոյ և յօրհնութիւնս մեր այլաբար՝ և մեք եղաք արդար. և զի արտաքոյ կամաց նորա զայն գործեցաք[6]։

Եւ ես հիւանդացայ յաւուրսն յայնոսիկ, և էի տեսեալ զվճիռ բարկութեան Աստուծոյ ի վերայ Սիկիմացւոցն. զի կամէին նոքա և ընդ Սառա այնպէս առնել յօտարութեանն. և զԴեմբողայ զընդածին նորա տանջեցին. զի այնպէս առնէին ընդ ամենայն օտարականսն, յափշտակէին զկանայս նոցա։ Եւ ասեմ ցհայրն իմ. Մի՛ բարկանար ինձ տէր իմ[7] Յակոբ, զի քեւ արհամարհեաց Տէր զքաղաքացիսն. և եղիցի յայսմ հետէ Սիկիմ կոչեցեալ քաղաք անմտաց՝ զի անմտութիւն գործեցին յԻսրայէ՛ղ[8]։

Եւ գնացեալ անտի եկաք ի Բեթէլ. և անդ դարձեալ երեւեցաւ ինձ տեսիլ որպէս զառաջին, յետ լինելոյ մեր

1. Բ. յաջակողմն։
2. Բ. իմում։
3. Բ. քեռորդին։
4. Բ. յաւելու Նոփորեայց։
5. Բ. եկեալ։
6. Բ. գործէաք։
7. չԲ. տէր իմ։
8. Բ. յիւրայեղէ։

չիւր. որ է մերձ ի Գաբաղ յաջակողմն Աբիմայ[1]: Եւ պահէի զբանս զայսոսիկ ի սրտի իմում, և ասացի ընդ Ռուբենի եղբօր իմոյ զի ասասցեն ցորդիսն Եմովրայ և թլփատեսցեն զնոսա. և զի նախանձեցայ ես նախանձ՝ զոր արարին ի մէջ Իսրայելի, և ես կոտորեցի զՍիկիմացիսն յառաջագոյն և Շմաւոն զԱմուրհացիսն: Եւ զկնի այսորիկ եկեալ եղբարցն[2] մերոց՝ հարին զքաղաքն ի բերան սրոյ. և լուաւ հայր մեր և բարկացաւ և տրտմեցաւ յոյժ. վասն զի ընկալան յառաջագոյն զթլփատութիւն և յետ այսորիկ վախճանեցան, վասն այսորիկ և օրհնութիւնն այլազգաբար արար: Մեղաք արդարեւ՝ զի արտաքոյ կամաց նորա զայս գործեցաք:

Եւ հիւանդացայ ես յաւուր յայնմիկ: Այլ իմ տեսեալ զի վճիռ[3] չարի էր ի վերայ նոցա յԱստուծոյ ի Սիկիմայեցւոցն, վասն զի կամէին և զՍառայ այնպէս առնել յօտարութեանն. և չարչարեցին զհօտն մինչ դեռ էին ի յղութեանն. և զԱմբղայէմ[4] և զընդոծինս նորա յոյժ տանջեցին. վասն զի այսպէս առնէին ընդ ամենայն օտարս, և զօրութեամբ յափըշտակէին զկանայս նոցա՝ և զնոսա հալածականս առնէին, և նոյն[5] ժամանեաց ի վերայ նոցա մինչեւ ի վախճան: Եւ ասացի ցհայր իմ. Մի՛ բարկանար տէր իմ Յակոբ, զի քեւ արհամարհեսցէ Տէր զՔանանացիսն, և տացէ Տէր զերկիրն նոցա քեզ, և զաւակի քում զկնի քո. և եղիցի յայսմ հետէ Սիկիմ կոչեցեալ քաղաք անմտաց. զի զոր օրինակ խաբեացէ ոք զանիմաստ՝ այսպէս խաբեցաք մեք զնոսա: Վասն զի անմտութիւն գործեցին ի մէջ Իսրայելի և պղծեցին զքոյրն իմ:

Եւ հանդերձեալ եկաք ի Բեթէլ՝ և անդ դարձեալ երեւեցաւ ինձ տեսիլ իբրեւ զառաջինն. յետ լինելոյն

1. Յոյնն Աբիլայ:
2. Գ և Դ. եղբարցն:
3. Գ և Դ. վճիռ չարի:
4. Յոյնն Յեբլա:
5. յԳ և ի Դ չիք. նոյն:

անդ զաւուրս եւթանասուն։ Եւ տեսի անդ արս եւթն ի հանդերձս սպիտակս, որ ասէին ցիս. Ցարուցեալ զգեցիր զպատմուճան քահանայութեան, և զպսակ արդարութեան դիր ի գլուխ քո, և զպատուիրան գիտութեան, և զբան ճշմարտութեան և զթթղունս[1] հաւատոց, և զզարդ նշանին ի թիկունս քո, և զե- փուտն մարգարէութեան, և զիւրաքանչիւր ոք ի նո- ցանէն առեալ եդեր ի վերայ իմ, և ասէ[2] ցիս. Լեր քահանայ Աստուծոյ, դու և զաւակ քո՝ մինչեւ յա- ւիտեան։ Առաջինն՝ էօծ զիս իւղով սրբով, և ետ ինձ գաւազան դատաստանի։ Երկրորդն՝ լուաց զիս ջրով սրբով, և ջամբեցոյց ինձ հաց և գինի սուրբ. և զգե- ցոյց[3] ինձ պատմուճան գեղեցիկ և փառաւոր։ Երրորդն՝ բեհեզեայ արկ զինեւ։ Եւ չորրորդն՝ էած գօտի ընդ մէջ իմ՝ ի նմանութիւն ծիրանոյ։ Իսկ հինգերորդն՝ ոստ ձիթենոյ պարարտութեան ետ ինձ։ Եւ վեցե- րորդն՝ եդ զձեռն իմ խնկով[4] քահանայանալ ա- ռաջի Տեառն։ Եւ ասէ ցիս. Ղեւի, յերիս առաջս բաժանեցից զզաւակ քո, և նշան փառաց գալստեան Տեառն, և որ հաւատայցեն[5] յառաջագոյն՝ նոցա ե- ղիցի ժառանգութիւն մեծ. երկրորդն եղիցի քահա- նայ մեծ, երրորդն կոչեսցի անուն նորա. զի թագա- ւոր ի Յուդայէ ելցէ՝ և արասցէ զթութիւնս ամենայն ազգաց հեթանոսաց. իսկ գալուստ նորա անճառելի է որպէս զբարձրելոյ. և ամենայն ցանկալիք Իսրա- յելի՝ քո եղիցին[6] և զաւակի քո, և ի սեղանոյ Տեառն դարմանեսցի զաւակ քո, և ի նոցանէն եղիցին քա- հանայապետք, և ի բերանոյ նոցա ելցէ պահպա- նութիւն սրբութեանց Տեառն։ Եւ զարթուցեալ ի քնոյ յանդիմանեցայ[7]. զի էր սա տեսիլ՝ նմանեալ առա-

1. Բ. զթթղանս:
2. Բ. ասէին:
3. Բ. զգենուլ բառն բազում ու- րեք գրէ զզենուլ:
4. Բ. յաճախ է փոխանակ կէ ի վար արկանէ, որպէս խնկով. զայլմաէզլութիւն, և այլն:
5. Բ. հաւատացեն:
6. Բ. եղիցի:
7. Բ. անդ իմացայ . . . այս . տեսիլս:

մեր անդ փաւուրս վաթսուն. և տեսի անդ արս ութն ի հանդերձս սպիտակս՝ որք ասէին ցիս. Յարուցեալ զգեցիր զպատմուճան քահանայութեան, և դիր[1] զպըսակն արդարութեան։ Եւ իւրաքանչիւր ոք ի նոցանէ առեալ եդին ի վերայ իմ, և ասեն. յայսմ հետէ լեր քահանայ Տեառն դու և զաւակք քո՝ մինչև յաւիտեան։ Եւ առաջինն էօծ զիս իւղով սրբով, և ետ ինձ գաւազան դատաստանի. իսկ երկրորդն լուաց զիս յատակ ջրով, և ջամբեցոյց ինձ հաց և գինի սուրբ, և զգեցոյց ինձ պատմուճան գեղեցիկ և փառաւոր. և երրորդն բեհեզ արկոյց զինև ի նմանութիւն եփուդի. և չորրորդն գօտի ած ընդ մէջ իմ ի նմանութիւն ծիրանոյ. իսկ[2] հինգերորդն ի նմանութիւն ձիթենայ ի պարարտութենէ[3] ետ ինձ, և լցին զձեռս իմ խնկով. և վեցերորդն՝[4] թագ քահանայութեան եդ ի գլուխ իմ. և եւթներորդն ելից զձեռս իմ խնկովն զի քահանայացայց ես առաջի Տեառն։ Եւ ասէ ցիս. Ղևի. Յերիս առաջս բաժանեսցի զաւակ քո, և եղիցիս[5] ի նշան գալստեան փառաց Տեառն. զի[6] Տէր հաւատաց յառաջագոյն զժառանգութիւն[7] իւր ի քեզ. և քան զքեզ ոչ ոք եղիցի մեծագոյն. իսկ երկրորդն եղիցի քահանայութիւն, և երրորդն եղիցի անուն նորա։ Զի թագաւոր ի Յուդայէ ելցէ՝ և արասցէ քահանայութիւն նոր[8] ըստ ձևւոյ ազգաց յամենայն հեթանոսս։ Իսկ գալուստ նորա անճառելի է որպէս[9] մարգարէ բարձրելոյ ի զաւակէն Աբրահամու հօր մերոյ. ամենայն ցանկալի յիսրայելէ եղիցի, և ի զաւակէ քումմէ, և կերիցեք[10] զամենայն գեղեցկութիւն վայելչութեան. և ի սեղանոյ Տեառն կերակրեսցի զաւակն քո։ Եւ ի նոցանէն եղիցին քահանայապետք, դատա-

1. ՅԳ. չիք և դիր։
2. Գ և Դ. և։
3. Գ և Դ. պարարտութեան։
4. Գ և Դ. վեցերորդն և զեօթներորդն ի մի ձուլեալ են։
5. ՅԳ և ի Դ. չիք և եղիցիս։
6. Գ և Դ. և։
7. Գ և Դ. յաւելուածոյս եղիցի ծծ, և քան զառ ոչ ոք եղիցի։
8. Գ և Դ. նորա։
9. Գ և Դ. իբրև։
10. Գ և Դ. կերիցէ։

ջին տեսլեանն. և թաքուցի զսա ի սրտի իմում, և ոչ պատմեցի ումեք մինչեւ ցայսօր:

Եւ զհետ երկուց աւուրց, ելաք ես և Յուդա առ Իսահակ հայր հօր մերոյ, և օրհնեաց զիս ըստ ամենայն բանից տեսլեան իմոյ զոր տեսի, և ոչ կամեցաւ գալ նա. և ետես հայրն իմ ի տեսլեանն վասն իմ, զի եղէց ես նոցա քահանայ առաջի Աստուծոյ: Եւ յարեաւ ընդ առաւօտն՝ և մատոյց տասանորդս ի ձեռս իմ. և եկաք[1] ի Քեբրոն զի բնակեսցուք անդր. և Իսահակ կոչէր զիս ստէպ՝ և յիշեցուցանէր ինձ զօրէնսն Տեառն, զոր օրինակ ուսուցանէր[2] ինձ հրեշտակն Տեառն. և ուսուցանէր ինձ զօրէնս քահանայականս, ողջակիզաց և զոհից. և ասէր ցիս. Որդեակ զգոյշ լեր ի հոգւոյ[3] պոռնկութենէ, վասն զի խաբէ զքեզ, և պատրաստ է պղծել զօրէնս քո. առ դու քեզ կին մի[4] մինչդեռ ես մանուկ, զի մի ինչ ունիցիս բիծ ի քեզ. և մի պղծութիւն և մի լիցի կին յազգէ օտարէ և մի ի հեթանոսաց: Եւ յառաջ քան զմտանելդ[5] ի սրբութիւն՝ լուացիր և ողջակիզօք սըրբեսջիր:

Արդ այժմ որդեակք պահեցէք զոր այժմ պատուիրեմ ձեզ զոր ինչ լուայ ի հարց իմոց. անպարտ եմ ես յայսմ հետէ յամենայն անօրէնութեանց ձերոց զոր ինչ առնիցէք[6] ընդ փրկչին աշխարհաց. դուք ամ-

1. Ուղղեցաւ ըստ Բ. զի Ա. ունէր ոչ[illegible]:
2 Բ. ուսոյց:
3. Բ. ի հոգւոյ:
4. յԲ. չիք մի:
5. Բ. զմտանելն:
6. Ա. առնէ:

ւորք և դպիրք, զի ի բերանոյ նոցա պահեսցի սրբութիւնն։ Եւ զարթուցեալ զարմացայ՝ զի էր այս տեսիլն նման առաջնոյն. և ես թաքուցի ի սրտի իմում. և ոչ պատմեցի ամենայն մարդոյ որ ի վերայ երկրի։

Եւ զկնի երկու աւուրց ելաք ես և Յուդայ առ Իսահակ[1] հայրն մեր. և օրհնեաց զիս հայր հօր իմոյ՝ ըստ ամենայն բանից իմոց զոր տեսի. և ոչ կամեցաւ գալ ընդ մեզ ի Բեթէլ։ Եւ ետես հայր իմ Յակոբ ի տեսլեան վասն իմ՝ զի եղէց նոցա քահանայ առաջի Տեառն. և յարեաւ ընդ առաւօտն,. և մատոյց տասանորդս ի ձեռս իմ, և եկաք ի Քեբրոն զի բնակեսցուք անդ։ Եւ Իսահակ կոչէր զիս ստէպ ստէպ՝ և յիշեցուցանէր ինձ զօրէնս Տեառն. և ցուցանէր ինձ օրէնս քահանայականս՝ ողջակիզաց, զոհից և պատարագաց կամաւորաց և փրկութեան։ Եւ[2] հանապազ այսպէս խրատէր և ուսուցանէր[3], և ասէր ցիս. Հայեաց որդեակ յոգին պոռնկութեան, վասն զի նա խաբէ զքեզ և պատրաստ է պղծել զաւանդ քո. արդ առ քեզ կին մինչ դեռ մանուկ ես՝ զի մի ունիցիս բիծ ի քեզ և պղծութիւն, և մի իցէ յազգէ օտարոտւոյ կամ ի հեթանոսաց։ Եւ յառաջագոյն քան ի սրբութիւնսն մտանելն՝ լուացիր, և յողջակիզելդ՝ սրբեաց. և յորժամ կատարեսցես զզոհսն, սրբեա զանձն քո ի յերկոտասան ծառոցն, և զտերեւսն յամենայն ժամ ունելով՝ հանցես առաջի Տեառն, զոր օրինակ և Աբրահամ եցոյց ինձ. և յամենայն կենդանեաց սրբոց մատո ողջակէզ Տեառն, և յամենայն արջառոց և յարմտեաց, և ի գինւոյ մատո պատարագս Տեառն, և զողջակէզսն ամենայն աղիւ յաղեսցես։

Արդ այժմ պահեցէք, որդեակք իմ, զոր ինչ լուայ ի հարցն իմոց պատուիրեմ ձեզ։ Անպարտ եմ ես յայսմ հետէ յամենայն անօրէնութեանց ձերոց և յանցանաց, զոր ինչ ունիցիք առնել ի վախճան յաւիտենից ընդ

1. Գ և Դ. Իսահակ ընդ հայրն մեր։

2. յԳ և Դ. չիք և։

3. Գ և Դ. յաւելուն և ինչ պատուիրէր առաջի Տեառն։

բարշտեալք մոլորեցուցանէք զիսրայէլ. և զարթուցանէք ի վերայ ձեր չարիս մեծամեծս ի Տեառնէ. և անօրինիք Իսրայելիւ հանդերձ. մինչ զի ոչ կարէ բառնալ Երուսաղէմ քաղաքն զանօրէնութիւն ձեր. այլ պատառեալ լինի զգեստ զարդու տաճարին. զի մի ծածկեսցի ամօթն ձեր. և ցրուեսջիք գերեալք ընդ ամենայն հեթանոս, և եղիջիք յանէծս և ի նախատինս [1], և ի կոխումն օտարաց: Վասն զի զտունն զոր ընտրեաց իւր Տէր՝ Երուսաղէմ կոչեսցի. զոր օրինակ գրեալ է ի գիրս Ենովքայ արդարոյն:

Արդ, յորժամ էի ես ամաց քսան և ութից՝ առի ես ինձ կին, և էր անուն կնոջն իմոյ Մեղքա. և յորժամ էաք ի Գեսեմ, զի պանդուխտ[2] էաք յերկիրն յորում էաք, զի Գեսեմ պանդխտութիւն թարգմանի. և Կահաթ [3] ծնեալ եղեւ ինձ յերեսներորդ ամին. և տեսի ես ի տեսլեան, զի ի մէջ բազմաց կայր բարձր քան զամենայն ժողովուրդն, Կահաթ որ է սկիզբն մեծութեան և դատաղութեան: Եւ երրորդ ծնաւ ինձ զՄերարի՝ ի քառասներորդի [4] կենաց իմոց. և քանզի դժուարածին եղեւ մայր նորա, կոչեցի [5] զանուն նորա Միատրիմ, որ թարգմանի դառնութիւն ինձ: Իսկ զԳնապատ ծնաւ ինձ ի վաթսուն և ի չորրորդ ամի կենաց իմոց, մինչ էի ես յԵգիպտոս. և յայնժամ էի [6] փառաւոր ի մէջ եղբարց բազմաց: Եւ էառ Գերսամ [7] իւր կին և ծնաւ նմա որդի զԼուսի և զՍեմի [8]. և որդիքն Կահաթու՝ Ամրամ և Իսաքար, Քեբրոն և Ոզիել [9]. և էառ Ամրամ իւր կին զՅոքաբեթ [10] դուստր իմ, զ'ի մի աւուր իսկ ծնեալ էին նա և դուստր իմ:

1. Բ. յաւելու ողջոյ:
2. Բ. պանդխտեալք յերկիրն:
3. Բ. յաւելու որդին իմ:
4. Բ. յաւելու ամի:
5. Բ. կոչեաց զՄերարի որ Բարդ:
6. Յաւելու էի ըստ Բ:
7. Բ. Գերսոն:
8. Բ. Սամէ:
9. Բ. Ոզիէլ:
10. Բ. զՅոքաբեդ:

փրկչին աշխարհի. ամպարշտեալ մոլարեցուցանէք զիս-րայէլ՝ և զարթուցանէք ի վերայ ձեր չարիս մեծա-մեծս ի Տեառնէ, և անօրինեսջիք հանդերձ իսրայե-լիւ, մինչեւ ոչ կարել համբերել Երուսաղեմի[1] յերե-սաց չարութեանցն: Այլ պատառեալ լիցի զգեստ տաճարին՝ զի մի ծածկեսցի ամօթն ձեր. և ցրուես-ջիք ընդ ամենայն հեթանոսս, և եղիջիք անդ ի նա-խատինս և յանէծս և ի կոխումն. վասն զի զտունն զոր ընտրեաց Տէր՝ Երուսաղէմ կոչեսցի զոր օրինակ գրեալ է ի գիրս Ենովքայ արդարոյ:

Արդ, յորժամ առի ես կին՝ էի ամաց քսան և ու-թից. և էր անուն կնոջն իմոյ Մելքա. և յղացեալ ծնաւ որդի[2] և կոչեաց զանուն նորա Գերսոն[3], վասն զի երկիրն յորում էաք՝ ի պանդխտութեան էաք, զի Գերսամն պանդխտութիւն թարգմանի: Եւ ես տեսի վասն նորա զի ոչ էր յառաջին կարգին: Եւ Կահաթ ծնեալ եղեւ յերեսներորդի և ի հինգերորդի[4] ընդ-դէմ արեւելից արեգականն. և տեսի ի տեսլեան զի ի մէջ բարձրութեան կայր քան զամենայն ժողո-վուրդն, վասն այսորիկ կոչեցի զանուն նորա Կահաթ, որ է սկիզբն օծութեան և դատողութեան: Եւ եր-րորդ ծնաւ ինձ զՄերարի ի քառասներորդ ամին, և վասն զի դժուարածին եղեւ մայր նորա՝ կոչեաց զնա Մերարի՝ որ թարգմանի դառնութիւն ինձ: Իսկ զՅոքաբեթ[5] մինչ էի վաթսուն և չորից ամաց ծը-նեալ[6] եղէ յԵգիպտոս, և էի յայնժամ փառաւորեալ ի մէջ եղբարց իմոց: Եւ առ Գերսոն կին յղացաւ և ծնաւ նմա զՂոմնի[7] և զՍեմէի: Եւ որդիք Կա-հաթու Ամրամ[8] և Իսահառ[9], և Իսահառա՝ Քեբրոն

1. Գ և Դ. Իսրայէլի:
2. ԺԳ և Ի Դ. չիք որդի:
3. Գ և Դ. Գերսամ. իսկ Բն. զԳերսամ և զԳերսոն միանգամայն ի վար արկանէ:
4. Գ և Դ յաւելուն ամին:
5. Գ և Դ. Յոքաբեթ. Յայնն Յո-քաբեդ:
6. Գ և Դ. ծնեալ լինէր ինձ:
7. Գ. զՂոմի. Դ. զՄուշի և Սեմէի և Սեմ:
8. Յոյնն Աբրահամ:
9. Գ և Դ. Իսափար. և չունի Իսահառա:

Ութամեայ էի ես յորժամ մտի[1] յերկիրն Քանանու. և ութ և տասնամեայ[2] էի՝ յորժամ կոտորեցի զԱբիկիմացիսն. և ինն և տասնամեայ[3] էի՝ յորժամ քահանայացայ Տեառն, և քսան և ութամեայ էի յորժամ առի ինձ կին. և քառասնամեայ էի յորժամ մտի ես յԵգիպտոս: Եւ արդ ահա էք որդիք իմ երեքինդ[4]: Եւ արդ, որդիք իմ, պատուիրեմ ձեզ, զի երկիցէք ի Տեառնէ Աստուծոյ ձերմէ, և գնացէք ուղղութեամբ յամենայն պատուիրանս Նորա. և ուսուցէք որդւոց ձերոց դիրս, զի եղիցին նոքա իմաստունք յամենայն կեանս իւրեանց. կարդալ անդադար զօրէնս Տեառն. զի ամենայն որ ծանիցէ զօրէնս Տեառն պատուեսցի, և ոչ իցէ օտարական ուր և երթիցէ: Սերմանեսջիք ողորմութիւն յերկրի, զի հնձեսջիք զանխռովութիւն. զիմաստութիւն ստասջիք և զերկիւղ Տեառն Աստուծոյ. զի յորժամ լինիցին ի խռովութեան զաւառք, և սատակեսցին և ստացուածք կորիցեն. իսկ զիմաստութիւն իմաստնոց ոչ ոք կարիցէ[5] առնուլ ի նոցանէ, բայց եթէ կուրութիւն անօրէնութեան. զի եղիցի նմա իմաստութիւն նորա որպէս քաղաք ամուր, և ի պատերազմի պայծառութիւն. զի եթէ զոր ուսուցանես և զնոյն առնիցես, աթոռակից լիցիս թագաւորաց, զոր օրինակ եղեւ Յովսէփ եղբայրն մեր:

1. Բ. յաւելու ես:
2. Բ. ամաց:
3. Բ. ամաց էի ես, յորժամ. այսպէս բազում ուրեք:
4. Բ. երեքեանդ:
5. Բ. չորէ ի նմանէ:

և Ողիէլ։ Եւ առ ի կնութեան Ամրամ զՆաքաբեթ[1] դուստր իմ. զի ի միում ամի ծնեալ լինէին նա և դուստր իմ։

Ութ ամաց էի ես յորժամ մտի յերկիրն Քանանացւոց, և ութուտասան ամաց եղեալ[2], կոտորեցի զՍիկիմացիսն, և իննեւտասան ամաց լեալ՝[3] քահանայացայ. և քսան և ութ ամաց եղեալ[4] առի կին, և քառասուն ամաց լեալ[5] իմ մտի յԵգիպտոս. և ահա էք դուք որդիք իմ երեք ազգ։ Եւ Յովսէփ հարիւր տասն ամաց էր՝ յորժամ վախճանեցաւ։

Եւ այժմ, որդեակք իմ, պատուիրեմ ձեզ զի երկնչիցիք[6] ի Տեառնէ Աստուծոյ ձերոյ, և գնացէք յստակութեամբ օրինաց Նորա. արդ ուսուցէք և դուք որդւոց ձերոց գիրս՝ զի եղիցին Նոքա իմաստունք յամենայն ի կեանս իւրեանց, կարդալով անդադար զօրէնս Տեառն՝ զի պատուեսցին։ Եւ ոչ եւս եղիցի՝[7] օտարական, ուր և երթիցէ, և բազում սիրելիս իւր ստասցի առաւել քան զծնօղս իւր։ Եւ կարօտասցին բազումք ի մարդկանէ ծառայել ձեզ՝ և լսել զօրէնս ի բերանոյ ձերմէ։ Գործեցէք զարդարութիւն, որդեակք իմ, ի վերայ երկրի՝ զի գտանիցէք յերկինս. և սերմանիցէք յոգիս ձեր բարիս՝ զի գտանիցէք ի կեանս ձեր։ Զի եթէ սերմանիցէք զչարիս՝ զամենայն խռովութիւն. և զնեղութիւն հընձեսջիք։ Զիմաստութիւն ստացարուք վերկիւղ Տեառն փութապէս. զի եթէ լինիցին գաւառք և քաղաքք սատակեսցին, և ոսկի և արծաթ և ամենայն ստացուածք կորիցեն։ Իսկ զիմաստութիւն ոչ ոք կարէ առնուլ՝ բայց եթէ կուրութիւն անօրէնութեան՝ և լցումն ամպարշտութեան[8]. վասն զի եղիցի նմա իմաստութիւն, և պատերազմաց պայծառութիւն և յերկիր

1. Գ և Դ. Յոքաբեդ։
2. Գ և Դ. էի ես յորժամ կոտորեցի..։
3. Գ և Դ. էի ես։
4. Գ և Դ. էի ես։
5. Գ և Դ. էի ես յորժամ մտի։
6. Գ և Դ երկիցէք։
7. Բն. եղիցին... երիցին։
8. Գ և Դ. անիրաւութեան։

Եւ արդ, որդեակք իմ, պատմեմ ձեզ զոր ծանեայ ի գրոցն Ենովքայ. զի ի վախճան ժամանակի անօրինելոց էք դուք, և զձեռս ձեր արկանիջիք ի Տէր ձեր, ամենայն չարութեամբ, և ամենայն հեթանոսաց այպն կատականաց եղիջիք[1]. զի դուք հակառակ Տեառն՝ ուսուցանէք զպատուիրանս ձեր. ընդ պոռնիկս և ընդ չունս եղիցի ժողովուրդն ձեր, և զդստերս հեթանոսաց առնուցուք ձեզ ի կնութիւն, կարծել սրբել զնոսա սրբութեամբ անօրէնութեան ձերոյ։

Եւ եղիցին խառնակութիւնք ձեր անօրէնութեամբ, նմանեալ Սոդոմայեցւոց և Գոմորացւոց. ամբարտաւանեսջիք քահանայութեամբ ձերով և ի վերայ մարդկան ամբարձեալ։ Եւ ոչ միայն զայն առնիցէք՝ այլ

1. Բ. յաւելու դուռն։

տարոտեաց՝ զոր օրինակ յիւր գաւառի և ի մէջ
Թշնամեաց գտցի սիրելի. զի եթէ զոր ուսուցանես՝ և
զնոյն գործես՝ աթոռակից եղիցիս Թագաւորաց, զոր
օրինակ Յովսէփ եղբայրն մեր։

Եւ այժմ, որդեակք իմ, ծանեայ ես ի գրոցն Ենովքայ՝ զի ի վախճան ժամանակի անօրինեսջիք, զինչ գործեսցեն ամենայն հեթանոսք. և զձեռս ձեր արկանիցէք ի Տէր՝ և ամօթ կրեսցեն ի վերայ ձեր՝ եղբարք ձեր, և լինիջիք ամենայն հեթանոսաց այպն կատականաց։ Վասն զի հայրն մեր Իսրայէլ սուրբ էր յամենայն[1] ամպարշտութեանց քահանայութեանց՝ որք եթէ արկանեն զձեռս ի փրկիչն աշխարհի։ Որդեակք իմ, սուրբք եղերուք, զոր օրինակ երկինք առաւել քան զերկիրս. և դուք որ լուսաւորքդ էք Իսրայելի՝ որպէս[2] զարեգակն և զլուսինն եղիջիք, և մի՛ զինչ գործեսցեն ամենայն հեթանոսք։ Զի եթէ խաւարեսջիք ամպարշտութեամբ, և եկեսցեն անէծք ի վերայ ազգի ձերոյ. և լոյսն որ տուեալ է ի ձեռն օրինացն ձեզ ի լուսաւորութիւն՝ և ամենայն մարդոյ, զնա կամեսջիք սպանանել և հակառակ նմա ուսուցանել զպատուիրանն ընդդէմ արդարութեանն Աստուծոյ. զպատուիրանս Տեառն աւազակիցէք և զբաժակն Տեառն գողանայցէք, և յառաջ քան զողջակիզեն Աստուծոյ՝ առնուցուք զընտիրսն, և ուտիցէք ընդ պոռնիկս, արհամարհելով և ագահութեամբ զպատուիրանս Տեառն ուսուցանիջիք, զառնականնայսն պղծեսջիք, և ընդ պոռնիկս և ընդ շունս եղիցին ժողովք ձեր. և զդստերս հեթանոսաց առնուցուք ձեզ ի կանայս՝ կարծիս տալ սրբել զնոսա անօրէնութեամբ ձերով։

Եւ եղիցին խառնակութիւնք ձեր անօրէնութեամբ, նման Սոդոմայեցւոցն և Գոմորացւոցն, և ամբարտաւանիք[3] քահանայութեամբ ձերով։ Եւ ոչ միայն զայս առնիցէք՝ այլ և ընդդէմ պատուիրանացն

1. յԳ և ի Դ. չիք յամենայն։
2. Գ և Դ. էջքն։
3. Գ և Դ. ամբարշտասանելջին. և երկու տող պակասէ։

և ընդդէմ պատուիրանացն Աստուծոյ հակառակեսջիք։

Յաղագս այսորիկ տաճարն ձեր՝ զոր ընտրեսցէ Տէր լինել տեղի անուան իւրոյ, եղիցի աւերակ և ի պղծութիւն ապականութեան, և դուք գերի վարեսջիք ընդ ամենայն ազգս և այպն եղիջիք ամենայն ազգաց։

Եւ եթէ ոչ է վասն Աբրահամու, Սահակայ և Յակոբայ հարցն մերոց, վեցերորդ մասն ազգի մերոյ ոչ էր մնացեալ ի վերայ երկրի։ Մոլորիք[1] և կորիցեն ի ձէնջ օրէնք և մարգարէքն, հալածեսջիք ի ձէնջ զարդարս։

Եւ զայր՝ եթէ[2] վերստին նորոգիցէ զօրէնս՝ զնա մոլորեցուցիչ և պիղծ կոչիցէք[3]։

Եւ յետ այսորիկ սպանջիք զնա, զի[4] ոչ կարացեալ ճանաչել զարդարութիւն նորա։ Եւ առ չարութեան ձերոյ զանպարտ արիւն նորա ի գլուխ ձեր առնուցուք[5] և ի գլուխ որդւոց ձերոց. և վասն նորա եղիցի սրբութիւն ձեր աւերակ մինչեւ յատակ, և ոչ եւս եղիցի ձեր տեղի սուրբ, այլ ընդ հեթանոսս ցրուեսջիք, մինչեւ դարձեալ Տէր այց արասցէ ձեզ, և գթացեալ ընկալցի[6] զձեզ։

1. Բ. մոլորեալք։
2. Բ. որ... նորոգեսցէ։
3. Բ. կոչեսջիք։
4. Բ. և ոչ կարասջիք։
5. Բ. ընդունիջիք։
6. Ա. ընկալցի։

Աստուծոյ ամբարշտեսջիք և խառնակիցէք՝ զորբութեամբն արհամարհելով և ծաղր առնելով։

Յաղագս այսորիկ տաճարն զոր Տէր ընտրեսցէ՝ աւերակ եղիցի[1] ի պղծութեան և յափշտակութեան. և դուք գերի վարեսջիք ընդ ամենայն ազգս, և եղիջիք ի պղծութիւն նոցա, և առնուցուք նախատինս և ամօթ յաւիտենական յարդար դատաւորէն Աստուծոյ. և ամենեքեան որ տեսանիցեն զձեզ՝ փախիցեն ի ձէնջ։

Եւ եթէ ոչ վասն Աբրահամու, Սահակայ և Յակոբայ հարցն ձերոց, վեցերորդ մասն զաւակի ձերոյ ոչ էր մնացեալ ի վերայ երկրի։ Եւ այժմ ծանեայ ի գրոյն Ենովքայ, զի եօթանասուն և եօթն երեկս մոլորիցիք, և զպղծութիւն[2] ի քահանայութիւն ձեր խառնակեսջիք, և զողջակէզն ապականեսջիք։

Եւ զայր՝ որ եթէ վերստին նորոգեսցէ զօրէնս բարձրելոյն՝ մոլորեցուցիչ զնա կոչեսջիք, և աներեւոյթ զօրէնսն առնիցէք, և զբանս մարգարէիցն արհամարհիցէք և հալածիցէք զարդարս, և զբարեպաշտս ատիցէք, և զբանս ճշմարիտս պիղծս համարեսջիք։

Եւ յետ այսորիկ որպէս կարծեմ սպանանիցէք զնա, ոչ կարացեալ ճանաչել զյարութիւն նորա։ Զանպարտ արիւն նորա չարութեամբ ձերով ի գլուխս ձեր առնուցուք, և վասն նորա եղիցի սրբութիւնն ձեր աւերակ և պղծեալ մինչեւ յատակս, և ոչ եղիցի ձեր տեղի սուրբ, այլ ընդ հեթանոսս եղիջիք յանէծս և ի ցրումն, մինչեւ նա դարձեալ այց արասցէ ձեզ՝ և դարձեալ ընկալցի զձեզ հաւատով և ջրով։

Արդ իբրեւ լուայք զեօթանասուն և զեօթն երեկն, լուարուք և վասն քահանայութեանն։ Յամենայն յոբելեան եղիցի քահանայութիւն. և յառաջին յոբելեանն որ օծեալ լինի յառաջագոյն ի քահանայութիւն՝ մեծ եղիցի, և խօսեսցի ընդ Աստուծոյ իբրեւ ընդ հօր, և քահանայութիւն նորա կատարեալ եղիցի ընդ Տեառն, և

1. Գ և Դ. լիցի։
2. Գ և Դ. և զքահանայութիւն պղծիցէ և զողջակէզն։

յաւուր ուրախութեան իւրոյ փրկութիւն աշխարհի եղիցի[1]: Եւ յերկրորդ յոբելինին՝ որ օծեալ լինի, ի սուգ սիրելեացն յղացեալ լինի, և եղիցի քահանայութիւն Նորա պատուական՝ և յամենեցունց փառաւորեսցի: Եւ երրորդ քահանայ տրտմութեամբ պաշարեալ եղիցի: Եւ չորրորդն ի ցաւս, և դիցի ի վերայ Նորա անօրէնութիւն բազում. և ամենայն Իսրայէլ ատեսցեն իւրաքանչիւր զմերձաւոր իւր: Եւ հինգերորդն խաւարաւ պաշարեալ եղիցի. Նոյն օրինակ և վեցերորդն: Եւ յեօթներորդն եղիցի պղծութիւն, զոր ոչ կարիցեմ ասել առաջի մարդկան. բայց նոքա ծանիցեն որ եթէ գործեցինն զայն. վասն այսորիկ ի գերութիւն և ի չարչարանս եղիցին, և երկիր Նոցա և իշխանութիւն աներևոյթ կորիցէ: Եւ ի հինգերորդ եօթներեկին՝ դարձցին յերկիր աւերածոյն իւրեանց, և Նորոգեսցեն զտունն Տեառն. և յեօթներորդ եօթներեկին յարիցեն քահանայք կռապարիշտք և կռուողք, արծաթասէրք, հպարտք, անօրէնք, զեղխք, արուագէտք և անասնագէտք: Եւ զկնի վրէժխնդրութիւն լինելոց է Նոցա ի Տեառնէ, և պակասեսցի քահանայութիւնն. յայնժամ յարուցանէ Տէր քահանայ՝ որում ամենայն բանք Տեառն յայտնեսցին, և Նա արասցէ դատաստան ճշմարիտ ի վերայ երկրի յաւուրս[2] բազումս. և ծագեսցէ աստղ Նորա յերկնից որպէս թագաւորի, լուսաւորելով[3] զլոյս գիտութեան իբրև մէջօրէի առաջի արեգականն, և մեծասցի ի վերայ աշխարհի մինչև յօր վերացման իւրոյ. և այնպէս վերասցի իբրև զարեգակն յերկրէ, և ի բաց որոշեսցէ զամենայն խաւար ի Ներքոյ երկնից, և եղիցի խաղաղութիւն ամենայն երկրի: Երկինք ցնծասցեն յաւուրս յայնոսիկ և երկիր խնդասցէ, և ամպք ուրախ եղիցին, և գիտութիւն Տեառն հեղցի ի վերայ երկրի իբրև զջուր ծովու, և հրեշտակք փառաց երեսաց Նորա ուրախ եղիցին ի Նա: Երկինք բացցեն ի տաճարէ փա-

1. Գ և Դ. յորէցէ:
2. Գ և Դ. զաւուրս:
3. Գ և Դ. լուսաւորել:

Եւ այժմ, որդեակք իմ, զամենայն ինչ լուարուք յինէն, արդ ընտրեցէք ձեզ՝ թէպէտ զլոյս թէպէտ զխաւար. կամ զգործս Տեառն կամ զգործս բելիարայ: Եւ պատասխանի տուեալ հօր[1] մերում ասացաք. Առաջի Տեառն գնասցուք ըստ օրինաց Նորա: Եւ ասաց Ղեւի հայր մեր[2]. Վկայ է ինձ այսօր Տէր, և վկայ են հրեշտակք Նորա՝ վասն բանից բերանոյ իմոյ, և[3] մեք ասացաք՝ եղիցի եղիցի: Եւ դադարեալ Ղեւի ի պատուիրելոյ որդւոց իւրոց, և յաւելաւ առ հարս իւր, կացեալ[4] ամս հարիւր երեսուն և հինգ, և եդին

1. Բ. հօրն եբրեանց տասցէն: . դադարեաց:
2. Բ. Նոյա:
3. Բ. և որդէսն տասցէն . . և
4. Բ. կեցեալ:

*ռաց նորա, և եկեսցէ ի վերայ նորա սրբութիւն ձայնիւ հօր՝ զոր օրինակ յԱբրահամէ առ Իսահակ. և փառք նորա ի վերայ նորա ասասցին: Եւ հոգի իմաստութեան և գիտութեան հանգիցէ ի վերայ նորա ի ջուրս. նաեւ տացէ զճշմարտութիւն Տեառն, որ եթէ ճշմարտութեամբ գնասցեն յաւիտեան: Եւ ոչ եղիցի փոխանակ նորա յազգս ազգաց մինչեւ յաւիտեանս. և ի քահանայութեան նորա հեթանոսք բազմասցին գիտութեամբ ի վերայ երկրի. և լուսաւորեսցին շնորհօքն Տեառն. իսկ Իսրայէլ նուազեսցի ագիտութեամբ և խաւարեսցի սգով. և ի քահանայութեան նորա ապականեսցին մեղք, և անօրէնք հանգիցեն ի չարիս. իսկ արդարք հանգիցին ի նմա՝ վասն զի նա իսկ բացցէ զդուրս դրախտին. և արգելցէ զսպառնացեալ սուրն Ադամայ, և տացէ սրբոցն ուտել ի փայտէն կենաց: Եւ հոգի սրբութեան եղիցի ի վերայ նորա, և բելիար կապեալ եղիցի ի նմանէ. և տացէ իշխանութիւն որդւոց իւրոց՝ կոխել զչար շունչսն, և ուրախ եղիցի Տէր յորդիս իւր, և հաճեսցի ընդ սիրելիս իւր մինչեւ յաւիտեան: Յայնժամ ցնծասցեն Աբրահամ, Իսահակ և Յակոբ, և ես խնդացից և ամենայն սուրբք զգեցցին զուրախութիւն:*

*Եւ արդ*[1]*, որդեակք զամենայն ինչ լուարուք, աha*[2] *ընտրեցէք ձեզ, թէ*[3] *զխաւար և թէ*[4] *զօրէնս Տեառն և կամ զբելիարայ: Եւ պատասխանի տուեալ հօրն մեր ասացաք. Առաջի Տեառն գնասցուք ըստ օրինաց նորա: Եւ ասէ ցմեզ հայրն մեր. Վկայ է ինձ Տէր, և վկայ են հրեշտակք նորա, վկայեմ ես և դուք վասն նորին և վասն բերանոյ նորա: Եւ ասացաք մեք*[5] *եթէ վկայ եղիցի: Եւ ապա*[6] *դադարեաց Ղեւի ի պատուիրելոյ որդւոց իւրոց, և պարզեաց զոտս իւր, և յաւելաւ առ հարս իւր՝ կեցեալ ամս հարիւր երեսուն*

1. Գ և Դ. այժմ:
2. Գ և Դ. արդ:
3. Գ և Դ. Թէպէտ:
4. Գ և Դ. կամ:
5. Բն. Բայ եղիցի:
6. Գ և Դ. այնուհետեւ:

զնա ի տապանի. յետ աւուրց հանին զնա և թաղեցին ի Քեբրոն ի մէջ Աբրահամու, Սահակայ և Յակոբայ:



և ութ. և եդին զնա ի տապանի[1] յԵգիպտոս. և ապա յետոյ տարան զնա ի Քեբրոն և եդին ի մէջ Աբրահամու, Սահակայ և Յակոբայ:

1. Գ և Դ. ի տապանի, և զնի այսօրէն, ի Քեբրոն ի մէջ:



# ԿՏԱԿ ՅՈՒԴԱՅԻ[1]



Հրաման պատասխանոյ բանիցն Յուդայի, զոր խօսեցաւ ընդ որդիսն[2] իւր, յառաջ քան զմեռանելն իւր ժողովեալ ի մի վայր եկին առ նա։ Եւ[3] նա յարուցեալ նստաւ, և ասէ ցնոսա. Չորրորդ որդի ե֊ ղեալ եմ ես հօր իմոյ Յակոբայ[4]. և Լիա մայր իմ անուանեաց զիս[5] Յուդա՝ ասելով. Խոստովան եղէց Տեառն զի ետ ինձ[6] չորրորդ որդի։ Սուր[7] էի ես և փոյթ ի մանկութեան իմում[8] ըստ ամենայն բանից. և պատուէի զմայր իմ և զքոյր մօր իմոյ։ Եւ իբրև եղէ[9] կատարեալ այր՝ հայր իմ Յակոբ աղօթեաց ի վերայ իմ ասելով. Թագաւորեսցես առաջնորդելով ի վերայ ամենայնի. և ետ ինձ[10] շնորհս յամենայն

1. Բն. Ա. Գ և Դ. Կտակ Յուդայի չորրորդ, վասն արութեան և արծաթսիրութեան և պոռնկութեան։ Բ. Կտակ Յուդայի չորրորդ, վասն արծաթսիրութեան և պոռնկութեան՝ այլ և արութեան։
2. Գ և Դ որդիս։
3. յԱ. յԲ. յԳ և ի Դ. չիք և նա յարուցեալ նստաւ։
4. յԱ. յԲ. յԳ և ի Դ. չիք Յակոբայ։
5. յԳ և ի Դ. չիք զիս։
6. Ա. Բ. Գ և Դ. յաւելուն Տէր։
7. Ա և Բ. սուրբ։
8. Ա և Բ. յաւելուն և հնազանդ հօր իմում։
9. Ա. Բ. Գ և Դ. եղէ ես։
10. Ա. Բ. Գ և Դ. ետ ինձ Տէր։

ի գործս[1] իմ և յանդս և ի տան։ Գիտեմ զի ընթացայ[2] զհետ եղջերուին, և կալեալ[3] եառու զնա կերակուր հօր իմոյ, և զայծեմունս ունէի արագութեամբ[4] իմով։ Եւ ամենայն որ ինչ էր ի դաշտս՝ հասու լինէի նոցա, և մատակաց[5] վայրենեաց հասեալ վարժէի[6] զնոսա. զգազանս վայրիս[7] որսայի ձեռօք իմովք, մինչ զի և զառեւծս բազում անգամ սպանեալ[8] և զուլս ի բերանոյ նոցա[9] յափշտակէի. և զարջն առեալ զոտանէն ի վահիցն[10] ի վայր հոսեցի զնա. և ամենայն գազան որ ընդդէմ իմ[11] դառնայր՝ իբրեւ զշուն սպանանէի զնոսա[12], և զհետ մտեալ իմ խոզի վայրենւոյ՝ հասի նմա, և հարեալ ցրուեցի զոսկերս նորա։

Երբեմն[13] ովազ հասեալ ի Քեբրոն, և վազեալ ի վերայ շան, և իմ կալեալ զագոյ նորա՝ ձգեցի ի բաց, և զտաւ[14] հերձեալ ի սահմանս Գազայ։ Զուարակ մի[15] վայրի մինչ դեռ արածէր ի լերինն, կալեալ իմ զեղջերաց նորա և շրջանակի[16] շարժեալ[17] ցնորեցուցի զնա, և զարկեալ յերկիր սպանի զնա։

Եւ յորժամ եկն[18] Թագաւորն Քանանացւոց վա-

1. Բ. յամենայն գործս։
2. Ա. ընթացեալ։
3. Ա. Բ. Գ և Դ. չունէին կալեալ։
4. Բ. երագագութեամբ։
5. Բ. մերձակաց։
6. Բ. ի լուսանցս վարժէր իսկ յօրինակին վիժէր։
7. Ա. վայրենիս.. Բ. զվայրենի գազանս. Գ և Դ. զգազանս վայրենիս որսացի..։
8. Բ. սպանանէի։
9. Ա և Բ. նորա։
10. Բ. վիհէն. Գ և Դ. վահէն։
11. Ա. ինչ.
12. Ա. Բ. Գ և Դ. զնա։
13. Ա և Բ. յաւագ երբեմն ի Քեբրոն վազեալ ի վերայ շան։
14. Բ. և զտա յաւագն։
15. յԱ. յԲ. յԳ. և ի Դ. չիք մ։
16. Ա և Բ. շրջանակաւ։
17. Ա. շարժեալ զնա և ցնորեցուցեալ։
Բ. շարժեալ զնա և ցնորեցուցեալ, այսինքն խելագարեցուցեալ՝ զոր կացանէր զնա ի քերթնէ։
Գ և Դ. շարժեալ զնա և ցնորեցուցեալ (Դ. յաւելու զարկեալ) սպանէ զնա։
18. Ա և Բ. եկեալ։

առեալ ի հօտն բազում[1] զօրաց՝ և ես միայն էի. և ընթացեալ իմ ի թագաւորն Ծուրայ արգելի զնա՝ և հարեալ զսրունս նորա ի վայր արկեալ սպանի զնա. և զմիւս եւս թագաւոր[2] Տափիացւոց մինչ դեռ հեծեալ[3] էր ի ձիոջն՝ հարեալ սպանի զնա. և այսպէս զամենայն զօրս նորա[4] ցրուեցի: Եւ զթագաւորն Ոքսոորայ՝[5] այր սկայ՝[6] որ ունէր զմիջոյն իւրով զկնի[7] և առաջոյ աղեղն, և մինչ դեռ հեծեալ էր[8] ի վերայ ձիոյն, առեալ իմ ի վեր քար[9] մեծ, որ ունէր կշիռ լտերս վաթսուն, և ձգեալ հարի[10] զձին և սպանի զնա:

Եւ պատերազմեալ իմ[11] ընդ թագաւորին Նաքովրայ իբրեւ ժամս երկուս, և բեկեալ զվահանն կտրեցի զոտս նորա, և այնպէս սպանի զնա. և մինչ դեռ ես զգենուի զզրահս նորա՝ ահա երեւեցան[12] արք եօթն, և սկսան պատերազմել ընդ իս. և պատեալ իմ զձեռս[13] պատմուճանաւ, և պարսաքարեալ[14] սպանի ի նոցանէ արս[15] չորս, և այլքն ի փախուստ դարձան: Եւ Յակոբ հայրն իմ[16] եսպան զԲեղլիասաստ[17] արքայ ամենայն թագաւորաց, որ[18] էր հսկայ զօրու-

1. Բ. և բազում զօրք ընդ նորա:
2. Ա և Բ. թագաւորն Տափիացւոյն. Գ. ևս թագաւորն:
3. Ա և Բ. հեծեալ է յէշն իւրում ոտանէ. Գ և Դ. հեծեալ էր ի յէշն ոտանէ զնա:
4. Գ և Դ նոցա:
5. Ա և Բ. Գորայ. Յոյնն Աքոփրայ:
6. Գ և Դ. հսկայ ունէր զմիջոյն:
7. Բ. զկնոյ և յառաջոյ աղեղն:
8. յԱ. յԲ. յԳ և ի Դ. չիք էր:
9. Ա. Գ և Դ. քար որ ունէր լտերս վաթսուն. Բ. քար որ էր իբրեւ լտերս վաթսուն:
10. Բ. հարեալ:
11. Յաւելս չիք իմ:
12. Ա. յաւելու նոցա ընկերք. Բ. ընկերք նորա:
13. Բ. Գ և Դ զձեռն:
14, Գ. պարսաքարեալ:
15. Ա. Գ և Դ չունին արս:
16. Ա և Բ. մեր:
17. Ա. զԲեղլիասար թագաւորն ամենայն. Բ. զԲեղլիասարն որ էր թագաւոր. Գ և Դ. զԲեղլիասար:
18. Ա. Բ. Գ և Դ. չունին որ էր:

*թեամբ, և բարձրութիւն[1] նորա կանգունս երկոտասան: Եւ անկաւ ի վերայ նոցա ահ[2] մեր և երկիւղ, և դադարեցին[3] ի պատերազմելոյ ընդ մեզ:*

*Եւ[4] մինչ դեռ էի ես ընդ եղբարս իմ, տեսի[5] ի տեսլեան գիշերոյ զի հրեշտակն զօրութեան զհետ իմ էր յամենայնի, զի մի՛ յաղթեսցայց յումեքէ: Եւ ի հարաւակոյս եղեւ մեծ[6] պատերազմ՝ եւս[7] առաւել քան զՍիկիմացւոցն, և ճակատեալ իմ հանդերձ եղբարբք իմովք[8], փախուցաք[9] ի նոցանէ արս հազար, և կոտորեցաք[10] ի նոցանէ արս երկերիւր, և թագաւորս չորս. և ելի ես ի վերայ պարսպաց նոցա և սպանի այլ եւս թագաւորս չորս. և այսպէս ազատեցաք զՔեբրոն, և առաք զամենայն թագաւորութիւնս[11] թագաւորացն: Եւ ի վաղիւ անդր երթեալ մեր յԱրիստա[12] քաղաք անառ, զօրաւոր և պարսպաւոր, անմօտելի. և նոքա սպառնացան[13] մեզ մահ. և ապա ես և Գադ մերձեցաք ի պարիսպ քաղաքին յարեւելից կողմանէն, իսկ[14] Ռուբէն և Ղեւի յարեւմտից. և որք էին ի վերայ պարսպացն[15] այսպէս կարծէին[16] թէ մեք միայն իցեմք, և ընդ մեզ յերկարեալ զպատերազմն. իսկ[17] ամենայն եղբարքն մեր յիւրաքանչիւր կողմանէ ցիցս*

1. Ա և Գ. բարձրութիւն իւր կանգուն. Բ. և էր երկայնութիւն իւր կանգուն:
2. Ա և Բ. երկիւղ և դողումն և... Գ. անկաւ... երկիւղ և դողումն:
3. Գ. դադարեցան:
4. Ա և Բ յաւելումն և յաղագս այսորիկ անհնար էր հայր մեր ի պատերազմելոյ, զի ես էի...
5 Ա. տեսի տեսանէի..... զհրեշտակ Տեառն զօրութեանց:
6. Ա և Բ. մեծ:
7. Ա. Բ և Գ. մեծ եւս քան...
8. Բն և Գ. իմով:
9 Ա. Բ. Գ և Դ. փախուցի:
10. Ա. Բ. Գ և Դ. կոտորեցի:
11. Ա. Բ. Դ և Դ. ծերութիւնս:
12. Ա. Բ. Գ և Դ. յԱրեգա... զօրաւոր և պարսպաւոր և անմերձ:
13. Ա և Բ. սպանանային:
14. Ա և Բ. և:
15. Ա և Բ. պարսպին:
16 Ա. կարծեցին:
17. Ա. Բ. Գ և Դ. այլ:

վարեալ[1] մտին[2] ի քաղաքն, ոչ գիտելով նոցա. և առաք զնոսա ի բերան սրոյ. և որք ի վերայ պարըսպացն[3] էին՝ ի փախուստ դարձան և ելին յաշտարակսն. և մեր[4] հուր արկեալ այրեցաք զաշտարակսն հանդերձ նոքօք: Եւ եղեւ ընդ երթալն մեր արք Թովկացւոցն[5] անկան ի վերայ զերեացն մերոց. և[6] ժողովեցաք ընդ նոսա ի պատերազմ, մինչեւ ի Թափու հարեալ[7] սատակեցաք[8] զնոսա, և զքաղաքս[9] նոցա հըրձիգ արարաք, և զամենայն ինչ զոր[10] և էր նոցա ի գերութիւն վարեցաք[11]: Եւ ի ժողովելն մեր ի պատերազմ ընդ նոսա, ի փախուստ դարձուցաք զնոսա, և ոչ տուաք ելս ճանապարհի մտանել առ մեզ: Եւ Մաշիրացիքն եկեալ ի վերայ մեր ի հինգերորդ աւուրն առնուլ ի մէնջ զաւարն մեր, և արարեալ մեր ընդ նոսա հզօր պատերազմ, և յաղթեցաք նոցա[12], վասն զի էին բազում զօրաւորք ընդ նոսա և սպանաք զօրս բազումս՝ յառաջ քան զելանելն մեր ի բարձր տեղիս: Եւ յորժամ հասաք մեք ի քաղաքս նոցա, կանայք նոցա հոլովէին[13] ի վերայ մեր քարինս ի գագաթան լերին, յորում էր քաղաքն. և Թաքուցեալ իմ և Շմաւոնի յետոյ[14] քաղաքին, և ելեալ[15] ի բարձրա-

1. Բ. յաւելու ի դարբնոցն:
2. Ա և Բ մտաք:
3. Ա. Բ. Գ և Դ. պարսպին:
4. Բ. ունի և առա մեր այրեցեալ զաշտարակն... Ա. Գ և Դ. և առա մեր այրեալ զաշտարակսն:
5. Ա. Բ. Գ և Դ. Թեովկացւոց:
6. Ա և Բ. յաւելուն մեր արշաւեալ զհեծեալն ի յետոս որդւոց մերոց:
7. յԲ. յԳ և ի Դ. չիք հարեալ:
8. Ա. Բ. Գ և Դ. սպանաք:
9. Ա. Բ. Գ և Դ. զքաղաքն հրձիգ արարաք:
10. Բ. զամենայն զինչ և էր ի գերութիւն. Գ և Դ զամենայն որ զինչ և էին ի գերութիւն:
11. Ա և Բ. յաւելուն և մինչ գտեալ էր ի Լուսն Թոռգիմայ, (Ա. Թոռգիէմայ) Յովհանեսն եկն ընդ մեզ ի պատերազմ:
12. յԱ. յԲ. յԳ և ի Դ. չիք նոցա:
13. Ա և Դ. հոլովեցուցանէին. Գ. հոլովեցուցանէին քարինս ի վերայ ի գագաթանէ լերին:
14. Ա. Բ. Գ և Դ զնի:
15. Ա. Բ. Գ և Դ ելաք:

անդակին և զամենայն քաղաքն սատակեցաք։ Եւ ի փախչել անդր[1] պատահեցաւ մեզ, եթէ Գաս քաղաք Թագաւորաւ զօրաւորաւ գայ ի վերայ մեր. և ապա ես և Գէոն պատճառանաւք որպէս[2] զԱմուրհացիան արարաք զմեզ, և իբրև[3] զմարտակիցս երեւեալ նոցա մտաք ի քաղաքն. և ի խոր գիշերին յարուցեալ բացաք եղբարցն մերոց զդրունսն, և զամենեսեան զնոսա՝ և որ թէ նոցայն էին սատակեցաք, և աւար հարեալ զինչսն, և զերեսին պարիսպս նոցա. խորտակեցաք[4]։

Եւ ի Թամրա[5] մերձեցեալ մեր՝ որ էր ամրոց ամենայն պատերազմող Թագաւորաց, և թշնամանեալ[6] նոցա զմեզ, և մեր սրտմտեալ յարձակեցաք ի վերայ նոցա, մինչև հասեալ իմ ի գագաթն լերինն, և նքա պարսաքարէին և նետս ձգէին ի վերայ իմ. և եթէ ոչ Գրանայ եղբօրն իմում օգնեալ էր ինձ՝ նոքա կալեալ[7] սպանանէին զիս. և[8] յարձակեալ մեր ի վերայ նոցա սրտմտութեամբ՝ և ի փախուստ դարձուցաք զնոսա[9]. և անցեալ նոցա ընդ այլ ճանապարհ՝ պաղատեցան առ հայրն մեր, և արարաք խաղաղութիւն ընդ նոսա. և ոչ եղև չար ինչ նոցա, այլ դաշինս կռեցաք ընդ նոսա և դարձուցաք զգերիս նոցա։

Եւ յետ այսորիկ շինեցի[10] ես զԹամրայ, և հայր իմ զՄափայէլ. քանզի ամաց[11] Լ ի ես յորժամ եղև պատերազմս այս. և էին Քանանացիքն երկուցեալ յինէն և յեղբարց իմոց։ Էին իմ խաշինք բազումք, և էր անուն հովուապետին[12] իմոյ Ցիրամ[13] ողորմացի,

1. Ա և Բ. չուեին անդր։
2. Ա և Բ. որպէս թէ. յԱ. չէք զԱմուրհացիս արարեալ զմեզ։
3. յԱ. յԲ. յԳ և ի Գ. չէք և իբրև զմարտակիցս երեւեալ նոցա։
4. Ա և Բ. խորտեցաք։
5. Ա և Բ. Թամրա։
6. Ա. Բ. Գ և Դ. և թշնամանեալ մեր յոխորտանս ինոցանէ, և ողբամտեալ։
7. Ա. Բ. Գ և Դ. առնել։
8. Ա. Բ. Գ և Դ. և ապա։
9. յԱ և յԲ. պակասէ աստի՝ մինչև ընդ նոսա։
10. Ա և Բ. շինեցի։
11. Ա. Բ. Գ և Դ. քառասնամեայ։
12. Ա. Բ. Գ և Դ. հովուապետին։
13. Ա և Գ. Իրամ. Բ. Ցիրամ։

ռա որ ելեալ[1] առնուլ զԹարսա Թագաւոր Ողորմա-ցաց, և արար մեզ ուրախութիւն: Եւ աղաչեալ[2] զի տայր ինձ զդուստր իւր զԹերբսաւէ ի կնութիւն. և նա ծնաւ ինձ զԷր և զԱւնան և զՍեղոմ.[3] և զերկուսն առանց որդւոց սպան Տէր. բայց Սեղոմ եկաց և որդիք նորա դուք էք: Զամս ութ և տասն արար հայրն մեր խաղաղութիւն ընդ Եսաւայ եղբօր իւրում, և որդիք նորա ընդ մեզ, զկնի գալոյն մեր ի Լաբա-նայ[4] ի Միջագետաց Ասորւոց:

Եւ եղեւ իբրև կատարեցաւ ութ և տասն ամն՝ ի քառասներորդի ամաց կենաց իմոց, եկն ի վերայ մեր Եսաւ եղբայր հօրն մերում զօրու[5] բազմաւ և զօ-րաւ, և անկաւ աղեղամբն Յակոբայ. և փախճանեալ համբարձաւ[6] ի լեառն Սէիր. և մինչ դեռ երթայրն Թաղեցաւ յԱնանիրամ: Իսկ մեր զհետ մտեալ որդ-ւոց Եսաւայ, և էր նոցա քաղաքք ամուրք[7], պա-րիսպք նոցա երկաթիք և դրունքն պղնձիք. և ոչ կա-րացաք մտանել, և նստեալ շուրջանակի պաշարե-ցաք զնոսա: Եւ իբրև ոչ բացին մեզ զդրունսն զաւուրս քսան, մերձեցուցաք ի պարիսպս նոցա սանդուղս, և եդեալ ի վերայ գլխոց մերոց վահանս՝ ելաք[8] ի պա-րիսպն, և առի քարինս մեծամեծս իբրև լտերս տա-ղանդից երից՝ և սատակեցի ի նոցանէ արս չորս զօրաւորս: Եւ զկնի իմ մտեալ Ռուբէն և Գադ, և սատակեցին այլ ևս վեց այր[9]. յայնժամ խնդրեցին ի մէնջ այլ ևս խաղաղութիւն, և խնդրեալ նախ ի հօրէն իմմէ՝[10] ընկալաք զնոսա իբրև[11] զհարկատուս:

1. Ա. Բ. Գ և Դ. եկեալ:
2. Ա և Բ. աղաչեաց:
3. Ա և Բ. Զաւղանն. Գ և Դ. Սելոմն:
4. Ա. Բ. Գ և Դ. ի Լաբանէ:
5. Բն. Բ. Գ և Դ. զօրա-հօքն:
6. Բ. համբարձաւ ըն ի լեառն...:
7. Ա. Բ. Գ և Դ. քաղաք և պա-րիսպ երկաթի...:
8. Ա. Բ. Գ և Դ. և ելի ի վեր՝ և առի:
9. յԱ և յԲ պակասէ այր:
10. Ա և Բ. ծերոյն:
11. Բ. զնոսա ի հարկատուս:

Եւ տայրն մեզ հանապազ դգրուանս[1] ցորենոյ երկե-րիւր, և ձիթոյ չափքէթս հինգ հարիւր, և գինւոյ[2] հազար և հինգ հարիւր, մինչև եկաք[3] մեք յԵգիպտոս:

Եւ զկնի[4] այսորիկ ած Էր որդին իմ զԹամար ի Միջագետաց զդուստրն Արամայ՝ որ էր նենգաւոր, և վհատեալ էր վասն Թամարայ, զի ոչ էր ի Քանանացւոցն. և հրեշտակն Տեառն սատակեաց զնա[5] յերկրորդում աւուր հարսանեաց նորա: Եւ կամեցայ փեսայացուցանել նմա զՕնան. սակայն և նա չարութեամբ[6] ոչ կամեցաւ[7] լինել ընդ նմա տարի մի. և յորժամ սպառնացայ նմա՝ մերձեցաւ ի նա, բայց սակայն սպականեաց[8] զսերմ իւր՝ յերկիր հեղլով. վասն պատուիրանի մօր իւրոյ. և նա մեռաւ[9] չարութեամբն իւրով: Եւ ես կամեցայ զՍելում[10] տալ նմա, այլ կին իմ Բերսաւէ ոչ արար[11] ինձ թոյլ. վասն զի ոչ էր Թամար[12] ի դստերացն Քանանացւոց իբրեւ[13] զնա. և ես գիտէի զի չար էր ազգն Քանանացւոց, այլ խորհուրդ մանկութեան իմոյ խաւարեցուցին զմիտս իմ. և տեսեալ իմ զնա յարբեցութեան[14] խարբեալ եղէ՝[15] և անկեալ[16] ի խորհուրդս նորա: Արդ[17] նա մինչ ես չէի անդ գնացեալ առ կին Սե-

1. Բ. գրիւս:
2. յԱ. յԲ. յԳ և ի Դ. պակասեն և գինւոյ հազար և հինգ հարիւր:
3. Ա. Բ. Գ և Դ. եկաք:
4. Բ. յետ:
5. Բ. զորդին իմ զէր:
6. Բ. նա էր չարութեամբ, և ոչ կամեցաւ զԹամար և ոչ եմտաւ առ նա, և յորժամ:
7. Ա. Գ և Դ. կամէր:
8. Ա. Բ. Գ և Դ. ապականեաց... յերկիր ըստ պատուիրանի մօր իւրոյ Բերսաւէի:
9. Ա. Բ. Գ և Դ. վախճանեցաւ:
10. Գ և Դ Սելոմն. Ա. Սելոմն. Բ. Սելոմն զերրորդ որդին իմ:
11. Բ. ետ:
12. յԱ. յԳ և ի Դ. պակասէ Թամար:
13. յԳ և ի Դ պակասէ իբրեւ:
14. Բ. յարբեցութեան իմում:
15. Գ և Դ. եղէայ:
16. Բ. անկայ:
17. Բ. Արդ Օնանն գնացեալ առ կին Սելովմայ ի Քանանացւոցն՝ մինչև չէի ես անդ...:

լօմայ ի Քանանացւոցն. և ծանուցեալ իմ զօր արար նա, և անիծեցի[1] զնա հեծութեամբ սրտի իմոյ. և նա մեռաւ չարութեամբ որդւոց իւրոց։

Եւ եղեւ յետ բանիցս այսորիկ յայլրութեան[2] լինել Թամարայ. և զկնի երկուց ամաց լուեալ նորա[3] եթէ ելանեմ ես կտրել զոչխարսն իմ. և զարդարեալ զինքն զարդու[4] հարսնութեան, և նստաւ ի դրան քաղաքամիջին. և արբեալ ես գինւոյն[5] Քուզարայ՝ և ոչ կարացի ճանաչել զնա[6] ի գինւոյն. և կուրեաց զիս գեղեցկութիւն նորա՝ վասն գեղոյ[7] զարդու նորա, և խոնարհեալ առ նա ասացի. Մտից առ քեզ։ Եւ նա ասաց[8]. Զի՞նչ տացես ինձ։ Եւ ետու նմա զգաւազանն իմ և զգօտին և զթագ թագաւորութեան իմոյ. և մտի[9] առ նա, որ և յղացաւ յինէն. և իմ ոչ գիտացեալ[10] զինչ գործեցի, կամեցայ սպանանել զնա. և նորա[11] առաքեալ ի ծածուկ զգրաւականն՝ և յամօթ արար զիս. և իմ կոչեցեալ[12] զնա առ իս և լուայ բանս խորհրդականս ի նմանէ՝ մինչ դեռ[13] յարբեցութեանն իմում ննջէի, և ոչ կարացի տեսանել[14] զնա՝ վասն զի ի Տեառնէ էր[15] այն։ Եւ ածեալ[16] իմ զմտաւ, ասէի մի՞թէ նենգութեամբ արար, եցէ թէ յայլմէ առեալ զգրաւականն. և ոչ[17] մերձեցայ ի նա, և

Ա. Գ և Դ. Առ սա մինչև չէր անդ հնազանդեալ սա կին Սեղովբեմայ ի Քանանացւոցն։

1. Ա. և Բ. անիծէ։

2. Բ. այրի լինել Թամարայ։

3. Բն. Գ և Դ. նմա։

4. Բ. զարդիւք.

5. Բն. Ա. Գ և Դ. Հրով Քուղ-ղաբայ։

6. Բ. զԹամար։

7. Ա. Բ և Գ. յեղոյ։

8. Ա և Բ. ասէ, զինչ կամիս տաց ինձ..։

9. Ա և Գ. մտեալ։

10. Բ. և ես ոչ գիտացի զոր գործծեցի...։

11. Բ. եւ Թամար... զգրաւականն իմ։

12 Ա և Բ. և կոչեալ իմ զնա լուայ զբանս խորհրդեան։

13. Ա. Բ և Գ. մինչդեռ (Բ. մինչ).. ննջէի ընդ նմա։

14. Ա. Բ և Գ. սպանանել զն... (Բ. վասն զի... ։

15. Բ. էր այն։

16. Ա. Բ և Գ. և ածեալ զմտաւ, թէ նենգութեամբ արար՝ յայլմէ առեալ զգրաւականն։

17. Բ. և այլ ոչ...։

խղճէր մինչեւ[1] յայս օր. վասն զի պղծութիւն գործեցի ի մէջ Իսրայելի։ Բայց սակայն և քաղաքացիքն ամէին, եթէ ոչ կատարեցան իրք այսպիսիք[2] ի դրանն. վասն զի յայլմէ աշխարհէ եկեալ է, և գոյզն[3] մի նստեալ ի վերայ դրանն. և կարծէի այսպէս եթէ ոչ ոք գիտաց զմտանելն իմ առ նա։

Եւ յետ այսորիկ իջաք[4] յԵգիպտոս վասն սովոյն. քառասուն և վեց ամաց էի ես յիշխանելն[5] իմ աստ, եօթանասուն և երեք ամ կացի յԵգիպտոս։ Եւ այժմ լուարուք, որդեակք իմ, զոր ինչ պատուիրեմ ձեզ, և պահեցէք զբանս Յուդայի հօր ձերոյ. ունել առաջի Տեառն զամենայն արդարութիւնս և հնազանդել[6] պատուիրանացն Աստուծոյ, և մի գնայք զհետ ցանկութեանց սրտից ձերոց, և մի խորհրդովք ձեր[7] յամբարտաւանութիւն մտաց ձերոց անկանիցիք. և մի պարծիք ի զօրութիւն գործոց երիտասարդութեան ձերոյ, վասն զի այս ամենայն չար է առաջի[8] Տեառն։ Զի և ես խիկ պարծեցայ եթէ ոչ երբեք խաբեալ եմ ի գեղ[9] կանանց, և Թշնամանէի զՌուբէն զեղբայրն իմ վասն Բալլայի կնոջ հօր իմոյ[10]։ Եւ ապա ոգին պոռնկութեան և նախանձու ճակատեցաւ ընդ իս, մինչեւ անկեալ լինէի ես ի Բերսուէ քանանացւոյ[11] և ի Թամարայ զոր խօսեցեալ[12] էր որդւոյ իմոյ։ Եւ տեսի[13] ցանկր իմ. խօսեաց ցհայր իմ, և այնպէս

1. Ա. Բ և Գ. մինչեւ ցօր մահուան իմոյ։
2. Գ. այսպիսիք։
3. Բ. եկեալ է բու մի և նստեալ է դրանն։
4. Ա. Բ և Գ. ելեալ յԵգիպտոս. աստ յաւելուն Ա և Բ. զՅովսէփ..։
5. Յայսս պակասին յիշխանելն իմ ամս։
6. Բ. հնազանդ լեր։
7. Ա և Բ. յերովէ։
8. Ա և Բ. յաչս Տեառն։
9. Ա և Բ. ի պատերազմաւն ի տեղ կանանց ձեռնեցնց. Գ. տեղ կանանց ձեռնեցոց։
10. Ա. Արամ. Բ. Իմամ։
11. Բ. քանանացի (Գ. քանանացւոց) և ի Թամար։
12. Բ և Գ. զոր խօսեալ էր։
13. Բ. և ես տեսի ցանկր իմ, երբեմ խօսիմ և տեսիմ հօրն իմոյ յատաղ, և այգս տեսիլ։

առից զդուստր քո ի կնութեան[1]. և եցոյց ինձ յա-նուն զաստերն իւրոյ՝ յոյժ սատանկութիւն ոսկւոյ, վասն զի թագաւոր էր՝ և զարդարեալ էր զնա[2] ոսկւով և արծաթով և մարգարտով. և ետ նմա հայրն[3] իմ մատուռակել մեզ յընթրիսն. և էր գեղեցիկ յոյժ: Եւ գինին շրջեաց[4] զաչս իմ, և խաւարեցոյց զուշ[5] իմ, և անկաւ սիրտ իմ ի հեծութիւն. և ցանկացեալ կախան եղէ՝[6] և անցի զպատուիրանաւ[7] Տեառն և զօրինօք հարցն իմոց. և առի զնա[8] ինձ ի կնութեան: Եւ հատոյց ինձ Տէր ըստ խորհրդոց սրտի իմոյ, վասն այսորիկ ոչ ուրախ եղէ ես յորդիս[9] իմ: Եւ այժմ, որդեակք իմ, մի արբենայք գինւով, վասն զի գինին փոփոխէ զմիտսն ի ճշմարտութենէ՝ և արկանէ ի բար-կութիւն ցանկութեան, և առաջնորդէ ի մոլորութիւն աչաց. վասն զի[10] ոգին մոլորութեան[11] և պոռնկութեան զգինին իբրև զարբանեակ առ ի հեշտութիւն ունի զմիտ-սըն. վասն զի սոքա երկոքեան որոշեն զզօրութիւն[12] մարդոյն, զի եթէ ըմպէք[13] գինի մինչև յարբեցութիւն՝ խորհուրդքն աղտեղացուցանեն զմիտս և ջեռուցանեն զմարմին մինչև ի խառնակութիւն. և եթէ մերձ ի նա է ցանկութեանն պատճառք՝ գործէ զմեղսն և ոչ ամա-չէ: Այսպէս է գինին, որդեակք իմ, զի որ արբենայ նա-փաւ[14] երբեք ոչ ամաչէ. զի ահա[15] և զիս մոլորե-ցոյց՝ և ոչ համարեցայ ամօթ զբազմութիւնն որ առ-դրանն էին[16], այլ[17] առաջի ամենեցուն խոտորեցայ

1. Բ և Գ. ի կնութեան:
2. Բ. [illegible]:
3. Ա. Բ և Գ. չիք հայրն իմ... մեզ:
4. Բ. շըջեցոյց:
5. Ա. Բ և Գ. զսիրտ իմ ի հեծու-թիւն:
6. Գ և Բ. եղայ:
7. Ա. Բ և Գ. զպատուիրանօք (Գ. Աստուծոյ) և զպատուիրա-նօք հարցն. (Ա և Բ. մերոց):
8. Բ. [illegible]. Ա և Բ. ի կնու-թեան:
9. Բ. յերէս որդւոյն իմ՝ որ եկն ի [illegible]...:
10. Ա և Բ. զի:
11. յԱ և յԲ. պակասէ մո-լորութեան:
12. Ա. զկիրս մարդկան:
13. Ա. Բ և Գ. ըմպե [illegible]:
14. Ա և Բ. գինւով:
15. Բ և Գ. զի [illegible] և:
16. Գ. եր. Ա և Բ. չունին:
17. Ա. Բ և Գ. վասն զի...

առ Թամար և գործեցի զանօրէնութիւն[1]։ Եւ[2] այժմ յայտնեցի որդւոց իմոց զգործս պղծութեան իմոյ. վասն զի[3] արբեալ էի և ոչ ամաչէի ի պատուիրանացն Աստուծոյ, և առի կին քանանացի։ Մտաւորութեան[4] պէտք են, որդեակք իմ, որ եթէ ըմպէ ոք գինի[5]. և այս է իմաստութիւն ուրախութեան, զի մինչ ունիցի ոք գինի՝ պատկառանօք արբցէ. . այլ եթէ անցանէ[6] զայսու սահմանօք, արկանէ ի միտս նորա[7] ոգին մոլորութեան, և տայ արբեցելոյն[8] պղծաբանել և անօրինել, և ոչ յումքէ ամաչել, այլ և պարծել ևս ի վերայ ամօթոյն իւրոյ՝[9] կարծելով եթէ լաւ[10] իմն գործեաց։ Որ պոռնկի՝ եթէ[11] տուժեացի՝ ոչ զգայ և ի փառաց անկանել ոչ ամաչէ։ Զի թէպէտ[12] պոռնիկն թագաւոր ոք է՝ մերկացեալ ի թագաւորութենէն ելանէ ծառայել պոռնկութեանն, զոր օրինակ և ես մերկացեալ եղէ. վասն զի ետու զգաւազանն իմ, այսինքն[13] զցեղին իմոյ զհաստատութիւն, և զգօտին իմ, այս է զզօրութիւն իմ, և զթագ գլխոյ իմոյ՝ այսինքն զփառս թագաւորութեան իմոյ. բայց ապաշխարեալ իմ վասն այսր ամենայնի, միս և գինի ոչ ճաշակեցի մինչև ցծերութիւն իմ, և զամենայն[15] ուրախութիւն ոչ տեսի։ Եւ ուսոյց զիս հրեշտակ Տեառն, զի մինչև յաւիտեան[16] կանայք տիրեսցեն եթէ

1. Ա և Գ. [illegible]. Բ. [illegible]։
2. Ա և Բ. և յայտնեցի։
3. Գ. զի.
4. Բ. մտաց պէտք են..։
5. Բ. գինի վասն ուրախութեան՝ իմաստութիւն է. ի Գ. պատկառին բանքս։
6. Ա և Բ. անցանի ոք։
7. Ա. Բ և Գ. նոր։
8. Ա. Բ և Գ. արբեցելոյն. Ա և Բ. պղծաբան լինել։
9. յԱ և յԲ. պակասէ իւրոյ։
10. Ա և Բ. եթէ և լաւ իմն..
11. Ա և Բ. թէպէտ և..։
12. Ա. Բ և Գ. թէպէտ և։
13. Ա և Բ. այսինքն է զօրութիւն իմ և զթագ գլխոյ իմոյ։
14. Բ. [illegible] ունի և յԱստուծոյ ուրախութենէ է թող կեցայ, և ոչ տեսի..։
15. Բ. զի թէ թագաւորաց և ոսկեաց՝ պոռնկութեամբ կանայք տիրեսցեն։

թագաւորաց եթէ աղքատաց. և զթագաւորացն անցեն զփառսն, զքաջացն զզօրութիւն և զաղքատացն զաղքատութիւն, զփոքր մի զհաստատութիւն: Արդ պահեցէք, որդեակք իմ, զսահմանս գինւոյ. վասն զի են ի նմա ոգիք չարք չորք. ցանկութիւն ջեռնլոյ[1] և զեխութիւն շաղափանտութեան[2]. եթէ ըմպէք գինի կամիք ուրախ լինել՝ երկիւղիւ Տեառն և պատկառանօք ըմպիցէք: Զի եթէ յուրախութեանն հեռասցի երկիւղն Աստուծոյ, ապա լինի արբեցութիւն և մտանէ անամօթութիւն. և լաւ է ամենեւին իսկ ոչ ըմպել գինի, զի մի մեղանչէք[3] բանիւք թշնամանաց և կռւոյ, և զրպարտութեան. և պատուիրանազանցութեան Աստուծոյ[4], և կորնչիցիք ի դէպ ժամանակի: Վասն զի և զխորհուրդս Աստուծոյ և զմարդկան[5] օտարոտեաց յայտնէ գինի. որպէս և ես զպատուիրանս Աստուծոյ և զխորհուրդս հօր իմոյ Յակոբայ՝ յայտնեցի քանանացւոյն Բերսաւէի, որում հրաման ետ Տէր ոչ յայտնել, վասն զի պատերազմաց և խռովութեան պատճառք է գինին:

Պատուիրեմ[6] ձեզ, որդեակք իմ, մի սիրէք զարծաթ և մի զհայելն ի գեղեցկութիւն կանանց. զի վասն արծաթոյ և գեղեցկութեան կանանց[7] մոլորեցայ ես ի Բերսաւէ քանանացւոյ. զի գիտեմ ես եթէ վասն երկուցս այս լինելոց է ազգս այս ի պոռնկութիւն. վասն զի[8] զիմաստուն արս յորդւոց իմոց այլայլեսցեն, և զթագաւորութիւն Յուդայի խոնարհեցուսցեն՝ զոր ետ ինձ Տէր վասն հնազանդութեան իմ հօր իմոյ[9]. զի[10] ոչ երբեք տրտմեցուցի զՅակոբ հայր իմ[11]

1. Բ. ջեռնոութեան:
2. Ա. Բ և Գ. շաղափանտութեան:
3. Ա և Բ. մեղիցուք:
4. Գ. Տեառն:
5. Գ. և մարդկան յայտնէ գինին:
6. Բ. պատուիրելով պատ...:
7. Բ. խոհ... կանանցն:
8. Ա. Բ և Գ. վասն զի, և:
9. Ուղղեցաւ ըստ Բ. զի բնագիրն և այլք գնէին հնազանդութեան հօրն:
10. Բ. քանզի:
11. Բ. հայր իմ, վասն զի զամենայն զոր ասէր առնէի:

բանիւք ինչ. վասն զի զամենայն ինչ զոր և ասէր առ-նէի։ Եւ Իսահակ հայր հօր իմոյ օրհնեաց զիս, զի թա-գաւորեցից ի վերայ Իսրայելի. և Իսահակ Նմանա-պէս յաւելաւ[1] յօրհնութիւնսն. յաղագս[2] որոյ ես ճանաչեմ[3], զի յինէն հաստատեսցի թագաւորութիւն. քանզի կարդացի ես ի գիրսն Ենովքայ արդարոյ, թէ ո՞րքան չարիս[4] գործիցէք ի ժամանակի կատարածի։ Արդ պահեցէք, որդեակք իմ, զանձինս[5] ձեր ի խառ-նակութենէ և յարծաթսիրութենէ, և լուարուք Յու-դայի հօր ձերոյ[6]. վասն զի արծաթսիրութիւն[7] որո-չէ յօրինացն Աստուծոյ և կուրացուցանէ զխորհուր-դըս հոգւոց, և ամբարտաւանութիւն ուսուցանէ. և ոչ տայ առն ողորմել ի վերայ մերձաւորաց[8] իւրոց. մերժէ զհոգի նորա յամենայն բարութեանց, և պա-շարէ զնա ի ցաւս և ի հեծութիւնս, և մաչէ զմար-մին նորա, և զողջակիզօք Տեառն խաղ առնէ. և մար-գարէի խօսողի ոչ լսէ, և բանից բարեպաշտից[9] ընդ-դէմ դառնայ։ Որդեակք իմ, արծաթսիրութիւն առ կուռս ճանապարհորդէ. վասն զի առ մոլորութիւն արծաթոյն՝ զոչ ստացուածս[10] աստուած անուանեն[11]. զի որք ունին զնա՝ ի թմբրութիւն արկանէ զնոսա. վասն արծաթոյն[12] կորուսի ես զորդիսն իմ, եթէ ոչ ապաշխարութիւն մարմնոյ իմոյ և աղօթք հօր իմոյ Յակոբայ ապրեցուցանէ-ին՝[13] անորդի ունէի մեռանել։

1. Ա. յաւել աւագոյն յօրհնու-թեանն. Բ. յաւելուածս ըստ հօրն աւագոյն յօրհնութեանն։
2. Գ. վասն։
3. Բ. գիտեմ զի յինէն հաստա-տեսցի օրհնութիւնն։
4. Ա և Բ. որքան չարիս գործի-ցէք ի կատարածի ժամանակի։
5. Ա և Բ. զձեզ ի խոնարհու-թենէ և յարբեցութենէ և յարծաթ...
6. Ա. ձերում։
7. Ա Բ և Գ. որ։
8. Ա և Բ. մերձաւորի իւրոյ։
9. Ա. բարեպաշտութեան ընդ-դէմ համբաւանաց։
10. Բ. զստացուածս։
11. Բ. են զի աւագոյն անուանեն նոքա։
12. Բ. վասն արծաթոյն թերևս եւ զորդին իմոյ կորուսի։
13. Բ. ու եւ ապրեալ և ան-որդի եւ կորուսեալ։

Այլ Աստուած հարցն իմոց [1] գթած է և ողորմած, գիտաց եթէ անգիտութեամբ արարի, վասն զի [2] զայթակղեցոյց զիս իշխանն մոլորութեան և ոգեստացայ որպէս զմարդ, և իբրեւ զմարմին մեղօք թաթաւեցայ:

Արդ ծաներուք, որդեակք իմ, զի երկու ոգի պարապեն մարդոյ ի ճշմարտութիւն և ի մոլորութիւն, և ի մէջ նոցա իմաստութիւն՝ [3] զոր կան և ունին միտք. վասն զի զապիրատութիւն և զճշմարտութիւն գրեալ է ի լանջս մարդոյն [4]. և զիւրաքանչիւր ոք ի մարդկանէ ճանաչէ Տէր, և ոչ է ժամանակ յորում կարասցէ մարդ թաքուցանել [5]. վասն զի ի լանջս նորա գրեալ է հոգին ճշմարտութեան, և վկայէ վասն ամենայնի և չարախօսէ վասն ամենեցունց, և իբրեւ հրով այրեցեալ լինի մեղաւորն, և ոչ կարէ համբառնալ ի վեր զդէմս իւր:

Եւ արդ [6], որդեակք իմ, սիրեցէք զՂեւի, զի կեցջիք յաւիտեան և մի՛ սատակեսջիք, վասն զի ընտրեաց զնա Տէր առաւել քան զձեզ. մերձեցարուք ի նա և ճաշակեցէք ի սեղանոյ նորա, և ի վայելչութենէ որդւոցն Իսրայելի. և դու լիցիս [7] թագաւոր ի մէջ [8] Յակոբայ և լիջիր [9] իբրեւ զծով. զոր օրինակ ի նա արդարք և մեղաւորք մկրտին, այսպէս և ի քեզ ամենայն ազգ Իսրայելի վտանգեսցի և յանցանիցէ. վասն զի որք թագաւորեսցեն ի քեզ՝ եղիցին իբրեւ զկէտս և կլանիցեն զԻսրայէլ իբրեւ զձկունս. զուստերս և զդստերս [10] ի ծառայութիւն արկցեն, և զտունս և զագարակս, և զհօտս և զկարասիս յափշտակեսցեն, և զբազմաց մարմինս անկեղաց [11] և ագռաւուց տացեն կերակուրս: Եւ եղիցին մարգարէք մրրկեալ և ա-

1. Ա և Բ. ձերոյ:
2. Բ. զի:
3. Բ. նոցա երկուցն ի իմաստութեան: Ա և Գ. նոցա ի իմաստութեան:
4. Բ. մարդկոյն շառաւիղն:
5. Բ. յաւելու զկարծս իւր:
6. Ա. Բ և Գ. այժմ:
7. Ա և Բ. եղիցիս:
8. Բ. ի մէջ Իսրայէլի Յակոբայ:
9. Ա. Բ և Գ. լինիցիս:
10. Ա և Բ. զպատերս խարխալս:
11. Ա և Բ. անկեղց:

միայն արդարքն հալածեցին. և արկցէ[1] Տէր ի վերայ նոցա բաժանումն, և[2] եղիցին պատերազմունք ընդ Իսրայէլի և ընդ այլազգիսն. և վախճանեսցի թագաւորութիւն նոցա, մինչև եկեսցէ փրկութիւն[3] Իսրայէլի. և ապա բնակեսցէ Յակոբ[4] ի խաղաղութեան, և նա պահեսցէ զզօրութիւն թագաւորութեան իմոյ մինչև յաւիտեան: Վասն զի երդմամբ երդուաւ ինձ Տէր ոչ պակասեցուցանել զթագաւորութիւն ի զաւակէ իմմէ մինչև յաւիտեան:

Բազում տրտմութիւն է ինձ, որդեակք իմ, վասն զեխութեանց և կախարդութեանց և կռապաշտութեանց զոր գործիցէք, և զորովայնակոչաց զհետ երթալ և զհարցկաց և զդիւթաց[5] մոլորութեանց: Զդստերս ձեր երգիչս և հրապարակախօսս առնիցէք[6], և խառնակեսցիք[7] ընդ պղծութիւնս հեթանոսաց. վասն[8] որոյ ածիցէ Տէր ի վերայ սով և սպանութիւն[9], մահ և սուր, և պաշարումն ի թշնամեաց և նախատինս[10] ի սիրելեաց. կորուստ և խիթս[11] աչաց, և բաժանումն[12] կենակցաց, և պակասումն գոյից, և օտարութիւն անձամբ ի ծառայութիւն հեթանոսաց. և արասցեն ի ձէնջ ներքինիս ի ծառայութիւն կանանց իւրեանց:

Եւ յորժամ դառնայցէք առ Տէր և կատարեալ սրտիւ ապաշխարիցէք, և գնայցէք յամենայն պատուիրանս նորա, այց արասցէ ձեզ ողորմութեամբ. և հանցէ ի գերութենէ, և ապա յետ այսորիկ ծագեսցէ աստղն խաղաղութեան և գնասցէ ի մէջ մարդկան հանդարտու-

1. Ա. Բ և Գ. ածցէ:
2. Ա և Բ. և պատերազմունս... ազգ ազգս. Գ. և պատերազմունս:
3. Բ. Թագաւորութեան:
4. Բ. Բնակեսցի Իսրայէլն նոր:
5. Ա. Բ և Գ. զդիւթաց:
6. Ա և Բ. առնէք:
7. Ա. Բ և Գ. խառնակիցիք:
8. Ա և Բ. յաղագս որոյ:
9. Ա և Բ. սասանութիւն:
10. Ա. Բ և Գ. սրբեղինաց է նախատինս:
11. Բ. Հիթս. Գ. Խիթս:
12. Ա. Բ և Գ. և ի կենակցաց բաժանումն, պակասումն ի գոյացութենէ:

թեամբ[1] և արդարութեամբ. բացցին նմա երկինք և հեղ-
ցին օրհնութիւնք հօրն սրբոյ ի վերայ նորա[2], և նա հեղ-
ցէ ի վերայ մարդկան[3] զհոգին շնորհաց, և եղիցին նմա
յորդեգրութիւն ճշմարտութեան, և գնասջիք ի սահմանս
նորա յառաջինս և յերկրորդս։ Յայնժամ եղցէ շառա-
ւիղ[4] յինէն՝ և ծաղկեսցի[5] ի գաւազան թագաւորու-
թեան իմոյ, և յարմատոյ ձերմէ[6] եղիցի հիմնաւորու-
թիւն. և ի նմանէ եղցէ[7] գաւազան արդարութեան հե-
թանոսաց, դատել և ապրեցուցանել զամենեսեան՝[8]
որ կարդան առ Տէր։ Եւ յետ այսորիկ եղիցի Յակոբ
կենդանի և խաղայել յարիցէ, և ես և եղբարք իմ
իշխանք[9] գաւազանաց մերոց եղիցուք։ Առաջին Ղեւի,
երկրորդն ես, երրորդն Յովսէփ, չորրորդն Բենիամին,
հինգերորդն Շմաւոն, վեցերորդն Իսաքար. և այսպէս
ամենեքեան։ Եւ Տէր օրհնեսցէ զՂեւի, և հրեշտակ
երեսաց նորա զիս, և հրեշտակ փառաց նորա[10] զՇմա-
ւոն, երկինք՝ զՌուբէն, երկիր՝ զԻսաքար, ծով՝ զԶա-
բողոն, լերինք՝ զՅովսէփ, տաղաւարք՝ զԲենիամին,
լուսաւորք՝ զԴան, փափկութիւն՝ զՆեփթաղիմ, զօրու-
թիւն[11] և հաստատութիւն՝ զԳադ, ձիթենիք՝ զԱսեր։
Եւ եղիցին ի ժողովուրդս Տեառն մի սիրտ[12] և մի
լեզու, և ոչ լիցի[13] ի ձեզ ոգի մոլորութեան. զի ար-
կեալ եղիցին[14] պիղծ ոգիքն ի դատաստան յաւիտենից.
և որք ամբարշտութեամբ[15] մախանեցան՝ յա-
րիցեն, և որք վասն Տեառն՝ մեռան զարթիցեն, և եղիցե-

1. Բ և Գ. խաղաղութեամբ, և հանդարտութեամբ։
2. Բ. յաւելու որ ի Քրիստոս։
3. Ա. Բ և Գ. մարդկանս զնոն ձեր։
4. Բ և Գ. շառաւիղ։
5. Ա և Բ. ծաղկեսցէ գաւազան. Գ. ծաղկեսցի գաւազան։
6. Բ. յերոյ ի մարմարեաց եղիցի հիմնաւորութիւն։
7. Բ. եղցի առաքեալն՝ գաւազան։
8. Ա և Բ. անյապաղաբար զնոն զամենայն...
9. Ա. Բ և Գ. իշխան։
10. Պակասէ յայլ օրինակս նորա։
11. Ա. Բ և Գ. զօրութեանց և հաստատութեանց։
12. Պակասէ յայլ օրինակս մի սիրտ։
13. Ա և Բ. եղիցի։
14. Բ. ելցեն պիղծ ոգիք չարեն ի։
15. Ա և Բ. տրտմութեամբ։

բուքն[1] Ցակոբայ ընթացին, և ամենայն ժողովուրդք[2] փառաւորեցին զՏէր՝ յաւիտեան։ Արդ պահեցէք, որդեակք իմ, զօրէնս[3] Տեառն, զի յոյս է ամենեցուն՝ որ թէ ուղիղ գնան ընդ նա։ Եւ[4] արդ ես հարիւր ինն և տասն ամաց վախճանիմ այսօր առաջի աչաց ձերոց, մի՛ ոք զիս թաղեսցէ և կամ զորովայն իմ պատառեսցէ. այլ հանէք զիս ընդ ձեզ ի Քեբրոն։ Եւ արարին այնպէս զոր օրինակ[5] և հրամայեաց նոցա. և ննջեաց Յուդա ընդ հարս իւր, ի փառս[6] Աստուծոյ։

1. Ա և Բ. յաւելուն և Երգիչքն իւրայինքն խայտացեն։
2. Բ. ժողովուրդքն իւրայինք օրհնեցին զՏէր...
3. Ա և Բ. զամենայն օրէնս։
4. Ա և Գ. և ամաց հարիւր... Բ. և իա ամաց հարիւր։
5. Ա. Բ և Գ. որպէս։
6. Յայլ օրինակս պակաս է փառս Աստուծոյ։



# ԿՏԱԿ ԻՍԱՔԱՐԱՑ[1]

Հրաման պատասխանաց[2] բանիցն Իսաքարայ, յորժամ հանդերձեալ էր վախճանել զկեանս իւր։ Կոչեաց զորդիսն իւր և ասէ. Լուարուք[3] Իսաքարայ[4] հօր ձերոյ և ունկն դիք բանից սիրեցելոյ ի Տեառնէ։ Ես ծնեալ եղէ ի վարձուց մանրագորաց. վասն զի Ռուբէն եբեր մանրագորս ի յանդէ. և յառաջագոյն դիպեալ Հռաքելայ՝[5] եհան ի ծոցէն՝ և սկաւ լալ Ռուբէն. և լուեալ զձայն նորա Լիա մայրն[6] և ասաց ցՀռաքէլ. Տուր զմանրագորսդ. և էին մանրագորքն խնձորք անուշահոտք, և լինի[7] յանտառս յերկրին Արամայ։ Եւ ասէ Հռաքէլ. Ոչ տաց զսոսա քեզ,

1. ԲՆ. Կտակ Իսաքարայ որդւոյն Յակոբայ՝ զոր խօսեցաւ ընդ որդիսն իւր. Ա և Բ. Կտակ Իսաքարայ. Գ. Կտակ Իսաքարայ որդւոյ Յակոբայ։
2. Ա. պատասխանոյ բանիցն Իսաքարայ, և ասէ լուաս... Բ. պատասխանոյ բանիցն Իսաքարայ. և ասէ Իսաքար ցորդիս իւր ի ժամ մահուան իւրոյ. Գ. պատասխանեաց բանից Իսաքարայ որ ասաց, լուարուք...
3. Բ. յաւելու որդեակք։
4. Գ. Իսաքարաս։
5. Ա և Բ. Հռաքելի եհան ի ծոցէն. (Բ. յաւելու մանրագորսն) և լալով. Գ. Հռաքելէ եհան՝ և սկսաւ...
6. Ա. Բ և Գ. մայր իւր...
7. Բ. լինի նա։

այլ եղիցին ինձ փոխանակ որդւոյ [1]: Եւ էին խնձորքն երկու [2]: Եւ ասէ Լիա. Ո՛չ է բաւական քեզ զի առեր զայրն կուսութեան իմոյ, մի՞ թէ և զմանրագորսդ առցես [3]: Եւ նա ասէ. Ահա եղիցի քեզ Յակոբ ի գիշերիս յայսմիկ փոխանակ մանրագորացդ: Եւ ասէ. ցնա Լիա. Մի՛ պարծիր և մի՛ փառաւորիր [4], զի իմ է Յակոբ, և ես եմ կին երիտասարդութեան նորա: Իսկ Հռաքէլ ասէ. Այլ և զիս յառաջագոյն քան զքեզ ամուսնացոյց և ծառայեաց [5] վասն իմ ամս չորեքտասան. արդ զի՞նչ արարի [6] քեզ զի բազմացան նենգութիւնք քո ի վերայ երկրի. ապա թէ ճշմարտութեամբ լեալ՝ էիր ոչ եւս տեսանէիր զերեսն Յակոբայ. վասն զի կին նորա ոչ էիր՝ այլ նենգութեամբ փոխանակ ընդ իմ տուար [7] նմա. վասն զի մոլորեցոյց զիս հայրն իմ՝ և ոչ եթող զիս անդ [8]. եթէ ոչ լինէր այս այսպէս: Եւ յաւել Հռաքէլ խօսել և ասէ [9]. Մի ի մանրագորացս առից, և ընդ միոյս ի վարձու տաց քեզ ի գիշերիս:

Եւ եմուտ Յակոբ առ Լիա [10] և ծնաւ զխս նորա, և վասն վարձուցն կոչեցաւ [11] Իսաքար: Յայնժամ երեւեցաւ [12] Յակոբայ թէ վասն այնորիկ ծնաւ Հռաքէլ

1. Ա և Բ. որդւոց:
2. Բ. յաւելու աստ. և ասէ դու որդիս ունիս յոյժ, և ես ոչ ունիմ. և ասէ:
3. Բ. այլ առցես. և Հռաքէլ ասէ ահա...:
4. Ա. Բ և Գ. մի՛ փառաւորիր զինեւ:
5 Բ. վասն իմ ծառայեաց հօրն իմոյ Լաբանայ ամս:
6. Ա և Բ. զինչ արարից զինէ, վասն զի բազմացան նենգութիւնք քո:
7. Բ. եդուր նմա, և անփոփոխոյ ափահէս, վասն զի...
8. Բ. յաւելու եթէ ես անդ էի:
9. Ա. տուր ասէ ի մանրագորացս, և ընդ միոյ ի վարձու տաց քեզ զՅակոբ ի գիշերիս: Եւ Բ. տուր ինձ ի մանրագորացս, և զինչ ինչ և ընդ միոյս ի վարձու տաց քեզ զՅակոբ ի գիշերիս այսմիկ:
10. Բ. Լիա յայնմ գիշերին, և ծնաւ Յակոբ զխս ի Լիա...
11. Ա. և ընդ վարձուն կոչեցաւ. (Բ և Գ. եւ կոչեցաւ):
12. Բ. տեսեալ երեւեցաւ... վասն զի արհամարհեաց զանփոփոխելին տան, եթ զնա իմարյաւ զին մանրագորք, և արհամարհանօք խօսեցաւ և ընդդիմեաց:

երկուս որդիս՝ զի արհամարհեաց զանկողինս առն և ընտրեաց զժուժկալութիւն. և եթէ ոչ Լիա մայր իմ փոխանակ անկողնոյն տուեալ էր զերկուսին խնձորսն, ութ որդիս ունէր ծնանել[1]. վասն այսորիկ վեց որդի ծնաւ և զերկուսն ես Հռաքէլ: Վասն զի մանրագորաւքն այց արար[2] նմա Տէր, զի տեսեալ եթէ վասն որդւոյ կամէր ննջել ընդ առն իւրոյ և ոչ վասն ցանկութեան: Եւ[3] ի վաղիւ անդր ի վեր ելեալ խնդրեաց զՅակոբ՝ զի առցէ զմիւս ևս մանրագորն. և վասն զի ցանկացեալ էր նոցա ոչ կերաւ՝ այլ եդ ի տուն Տեառն, և մատուցեալ քահանայապետին բարձրելոյ[4] որ էր ի ժամանակին յայնմիկ:

Այլ յորժամ եղէ կատարեալ, որդեակք իմ, գնացի ուղիղ[5] սրտիւ լեալ երկրագործ հօր իմոյ Յակոբայ և եղբարց իմոց,[6] և բերէի յանդից զամենայն ինչ ըստ ժամանակին, և ոչ էի քննող ի գործս իմ[7]: Եւ երեսնամեայ էի ես յորժամ առի կին, վասն զի աշխատութիւնն ճարակէր զզօրութիւն իմ, և ոչ ամենևին զմտաւ ածէի վասն հարսանեաց յամսն յայնոսիկ[8]. և ուրախ էր հայր իմ վասն պարզմտութեան իմոյ, վասն զի զոր աշխատէի և ոչ բաժանէի՝ յաղագս[9] այսորիկ ստէպ ստէպ օրհնէր զիս հայրն[10] իմ: Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք ինձ և գնացէք

1. Բ. ծնեալ. յաղագս վեց որդի ծնաւ, որ էառ զխնձորսն և ոչ զանկողնոյ ամուսնութիւնն, և զերկուսն որդիսն Հռաքէլ ծնաւ:
2. Բ. արար Հռաքէլի Տէր ննջել Հռաքէլի ընդ Յակոբայ և:
3. Բ. Եւ Լիա մայր իմ ի վաղիւն ի վեր ելեալ, խնդրեաց զՅակոբ, վասն զի ցանկացեալ էր ի նմա և ոչ վասն որդեծնութեան: Եւ նա Հռաքէլ զմիւս ևս մանրագորն, վասն զի ցանկայր որդւոց. ոչ կերաւ Հռաքէլ զխնձորսն այլ եդ զնոսա ի տուն Տեառն Աստուծոյ:
4. Բ. Աստուծոյ բարձրելոյն. որ էր քահանայապետ ի ժամանակին յայնմիկ, և օրհնեաց զՀռաքէլ յերկուս որդիս:
5. Ա. Բ և Գ. ուղղութեամբ սրտիւ:
6. Աստի մինչև ի վերջ պակասէր յԲ. օրինակին:
7. Ա և Գ. յաղագս այսորիկ և:
8. յԱ. պակասէ յամսն յայնոսիկ:
9. Գ. վասն այսորիկ:
10. յԱ. պակասէ Հայրն իմ:

ողջմտութեամբ, վասն զի տեսի ես ի Նմա զհաճոյսն Տեառն[1], և ոգի մոլորութեան ոչ հանդարտէր ընդդէմ Նորա. վասն որոյ ոչ գիտէի ընտրել զգեղեցկութիւն[2] կանանց, և ոչ էր նախանձ ի խորհուրդս իմ, և ոչ զմտաւ ածէի զագահութիւն ոսկւոյ[3]. վասն զի գնացի պարզմտութեամբ և զամենայն ինչ տեսանէի ուղղութեամբ. ոչ երբէք արկեալ[4] իմ զակն ի մոլորութիւն՝ զի մի՛ տեսից թիւրութեամբ և արկցէ զիս ի հոգս իւր:

Արդ պահեցէք զօրէնս Տեառն և ստացարուք պարզմտութիւն. տուք զթիկունս ձեր յերկրագործութիւն և աշխատեցէք[5] ի վաստակս երկրի. զի ի պտղոյ աշխատութեան[6] ձերոյ օրհնեսցի Տէր, վասն զի ոչ է տուեալ ձեզ այլ բաժին[7]. վասն որոյ և հայրն մեր Յակոբ յօրհնութեանն իւրում[8] նշանակեաց Ղեւեայ զառաջնորդութիւն, և Յուդա փառաւորեցաւ յորդիսն Յակոբայ. Նոցա լուիջիք[9], և ի միամտութենէ հօր ձերոյ մի՛ գայթագղիք. և զի Գադայ տուեալ է[10] կորուսանել զփորձութիւնսն որ յայտնելոց է ի վերայ Իսրայելի: Գիտեմ, որդեակք իմ, զի յետին ժամանակին[11] պտանկեսցին որդիքն ձեր ի միամտութենէ թողեալ զմշակութիւն. զհետ երթեալ խորհրդոց իւրեանց, և ցրուեսցին ընդ հեթանոսս, և թշնամեաց իւրեանց ծառայեսցեն: Արդ, և դուք ասացէք զայս որդւոց ձերոց, զի յորժամ յանցանիցեն վաղվաղակի դարձցին առ Տէր, զի ողորմած է և պահէ[12] զնոսա, փրկէ և դարձուցանէ զնոսա յերկիր իւրեանց: Հարիւր քան և երկու ամաց եմ ես, և ոչ գիտացի յիս

1. Գ. Աստուծոյ. Ա և Գ. և ոգին:
2. Գ. զգեղ:
3. յԱ. պակասէ ոսկւոյ:
4. Ա. արկեալ էր իմ. իսկ Բ. արկեալ:
5. Ա. մշակեցէք:
6. Ա. աշխատութեանց ձերոց:
7. Ա. օրինակն զնէ յաղագս որոյ:
8. Ա և Գ. ծերում:
9. Բն. և Բ. լուիջիք. Գ. լսիցէք:
10. Ա. էր:
11. Ա. ժամանակին:
12. յԱ և յԳ. պակասէ պահէ զնոսա:

մեզ և ոչ պոռնկեցայ, և ի զբօսանս իմ խաբէութեան գինի ոչ արբի, և նենգութիւն ոչ եմուտ ի բերան իմ, և ոչ ատեցի ընկերի իմում. արդարութիւն արարի յիրաւունս[1] իմ յամենայնի և սրբութեամբ գնացի[2]: Զայս ամենայն խօսեցաւ Իսաքար ընդ որդիսն իւր և պատուիրեաց նոցա զի հանցեն զոսկերս նորա ի Քեբրոն և անդ թաղեսցեն յայրին Մաքփելայի[3]: Եւ պարզեալ զոտս իւր ննջեաց յերկրին Հաւկողմայ[4]. ողջունեաց[5] զամենայն անդամս իւր, և զօրութեամբն ննջեաց քուն յաւիտենական, ի փառս Աստուծոյ[6]:

1. Ա և Գ. յամենայն երկրաւորս
2. յԱ և յԳ. պակասէ մինչև և պատուիրեաց...
3. Ա. Մաքփելայի:
4. Գ. Հաւկողողմայ:
5. Ա. ողջունելով. Գ. ողջունեալ:
6. Ի փառս Աստուծոյ պակասէ յայլ օրինակս:



# ԿՏԱԿ ԶԱԲՈՂՈՆԻ[1]

—❖—

Հրաման կտակի պատասխանաց[2] բանիցն Զաբուղոնի՝ զոր ետ որդւոց իւրոց ի հարիւր ի քսան և ի չորրորդ ամի կենաց իւրոց։ Յետ երկուց ամաց մահուանն Յովսեփայ՝ կոչեաց[3] զորդիսն իւր և ասէ ցնոսա. Լուարուք ինձ որդիք Զաբողոնի և հայեցարուք ի բանս հօր ձերում[4]։ Ես եմ Զաբողոն, տուրք բարեաց ծննդոց իմոց[5], վասն զի ի ծնանելն իմում[6] աճեաց հայրն իմ յոյժ հօտիւք և անդէօք և[7] ազգի ազգի ժառանգութեամբ։ Եւ այս[8] յուշ լիցի ձեզ, որդեակք իմ, զի ոչ ծանեայ ես եթէ յանցեայ յաւուրս իմ, և ոչ յիշել կարեմ թէ երբեք[9] արարի անօրէնութիւն, բաց յանգիտութենէ[10] զոր արարի

1. Բն. Կտակ Զաբողոնի որդւոյն Յակոբայ Իսրայէլի. Ա և Բ. Կտակ Զաբողոնի որդւոյ Իսրայէլի որդւոյ Իսահակայ. Գ. Կտակ Զաբողոնի։
2. Ա և Գ. պատասխանեաց։
3. յԱ և յԳ. պակասէ կոչեաց զորդիսն իւր։
4. Ա և Գ. ձերոյ։
5. Մինչև աստ պակասէ յԲ. օրինակին։
6. Ա. Բ և Գ. իմ։
7. Ա. Բ և Գ. յորժամ (Գ. յոյժ) ազգի ազգի անէր ժառանգութեանն։
8. Յայլ օրինակս պակասին բանքս. Եւ այս յուշ լիցի ձեզ, որդեակք իմ, զի։
9. Յայլ օրինակս պակասէ երբեք։
10. Ա. Բ և Գ. զանգիտութենէ զոր արարի. (Գ. գործեցի)։

առ Յովսէփ, զի ծածկեցի ես ընդ եղբարս իմ զբանն՝ և ոչ ասացի զլեալսն հօր իմոյ Յակոբայ. բայց [1] լացի ես վասն Յովսեփայ աւուրս բազումս, վասն զի երկնչէի ես յեղբարցն իմոց. և [2] յորժամ կամէին սպանանել զնա, բազում անգամ աղաղակէի [3] ի մէջ նոցա զի մի արասցեն զանօրէնութիւնն զայն. և զի [4] Շմաւոն և Գադ յարձակեցան ի վերայ նորա, և անկեալ Յովսէփ ի վերայ երեսաց իւրոց՝ և ասէր [5] լալով. Ողորմեցարուք ինձ, եղբարք իմ, և գթացէք [6] յալիսն Յակոբայ հօրն մերում, և մի արկանէք զձեռս ձեր յիս, զի ոչ [7] մեղայ ինչ ձեզ. սակայն եթէ մեղայ խրատելով խրատեցէք [8] և մի ինչ առնէք ինձ վնաս վասն Յակոբայ հօր ձերում։ Արդ մինչ դեռ ասէր զբանս զայս, գթութիւն անկաւ ի սիրտ իմ և լեարդ իմ հարաւ յիս, և ամենայն կար զօրութեան աղեաց իմոց սուզաւ յոգի իմ և լացի [9] ես ընդ նմա. և զար-հուրեալ էր սիրտ իմ, և ոչ հանդարտէի կալ [10]: Եւ տեսեալ նորա զիս ի լալ ընդ նմա՝ և զնոսա յարձա-կեալ ի վերայ՝ զի սպանցեն զնա, փախեաւ զկնի [11] իմ և աղաչէր զնոսա։ Եւ ապա յարուցեալ Ռուբէն ասաց. Եղբարք իմ, մի սպանցուք զսա. այլ արկցուք ի մի [12] ի ջրհորոց ցամաքաց յայսցանէ՝ զոր փորեցին հարքն մեր և ոչ գտին ջուր. զի վասն [13] այսորիկ ար-գել Տէր չինել ջուր ի նոսա զի եղիցի փրկութիւն

1. Ա. Բ և Գ. և լացի (Գ. լացի)։
2. Ա. Բ և Գ. բայց։
3. Ա և Բ. կամէի վկայել. Գ. վկա-յէի։
4. Ա. Բ և Գ. վասն զի։
5. Ա. Բ և Գ. լայր և ասէր։
6. Ա և Բ. գթացարուք։
7. Ա և Բ. զի ոչ ինչ մեղայ ձեզ։
8. Ա. Բ և Գ. խրատեցէք զիս (Գ. չունիք զիս) և զձեռս ձեր մի ար-կանէք յիս վասն Յակոբայ հօր ձերում։
9. Ա և Բ. լացի։
10. Գ. կեալ։
11. Բ. ինձ ընդ յետոյ, և։
12. Բ. մի է խորոցն ցամաքաց յայս-ցանէ, զոր փորեցին հարքն մեր և ոչ գտին ջուր, արկցուք զսա, զի. Գ. մի է ջրհորոց ցամաքաց զոր-արկցուք զսա, զի։
13. Ա և Բ. յաղագս։

Յովսեփայ։ Եւ արարին այնպէս՝ մինչեւ[1] վաճառեցաք զնա Իսմայելացւոցն։ Բայց[2] զնոցա ոչ հաւատարեցի ես, որդեակք իմ, այլ Շմաւոն և Գադ և այլ[3] եղբարքն. և առեալ զայն զնէին ագանելիս[4] իւրեանց, ասացեալ եթէ ոչ կերիցուք յայսմանէ, վասն զի գինք արեան եղբօր մերոյ են[5], այլ կոխելով կոխեսցուք զսա վասն ասելոյ նորա եթէ թագաւորեցից ի վերայ նոցա[6]։ Յաղագս այսորիկ և յօրէնս նոցա ասաց, որ ոչ կամեսցի յարուցանել զաւակ եղբօր իւրոյ[7], թքանիցեն[8] յերեսս կօշկի նորա. վասն զի և եղբարք նորա ոչ կամեցան վասն կենաց եղբօր իւրեանց. և Տէր բոկացոյց զնոսա ի կօշկացն զոր զգեցան ընդդէմ նորա։ Զի ամենեքեան եկեալ յԵգիպտոս՝ ոչ միայն երկիր պագին նմա՝ այլ և յամօթ եղեն առաջի Եգիպտացւոցն, վասն զի լու[9] եղեւ ընդ ամենայն Եգիպտոս։

Եւ յորժամ արկին[10] զՅովսէփ ի գուբն, կամէին ճաշակել, և Յուդա ոչ ուտէր ընդ նոսա, այլ հայէր և կասկածէր՝ զի՛ մի գուցէ վազիցէ Գադ և Շմաւոն և սպանցեն զնա. և տեսեալ զիս զի ոչ ուտէի՝ և ոչ եգեալ ինձ զի ոչ ճաշակեցի, և Յուդա զիս արար պահապան նմա[11] մինչեւ վաճառեցին զնա։ Եւ եղեւ նա ի ջրհորին զերիս տիւս և զերիս գիշերս, և այնպէս[12] վաճառեցաւ Յովսէփ. պատառեալ զհանդերձս

1. Ա և Բ. մինչ վաճառեցաք զՅովսէփ։
2. յԱ. պակասէ Բայց։
3. Ա և Բ. այլեւս միւս եղբարքն։
4. Բ. ագանելիս ոտից իւրեանց և կանանց իւրեանց. Ա և Գ. ագանելիս իւրեանց և կանանց իւրեանց։
5. Ա և Բ. է։
6. Ա. Բ և Գ. ձեր։
7. Բ. իւրում։
8. Ա և Բ. թքանել ի կօշիկն և թքանել ի դէմս նորա, յԳ. պակասէ։
9. Բ. լուր եղեւ։
10. Ա. Բ և Գ. ընկեցին... վասն զի հայէր...
11. Յայլ օրինակս պակասէ նմա։
12. Բ. եկաց աւուրս չորեքեան, մինչեւ վաճառեցին զնա. և լուեալ Ռուբէն եթէ վաճառեցաւ, պատառեաց. Ա և Գ. վաճառեցաւ աւուրս չորեքեան. և լուեալ Ռուբէն։

իւր և ազալով ասէր. Զի՞արդ տեսից զերեսս Յակոբայ հօր իմոյ. և առեալ զարծաթն ընթացաւ զհետ վաճառականացն, և ոչ[1] եգիտ զնոսա: վասն զի թողեալ էին նոքա զմեծ ճանապարհն որ էր ի կարճոյ՝ և ընդ այլ[2] գնացեալ. և կորեաւ Յովսէփ յաւուր յայնմիկ: Եւ մատուցեալ Դան ասէ ցՌուբէն. Մի լար և մի սգար, վասն զի գտի պատճառս ասելոյ հօր մերոյ Յակոբայ: Զենցուք ուլ[3] մի և թաթաւեսցուք զհանդերձս[4] Յովսեփու և ասասցուք ցՅակոբ. Ծանիր եթէ ա՞յս է պատմուճան որդւոյն քո Յովսեփայ: Եւ արարին այնպէս. բայց զպատմուճանն ունէր Շմաւոն, ոչ կամէր տալ նոցա, վասն զի բարկացեալ էր[5] թէ զի՞արդ եկաց Յովսէփ և ոչ սպանի զնա: Եւ յարուցեալ մեր ի վերայ նորա ասացաք. Եթէ ոչ տաս[6] ասասցուք եթէ, դու միայն արարեր զչարիս ի մէջ Իսրայելի. և ապա տուեալ[7] և այնպէս[8] արարին որպէս ասաց[9] նոցա Դան:

Եւ այժմ, որդեակք իմ[10], պահեցէք զպատուիրանս Տեառն, զոր[11] օրինակ և ես պահեցի, և շնորհս առի յԱստուծոյ. վասն զի ամենայն եղբարք իմ հիւանդացեալ[12], իսկ ես առանց հիւանդութեան անցուցի զաւուրս իմ. զի գիտէ Տէր զիւրաքանչիւր ումեք[13] զյօժարութիւն սրտի. ընկալարուք զողորմութիւն յաղիս ձեր, որդեակք իմ, զի որքան եթէ արասցէ[14] ոք

1. Ա. Բ և Գ. ոչ զոր եգիտ:
2. Բ. այլ ճանապարհ երթեալ գնացեալ, և ոչ ճոլոլիկից Ռուբէնի յա-սոր յաճախէ: Իսկ Ա և Գ. մրրկալից փոխանակ խորհրդոյ զեւեն կերպ Յովսէփ:
3. Ա և Գ. փոլ,
4. ԺԲ. պակասէ երկու տող:
5. Ա. Բ և Գ. յաւելուն յաղագս այսորիկ:
6. Բ. փոխ պատմուճանի. ...
7. Բ. յաւելու զինչ:
8. Պակասէ յայլ օրինակս:
9. Գ. պատուիրեաց:
10. Ա. Բ և Գ. յաւելուն պատուիրեմ ձեզ:
11. Յայլ օրինակս պակասէ տող մի:
12. Ա և Գ. եղբարց իմոց հիւանդացեալ. Բ. հիւանդացան:
13. Բ և Գ. առաւել. ԺԱ. ԺԲ և ԺԳ. պակասէ որդի:
14. ԲՆ. առասցէ:

մերձաւորին իւրոյ՝ այնպէս արասցէ նմա Տէր։ Վասն այսորիկ, որդեակք իմ [1], որդիք եղբարցն իմոց հի-ւանդանային և մեռանէին [2] վասն Յովսեփայ, և իմքդ առողջ պահեցաք որպէս և գիտէքդ իսկ։

Եւ մինչ [3] էաք յերկրին Քանանացւոց ի ծովեզերին, որսայի ես որս ձկանց՝ կերակուր [4] Յակոբայ հօր իմոյ, բազմաց ի նոցանէ վտարեալ [5] ես միայն առողջ մնացի. զառաջին ես արարի նաւ և նաւեցի ի ծովու. վասն զի Տէր ետ ինձ իմաստութիւն, և պնդեցի փայտ զկնի [6] նորա, և պարզեցի կտաւս ի մէջ ուղղորդ փայ-տիցն և ի մէջ նաւին. և նաւէի յեզեր [7] ծովին և առնէի որս տան հօր իմոյ, մինչեւ եկաք յԵգիպտոս։ Զամս հինգ արարի [8] ձկնորսութիւն յամարայնի, և ի ձմերայնի հովուէի զհօտն [9] ընդ եղբարս իմ։ Եւ յի-ջանելն [10] մեր յԵգիպտոս ոչ յիշեաց Յովսէփ զչարն զոր արարին [11] նմա. յոր հայեցեալ որդիք իմ և դուք սիրեսջիք զմխիթարանս և մի ածէք զմտաւ և մի պա-հէք զչարութիւն [12] իւրաքանչիւր ոք ընդ եղբօր իւ-րում. վասն զի սա է [13] որ որոշէ զչարութիւն և ի բաց ցրուէ, և զգոյացակցութիւն անյայտ առնէ։ Հա-յեցարուք, որդեակք իմ, ի ջուրս՝ զի յորժամ միաբա-նութեամբ գնայ՝ զքարինս և զփայտս և զհողս և զաւազ առ հասարակ բերէ, ապա եթէ ի բազումս [14] բաժա-նեսցի, ծածկէ զնա երկիր և դիւրաւ արհամարհեսցի [15] յամենեցունց. և դուք եթէ բաժանիք՝ լինիք այնպէս. զի զամենայն զոր ինչ արար Տէր, գլուխ մի չնոր-հեաց. վասնզի ետ երկուս ուսս, երկուս ոտս և այլ ան-

1. յԱ և յԲ. պակասէ որդեակք իմ։
2. Ա և Բ. մեռանէին իւր։
3. Ա. Բ և Գ. յորժամ։
4. Պակասէ յայլ օրինակս։
5. Բ. վտարեալ զաղմամբ։
6. Բ. յետոյս նաւուն։
7. Ա. Բ և Գ. ընդ ծովեզրն։
8. Ա և Գ. արարի, և առնէի ողորմութիւն... Բ. արարի և առնէի ողորմս։
9. Յայլ օրինակս պակասէ հօտն։
10. Ա. Բ և Գ. յորժամ իջաք։
11. Ա և Բ. արարի նմա։
12. Ա և Բ. չար։
13. յԱ և յԲ. չիք է։
14. Բ. բազում ժամանս։
15. Ա և Բ. արհամարհէ։

դամս [1], և միոյ գլխոյ եմ ունկնդիր լինել: Վասն զի ծանեայ ես ի գիրս հարցն իմոց, զի բաժանեսջիք ի մէջ Իսրայելի, և [2] Թագաւորաց զհետ երթիջիք, և զամենայն պղծութիւնս գործիցէք, և գերեսցեն զձեզ թշնամիք ձեր. չարչարեսջիք ի մէջ հեթանոսաց ընդ ամենայն հիւանդութիւնս և նեղութիւնս [3]: Եւ յետ այսորիկ յիշեսջիք զՏէր և մխիթարեսջիք [4] ապաշխարութեամբ, և դարձուսցէ զձեզ զի ողորմած է և գթած, և ոչ ածէ զմտաւ զչարիս մարդկան [5], վասն զի մարմինք են և ոգի մոլորութեան մոլորեցուցանէ զնոսա յամենայն ի գործս նոցա. և յետ այսորիկ ծագեսցէ ինքնին [6] Տէր զլոյսն արդարութեան իւրոյ. [7] և դարձջիք յերկիր ձեր, և տեսջիք զՏէր յԵրուսաղէմ, և դարձեալ բարկացուցանէք զնա և արկանիջիք [8] ի հեթանոսս, մինչեւ ի ժամանակս կատարածի:

Եւ այժմ, որդեակք իմ, մի տրտմիք ընդ բանս իմ և մի խռովիք, զի պակասիմ ի կենացս. վասն զի յառնելոց եմ դարձեալ ի միջի ձերում, և ուրախ եղէ ի ցեղին իմում, որք [9] եթէ պահիցէք զօրէնս Տեառն: իսկ յամբարշտեալսն [10] ածցէ Տէր հուր յաւիտենական և կորուսցէ զնոսա յորդւոցն Իսրայելի: Արդ ես ի հանգիստ իմ ընթանամ [11] բայց դուք երկերուք ի Տեառնէ:

Եւ զայս ասացեալ վախճանեցաւ. և եդին զնա որդիք նորա ի դիրս, և յետոյ [12] հանեալ թաղեցին զնա ի Քեբրոն ընդ հարս իւր, ի փառս Աստուծոյ:

1. Բ. անդամք և զամենայն գըլ- խոյն լուռ լինել. Ա. անդամս մին գլխոյ լուռ լինել:
2. Ա. Բ և Գ. և շնորհաց Թագա- ւորաց:
3. յԳ. պակասէ Նեղութեանս:
4. Ա. Բ և Գ. ապաշխարեսջիք և դարձուսցէ:
5. Ա. Բ և Գ. որդւոց մարդկան:
6. Ա. Բ և Գ. ինքն:
7. Յայլս չիք իւրոյ:
8. Բ. արկանիջիք կրկին... ի ժամանակ կատարածի:
9. Ա և Բ. որ թէ:
10. Բ. յամբարշտելն:
11. Ա և Բ. ընթանամ որպէս և հարքն իմ, բայց դուք երկնչի- ջիք ի Տեառնէ. Գ. երկնչիջիք:
12. Ա. Բ և Գ. և յետ այսորիկ հա- նեալ (Գ. հանին) զնա ի Քեբրոն թաղեցին զնա ընդ հարս իւր:

# ԿՏԱԿ ԴԱՆԱՅ[1]



Հրաման պատասխանոյ[2] Դանայ որդւոյն Յակոբայ, զոր ասաց որդւոց իւրոց և դստերացն, ի կատարածի աւուրցն այնոցիկ. ի հարիւր ի քսան ի և հինգ ամաց[3] կենաց իւրոց կոչեցեալ զորդիսն իւր, և ասէ ցնոսա. Լուարուք որդիք[4] Դանայ բանից իմոց, և հայեցարուք ի բան բերանոյ իմոյ. Ես փորձեցի ի սրտի իմում և ծանեայ[5] յամենայն ի կեանս իմ, զի բարի է առաջի Տեառն ճշմարտութիւն[6] և հաճոյ հանդերձ արդարութեամբ, և չար է ստութիւն և սրտմտութիւն, զամենայն չարիս ուսուցանէ մարդկան: Արդ խոստովանիմ այսօր[7] առաջի ձեր, որդեակք իմ, զի հեշտութիւն եղեւ սրտի իմոյ[8] յաղագս[9]

1. Ամենայն օրք. Կտակ Դանայ՝ վասն ամբարտաւանութեան և ատելութեան. Բ. յաւելու և նախանձու:
2. Ա. Բ և Գ. պատասխանեաց Դանայ՝ զոր ասաց որդւոց իւրոց ի կատարածի աւուրցն այնոցիկ. (Ա. աւուրց իւրոց):
3. Ա. Բ և Գ. ամի:
4. Բ. որդեակք Դանայ հօր ձերոյ և նայեցարուք ի...
5. Յայլս պակասէ ծանեայ:
6. Ա. Բ և Գ. և հաճոյ ճշմարտութիւն՝ հանդերձ արդարութեամբ:
7. Ա. Բ և Գ. առ ձեզ այսօր, որդեակ իմ:
8. Ա. Բ. և իմում:
9. Գ. վասն նախանձուն. Ա. յաղագս Յովսեփայ:

մահուանն Յովսեփայ առն արդարոյ և ճշմարտի. և խնդացի [1] ընդ վաճառել նորա, վասն զի զնա առաւել սիրէր հայրն իմ։ Եւ ոգի [2] ատելութեան և նախանձու ասէր ցիս. եթէ դու որդի ես նորա [3]. և մի ոմն ի շնչոց [4] բելիարայ գործակից լինէր ինձ և ասէր ցիս. Առ զսուրս զայս և սպան [5] զՅովսէփ, և սիրեսցէ զքեզ հայրն քո յորժամ սպանցես [6] զնա. այս ոգի սրտմտութեան հաւանեցոյց զիս ծծել զարիւն Յովսեփայ, զոր օրինակ ծծէ ինձ [7] զարիւն ուլու։ Այլ Աստուած Յակոբայ հօր մերոյ [8], ոչ էարկ զնա ի ձեռս իմ և ոչ գտի զնա միայն, և ոչ արար ինձ թոյլ գործել զանօրէնութիւնն [9] զայն, զի մի՛ քակտեսցի [10] երկուս գաւազանս յԻսրայելէ։ Եւ այժմ, որդեակք իմ, ես ահա մեռանիմ, և ճշմարտութեամբ ասեմ ձեզ, եթէ ոչ պահիցէք [11] զձեզ յոգւոյն մոլորութենէ և ի սրտմտութենէ, և սիրեցէք զճշմարտութիւն և զերկայնմտութիւն՝ կորնչելոց էք. զի կուրութիւն գոյ [12] ի սրտմտութիւն, որդեակք իմ, և ոչ ոք է որ ճշմարտութեամբ տեսանէ զերեսս, թէպէտ հայր կամ մայր իցէ, զեղբայր ոչ գիտէ և մարգարէի Տեառն ոչ լսէ, և զարդարսն ոչ տեսանէ. վասն զի փակէ շուրջանակի ոգին մոլորութեան ի թակարդս չարայարութեան և կուրացուցանէ զբնական աչս նորա, և ի ձեռն ստութեան խաւարեցուցանէ զմիտսն, և զիւր տեսարանն տայ նմա. և ապա փակէ աչօք իւրովք և պաշարէ ատելութեամբ սրտին, և տայ նմա միտս [13] հակառակորդս ընդդիմակաց եղբօր իւրում։

1. Ա. Բ և Գ. ես խնդացի եւ վասն վաճառմանն նորա. վասն զի առաքել (Բ. յաւելու եւս զնա) սիրէր զնա հայրն իմ. (Ա. ձեռ)։
2. Ա. Բ և Գ. վասն զի (Գ. զի) ոգի նախանձու և ատելութեան։
3. Բ. Յակոբայ։
4. Ա և Բ. ընչոյն։
5. Ա և Գ. սպանցես։
6. Ա և Բ. սպանանիցես։
7. Բ և Գ. ինձ։
8. Ա. Բ. և Գ. մերում։
9. Ա. Բ և Գ. զանօրէնութիւնս զայս։
10. Բ և Գ. քակտեսցին։
11. Ա. Բ և Գ. պահէք։
12. Ա. Բ և Գ. կայ ի սրտմտութեանն։
13. Գ. մտօք հանապազորդս ընդդիմակաց։

Եւ նախանձոտն[1] չար է սրտմտութեամբ, որդեակք իմ. վասն զի և նորին հոգւոյն[2] ինքն լինի հոգի, և զմարմին իւր առնէ սրտմտողի, և հոգւոյն[3] տիրանայ և մարմնոյն տայ զիւր զանօրէնութիւն[4]։ Եւ յորժամ ինչ հոգին[5] արդարացուցանէ զգործեցեալն, զի ոչ տեսանէ, վասն[6] որոյ սրտմտողն է եթէ իցէ զօրաւոր[7] երեքկին զզօրութիւնն ի սրտմտութեան ունի. զմինն օգնականութեամբ գործակցաւն, և զերկրորդն վասն մեծութեան հաւատացուցանելոյ և յաղթելոյ անիրաւութեան. իսկ զերրորդն բնական մարմնոյ ունելոյ և նովաւ գործել զչարիս. ապա եթէ տկար իցէ սրտմտողն՝ կրկնապատիկ ունի զօրութիւն. և եթէ ի բնութենէ լինին[8] նմա օգնական յամենայն ժամ յանօրէնութիւն սրտմտութեան։ Արդ այս ոգիս յամենայն ժամ հանդերձ սրտմտութեամբ լինիցին գործք նորա։

Արդ ծաներուք զզօրութիւն սրտմտութեան՝ զի ընդունայն է. վասն զի յառաջագոյն բանիւք զկծեցուցանէ, և ապա գործովքն զօրացուցանէ զբարկացողն, և փոքր տուժիւք յուղարկէ զխորհուրդս նորա, և այսպէս զարթուցանէ սրտմտութեամբ մեծաւ զհոգի նորա։

Արդ յորժամ խօսիցի ոք ընդ ձեզ, մի՛ շարժեսցին սիրտք ձեր ի սրտմտութիւն, և եթէ գովեսցէ ոք զձեզ ի բարիս՝ մի՛ համբառնայցէք ի բարձունս, և մի՛ անկանիցիք[9] ի վայելչութիւնս, և մի՛ յամբոխս. վասն զի վայելչութիւն նախ ուրախացուցանէ զլսելիս և ապա[10] սրէ զմիտս, և իմացուցանէ զխորհուրդս բարկա-

1. Ա. և նախանձ է որ տաղտկէ զսրտմտութեան. Բ. և նախանձ տաղտկէ զսրտմտութեան։
2. Բ. հոգւոյ։
3. Ա. Բ և Գ. հոգւոյն։
4. Բ և Գ. զանօրէնութիւնն։
5. յԲ. պակասէ հոգին։
6. Ա. Բ և Գ. յաղագս այսորիկ որ սրտմտողն։
7. Ա և Բ. զօրութիւն է սրտմտութեան քն (Ա. զքն). Գ. զօրաւոր երեքին զօրութիւն է սրտմտութեանն։
8. Ա. Բ և Գ. լինի օգնական։
9. Բ. անկանիցիք։
10. յԱ և յԲ. պակասին ապա սրէ զմիտս։

ցուցանողին. և արտմութեան կարծէ թէ յիրաւի բարկացաւ[1]։ Եւ թէ ի կորուստ և ի տուգանս անկանիցիք որդեակք, վասն զի ոգին մոլորութեան ցանկացաւ գործել զայն. և կատարեալ զկորուստն, զի տրտմեցի վասն խնդրոյ կորստեանն։ Եթէ զհասեալ իք կամաւ կամ ակամայ և խռովեսջիք, վասն զի ի արտմութենէ զարթնու արտմութիւն. և է երկդիմի չար արտմութիւնն՝ հանդերձ ստութեամբ, և օգնական լինին երերաց՝ զի յուղարկեսցեն զխարհուրդս. և յորժամ յուղարկեսցեն հոգիքն, ստէպ ստէպ որոշի ի նմանէ Տէր՝ և տիրէ նմա բելիար։

Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, ի պատուիրանս Տեառն, և յօրինաց նորա մի՛ խոտորիք. հեռացարուք ի ստութենէ և ատեցէք զստութիւն[2] զի փախիցէ ի ձէնջ բելիար և Տէր բնակեսցէ ի ձեզ։ Զճշմարտութիւն խօսեցարուք իւրաքանչիւր ոք ընդ ընկերի իւրում, և մի՛[3] անկանիք ի չարայուշութիւնս, այլ եղիջիք[4] յամենայն ժամ ի խաղաղութեան, ունելով զԱստուած խաղաղարար, և հանդարտեսցէ ի միջի ձերում պատերազմ. սիրեցէք զՏէր յամենայն ի կեանս ձեր և զմիմեանս սուրբ սրտիւ. գիտեմ զի յետին ժամանակս հեռանայցէք դուք ի Տեառնէ և ընդդէմ յառնէք Ղեւեայ և ընդ Յուդայի հակառակեսջիք, այլ ոչ կարիցէք կալ ընդդէմ նորա[5], վասն զի հրեշտակ Տեառն առաջնորդեսցէ նմա[6] և նովաւ հաստատեսցի Իսրայէլ. և մերժելով ի Տեառնէ[7] գնայցէք յօժարութեամբ, և գործելով զպղծութիւն ընդ[8] հեթանոսաց, պոռնկելով ընդ կանայս անօրինաց, և ամե-

1. Աստի մինչև Արդ պահեցէք. պակասէ յԱ և յԲ։
2. Ա. զհնազանդութիւն։
3. Ա. Բ և Գ. և ոչ անկանիք ի չարայուշութիւնս և ի խռովութիւնս։
4. Ա. եղիջիք։
5. Բ. նորա։
6. Ա և Բ. նորա վասն զի. Գ. և վասն զի. նովօք հաստատեսցի
7. Բ. ի նմանէ։
8. Ա և Բ. պոռնկելով ընդ հեթանոսս ընդ. Գ. պղծելով զպղծութիւն ընդ հեթանոսս։

նայն չարութիւն անզգամեալ[1] մեւս ոգոյն պոռնկութեան և մոլարութեան. վասն զի կարդացի ես ի գիրս Ենովքայ արդարոյ, զի իշխան ձեր սատանայ եղիցի, և[2] ամենայն ոգի պոռնկութեան և ամբարտաւանութեան Ղեւեայ լուիցեն, և դարանակալ եղիցին[3] որդւոյն Ղեւեայ և տացեն նոցա մեղանչել առաջի Տեառն. և որդիքն իմ մերձենան յորդիսն Ղեւեայ և մեղանչակից քահանայից[4] յամենայնի. և որդիքն Յուդայի լիցին յագահութեան յափշտակելով զայլոց իբրև զառեւծ. վասն[5] այնորիկ երթայցէք ընդ նոսա ի գերութիւն, և անդ առնուցուք[6] ընդ նոսա վէրս, յԵգիպտացւոցն և զամենայն չարութիւնս հեթանոսաց. և ապա դարձջիք առ Տէր և ողորմեսցի ձեզ, և ածցէ զձեզ ի սրբութիւն իւր և տացէ ձեզ խաղաղութիւն[7], և ծագեսցէ ձեզ[8] փրկութիւն ի տանէն Յուդայ և ի ցեղէն Ղեւեայ. և տացէ խաղաղութիւն յաւիտեան Իսրայելի[9]. և տացէ պատերազմ ընդ բելիարայ, և զհոգիս սրբոց առ ինքն կոչեսցէ, և դարձուսցէ զսիրտս անհաւատից առ Տէր, և վրէժխնդրութիւն յաղթութեան տացէ հարց իւրոց և զգերութիւն առցէ ի բելիարայ[10]: Եւ տացէ խաղաղութիւն յաւիտենական որք կարդան[11] առ նա, և ամենայն սուրբք յԵդեմ[12] հանգիցեն, և ի նոր

1. Ա. աղէտոյ լինել մտաց ոգւոյն մոլորութեան. Բ. չարութեամբ (Գ. չարութեան) աղէտով լինել մտաց ոգւոյ մոլորութեան:
2. Ա. Բ և Գ. զի:
3. Ա. լինիցին:
4. Ա. Բ և Գ. նոցա (Գ. քահանայից) լինին. (Գ. լիցին:)
5. Ա. Բ և Գ. յաղագս այսորիկ երթիցէք:
6. Ա և Բ. առնուցուք զամենայն վէրս:
7. Բ. զխաղաղութիւն. Գ. ի խաղաղութիւն.
8. Ա. Բ և Գ. յեղ ի ցեղէն Յուդայ և ի Ղեւեայ փրկութիւն Տեառն:
9. Յայլս չիք Իսրայելի:
10. յԳ. պակասէ երկու տող. Ա. և Բ. ունին զբովանդակն՝ այլ ոչ զնոյն կարգ:
11. Բ և Գ. կարդասցեն. Ա. կարդայցեն:
12. Ա. Բ և Գ. յԵդեմ հանգիցեն սուրբք:

Երուսաղէմ ուրախ եղիցին արդարք, որ է ի փառս Աստուծոյ մինչև յաւիտեան: Եւ ոչ ևս եղիցի Երուսաղէմ աւերակ, և Իսրայէլ ոչ գերեսցի, և Տէր եղիցի ի միջի նոցա և ընդ մարդկան շրջեսցի. և սուրբն Իսրայէլի թագաւորեսցէ ի նմա խաղաղութեամբ[1] և անանկութեամբ. և որ հաւատասցէ ի նա՝ թագաւորեսցէ ճշմարտութեամբ մինչև յաւիտեան[2]:

Եւ այժմ երկերուք ի Տեառնէ, որդեակք իմ, և հայեցարուք ի ձեզ և պահեցէք զձեզ ի սատանայէ և ի չար շնչոյ նորա, և մերձեցարուք յԱստուած, և հրեշտակ նորա խնայէ[3] ի ձեզ. վասն զի նա միջնորդ է Աստուծոյ և մարդկան, և ի վերայ խաղաղութեան Իսրայէլի և ընդդէմ թշնամութեան թագաւորաց նա կացցէ[4]. և յաղագս[5] այսորիկ փութայ թշնամին գայթագղեցուցանել զամենեսեան որ կարդան[6] զանուն Տեառն[7]. և ի վախճան եկեսցէ թագաւորութիւն թշնամւոյն. վասն զի նոյն ինքն[8] հրեշտակն խաղաղութեան զօրացուցանէ զԻսրայէլ, և մի անկանել նմա ի չար կատարածի[9]: Եւ եղիցի ի ժամանակի անօրէնութեան Իսրայէլի մերժեսցի ի նոցանէ Տէր և եկեսցէ ի հեթանոսս. և զկամս իւր կատարեսցէ. վասն զի ոչ ոք ի հրեշտակաց հաւասար նմա. և անուն նորա եղիցի ընդ ամենայն երկիր և ընդ Իսրայէլ:

Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, յամենայն գործոց[10] չարաց, և ընկեցէք ի ձէնջ զստութիւն և զամենայն արտմտութիւն. և զոր ինչ լուայք ի հօրէ ձերմէ՝ ասացէք որդւոց ձերոց, զի ընկալցի զձեզ փրկիչն հեթանոսաց. վասն զի ճշմարիտ է և երկայնամիտ, հանդարտ և խո-

1. Ա և Բ. խոնարհութեամբ և տնանկութեամբ:
2. Ա և Բ. յերկինս:
3. Բ. խնայեսցէ:
4. Ա և Բ. կեցցէ:
5. Գ. վասն:
6. Ա և Բ. կարգացին:
7. Ա և Բ. յաւելուն. վասն զի կէտք յաւուր յորում հաստատեսցէ Իսրայէլ՝ ի վախճանն.
8. յԱ և յԲ. չիք ինքն:
9. Ա և Բ. կատարած:
10. Ա և Բ. իրաց:

նարհ, և ուսուցանէ գործաւքն Աստուծոյ զօրէնս։ Արդ ի բաց կացէք յամենայն անօրէնութենէ [1] և մերձե֊ ցարուք յարդարութիւնն Աստուծոյ [2], և եղիցի ազգն ձեր ի փրկութիւն յաւիտեան. և թաղեցէք զիս մերձ առ հարսն իմ։ Եւ զայս ասացեալ համբուրեաց զնո֊ սա՝ և ննջեաց քուն յաւիտեան [3]. և թաղեցին զնա որ֊ դիքն իւր [4]. և յետ այնորիկ բերեալ [5] եդին առ Ա֊ բրահամու, Սահակայ և Յակոբայ։ Բայց սակայն մար֊ գարէացաւ վասն նոցա թէ մոռասցին զօրէնսն Ա֊ ստուծոյ իւրեանց [6] և ի հայրենեաց իւրեանց։

1. Գ. անօրէնութեանց։
2. Գ. Տեառն. յԱ. չկայ.
3. Ա. Բ և Գ. յաւելուն Եւ արդ որդեակք իմ թաղեցէք զիս մերձ առ հարսն իմ. և զայս ասացեալ համբուրեաց զնոսա և ննջեաց քուն յաւիտենական. և թաղեցին։
4. Ա և Բ. Նոքա։
5. Ա և Բ. բերին և եդին մերձ առ Աբրահամ և Իսահակ և Յակոբ. Գ. բերին առ Աբրահամ։
6. Ա. Բ և Գ. յաւելուն և օտարասցին յերկրէ ժառանգութեան իւրեանց, և է։



# ԿՏԱԿ ՆԵՓԹԱՂԻՄԱՅ[1]



Հրաման պատասխանոյ[2] կտակին Նեփթաղիմայ, զոր արար ի ժամանակի իւրում, յամին հարիւր և երեսներորդի կենաց իւրոց։ Եկին միաբան ժողովեցան[3] որդիք նորա՝ յեօթներորդ ամսեանն ի գլուխ ամսոյն. մինչ դեռ կենդանի էր արար ընթրիս նոցա և ուրախութիւն. և ի վաղիւն ի զարթնուլ նորա ի քնոյն ասաց ցնոսա. թէ Ահա[4] ես վախճանիմ, և ոչ հաւատային[5] նմա. և օրհնելով զԱստուած զօրացաւ՝ ածելով զմտաւ եթէ զկնի[6], ընթրեաց երեկոյի[7] վախճանիմ. և սկսաւ ասել ցնոսա. Լուարուք որդիք[8] Նեփթաղիմայ՝ հօր ձերոյ. ես ծնեալ եղէ ի Բալլայէ՝ վասն զի նենգութեամբ արար[9] Հռաքէլ, և ետ փոխանակ ինքեան զԲալլա[10] և ի վերայ բարձիցն Հռա-

1. Բն. Կտակ Նեփթաղիմայ որդւոյ Յակոբայ վասն բնական բարւոյ. Ա և Գ. Կտակ Նեփթաղիմայ վասն բնական բարութեան. Բ. բարւոյ։
2. Ա. Բ և Գ. պատասխանեաց Նեփթաղիմայ։
3. Յայլս չիք ժողովեցան։
4. Յայլս չիք Ահա ես։
5. Ա. Բ և Գ. հաւատացին։
6. Բ. յետ։
7. Բ. յերեկոյանն. Ա և Գ. երեկին։
8. Ա և Բ. որդեակք իմ։
9. Ա. Բ և Գ. բարձեաց։
10. Բ. յաւելու, զմայրն իմ զԲալոք և։

քելայ ծնեալ եղէ[1]. և մինչ դեռ փափուկ[2] էի՝ համբուրեաց զիս, ասելով. Բա՛յ[3] տացէ ինձ Տէր[4] եղբայր քեզ ի յարգանդէ իմմէ՝ նման քեզ։ Վասն[5] որոյ նման իսկ էի Յովսեփայ վասն աղօթիցն Հռաքելի[6]. և մայր իմ Բալլա՝ էր դուստր Հռութէի՝ եղբօր Դեբովրայ դայեկին Հռեբեկայ[7]. որ և ի միում իսկ գիշերի ծնեալ լինէին նա[8] և Հռաքէլ։ Եւ[9] Հռութէս էր յազգէն Աբրահամու քաղդէացի աստուածասէր, յազատ և ի բարի ազգաց[10]. և գերի վարեալ լինէր և գնեալ ի Լաբանայ. և ետ նմա զՁեննա[11] աղախին իւր ի կնութեան, որ ծնաւ նմա դուստր, և կոչեաց զանուն նորա Զելփա՝ զանուն ագարակին՝ յորմէ գերին լինէր վարեալ, և զկնի[12] նորա ծնաւ զԲալլա, ասելով. Նորափոյթ դուստր իմ. վասն զի վաղվաղակի[13] ծնեալ լինէր և բուռն հարեալ զատենէ մօր իւրոյ՝ և փութայր ծծել։

Եւ վասն զի թեթեւ էի ես որպէս զեղջերու, կարգեաց զիս հայր իմ յամենայն առաքումն և ի հրեշտակացնացութիւնս՝[14] վասն որոյ իբրեւ զեղջերու իսկ օրհնեաց զիս։ Եւ զոր օրինակ գիտէ բռուտն թէ որքան տանի ամանն՝ և նոյն քան բերէ զբարին, այսպէս և Տէր նմանութեամբ[15] հոգւոյն՝ առնէ զմարմին. և ըստ զօրութեան հոգւոյն դնէ զանձն[16], և ոչ ինչ նուազեալ յիրաց[17], և ոչ եթէ սուղ մասամբ մազոյ[18], վասն զի կշռաւ և չափով և կարգաւ են ամենայն

1. Գ. եղեալ. Բ. եղե եւ։
2. Գ. մանուկ։
3. Ա. Բ և Գ. Նէր։
4. Բ. յաւելու զաւակ։
5. Ա և Բ. յաղագս որոյ նման էր եւ։
6. Ա. Բ և Գ. Հռաքելայ. եւ մայրն։
7. Բ. յաւելու կնոջն Իսահակայ. Բ և Գ. որով և։
8. Բ. մայրն Բալլա, և։
9. Ա. Բ և Գ. եւ։
10. Բ. ազգի։
11. ԺԲ. պահպանէ Ջեննա։
12. Բ. և զհետ։
13. Բ. վաղվաղակի ետաւոր ծնեալ. Ա. վաղվաղակի ծնեալ, և։
14. Բ. և ի դեղանապատմացութիւնն։
15. Ա և Բ. նմանութեան.
16. Ա. Բ և Գ. զմարմին։
17. Բ և Գ. յերկրաց...
18. Բ. եթէ և զմազոյ։

ստացուածք բարձրելոյն։ Եւ որպէս [1] գիտէ բրուտն զիւրաքանչիւր ուրուք զպէտսն, եթէ ո՞ր բաւական լինի. այսպէս և Տէր ըստ նմանութեան հոգւոյն առնէ զմարմինն, եթէ մինչեւ ցո՞ր վայր բաւական լիցի բարւոյն, և կամ յերրեաց հետէ սկիզբն առնէ չարին՝ յաղագս որոյ ոչ իսկ է ամենայն ստեղծուածն [2], և զամենայն մտածութիւն զոր ծանեաւ Տէր, և զամենայն մարդ ստեղծ ի կերպարանս իւր. զոր օրինակ է զօրութիւն նորա՝ նոյն է և գործք նորա. և որպէս [3] միտքն նոյնպէս և արուեստք նորա [4]. և որպէս ակն նոյնպէս և քուն իւր, և որպէս հոգին՝ նոյնպէս և բանն իւր կայ [5], կամ յօրէնս Տեառն և կամ ի գործս բելիարայ։ Եւ զոր օրինակ մեկնեալ է ի մէջ լուսոյ և խաւարի, և լսելեաց և տեսանելեաց, սոյն օրինակ բաժանեալ է ի մէջ առն և առն՝ ի մէջ կնոջ և կնոջ. և ոչ է [6] ասել միոյ միոյ կամ դիմօք կամ մտօք նման։ Զամենայն ինչ կարգաւ արար Աստուած բարի, հինգ զգայարանս ի գլուխն եդ [7], և զպարանոցն ի նմա պատշաճեաց, և հերս վասն փառացն և սրտին ուրախութեան, և զորովայնն յլնտրութիւն ստամոքսին, զփողսն [8] յառողջութիւն, զլեարդն առ ի սրբամրտութիւն, զլեղին առ ի դառնութիւն, զփայծաղն առ ի ծաղր, զերիկամունսն ի զօրութիւն, ի դնել զմէջսն զկողսն ի զօրութիւն. և [9] այլն ամենայն որ ի նմա։ Այսպէս եղիցին, որդեակք, ամենայն գործք ձեր կարգաւոր [10] ի բարիս և յերկիւղն Աստուծոյ [11], և մի՛ ինչ անկարգ առնէք և արհամարհանօք [12], և մի՛ ինչ արտաքոյ

1 Ա. Բ և Գ. և զոր օրինակ... Եթէ որպէս բաւական...
2. Գ. ստացուածն։
3. Ուղղեցաւ ըստ երից օրից, զի բնագիրն ունէր և երկրորդն։
4. Ա և Բ. էր.
5. յԱ և յԲ. չիք կայ։
6. Բ. և նման մին միոյ դիմօք կամ մօօք։
7. Չիք յայլ օրինակս եդ։
8. Բ. զփողսն զկերբն և զներքին յառողջութիւն։
9. Ա և Բ. և զայլն որ ինչ նորին նման է. այսպէս։
10. Ա և Բ. կարգեալ։
11. Գ. Տեառն։
12. Ա և Բ. արհամարհելով։

ժամանակաց ձերոց։ Զի եթէ ասասցես ցակն[1] քո՝ լուր, ոչ կարէ, այսպէս և ոչ կարէ խաւար գործել զգործս լուսոյ։ Արդ մի՛ փութայք ապականել զերկիր ագահութեամբ ի գործս ձեր, կամ ընդունայն բանիւք խաբել զհոգիս ձեր, վասն զի հլու[2] լեալ յստակ սրտիւ իմասցիք ունել զկամս Աստուծոյ[3], և ի բաց ընկենուլ զկամսն սատանայի[4]։ Արեգակն և լուսին և աստեղք ոչ խափանեն զկարգս[5] իւրեանց. այսպէս և դուք մի՛ փոխէք[6] զօրէնս Աստուծոյ՝[7] անկարգութեամբ գործոց ձերոց. հեթանոսք մոլորեալք թողին զՏէր, փոխեցին զկարգս իւրեանց և չոգան զհետ քարի և փայտի[8], և զկնի երթալ ոգոյն[9] մոլորութեան։

Իսկ դուք մի՛ այդպէս[10], որդեակք իմ, ծաներուք զհաստատութիւն երկնի և ծովու և զամենայն[11] արարածոցս զՏէրն՝ զարարիչն այսր ամենայնի, զի մի՛ լինիցիք իբրև զՍոդոմ, որ փոխեաց զկարգ բնութեան իւրոյ. Նոյնպէս[12] և զուարթունք փոխեցին զկարգ բնութեան իւրեանց, զորս անէծ Տէր ի ժամանակի ջրհեղեղին վասն Նոյա. յայլ[13] բնութիւն զպղծոց կարգեալս և զերկիր անբնականս[14]։ Զայս ասեմ ձեզ, որդեակք իմ, վասն զի կարդացի[15] ես ի գիրսն սրբոյն Ենովքայ, զի և դուք ի բաց կալոց էք ի Տեառնէ՝ գնալով ըստ ամենայն անօրէնութեան հեթանոսաց[16] զՍոդոմայեցւոց. և ածցէ Տէր ի վերայ

1. Ա և Բ. աչանդ լոյս (Ա. լոյր). Գ. ցանկդ։
2. Բ. հոյելի լեալ։
3. Բ. Տեառն Աստուծոյ։
4. Ա և Բ. բանսարկուին։
5. Ա և Բ. զգնացս։
6. Ա և Բ. խափանէք։
7. Գ. Տեառն։
8. Բ. փայտի պաշտաման զհետ երթալոյ
9. Ա. է դէմս մոլորութեան
10. Բ. այնպէս։
11. Ա և Բ. յամենայն արարածս զՏէր։
12. Ա. Բ և Գ. Նմանապէս։
13. Ա. այլ։
14. Ա և Բ. անբնակս։
15. Ա և Բ. կարդացաք ի գիրսն։
16. Ա. Բ և Գ. յաւելուն և առնէցէք ըստ ամենայն չարութեան հեթանոսաց։

ձեր զերութիւն, և ծառայեցէք թշնամեաց ձերոց, և ամենայն չարչարանաց և նեղութեանց խոնարհեսջիք. մինչեւ ծանիցէ [1] Տէր զամենեսեան զձեզ, և յետ սակաւանալոյ ձերոյ և փոքրանալոյ՝ դառնայցէք և ծանիջիք զՏէր Աստուած ձեր, և դարձուսցէ զձեզ յերկիր ձեր՝ ըստ բազում ողորմութեան իւրում [2]: Եւ եղիցի յորժամ եկեսցեն որդիքն [3] ձեր յերկիր հարցն իւրեանց, դարձեալ մոռասցին զՏէր և ամբարշտասցին [4], և ցրուեսցէ զնոսա Տէր ընդ ամենայն երեսս երկրի մինչեւ եկեսցէ Տէր գթութեամբ [5]. և մարդ որ առնէ ողորմութիւն և արդարութիւն ընդ ամենեսեան՝ որք եթէ հեռի են կամ մերձ: Վասն զի յամի քառասներորդի կենաց իմոց, տեսի ի լերին ձիթենեաց յարեւելից կողմանէն Երուսաղեմի, զի կային արեգակն և լուսին, և ամենեքեան [6] ընթացաք. և ահա Իսահակ հայր հօր մերոյ [7] ասաց ցմեզ. Ընթացեալ կալարուք իւրաքանչիւր [8] ըստ զօրութեան անձին իւրոյ: Եւ յընթանալն մերում Ղեւի կալաւ զարեգակն և Յուդա [9] զլուսին, և համբարձան երկոքինն [10] ընդ նոսա: Եւ մինչ դեռ ունէր Ղեւի զարեգակն՝ [11] երիտասարդ ոմն ետ նմա ոստս երկոտասան արմաւենոյ. և Յուդա էր պայծառ որպէս զլուսին, և ի ներքոյ ոտից նորա [12] երկոտասան ճառագայթք. և ընթացեալ առ միմեանս Յուդա և Ղեւի՝ բուռն հարին զմիմեամբք [13] և ահա զուարակ մի ի վերայ երկրի, և ունէր երկոտասան [14] եղջիւրս մեծամեծս, և թեւս արծուոյ ի վերայ ողին նորա. և կամեցեալ մեր ունել զնա՝ ոչ կարացաք, բայց Յովսէփ առ զնա և ել ընդ նմա

1. Ա և Բ. ծանիցէ:
2. Ա և Բ. խորոյ:
3. Յայլս չիք որդիքն ձեր.
4. Ա և Բ. ամբարշտեցին:
5. յԱ և յԲ. չիք գթութեամբ:
6. Բ. յաւելու մեք:
7. Ա. մերում:
8. Ա. Բ և Գ. խորատանչիւր ոչ:
9. Ա և Գ. ընթացեալ կալաւ. Բ. ընթացաւ կալաւ:
10. Ա և Բ. երկոտեանն:
11. Ա և Բ. զորեգակնին:
12. Ա. յաւելու երն. Բ. յաւելու որդեա:
13. Ա. զմիմեանց. Բ. զմիմեանս:
14. Ա և Բ. երկոտա:

ի բարձունս. և տեսի զնա զի էր ի դրախտն[1] և ահա գիրք սուրբք երևեցան մեզ՝ և ասէին. Ասիացիք և Պարթևք, Պարսիկք[2] և Իլամացիք[3], Ասորիք և Գաղատացիք ժառանգեսցեն ի գերութեան զերկոտասան ազգն Իսրայելի։

Եւ դարձեալ զկնի եօթն[4] ամաց, տեսի զհայրն իմ զՅակոբ՝ զի կայր ի վերայ ծովուն Յամնիացւոց, և մեք որդիքս նորա ընդ նմա. և ահա նաւ գայր առագաստեալ՝ լի ձկամբք առանց նաւորդի և ղեկավարի. և էր գրեալ ի նաւուն՝ Յակոբայ։ Եւ ասէ ցմեզ հայրն մեր. Եկայք ի նաւս մեր։ Եւ ելաք ընդ[5] նմա ի նաւն, և եղև ձմեռն և[6] մրրիկ յոյժ ի ծովուն. և որպէս թէ թռեաւ հայրն մեր ի մէնջ, որ ունէր զթեւս նաւուն, և մեր ամբոխեալ՝ ի մէջ[7] ծովուն երթեալ լինէաք. և լցաւ նաւն ջրով յերից ալեաց մանրեալ՝ մինչև փշրեալ նաւուն. և Յովսէփ մակուկաւն փախուցեալ, և Յուդա և Ղեւի կային[8] ի միջոցն, և ցրուեցաք ամենեքեան մինչև ի ծագս երկրի։ Եւ Ղեւի արկեալ զքուրձս խորգ, պաղատէր վասն մեր առ Տէր։ Եւ եղև իբրև դադարեաց ձմեռն, մակոյկն եհաս յերկիր խաղաղութեամբ[9]. և ահա եկեալ հայրն մեր Յակոբ՝ և միաբան ամենեքեան ցնծացաք։ Զայս զերկուսին երազս պատմեցի հօրն իմոյ[10]. և նա ասաց ցիս[11]. Պարտ է այդմ[12] ամենայնի կատարել ի ժամանակի իւրում, և բազում ինչ Իսրայելի համբերել վշտաց[13]։ Յայնժամ ասէ ցիս հայրն իմ. Յուսամ ի Տէր եթէ կենդանի

1. Ա. ի դրախտի։
2. յԱ և յԲ. չիք պարսիկք։
3. Բ. Իլմացիք։
4. Ա. ամաց եօթանց. Բ. յետ եօթն ամաց։
5. Յայլս չիք ընդ նմա ի նաւն։
6. յԱ և յԲ. չիք և մրրիկ յոյժ ի ծովուն։
7. Ա և Բ. ի միջածովուն. Գ. ծովածովուն։
8. Ա և Բ. կէին ի մէջ.
9. Ա և Բ. խաղաղութեամբն։
10. Բ. յաւելու հօրն Յակոբայ։
11. Ա և Բ. և ասաց ցիս։
12. Այլք դմա։
13. Այլք չունին վշտաց։

է Յովսէփ և ես ոչ տեսանեմ զնա, վասն զի տեսանեմ եթէ տէր ընդ ձեզ համարի զնա։ Եւ լալով ասէր հանապազ. Կենդանի ես, Յովսէփ որդեակ իմ, և ես ոչ տեսանեմ զքեզ. եւ և մեզ արտասուս հեղուլ վասն[1] բանիցս այսոցիկ[2]. և դարձեալ ասէ. Եւ դու ոչ տեսանես զՅակոբ որ ծնաւ զքեզ. և խարշէին աղիքս իմ և կամէի պատմել նմա եթէ վաճառեցաւ, այլ երկնչէի յեղբարցն իմոց։

Արդ ահա, որդեակք իմ, ցուցի ձեզ զժամանակս յետինս՝ զի ամենայն ինչ լինելոց է յԻսրայելի, և դուք պատուիրեցէք որդւոց ձերոց[3], զի միաբանեսցին ընդ Ղեւեայ և ընդ Յուդայի. զի ի ձեռն Յուդայի ծագեսցի փրկութիւն Իսրայելի, և նովաւ օրհնեսցի Յակոբ. քանզի գաւազանաւ նորա երեւեսցի Աստուած բնակեալ ընդ մարդկան ի վերայ երկրի, կեցուցանել զամենայն ազգն Իսրայելի, և ժողովել[4] զարդարս[5] ի հեթանոսաց։ Եթէ գործիցէք զբարիս, որդեակք իմ, օրհնեսցեն զձեզ մարդիկ և հրեշտակք[6], և Աստուած փառաւորեսցի ի մէջ հեթանոսաց վասն ձեր, և բանսարկուն փախիցէ ի ձէնջ, և Տէր սիրեսցէ զձեզ և հրեշտակք օգնական եղիցին ձեզ. զոր օրինակ եթէ ոք զորդիս իւր զգուշութեամբ սնուցեալ[7] իցէ՝ բարի յիշատակ ունիցի. այսպէս և բարի գործս առ Աստուած բարի ունիցի[8] յիշատակ։ Իսկ որ ոչ ունիցի գործս բարիս, անիծեսցեն զնա հրեշտակք և մարդիկ. և Աստուած ոչ փառաւորեսցի ի մէջ հեթանոսաց վասն նորա. բանսարկուն նմա[9] ընտանենայ իբրեւ ընդ ինքեան անօթոյ, և ամենայն գազան տի-

1. Ա և Բ. յաղագս այսորիկ. Բ. յաւելու և փրկչեանն։
2. Տող մի պակասէ յԱ և յԲ. մինչև և խարշէին։
3. Բ. յաւելու և որդւոց ձեր իսրայէլեանց որդւոյն։
4. Գ. ժողովիլ։
5. Ա և Բ. զամենայն արդարս։
6. Երկու տողք պակասեն յԱ և յԲ. մինչև և հրեշտակք.
7. Ա և Բ. սնուցանէ (Ա. [illegible] դնէ [illegible])։
8. Ա և Բ. ունիք, այսպէս և յի-տոյ։
9. Չիք. յԱ և յԲ. նմա։

րեսցէ Նմա, և Տէր ատեսցէ զնա։ Վասն զի ամենայն[1] պատուիրանք Տեառն կրկին[2] են, արուեստիւ կարգի. վասն զի ժամանակ է մերձենալոյ ի կին իւր, և ժամանակ ժուժկալութեան և աղօթս առնելոյ, և երկրքին[3] սոքա պատուիրանք են։ Եւ եթէ ոչ եղիցին ի կարգս իւրեանց՝ զմեղս կատարեսցեն[4]. այսպէս և ամենայն պատուիրանք։

Արդ, եղբարք իմաստունք Աստուծոյ և խելամուտ, գիտելով զկարգ պատուիրանաց[5] Նորա, և զհաստատութիւն ամենայն իրաց, զի Տէր սիրեսցէ զձեզ։ Արդ, բազում ինչ այսպիսի[6] պատմեալ Նոցա, և աղաչեաց զի տարցեն զոսկերս Նորա ի Քեբրոն և թաղեսցեն ընդ Հարս Նորա։ Կերեալ և արբեալ զօրութեամբ[7] անձին իւրոյ, և ծածկեալ[8] զերեսս իւր՝ վախճանեցաւ։ Եւ արարին որդիքն Նորա ըստ ամենայնի՝ զոր պատուիրեաց Նոցա Նեփթաղիմ Հայրն իւրեանց։

1. Չիք յԱ և յԲ. ամենայն։
2. Ա և Բ. կրկնապատիկ են. Գ. երկ-կին են։
3. Բ. երկրէին. Ա. երկնայինն։
4. Այլք կատարեն այսպէս և ա-յն ամենայն։
5. Ա. պատուիրանի։
6. Բ և Գ. այսպիսի պատուի-րեալ. Ա. պատուիրեայ։
7. Ա և Բ. զաւրութեամբ։
8. Այլք ծածկեաց։



# ԿՏԱԿ ԳԱԴԱՅ [1]



Հ ՐԱՄԱՆ պատասխանւոյ [2] կտակին Գադայ որդւոյն Յակոբայ, զոր խօսեցաւ ընդ որդիսն իւր ի հարիւր և ի քսան և ի հինգ ամի կենաց իւրոց [3]: Ժողովեաց զորդիսն իւր և զդստերս՝ և ասէ ցնոսա. իններորդ որդի եղեալ եմ ես Յակոբայ, և [4] զօրաւոր ի վերայ հօտիցն, և [5] ես պահէի զհօտն. և մինչ [6] գայր առեւծ կամ ինծն և կամ արջ և կամ ամենայն գազանք որ յարձակէին ի վերայ հօտին, և հալածէի [7] զնոսա. և ես կալեալ ձեռամբ [8] իմովք զոտանէ նոցա և շուրջ ածեալ զինեւ ցնորեցուցանէի զնոսա [9], և ձգէի իբրեւ երկուս ասպարէզս. այսպիսի այր էի ես: Իսկ Յովսէփ հովուէր [10] ընդ մեզ իբրեւ աւուրս երեսուն. և վասն զի փափուկ էր ինքն՝ հիւանդացեալ լինէր ի խորշակէն. և դարձաւ [11] ի Քեբրոն

1. Ամենայն օրք. կտակ Գադայ վասն ատելութեան. Բն. յաւելու Աստուածոյ զոր եղեւ:
2. Այլք պատասխանեաց կտակի Գադայ՝ զոր...
3. Ցայլս պակասէ տող մի մինչև ասէ:
4. Բ և Գ. և էր:
5. յԱ և յԲ. պակասի և ես պահէի զհօտն:
6. Ա. Բ և Գ. յորժամ:
7. Ա. Բ և Գ. հալածէին:
8. Ա. Բ և Գ. ձեռամբ իմով:
9. Ա և Բ. չունին զնոսա. Բ. յաւելու խեղդերեալ:
10. Ա և Բ. հովիւ էր:
11. Ա և Բ. դարձեալ:

առ հայր իւր, և կողմնեալ լինէր մերձ առ հարբն, վասն զի յոյժ սիրէր զնա։ Եւ աստ Յովսէփ ցհայր իւր, եթէ որդիքն Բալլայ զենուն զընտիր ընտիրսն և ուտեն զնոսա առանց Ռուբենի և Յուդայի։ Վասն զի[1] գառն-մի ապրեցուցի[2] ի բերանոյ արջուն, զարջն սպանի, և զգառն զենի՝ զի[3] ոչ էր ապրանաց, և կերաք զնա. զայն[4] տեսեալ Յովսեփայ ասաց հօրն, և մեք բարկացեալ ընդ Յովսեփայ վասն բանիցս այսոցիկ. մինչ զի[5] և ոչ կարէի աչօք անգամ տեսանել զՅովսէփ և ոչ ականջօք լսել վասն Նորա։ Եւ[6] առաջի մեր յանդիմանեաց զմեզ՝ զի առանց Յուդայի կերաք[7] զգառն. և զամենայն զոր ինչ ասէր Յովսէփ՝[8] հայրն մեր Յակոբ հաւատայր Նմա։

Արդ, որդեակք իմ, խոստովանիմ զմեղս իմ զի բազում անգամ կամեցայ սպանանել զնա և հոգւով ատէի զնա. և ամենեւին ոչ էր յիս սիրտ ողորմութեան ընդ[9] Նմա. և առաւել վասն երազոց Նորա[10] յաւելաք զատելութիւնն. և կամէի ջնջել զնա[11] զոր օրինակ ջնջեալ լիցէ[12] արջառ զդալարի ի վերայ երկրի. վասն[13] որոյ ես և Շմաւոն վաճառեցաք զնա Իսմայելացւոցն երեսուն դահեկանի, զտասն թաքուցաք և զքսանն ցուցաք եղբարցն մերոց. և այսպէս ագահութեամբ լի էի ես վասն Նորա սպանմանն. և Աստուած հարցն մերոց[14] փրկեաց զնա ի ձեռաց իմոց՝ զի մի՛ արարից անօրէնութիւն[15] ի մէջ Իսրայելի։ Եւ այժմ, որդեակք իմ, լուարուք զբանս ճշմարտութեան և

1. Ա. Բ և Գ. յաւելուն Եւ նա զի։
2. Ա. պաշտպանեցուցի. Բ. փրկեցուցի։
3. Ա. Բ և Գ. վասն որոյ խռովեալ էի (Բ. վասն զի տրտմեալ էի) զի ոչ ապրելոց էր և կերաք զնա։
4. Չիք յայլս մինչև և թարգմանեալ։
5. Յայլս չիք մինչ զի։
6. Բ և Գ. վասն զի։
7. Ա. Բ և Գ. ասպեալ (Գ. կերեալ) զխաշինն։
8. Չիք յայլս Յովսէփ և Յակոբ։
9. Ա. վասն Նորա։
10. Չիք յայլս Նորա։
11. Յաւելուն այլք յերկիր։
12. Ա և Բ. եղև։
13. Բ. յաղագս որոյ. Գ. յաղագս նորին. յԱ. չիք։
14. Ա. Իմ. յԲ. չիք
15. Բ. անիրաւութիւն։

գործեցէք զարդարութիւն և զամենայն բանս բարձրելոյն, և մի՛ մոլորիք[1] ոգւով մոլորութեան. վասն զի չար է յամենայն գործս մարդկան, զի զամենայն ինչ զոր առնէ ատեցողն՝ պիղծ[2] թուի նմա, և որ առնէ զօրէնս Տեառն ամենեքեան զովեն զնա. և եթէ երկրնչի ոք ի Տեառնէ և կամի զարդարութիւն, զայնպիսին ո՞վ է որ ոչ սիրէ։ Որ զճշմարտութիւնն պարսաւէ՝ պղծէ զճանապարհս իւր, որ[3] նախանձի՝ ունայնութեան[4] երկրպագէ և զամբարտաւանութիւնն սիրէ. վասն զի ատելութիւն կուրացոյց զսիրտս նորա. զոր օրինակ և ես հայէի ընդ Յովսէփ։ Արդ պահեցէք զձեզ, որդեակք իմ, յատելութենէ, վասն զի ի նոյն ինքն ի Տէր տայ անիրաւել[5], զի ոչ կամի լսել պատուիրանաց նորա վասն սիրոյ մերձաւորին. յԱստուած մեղանչէ՝ վաղվաղակի կամի պատմել ամենեցուն, և փութայ վասն զի դատապարտեսցի՝ վասն որոյ և տանջեալ մեռցի. և եթէ իցէ ծառայ որ չարախօսեսցէ[6] զնմանէ առ Տէր իւր, և ընդ ամենայն նեղութիւնս ձեռնարկէ անցուցանել զնա ; և կամի[7] թէ ո՞րպէս սպանցէ զնա. վասն զի ատելութիւն գործակից լինի նախանձու և ընդդէմ զինի բարեգործացն հանապազ։ Վասն զի զյաջողութիւն[8] նոցա հանապազ լսելով. և զոր օրինակ սէր զմեռեալս կամի կեցուցանել, և յորոյ վերայ վճիռ մահուն կայ՝ կամի վերստին կոչել, այսպէս և ատելութիւն զկենդանին կամի սպանանել՝ և ընդ սակաւ ինչ յանցմանց ոչ կամի թէ կեցցէ. վասն զի ոգին ատելութեան և նեղասրտութեան՝ գործակից լինի սատանայի յամենայն ի մահ մարդկան. իսկ հոգին սիրոյ և երկայնմտութեան գործակից լինի պատուիրանաց Աստուծոյ ի

1. Գ. մոլորէցէք։
2. Ա և Բ. պղծութեան նմա։
3. յԱ. յԲ և յԳ. չիք որ։
4. Ա. Բ և Գ. զի ունայնութեան։
5. Ա. Բ և Գ. անօրինել։
6. Գ. չարախօսեսցէ զնմանէ Տէր իւր։
7. Բ. խորհի։
8. Գ. զատելութիւն. Ա և Բ. զյաջողութիւնս... լսելով և տեսանելով հեշտանքանս, և...։

փրկութիւն մարդկան։ Վասն զի զօր հանապազ զատու-
թիւն խօսել[1] ընդ ճշմարտութեանն և զփոքրն մեծա-
ցուցանելով, ընդ խաւարն իբրև ընդ լոյս նայի, և
զքաղցրն դառն առնէ. զրպարտութիւն ուսուցանէ և
բարկութիւն և պատերազմ և թշնամանս և զամե-
նայն ագահութիւն չարեաց, և ժանդիւ բանսարկու-
թեամբ զսիրտն լնու։ Զայս ի միամտութենէ ասեմ ձեզ,
որդեակք իմ, եթէ[2] զմարդ մերժիցէք[3] զատելութիւն
բանսարկուին, և միայն նայիցիք ի սէրն Աստուծոյ։
Արդարութիւն հարց հանէ զատելութիւն, և խոնար-
հութիւն կորէ զթշնամութիւն[4]. վասն զի արդարն
և խոնարհն պատկառեն գործել զապիրատութիւն, ոչ
եթէ յինքեանց սրտից՝[5] վասն զի Տէր հայի ի խոր-
հուրդս նոցա, և ոչ չարախօսէ զառնէ ճշմարտէ. վասն
զի երկիւղ բարձրելոյն յաղթէ ատելութեան. զի եր-
կուցեալ մինչ գուցէ յանցանիցէ[6] առ Տէր իւր, և ոչ
կամի ամենևին և խորհրդովք անիրաւել ընդ[7] մար-
դիկ։ Զի զայս տեսեալ[8] զկնի ծանեայ՝ յորժամ ամ-
բարշտեցայ[9] վասն Յովսեփայ՝ յապաշխարելն[10] ի-
մում. զի վասն Աստուծոյ ճշմարիտ ապաշխարու-
թիւն ի բաց հանէ զխաւարն և լուսաւորէ զաչսն,
և գիտութիւն տայ խորհրդոցն, և առաջնորդէ հոգ-
ւոյն[11] ի փրկութիւն. զոր ոչ է ուսեալ ի մարդկանէ
գիտէ ապաշխարութիւն. վասն զի ած Աստուած ի
վերայ իմ ախտ լերդի, և եթէ ոչ աղօթիցն[12] Յա-
կոբայ հօր իմոյ օգնեալ էր ինձ, փոքր մի՛ ևս որոշեալ
լինէր յինէն[13] հոգի իմ. զի ի ձեռն[14] որով անի-

1. Ա և Բ. խօսելով։
2. Բ. զի մի՛ մերժեսցէք զհեծանս, զի ատելութիւն բերէ ի բանսար-
կուէն, այլ զհայրն։
3. Ա. մերժեսջիք։
4. Այլք զատելութիւն։
5. Գ. սրտից մտաց։
6. Բ. յանցանիցէ։
7. Ա և Բ. առ մարդս։
8. Այլք տեսանել էր զինի։
9. Այլք ապաշխարեցայ։
10. Պակասի յԱ և յԲ. յապաշ-
խարելն իմում։
11. յԱ. չիք հոգւոյն։
12. Բ. աղօթիցն։
13. յԱ և յԲ. չիք յինէն։
14. Բ. յաւելու ախորժից։

րաւի մարդ՝ նովին և տանջի, վասն զի խիստ[1] ա-
նողորմ էր լեարդ իմ ընդ[2] Յովսեփայ. լերդիւ
ախտացեալ լինէի և անողորմ տանջեցայ[3] մինչեւ
յամիսս մետասան ցորքան ժամանակ ունէի զչար ա-
տելութիւն ընդ Յովսեփայ մինչեւ վաճառեցաք[4] զնա:
Եւ արդ[5], որդեակք իմ, սիրեցէք իւրաքանչիւր ոք
զեղբայր իւր՝ և որոշեցէք զատելութիւն ի սրտէ ձեր-
մէ, սիրելով զիրեարս գործովք և բանիւք և խոր-
հրդովք հոգւոյն. վասն[6] որոյ և ես առաջի հօր
իմոյ զխաղաղութիւն[7] խօսէի ընդ Յովսեփայ. և իբ-
րեւ[8] ելանէի՝ ոգին մոլորութեան խաւարեցոյց զմիտս
իմ յատելութիւն, և յուղարկէր զհոգի իմ զի սպա-
նից զնա: Արդ սիրեցէք զմիմեանս սրտի մտօք. և ե-
թէ յանցանիցէք միմեանց, խօսեցարուք[9] ընդ նմա խա-
ղաղութեամբ, արտաքոյ սահմանաց հանել զժանգ
ատելութեանն և յոգւոջ քում[10] ոչ ունիս զնենգու-
թիւն: Եւ եթէ խոստովանեալ ապաշխարեսցէ[11] թո-
ղութիւն արա նմա[12]. իսկ եթէ ուրասցի[13] մի՛ հա-
կառակիր ընդ նմա, գուցէ երդուեալ նմա կրկնապա-
տիկ մեղիցես[14]. և լուիցէ[15] ոք օտար ի կռուելն
զխորհուրդս ձեր, ատեսցէ զձեզ[16] և թշնամիք լի-

1. յԱ և յԲ չիք. խիստ:
2. Բ. ընդդէմ:
3. Այլք. տանջէի:
4. Այլք. վաճառեցի:
5. Բ. յաւելու ով որդեակք ճշմարիտ ի բանս այս, զի որովհանդամով և ծերանալ՝ նովիմբ և լարելով, և այժմ որդեակք իմ:
6. Ա և Բ. յաղագս:
7. Բ. խաղաղութեամբ. Ա. խաղա-ղութիւն:
8. Բ. Եւ յորժամ ելանէի ի հօրէն իմմէ, հոգին ատելութեան խա-ւարեցուցանէր զմիտս իմ, և յաղարկէր զհոգին իմ՝ զի սպա-նից զնա. իսկ Ա. Եւ իբրև ե-լանէի ոգի ատելութեան խա-ւարեցուցանէր զմիտս իմ:
9. Ա. խօսեաց ընդ նմա զխաղա-ղութիւն. Բ. խօսեաց դարձեալ ընդ նմա զխաղաղութիւն:
10. Բ. յերրամ. Գ. քո:
11. Ա. ապաշխարեսցէ. Բ. ապաշ-խարեսցէք:
12. Բ. թողութիւն արարէք փոխանց:
13. Բ. ուրացցի նա՝ մի հակառակիլ
14. Բ. յաւելու զի պատճառ երդ-մանն լինի:
15. Բ. լուիցէն... օտարք:
16. Ա և Բ. զքեզ և թշնամի լիցի քեզ:

նեցէք և մեծ մեղս գործեցէք՝ և[1] հանդերձի բազում անգամ զի սպանցէ զքեզ չարութեամբ առեալ ի քէն զժառանգն ։

Արդ եթէ ուրանայք յայտնանէ և պակասէք[2]. յորժամ յանդիմանէք՝ համդարտ լերուք և մի հրապարակագոյժ առնէք զնա. վասն զի որ ուրանայ զայսպիսի ինչ[3], ապաշխարէ և ոչ մեղանչէ ումեք՝ այլ ևս պատուէ զքեզ և երկնչի և խաղաղարար լինի. իսկ եթէ անամօթ է և համբառնայ չարութեամբ[4], և եթէ այսպէս է՝[5] թող նմա բոլորով սրտի քոյ, և տուր ի ձեռս նորա զի կատարեալ առաջնորդեսցէ՝ վասն զի վայելէ այսպէս. եթէ առաւել բարձրասցի մի նախանձիք, յիշելով եթէ ամենայն մարդոյ[6] մահ առաջի կայ, իսկ Տեառն օրհնութիւնս մատուցէք որ շնորհէ զբարին և զօգտակարն ամենայն մարդոյ. քննեա զդատաստանս Տեառն և համդարտեա զխորհուրդս քո և ոչ նուազեսցիս ։ Զի[7] թէպէտ և ի չարութենէ ոք մեծասցի, զոր օրինակ և Եսաւ հօրեղբայրն մեր՝ մի նախանձիք՝ զսահմանս Տեառն կալարուք[8] ։

Զի եթէ առնուցուք զմեծութիւնս չարութեամբ, և ապաշխարեսցէք թողութիւն լինեցի ձեզ. իսկ եթէ ոչ ապաշխարեսցէք՝ պահեալ լինիք յաւիտենական տանջանացն ։ Զի որ աղքատն է և աննախանձ՝ յամենայնի զՏեառնէ գոհանայ, այնպիսին քան զամենեսեան մեծատուն է. վասն զի ոչ ունի զչար զբօսմունս մարդկան. արդ ի բաց առէք[9] զատելութիւն ի հոգւոց ձերոց և սիրեցէք զմիմեանս ուղղութեամբ սրտից ։ Ասացէք և դուք զայս որդւոց ձերոց զի պատուեսցեն զՅուդա և զՂեւի վասն զի ի նոցանէ ծագելոց է Տէր

1. Պակասէ երկու տող յԱ և յԲ. մինչև ցարդ ։
2. Ա և Բ. զադրջատեսցէ... յանդիմանիցէ ։
3. Ա և Բ. էրս ։
4. Բ. յաւելու զչայն ։
5. Բ. Եթէ մի խրատաբանել ընդ նմա, այլ թող ։
6. Բ. մարդոյ. Ա. մարդկան ։
7. Այլք և ։
8. Այլք ընդունելարուք ։
9. Ա և Բ. արարէք ։

փրկութիւն [1] Իսրայէլի։ Եւ ծանեայ զի ի ժամանակս կատարածի յետս կացցեն որդիքն ձեր ի Նմանէ և յամենայն անօրէնութիւնս և ի չարութիւնս և յապականութիւնս լինին առաջի Տեառն։ Եւ սակաւ մի դադարեալ՝ [3] դարձեալ ասաց․ Որդեակք իմ լուարուք ինձ և թաղեցէք զիս առ հարս իմ։ Եւ համբուրեալ զորդիս իւր ննջեաց խաղաղութեամբ․ և զկնի հինգ ամաց հանին զնա և թաղեցին ի Քեբրոն փառաւորապէս [4] ընդ հարս իւր։

1․ Այլք ամենայն Իսրայէլէ։
2․ յԱ և յԲ․ չիք։
3․ Բ․ Ղևէ է խօսից, և ապա։
4․ յԱ և յԲ․ չիք փառաւորապէս ընդ հարս իւր։



# ԿՏԱԿ ԱՍԵՐԱՑ[1]



Հրաման պատասխանոյ[2] կտակին Ասերայ, զոր խօսեցաւ ընդ որդիսն իւր, ի հարիւր և ի քսան և ի հինգ ամի կենացն իւրոց՝ յորժամ[3] հիւանդացաւ կոչեաց զնոսա և ասէ. Լուարուք որդիք Ասերայ հօր ձերոյ՝ զի զամենայն ճանապարհս[4] ուղղութեան առաջի Աստուծոյ ցուցի ձեզ: Երկուս ճանապարհս ետ Աստուած որդւոց մարդկան, և երկուս խորհուրդս և կատարածս. վասն[5] այսորիկ ամենայն ինչ երկու են, վասն զի ընդդէմ է միոյն միւսոյն. ճանապարհք երկու են բարւոյն և չարին և յորում են երկու խորհուրդք ի սիրտս մեր և ընտրութիւն է նոցա: Արդ եթէ հոգիքն կամիցին զբարիս՝ ամենայն գործք նորա արդարութեամբ են, և թէպէտ մեղանչէ առժամայն ապաշխարէ. վասն զի զարդարութիւն զմտաւ ածէ և ի բաց ընկենու զչարութիւն, դարձուցանէ վաղվաղակի զչարն յինքենէ, և արմատաքի խլէ

1. Բն. Կտակ Ասերայ որդւոյն Յակոբայ վասն երկդիմութեան և առաքինութեան. Այլք. Կտակ Ասերայ վասն երկդիմութեան և առաքինութեան:
2. Այլք պատասխանեաց:
3. Այլք մինչ դեռ կենդանի էր ասէ ցնոսա:
4. Բ. ուղղութեան... (Ա և Գ. ցուցէց):
5. Այլք յաղագս:

զմեղսն. ապա եթէ ի չարութիւնս խոնարհեսցին[1] խորհուրդքն, ամենայն գործք[2] ի չարութեան են՝ և մղեալ զբարին յինքենէ, ընդունի զչարիս. և ապա տիրեալ[3] բեկիարայ թէպէտ բարի ինչ գործիցէ, և յորժամ սկիզբն առնիցէ բարի գործոցն՝ վախճան[4] գործոց նորա ի չարագործութեան[5] վարէ զնա, վասն զի գանձարան խորհրդոցն ժանկիւ չարաւ չարութեամբ հոգւոյն լցեալ է։ Եւ է ոգի որ ասէ, թէ բարին փոխանակ ընդ չարին և զկատարածն ի բաց[6] ի չարիս ածէ։ Եւ[7] մարդ որ ոչ գթայ՝ սպասաւորել նմա ի չարէն է, և է այս երկդիմութիւն, և այս ամենայն չարութիւն է. և է մարդ որ սիրէ զչար որպէս և ինքն է ի չարութեան, վասն զի մեռանել կամի ի չարիս նորա. և վասն[8] այսորիկ յայտնէ զի երկդիմի է։ Իսկ ամենաչարին գործքն՝ թէպէտ և սիրով են՝ չարութեամբ են թաքուցանելով զչարն. որ անուամբ որպէս թէ բարի երեւի՝ իսկ կատարած գործոյն գոյ ի չարիս։

Այլք դարձեալ գողանան, ապիրատին, յափշտակեն, ագահեն և ողորմին աղքատաց. երկդիմի է այս և ամենեւին չար։ Ագահէ զմերձաւորն[9] և բարկացուցանէ զԱստուած, և ի բարձրեալն Աստուած սուտ երդնու, և աղքատին ողորմի. և պատուիրողի[10] օրինացն Տեառն ստէ, և զայրացուցանէ և զաղքատն հանգուցանէ. զմարմինն պայծառացուցանէ և զբազումս սպանանէ, և սակաւուց ողորմութիւն առնէ. երկդիմութիւն է այս և չար ամենեւին։ Այլք դարձեալ շնան և պոռնկին և հեռացուցանեն զանձինս ի դարմանոյ[11], և պահելով՝ զչարիս գործեն, և զօրութեամբն և մե-

1. Ա. և Բ. խորհեսցին։
2. Ա և Բ. յաւելուն նորա։
3. Բ. տիրեալն է։
4. Բ. վճար։
5. Ա. չարագործութեան. Բ. չարագործութեանն։
6. Ա և Բ. երագն։
7. Ա և Բ. է։
8. Այլք յաղագս։
9. Ա և Բ. մերձաւորն։
10. Ա. պատուիրանի. Բ. չփոթէ։
11. Ա և Բ. դարմանոց. Բ. յաւելու կերակրոց և պահելով։

ծուլութեամբն իւրեանց զբազումս ի վայր քարշեն, և յամբարտաւանութիւն չարութեանցն առնէ ողորմութիւն. և այսպիսին երկդիմի երեւի և է չար ամենեւին:

Արդ այսպիսիքս նման են խոզից թաւուտանց, վասն զի կէս նոցա մաքուր է՝ բայց ճշմարտութեամբ պիղծ են[1]. վասն որոյ և Աստուած ի տախտակսն երկնայինս իսկ ասաց: Արդ և դուք, որդեակք իմ, մի՛ լինիք իբրեւ զնոսա երկդիմիս ի չարիս և ի բարիս, այլ միայն զհետ բարութեան երթայցէք[2]. վասն զի Աստուած հանգչի յայսպիսիսն, և մարդիկ կարօտասցին նմա. ի չարութենէ փախերուք, սպանանել զբանսարկուն բարի գործովք ձերովք. վասն զի երկդիմիքն ոչ[3] Աստուծոյ՝ այլ ցանկութեանցն իւրեանց ծառայեն[4], զի բեկիարայ հաճոյք եղիցին և մարդկան՝ որք[5] եթէ նման են ինքեանց[6]: Վասն զի բարի մարդիկք են միադիմիք, թէպէտ և կարծիցեն երկդիմեանցն մեղանչել, արդարք են առաջի Աստուծոյ: Բազումք են որ թէպէտ և սպանանեն զչարս, և երկուս գործս գործեն՝ զչարն բարեաւն, ամենեւիմբ[7] է բարեաւ, զի զչարն արմատաքի խլեալ կորոյս. և են դարձեալ ոմանք որ ատեն զողորմածն և զանիրաւն, զչնացողն և զպահողն. և այս երկդիմութիւն է՝ և է գործ բարի. զի նմանող Տեառն լինի՝ ոչ ընտրելով[8] զերեւելի բարին ընդ ճշմարտութեանն[9]: Այլք դարձեալ ոչ կամին[10] ընդ զեղխացեալսն տեսանել, զի մի՛ թաթաւեսցի մարմինն և պղծեսցի հոգին. արդ այս երկդիմութիւն է, և ամենեւիմբ բարի է: Եւ այսպիսիքս եղջերուաց և

1. յԱ և յԲ. չիք տող մի
2. Ա և Բ. ընթասջիք:
3. Բ. ոչ են Աստուծոյ ծառայք:
4. Ա և Բ. ծառայք են:
5. Բ. որոց:
6. Բ և Գ. իւրեանց. Ա. նոցա:
7. Չիք յԱ և յԲ. ամենեւին է բարեաւ:
8. Ա. ընտրանելով. Բ. ընտրանէ Աստուած:
9. Ա և Բ. ճշմարիտ բարութեան. Բ. յաւելու այլ ընտրանէ զանիրաւսն և զխաղաղն բարին և զողորմութիւնն:
10. Ա և Բ. յաւելուն զխորհն:

այծեմանց նման են, վասն զի բարուցն վայրենութեամբն անսուրբք երեւին[1] պիղծք. զի նախանձուն Աստուծոյ հեռացեալք յամենայնէ՝ յորմէ և Աստուած ի ձեռն պատուիրանացն ատել հրամայեաց, և արգելուլ զչարն ի բարւոյն:

Արդ[2] տեսէք, որդեակք իմ, զիարդ երկու երկու են ընդդէմ միմեանց՝ և մինն ի միոջէն ծածկեալ լինի, և զկեանս մահ ընդունի, և զփառս անարգութիւն, զտիւն գիշեր, զլոյսն խաւար. բայց ամենեքեան ոգւա ընդ տունջեան են և ընդ կենօք արդարութեան. յաղագս[3] որոյ և մահուաննն կեանք յաւիտենական կան և մնան: Եւ ոչ աւել զճշմարտութիւննն սուտ՝[4] և ոչ զարդարն անիրաւ, վասն զի ամենայն ճշմարտութիւն լուսով է: Արդ զայս ամենայն քննեալ ի կեանս իմ՝ և ոչ մոլորեցայ ի ճշմարտութենէ Տեառն, այլ զպատուիրանս բարձրելոյն խնդրեցի ամենայն զօրութեամբ իմով, և գնացի միամտութեամբ ի բարւոջ: Արդ հայեցարուք, որդեակք իմ, ի պատուիրանս Տեառն՝ և միամտութեամբ զհետ երթայք ճշմարտութեանն. վասն զի երկդիմիք երկպատիկ տանջեսցին. զգիւս մոլորութեան ատեցէք՝ որք ընդդէմ մարդկան հանդիսանան. զօրէնս Տեառն պահեցէք, և մի՛ հայիք ի չարն իբրեւ՝ ի բարի, այլ յարդարն և ի բարին հայեցարուք, և պահեցէք զնա յամենայն պատուիրանս Տեառն. առ նա դարձեալք և ի նմանէ[5] հոգացեալք. վասն զի ի վախճան մարդկան՝ ցուցանէ զարդարութիւն յինքեանց[6] և ճանաչել զօրէնս Տեառն և զսատանայի. զի եթէ ամբոխեալ հոգիքն երթայցեն, տանջեալ լիցին ի չար չնչոյ՝ որում և ծառայեացն իսկ աստ ցանկութեամբ և չար գործովք. ապա եթէ հանդարտութեամբ ծանեաւ զհրեշտակն խաղաղութեան՝ զմխիթարիչն կե-

1. Ա. Բ և Գ. բայց են բոլորովին (Գ. ամենևին) սուրբ:
2. Աստի մինչև Արդ հայեցարուք չիք յԱ և յԲ:
3. Գ. վասն:
4. Գ. [illegible]:
5. Ա և Բ. նմին:
6. Աստի մինչև Եւ [illegible] չիք յԱ և յԲ:

նաց իւրոց. մի լինիք իբրև զՍոդոմայեցիսն որք [1] ծանեան զհրեշտակն խաղաղութեան Տեառն, և կորեան մինչև յաւիտեան։ Գիտեմ զի մեղանչելոց էք և մատնելոց ի ձեռս թշնամեաց ձերոց, երկիրդ ձեր անապատ եղիցի, և սրբութիւն ձեր ապականեսցի, և դուք ցրուեսջիք ընդ [2] ամենայն անկիւնս աշխարհի. և եղիջիք ոռոշեալք ի միմեանց և արհամարհեալք, որպէս զջուր անպիտան, մինչև արասցէ այց բարձրեալն ի վերայ երկրի. և Նա եկեալ իբրև զմարդ և ընդ մարդկան կերիցէ և արբցէ, և հանդարտութեամբ փշրեսցէ զգլուխ վիշապին [3], և փրկեսցէ զԻսրայէլ և զամենայն հեթանոսս, Աստուած որպէս [4] զմարդ երեւեալ։

Արդ ասացէք զայս որդւոց ձերոց, մի գուցէ և ոչ հաւատայցեն Նմա, զի կարդացի ես ի տախտակսն երկնայինս. զի ոչ հաւանեսցին Նմա, և անօրինելով անօրինեսցին ի Նա, ոչ հայելով յօրէնս Աստուծոյ՝ այլ ի մարդկան պատուիրանս և ի չարիս անկեալք լինիք. այլ յաղագս այսորիկ ցրուեսջիք իբրև զԳադ և զԴան զեղբարսն մեր, որ զերկիրն իւրեանց ոչ ծանեան, և ոչ զցեղս և ոչ զլեզուս իւրեանց. և ժողովեսցէ զձեզ Տէր հաւատովք, յուսով զթութեան [5] իւրոյ՝ վասն Աբրահամու, Սահակայ և Յակոբայ։

Եւ ասացեալ զնոսա զայս, հրաման ետ Նոցա և ասէ. Թաղեցէք զիս ի Քեբրոն, և վախճանեցաւ զննջումն բարի [6]. և յետ այսորիկ արարին որդիք Նորա որպէս և հրամայեաց Նոցա և հանեալ զնա թաղեցին առ հարս իւր [7]։

1. Գ. որք ոչ։
2. Գ. ընդ չորս անկիւնս աշխարհի։
3. Գ. յաւելու ի վերայ Հօրոց։
4. Գ. իբրև։
5. Գ. գնուանեամբ։
6. Այլք. բարի ննջմանց։
7. Բ. յաւելու ի Քեբրոն։

# ԿՏԱԿ ՅՈՎՍԵՓԱՅ



Հրաման կտակի պատասխանոյ[1] Յովսեփայ, յորժամ հանդերձեալ էր վախճանել. կոչեաց զեղբարսն իւր և զորդիսն, և ասէ ցնոսա. Լուարուք[2] Յովսեփայ սիրեցելոյ յԻսրայելէ հօր ձերոյ, և ունկն[3] դիք բանից իմոց: Ես տեսի ի կեանս իմ զնախանձ և զմահ, և ոչ մոլորեցայ ի ճշմարտութենէ Տեառն. և եղբարք իմ այսուքիկ ատեցին զիս[4] և կամէին սպանանել զիս, և Աստուած հարցն իմոց պահեաց զիս. ի ջրհորն ընկեցին զիս, և բարձրեալն եհան զիս. ի ծառայութիւն վաճառեցայ ես, և[5] Տէր ամենայնի ազատեաց զիս. ի գերութիւն վարեցայ ես, և Տէր ինքնին դարմանեաց զիս. միայն էի և Աստուած հօր իմոյ[6] մխիթարեաց զիս. ի հիւանդութեան էի՝ և խնա-

1. Այլք. պատասխանեաց Յովսեփայ՝ իբրև հանդերձեալ։
2. Ա և Բ. յաւելուն եղբարք իմ և որդեակք իմ. լուարուք։
3. Այլք և ունկն դիք որդիք հօր ձերոյ. Գ. ձերում։
4. Ա և Բ. յաւելուն և Տէր օգնեաց զիս. Այլք. ատեա կամէին սպանանել զիս։
5. Ա և Բ. հզօր ձեռն նորա օգնեաց ինձ. ոտիւք դողորեցայ, և Տէր ինքնին։
6. Յայլս չիք հօր իմոյ։

մակալն[1] այցելու եղեւ ինձ. ի բանտի[2] եղայ՝ և Աստուած իմ շնորհալից արար զիս. ի կապանս էի՝ և Տէր արձակեաց զիս. ի չարախօսութիւնս[3], և ջատագովեաց վասն իմ. ի բանտս դառինս Եգիպտացւոց, և անտի փրկեաց զիս։ Եւ այսպէս Փոտիփար[4] հաւատաց ինձ զտուն իւր, և ես հանդիպեցայ ընդդէմ կնոջ անամօթի, որ փութացուցանէր զիս մեղանչել ընդ ինքեան։ Այլ Աստուած հօր իմոյ[5] փրկեաց զիս յայրմանէ հրոյն. բանտարգել եղէ և չարչարեցայ, և ետ զիս Տէր ի գթութիւնս առաջի բանտապետին. վասն զի ոչ թողու Տէր զերկիւղածս իւր, և ոչ խաւարեցուցանէ կապանօք և կամ նեղութեամբ և կամ վտանգօք, վասն զի ոչ իբրեւ[6] զմարդ պատկառէ Աստուած, և ոչ որպէս որդի մարդոյ վատասրտէ, և ոչ որպէս զերկրածին տկարանայ և կամ մերժի։ Զի[7] է յամենայնի Տէր և ազգի ազգի ձեւօք աղաչի, դոյզն մի հեռացեալ առ ի փորձել զհոգւոյն խորհուրդն. ի տասն փորձութիւնս ընտիր զիս երեւեցոյց, և յամենեսեան յայտնի ընտիր գտայ. զի մեծ դեղք են երկայնմտութիւնքն[8] և բարիս շնորհեն համբերողացն. քանիցս անգամ եգիպտացին սպառնացաւ ինձ մահ։ Քանիցս անգամ տանջանաց մատնեալ[9]. և դարձեալ վերստին կոչեաց զիս և սպառնացաւ՝ այլ ես ոչ կամեցայ[10] կամակատար լինել նմա։ Եւ ասէր ցիս. Տիրեսցես ինձ և իմոցս ամենայնի՝ եթէ տայցես[11] զքեզ ինձ՝ և եղիցիս իբրեւ զտէրն իմ։ Բայց ես յի-

1. Այլք Աստուած։
2. յԱ և յԲ. չիք ի բանտի եղայ և Աստուած իմ։
3. Բ. որ ի չարախօսութենէ էր և ջատագովեաց զիս (Ա. Ջատագով եղև ինձ) ի բանտս Եգիպտացւոց, և փրկեաց զիս ի նախանձոտ ծառայակցացն և բարձրացոյց զիս։
4. Ա և Բ. Պետափրէս։
5. Ա և Բ. հօր իմոյ Իսրայէլի։
6. Ա և Բ. որպէս։
7. Ա և Բ. զի ամենայն տեղիս է։
8. Ա և Բ. համբերողութեան և բազում բարիս շնորհէ (Բ. համբերողութեանն։
9. Գ. մատնեաց։
10. Ա. իմ ոչ կամեցելոյ։
11. Ա և Բ. տեղեացես ինձ։

չէր զբանս Հօրն իմոյ Յակոբայ, և մտանէր առանձին [1]
ի սենեակ՝ և աղօթս առնէր առ Աստուած, և պահէր
զեօթն զաւուրսն զայնոսիկ [2], և երևէր եգիպտացւոյն
թէ փափկացեալ լինէր. զի որք վասն Աստուծոյ պա-
հեն, դիմաց շնորհս առնուն. և եթէ երբեմն ուրեք՝ գի-
նի ոչ ըմպէր, զի երից աւուրց առեալ զպարմանն և տա-
յր զայն աղքատաց և հիւանդաց. և [3] առաւօտ առնէր
առ Տէր և լայր վասն Մեփայի [4] եգիպտացւոյն. վասն
զի [5] յոյժ և անպակաս շտապէր զիս [6], և ի գիշերի
մտանէր առ իս ի պատճառ տեսանելոյ. և վասն զի
որդի արու ոչ ունէր [7] նա, պատճառէր առնել զիս
որդի ինքեան. և ես աղօթս արարի առ Տէր վասն [8]
նորա՝ և ծնաւ որդի։ Եւ ի բազում ժամանակս իբ-
րեւ զորդւով գիրկս արկանէր զինեւ, և ես ոչ գիտէի.
և յետ այսորիկ ի պոռնկութիւն կամեցաւ ձգել [9] զիս։
Եւ ապա իմ գիտացեալ [10] տրտմեցայ մինչեւ ի մահ. և
եղեւ իբրեւ ել նա՝ եկն միտք իմ յիս՝ և սգացայ [11] վասն
նորա աւուրս բազումս։ Իբրեւ գիտացի զնենգութիւն
նորա և զմոլորութիւն [12], ասէի ցնա զբանս բարձրե-
լոյն, զի թերեւս դարձցի ի չար ցանկութենէն իւրմէ.
քանիցս [13] անգամ իբրեւ սուրբ բանիւք շողոքորթէր
ինձ. և նենգութեամբ բանիւ գովէր զիս և զպարկեշ-
տութիւն իմ առաջի առն իւրում պատմէր. և [14] կամե-
ցեալ դայթագղեցուցանել զիս առանձինն [15], յայտնի
փառաւորէր զիս իբրեւ զպարկեշտ, և ի ծածուկ ասէր

1. Չիք յայլս առանձին։
2. յԱ և յԲ. տող մի պակասէ։
3. Բ. այլ և զհետևոյն ամենայն ա-ղօթէ։
4. Բ. վասն Թադէոսեան տիկնոջն ի-մոյ. Ա. Թեմեթայ։
5. Ա և Բ. ժանդէ։
6. Բ. յաւելու աստ է փորձել զպատանեկութիւն։
7. Ա և Բ. փոյթ նորա։
8. Այլք չունին վասն նորա։
9. Ա և Բ. արկանել։
10. Այլք խմացեալ։
11. Ա և Բ. ողբացայ և լացի։
12. Բ. զմոլորութիւն։
13. Բ. յաւելու և նա յայտնապէս աստ ասա մարգարէին ասէր, զան-կամ առ սուրբ Թադէոս (Ա. ժանդէ զանկամ առ սուրբ Թա-դէոս) լուսաւորիչր...։
14. Բ. և ի ծածուկ խօսեցաւ։
15. յԲ. չիք առանձինն։

ցիս. Մի երկնչիր յառնել իմմէ, վասն զի վստահացեալ
է ի պարկեշտութիւնդ քո. զի Թէպէտ և ասէ ոք
ցնա վասն մեր՝ չհաւատայ. և ես վասն[1] այսր ամե-
նայնի գոհանախշտիկ լինէի, և խորգովք պաղատէի
առ Տէր, զի ապրեցուցէ զիս յեգիպտուհւոյն։ Եւ
իբրեւ ոչ հանդուրժէր բանին վարդապետութեան,
մտանէր առ իս կամելով[2] զբանն Տեառն, և ասէր.
ԵԹէ կամիս Թողից զկուռսն՝ ննջեա ընդ իս[3], և հա-
ւանեցուցանեմ ես զայրն իմ ի բաց լինել[4] ի կռոցն
և յօրէնս Տեառն[5] քո գնալ։ Եւ ասեմ ցնա. Ոչ կամի
Տէր պղծութեամբ զպաշտօնեայս իւր ծառայել[6] նմա,
և ոչ հաճի Տէր ընդ շունս[7]։ Եւ նա լուռ եղեւ կա-
րծելով[8] կատարել զկամս իւր. և ես յաւելուի ի
պահս և յաղօԹս՝ զի ապրեցուսցէ զիս Տէր ի նմանէ։

Դարձեալ յայլում ժամանակի ասէր ցիս. ԵԹէ
չնացող ոչ կամիս լինել, ես սպանից զեգիպտացին[9],
և այսպէս օրինօք առից զքեզ ինձ այր։ Եւ ես իբրեւ
լուայ զայս՝ պատառեցի զպատմուճանն իմ՝ և ասացի.
Կին դու պատկառեա ի Տեառնէ, և մի՛ առներ զգործ
զայդ չար՝ զի մի՛ սատակեսցիս, վասն զի և ես պատ-
մեցից զչար զգործս քո ամենեցուն։ Եւ երկուցեալ[10]
նորա աղաչէր զիս, զի մի՛ ումեք ասիցեմ զչարիս նորա։
Եւ նորա գնացեալ՝ ընծայիւք ջեռուցանէր զիս, և ա-
ռաքէր ինձ զամենայն վայելչութիւն որդւոց մարդկան.
առաքեաց ինձ կերակուրս կախարդութեամբ Թաթա-
խեալ. և իբրեւ եկն ներքինին որ եբեր ինձ զդար-
մանն,[11] ի վեր հայեցեալ տեսի այր մի ահաւոր՝ զի
տայր ցիս հանդերձ պատենիւք սուր. և զգացի[12] ե-

1. Այլք յաղագս։
2. Ա և Գ. կամելով տառանել. Բ. կամել տառանել։
3. Բ. յաւելու և կամս դէր ինչ։
4. Ա և Բ. կալ։
5. Բ. չունի Տեառն։
6. Ցայլս չիք ծառայել նմա։
7. Բ. ընդ ընացողս և ընդ գոռ-նկէս։
8. Ա. և կատարելովզկամս։
9. Բ. յաւելու զայրն իմ։
10. յԱ և յԲ. չիք և երկուցեալ նորա։
11. Բ. կերակուրն։։
12. Ա և Բ. զգացի ներդեռութեան այս է մոլորութեան ինչ ոգւոյ (Ա. է մոլորութենէ ինչ. ոգւոյ) և այլ։

թէ մոլորութիւնն այն ի նենգութիւն է ինձ, և սկսայ լալ. և ոչ զայն և ոչ յայլ խորտկաց նորա ճաշակեցի։ Եւ յետ [1] միւսոյն աւուր եկեալ նորա առ իս՝ ծանեաւ [2] զկերակուրսն, և ասէ ցիս. Զի՞նչ է այս զի ոչ կերար ի կերակրոցս։ Եւ ասեմ ցնա. Զի լցեր զդոսա մահուամբ. և զիա՞րդ ասացեր եթէ ոչ մերձենամ ի կուռսն այլ առ Տէր. և այժմ ծանիր զի Աստուած հարցն իմոց ի ձեռն հրեշտակի իւրոյ յայտնեաց ինձ զչարութիւն քո, և ես պահեցի զայդ ի յանդիմանութիւն քեզ՝ զի թերևս տեսցես և ապաշաւեսցիս. և զայս գիտացիր զի որք պարկեշտութեամբ զԱստուած պաշտեն [3], ոչ հանդարտէ չարութիւն ամպարշտաց. և առեալ առաջի նորա կերայ ի խորտկացն։ Եւ ասացի ցնա. Աստուած հարցն իմոց և հրեշտակ նորա պահեսցէ զիս։ Եւ նա անկեալ ի վերայ երեսաց իւրոց [4] ելաց, և իմ մատուցեալ խրատէի զնա, և ուխտեաց ինձ ոչ ևս գործել զամպարշտութիւնն զայն. սակայն սիրտ նորա էր չռայլեալ ընդ իս՝ և յոգւոց հանեալ արտմեցաւ։ Եւ տեսեալ զնա առն իւրոյ եգիպտացոյն ասէր. Ընդէ՞ր ի վայր անկեալ են [5] երեսք քո։ Եւ նա ասէ. Ցաւ սրտի իմոյ արգելու զիս [6] և նա ողջացուցանէր զոչ հիւանդացեալն։ Եւ յաւուրն երկրորդի [7] վազեալ նորա առ իս մինչ դեռ էր այր նորա արտաքոյ՝ և ասէր ցիս կամ խեղդիմ, կամ ի ջրհորն ընկենում զիս, և կամ թէ ի վախից ի վայր՝ [8] եթէ ոչ ննջես ընդ իս։ Եւ իմ գիտացեալ եթէ ոգին բելիարայ չտապէ [9] զնա, աղօթս արարի առ Տէր և ասացի ցնա. Ընդէ՞ր խռովիս կամ ամբոխիս ի մեղս

1. Ա և Բ. զհետ։
2. Ա և Բ. չուներին ծանեաւ զկերակուրսն։
3. Բ. տարապարտագործութիւն ոչ հնարին պատրել։
4. Ա և Բ. յոտս իմ ելաց, և իմ յարուցեալ։
5. Ա և Բ. կան։
6. Եդաւ ըստ Գ. զի բնագիրն և այլք ունին ցաւ է և հեղձամղ սրտի իմոյ արգելուն զիս։
7. Ա և Բ. և ընդ անցանելն իմ յայնժամ։
8. յԱ և յԲ. պակասին բանքս։
9. Ա և Բ. չտապեցուցանէ։

կարեւորս կորուսեալք. յիշեա [1] զայդ, եթէ սպանանես զքեզ, Ասիթո [2] հարճ առն քոյ հակառակ որդւոյ քոյ՝ կափիցէ զորդին քո և կորուսանէ զժառանգս քո յերկրէ։ Եւ ասէ ցիս. Ահաւասիկ սիրես զիս՝ բաւական է ինձ այս՝ զի հոգաս վասն կենաց [3] իմոց. արդ ակն ունիմ վայելել ի ցանկութիւնս իմ։ Եւ ոչ իմացաւ եթէ վասն Աստուծոյ իմոյ ասացի այսպէս, և ոչ վասն նորա։ Զի եթէ յախտս այսպիսի յանդգնութեանց և չարաց ոք անկցի՝ որպէս և նայն, նմա ծառայեսցէ, թէպէտ և բիւր [4] ինչ լսիցէ, յախտիցն յաղթեալ լինի, զնոյն կարծեալ և առ չար ցանկութեան իւրոյ։

Արդ ասեմ ձեզ, որդեակք իմ, զի ժամ էր իբրեւ վեցերորդ՝ յորժամ գնաց յինէն արտաքս. և ծունր իմ կրկնեալ [5] առ Տէր զամենայն տիւն և զամենայն գիշերն միահամուռ, և մօտ [6] յառաւօտն յարեայ արտասուելով առ Տէր, և խնդրելով զփրկութիւն եգիպտուհոյն [7]։ Եւ յետ այսօրիկ եկեալ բուռն եհար զհանդերձից իմոց, և ձգէր զիս բռնաբար ննջել ընդ ինքեան. և իբրեւ [8] տեսի թէ մոլեգնեալ է, թողի զհանդերձն իմ և մերկեալ փախեայ ի նմանէ. և ապա նորա զրպարտեալ զիս մատնեաց առն իւրում. և եգիպտացին արկ զիս ի բանտ ի տան իւրում, և ի վաղիւն տանջեաց զիս և առաքեաց ի բանտն փարաւոնի։ Եւ մինչ դեռ ես ի կալանս էի՝ հիւանդանայր եգիպտուհին ի տրտմութենէն, և լսէր հանապազ որ ես օրհնէի զՏէր զուարթ ձայնիւ՝ մինչ էի ի խաւարային տանն. և [9] փառաւորելով օրհնէի զԱստուած,

1. Ա և Բ. յիշեա զայս։
2. Այլք. չփոխեն զբանս զորոց զիմաստս չէ մարթ ի միտ առնուլ։
3. Ա և Բ. մահուան իմոյ։
4. Ա և Բ. բնաւին չլուիցէ։
5. Ա. խոնարհեցուցեալ. Բ. խոնարհեցուցի։
6. Բ և Գ. ընդ։
7. Բ. յաւելու Մեծնոյն։
8. Բ. ունի զայլ ինչ կարգ շարագրութեան, և թուի թէ այլ թարգմանութիւն իցէ։
9. Ա և Բ. և խնդութեամբ փառաւորէր զԱստուած։

որ միայն որոշեաց զիս ի պատճառանաց եգիպտուհոյն. զի բազում անգամ յղեաց առ իս ի բանտն, եթէ հաճեաց ընդ իս՝ և արձակեմ զքեզ ի կապանացդ: Եւ թէպէտ էր ի հիւանդութեան՝ իջանէր ի տարաժամ աւուրն[1] և լսէր զձայն իմ և յոգւոց հանէր. և իմ գիտացեալ զհառաչանս՝ նորա լուռ լինէի: Եւ մինչ էի ես ի տան նորա, մերկացուցանէր զբազուկս և զկուրծսն և զարունս ոտիցն՝ զի գայթագղեցուցանէր[2] զիս, և[3] Տէր պահէր զիս ի ձեռնարկութենէ նորա:

Արդ տեսէք, որդեակք իմ, թէ որպիսի՞ ինչ է համբերութիւն և աղօթք՝ հանդերձ ժուժկալութեամբ[4] և պահօք. և դուք եթէ լինիջիք այսպիսիք, ի ցաւոց և ի նեղութեանց և ի փորձութեանց և ի չարեաց փրկեալ ապրեսջիք ձեռամբ Տեառն. զի կամ բանիւք կամ խորհրդովք յանցանիցէք: Գիտեն[5] եղբարք իմ թէ ո՞րպէս սիրեաց զիս հայրն իմ, և ես ոչ բարձրացուցի զանձն իմ՝ թէպէտ և տղայ էի. զի գիտէի թէ ամենայն ինչ անցանելոց է և չափէի զանձն իմ և զնոսա պատուէի, և վասն երկիւղի նոցա՝ լուռ լինէի յորժամ վաճառեցին զիս. և ոչ ասացի[6] Իսմայելացւոցն վասն ազգին իմոյ, թէ որդի եմ ես առն մեծի և զօրաւորի: Եւ դուք, որդեակք իմ, սիրեցէք զեղբարս ձեր, զի ամենայն որ սիրէ զօրէնս Տեառն՝ սիրեսցի ի նմանէ: Արդ եկեալ իմ ընդ նոսա ի Հնդկակոպացիսն[7]: Հարցանէին զիս Իսմայելացիքն և ասէին. Ծառա՞յ ես՝ թէ ազատ. Եւ ես ասէի թէ ծառայ եմ ես ի բնութենէ: Նոցա, զայս ասացի զի մի՛ յամօթ արարից զեղբարս իմ, և ասէր ցիս աւագ նոցա. Ոչ ես դու ծառայ՝ վասն զի և դէմք քո յայտ առ-

1. Բ. յաւելու. յերեկոյեան ընդ մուտ նորին, և լսէր զձայն իմ որ աղօթէի, և իմ իմացեալ լինէր զհառաչանս:
2. Ա. է գայթակղեցուցանել զիս:
3. Ա և Բ. յաւելուն և զօրդա- րեալ յայտ, այլ Տէր:
4. Յայլս չիք ծածկալութեամբ:
5. Բ. Գիտէք:
6. Բ. ասէի վասն ազգին իմոյ՝ եթէ յոր ազգէ իմ, և ոչ թէ որդի եմ Յակոբայ առն:
7. Ա և Բ. Հնդ Կապադոկացեան. Գ. Հնդկակղբացեան:

նեն[1] վասն քո. և սպառնայր ինձ, եթէ[2] զճշմարիտն
ասա. բայց սակայն ես ասէի թէ ծառայ եմ: Եւ արդ
յորժամ եկաք յԵգիպտոս, վասն իմ կռուէին նոքա,
և իւրաքանչիւր ոք տայր զմասն վաճառուց իւրոց[3]
զի և զիս առցէ. վասն որոյ և ամենեցուն հաճոյ
թուեցաւ թողուլ զիս յԵգիպտոս[4] առ փոխողի վա-
ճառացն իւրեանց, մինչեւ դարձցին անդրէն և բերցեն
զվաճառսն. և Տէր ետ շնորհս առաջի փոխավաճառին
և հաւատաց յիս զտուն իւր, և օրհնեաց զնա Տէր
յաստ[5] իմ, և բազմացոյց զոսկի և զարծաթ նորա, և
եղէ առ նմա աւուրս իննսուն և հինգ: Արդ ան-
ցեալ ընդ այն Մեմփիու կին Պետափրեայ՝ հայեցեալ
եսես զիս, և[6] ասէր ցայրն իւր վասն փոխավաճառին[7],
եթէ հարստացաւ ի ձեռն մանկան միոյ եբրայեցւոյ.
և ասացին թէ գողութեամբ գողացան զնա յերկրէն
Քանանացւոց, և այժմ արա[8] ընդ նոսա դատաստանս,
և ա՛ռ ի նմանէ զմանուկն ի տնտեսութիւն քեզ, և
օրհնեսցէ զքեզ Աստուածն Եբրայեցւոց. զի շնորհք
հաստատութեան են ի նա: Եւ նորա զուարթացեալ[9]
ի բանսն ած զփոխավաճառն, և ասէ ցնա. Զի՞նչ է այս
զոր լսեմս, զի գողանաս անձինս յերկրէն Քանանաց-
ւոց ի ծառայութիւն քեզ և յաղախնութիւն: Յայն-
ժամ[10] անկեալ ի վերայ երեսաց իւրոց փոխավաճառն
և ասէ. Աղաչեմ զքեզ, տէր իմ, զի՞նչ խօսիդ: Եւ նա ա-
սէ. Ուստի՞ է քո պատանեակդ եբրայեցի: Եւ նա ասէ.
Իսմայելացիք ետուն զդա յիս ի պահ՝[11] մինչեւ դարձ-

1. Ա և Բ. յայտ առնեն զերեւ:
2. Յայլս չէք եթէ զճշմարիտն ասա:
3. Բ. իւրեանց փոխան ինչ, զի զիս առցեն. Ա և Բ. յաւելուն ընդ շահս իւրեանց..:
4. Բ. յաւելու Եգիպտական փոխո-ղի.. և արարին այնպէս, և Տէր ետ:
5. Այլք է յետն իմ:
6. Բ. և դարձեալ ասէր:
7. Ա և Բ. վաճառատեառնն:
8. Այլք արա դատաստան ընդ նմա:
9. Բ. սաստկացեալ ընդ բանսն հրամայեաց ածել զնա:
10. Այլք և:
11. Ա և Բ. ի պահեստի:

ցին այսրէն: Եւ [1] ոչ հաւատաց նմա., այլ հրամայեաց մերկ տանջել զնա. և իբրեւ յամառեցաւ ի նմին բանս. Ածէք ասէ այսր զմանուկն [2]. և իբրեւ տարան զիս, երկիր պագի նմա, վասն զի երկրորդ էր Փարաւոնի գահ նորա. և զատուցեալ զիս ի նոցանէ ասէ. Ծառա՞յ ես թէ ազատ: Եւ ես ասացի թէ ծառայ եմ: Եւ նա ասէ. Որո՞յ ես ծառայ, և ասէի Իսմայելացւոցն: Եւ նա ասէ. Զիա՞րդ եղեր նոցա ծառայ: Եւ ասեմ. Յերկրէն Քանանացւոց գնեցին զիս: Եւ ասէ ցիս. Սուտ ասես. և հրամայեաց մերկ տանջել զիս: Իսկ Մեմփիու տեսանէր զիս ընդ պատուհանն. և յորժամ ոչ փոխեցի զբանս իմ, հրամայեաց զիս ի բանտ արկանել, մինչեւ եկեսցեն [3], ասէ, տեարք դորա: Եւ կինն ասէր ցնա. Ապիրատ են դատաստանքդ, զի զգողացեալդ արգելուս որպէս զապիրատ [4]. արդ պարտ է լինել ապստամբ առն փոխավաճառի և զդա յընդարձակութեան թողեալ և սպասաւորել քեզ: Վասն զի կամէր կարօտութեամբ տեսանել զիս. և ես ոչ էի գիտակ յաղագս այսր ամենայնի [5]: Եւ նա ասէ ցՄեմփիու. Ոչ են օրէնք առ Եգիպտացիս յառաջագոյն քան զցուցանելն՝ առնուլ զայլոց ինչ: Զայս [6] ցնա ասաց փոխավաճառն և մանուկ [7] նորա, և ապա լռեաց Մեմփիու: Եւ յետ քսան և չորից աւուրց եկին Իսմայելացիքն և լուեալ յերկրէն Քանանացւոց թէ Յակոբ ազայ [8] զորդին իւր: Եւ [9] ասեն ցիս. Զի՞ է զի ասացեր ցմեզ [10] թէ ծառայ եմ՝ զի որդի ես առն մեծի յերկրէն Քանանացւոց՝ և ահա նա ազայ վասն քո [11]:

1. Բ. յաւելու Պետափրէ:
2. Բ. յաւելու և նա ասէ ցմեղադրեալսն:
3. Այլք. եկեսցեն տեարք իմ:
4. Ա և Բ. զանիրաւս որպէս պարտ է լինել ընդարձակ, և ծառայել քեզ:
5. Բ. յաւելու էր չունն և այլն ասէ ցինն, ոչ են:
6. Ա և Բ. զնոյն (Գ. զնոյն) ասաց:
7. Այլք յաւելուն եթէ պարտ է նմա լինել կապանս:
8. Ա և Բ. ողջոյ:
9. Բ. յաւելու և եկին առ նա և ասեն:
10. Ա և Բ. զմեն.. ահա ծերացաք զմեն որդի եմ առն հզօրի:
11. Այլք յաւելուն խորէոմ

Եւ սաստկապէս կամեցայ լալ՝[1] և արգելի զիս, զի մի յամօթ արարից զեղբարս իմ։ Յայնժամ խորհուրդ արարին վաճառել զիս, զի մի դառայց ի[2] ձեռս նոցա. և վասն զի երկնչէին ի Յակոբայ, զի մի արասցէ ընդ նոսա վրէժխնդրութիւն վտանկից, զի լսէին ի նմանէ թէ մեծ է առաջի Տեառն և մարդկան։ Յայնժամ ասէ ցնոսա փոխավաճառն. Արձակեցէք զիս ի դատաստանաց Փոտիփարայ[3] երկրորդի արքային։ Եւ մտեալ առաջի նորա խնդրէին զիս, և ասէին թէ արծաթոյ գնեցաք[4] զդա, և փոխավաճառն վճարեաց[5]։ Եւ Մեմփիու առաքեաց առ այրն զի գնեսցէ զիս. վասն զի լսեմ ասէ, եթէ վաճառեն զդա. և այլ[6] ներքինի առաքեաց առ Իսմայելացիսն, և խնդրեաց զիս ի նոցանէ գրով[7]. և կոչեցեալ խոհակերին զվաճառականսն՝ և խնդրեաց զիս ի նոցանէ գնոյ. և նշանակեաց ներքինին կնոջն՝ եթէ բազում գինս խնդրեն, և նա ասէ. Թէպէտ և երկուս մնասս ոսկւոյ խնդրեսցեն՝ մի խնայեր[8]. և ետ նոցա ընդ իմ վաթսուն դահեկան[9]. և ասաց՝ եթէ ութսուն դահեկան ետու ընդ նորա. և իմ գիտացեալ զայս՝ լուռ կացի վասն նորա, զի մի ամաչեսցի։

Արդ տեսէք, որդեակք իմ, թէ քանի՞ ինչ կրեցի՝ զի մի յամօթ արարից զեղբարսն իմ. և դուք սիրեցէք զմիմեանս. վասն զի ցնծայ Տէր յօժարութեամբ[10] սրտից, որք հաճին ընդ բարիս։ Յորժամ եկին եղբարքն իմ յԵգիպտոս՝ որպէս և գիտեն իսկ՝ եթէ զի՞րդ դարձուցի[11] զարծաթն նոցա, և ոչ նախատեցի զնոսա՝ այլ մխիթարեցի. լսեն ահաւադիկ և ասա-

1. Բ. յաւելում վասն հօր իմոյ։
2. Ա և Բ. փոյթս առ նոսա։
3. Ա և Բ. Պետափրեայ Եգիպտացւոյ։
4. Ա. գնեցեր. Բ. գնեցիք։
5. յԱ և յԲ. չփոթ է։
6. Բ. այրն։
7. Այլք գնոյ։
8. Ա և Բ. խնայել.
9. Բ. յաւելու եթէ ներքինին և առացեալ. վասն դորա։
10. Ա և Բ. ընդ յօժարութեան որոց յօժարամ հաճի նա ընդ միամանս (Ա. ընդ խրատս)։
11. Ա և Բ. դարձուցանել։

ցեն[1] եթէ ես սուտ ինչ խօսիմ, այլ և զկնի մահուան Հօր իմոյ սիրեցի զդոսա, և զամենայն զոր ինչ Հրամայեցին արարի, և ոչ ետու նեղել նոցա՝ մինչև ի փոքր ինչ իրս. այլ[2] ետու նոցա զամենայն զոր ինչ և խնդրեցին, և զամենայն ինչ որ էր ի ձեռս իմ, ետու դոցա. որդիք իմ որդիք դոցա են՝ և ծառայք իմ ծառայք դոցա, և անձն իմ անձն դոցա, և երկիր իմ երկիր դոցա էր, և ամենայն ցաւք դոցա ցաւ էին ինձ. մի էին մեր ամենեցուն խորհուրդք, և ոչ բարձրացուցի զիս ի մէջ դոցա վասն փառաց իմոց. արդ և դուք զնոյն ճանապարհս գնայցէք, որդեակք իմ.[3] զի և Իսրայէլ[4] Աստուայ փառաւորեսցէ զձեզ և բարձրացուսցէ մինչև յաւիտեան. ահաւասիկ տեսանէք զի զդուստր տերանց իմոց առի ինձ կնութեան, և Հարիւր տաղանդ ոսկւոյ ընդ նմա ետուն ինձ. վասն զի Տէր ետ ինձ զնոսա ի ծառայութիւն. և էր նա[5] գեղեցիկ իբրև զծաղիկ և[6] գեղեցկագոյն քան զընտիրսն Իսրայելի, և քան զՂեւի և զՑուդայ և զՆեփթաղիմ, պաՀեաց զինքն գեղեցկութեամբ[7], վասն զի նման եղէ ես ամենեւին Ցակոբայ։

Արդ[8] լուարուք զտեսիլն զոր տեսի. երկոտասան եղջերուս տեսանէի զի արածէին՝[9] և ի նոցանէ ինն ցրուեցան, բայց երեքն ապրէին[10]. և ի վաղիւն և նոքա ցրուեցան՝ և տեսանէի զի երեք եղջերուքն երեք գառինք լինէին, և աղաղակեցին առ Տէր. և եՀան զնոսա Տէր ի տեղի դալարուտ և ի ջրային, և ած

1. Ա և Բ. դարձուցանէի յերեսս իմ։
2. յԲ. առ մի պակասի։
3. Բ. յաւելու ընդ իս։
4. Ա և Բ. և Աստուած [illegible] ի վեր։
5. Բ. Աստուած [illegible] իմ։
6. Բ. և ես էի... [illegible]...
և [illegible]։
7. Բ. [illegible]։
8. Բ. [illegible]։
9. Բ. յաւելու [illegible]։
10. Բ. արածէին առ միմեանս։

զնոսա ի խաւարէ ի լոյս, և անդ աղաղակեցին առ Տէր մինչեւ ժողովեցան ինն եղջերուքն, և լինէին նոքա որպէս երկոտասան ոչխարս. և յետ սակաւ միոյ աճէին և լինէին հօտս բազումս: Եւ յետ այսորիկ տեսանէի և ահա երկոտասան զուարակք, որ ծծէին[1] զմի կով, որ ի սաստիկ կաթանէն ծով գործէր, և ըմպէին ի նոցանէ երկոտասան հօտքն և անհամար խաշինքն:

Եւ չորրորդ զուարակին բարձրացան եղջիւրքն մինչեւ յերկինս, և եղեն իբրեւ զպարիսպ հօտիցն, և ի մէջ երկու եղջերացն ծագեաց[2] այլ եղջիւր, և տեսանէի որթս երկոտասան[3] որ պատէին զնոքօք. և եղեն զուարակացն բոլորովին յօգնականութիւն. և տեսանէի ի մէջ եղջերուացն կոյս մի՝ որ ունէր արկանելիս[4] ճաճանաւուխտ. և ի նմանէն ելանէր գառն և յաջմէ կողմանէ նորա յարձակէին գազանք և ամենայն սողունք, և յաղթեաց նոցա գառն և կորոյս զնոսա: Եւ խնդային յաղագս նորա զուարակքն և կովն[5] և եղջերուքն՝ ցնծացին նովաւ հանդերձ: Եւ այսմ ամենայնի պարտ է լինել ի ժամանակի իւրում: Եւ դուք որդեակք իմ, պահեցէք զՂեւի և զՅուդա՝ զի ի նոցանէ ծագեսցէ փրկութիւն Իսրայելի. վասն զի թագաւորութեանս[6] իմ՝ որ ի միջի ձերում՝ եղիցի վախճան իբրեւ զտաղաւար մրգապահաց՝ որ ոչ երեւեսցի զկնի ամարայնոյ[7]. գիտեմ զի Եգիպտացիքս յետ[8] իմոյ ելանելոյ՝ նեղեսցեն զձեզ. այլ Աստուած արասցէ վրէժխնդրութիւն ի նոսա, և տանիցէ զձեզ ի խոստումն հարցն ձերոց, բայց[9] տարջիք զոսկերս

1. Ուղղեցաւ ըստ Ա և Բ. զի բնագիրն և Գ. զնին ծրածէին:
2. Ա և Բ. ծաղկեաց:
3. Ա և Բ. որթ որ երկոտասան անգամ պտղէր զնոսօք. և եղև Գ. որթ որ պտղէր. եղև:
4. Ա և Բ. արկանիլ ճաճանախս:
5. Ա և Բ. և կորեանք երեք եղջերուացն ցնծային:
6. Ա և Բ. և թագաւորութեանն.. վախճանեցի:
7. Ա և Բ. վրիպական զնեն է մարմնէ:
8. Ա և Բ. յետ իմ նեղիցեն:
9. Բ. և զատ:

իմ ընդ ձեզ, և զԵլփայ[1] մայր ձեր հանէք և դրէք առ Հռաքէլ մայրն իմ։ Եւ պարզեալ զոտսն վախճանեցաւ Յովսէփ հարիւր և տասն ամաց, և լացին զնա ամենայն Իսրայէլ և ամենայն Եգիպտոս սուգ մեծ։

1. Ա. և զեղբարսն յեր հանգուցանէր, և առ հեռ և առ մայրս դնէլեր զնոսա, և պարզեաց զոտսն իւր, և վախճանեցաւ. և լացին..
Բ. և զեղբայրն յեր հանէլէր, և առ հայրս իմ և առ մայրս դնէր զնա. և յետ այսորիկ պարզեաց Յովսէփ զոտսն իւր, և վախճանեցաւ, և եղաց։

# ԿՏԱԿ ԲԵՆԻԱՄԻՆԻ[1]



Հրաման կտակի պատասխանւոյ[2] Բենիամինի, զոր խօսեցաւ[3] որդւոց իւրոց, ի չորրորդ աւուր[4] հիւանդութեանն իւրում, կեցեալ ամս հարիւր և քսան և հինգ[5]. և կոչեալ[6] զորդիսն իւր առ ինքն, և իբրեւ եկին մերձ՝ համբուրեաց[7] զնոսա և ասէ. Զոր օրինակ Իսահակ[8] հայր հօրն մերում ի հարիւր ամի ծնեալ եղեւ յԱբրահամէ, այսպէս և ես Յակոբայ, և զի Հռաքէլ[9] մեռաւ ի ծննդեանն իմ, և ես զկաթն[10] Բալլայի աղախնոյ նորա ծծեցի. և էր նորա ամք երկոտասան որ ոչ էր ծնեալ. և աղօթս արար առ Տէր հայրն[11] իմ. և ետ նմա Աստուած կաթն յորդ, վասն զի յոյժ սիրէր զՀռաքէլ. յաղագս այսորիկ և

1. Բն. Կտակ Բենիամինի որդւոյն Յակոբայ Իսրայելի։ Այլք Կտակ Բենիամինի երկոտասանևերորդ։
2. Յայլս չիք պատասխանւոյ։
3. Ա և Բ. պատուիրեաց։
4. Այլք ամ։
5. Ա և Բ. քսան և հ։
6. Տող մի պակասի յայլս մինչև համբուրեաց..։
7. Ա և Բ. և համբուրեալ զնոսա ասաց։
8. Ա և Գ. Իսահակ հարիւր ամօք ծնեալ. Բ. յետ հարիւր ամաց։
9. Բ. յաւելու մայր իմ։
10. Ա և Բ. զկաթն աղախնոյ ծծեցի։
11. Չիք յայլս հայրն իմ ... Աստուած։

ես կոչեցայ որդի աջոյ[1], այսինքն Բենիամին։ Արդ յորժամ մտի ես յԵգիպտոս, և ծանեաւ զիս Յովսէփ եղբայրն իմ, և ասէ ցիս. Զի՞նչ ասէին եղբարքն իմ՝ յորժամ կորեայ ես՝ վասն իմ[2]. և ասացի թէ թաթաւեցին զպատմուճանս քո[3] և առաքեցին առ հայրն[4] մեր և ասացին[5]. Ծանիր զպատմուճանդ թէ ո՞յր է դա[6]։ Եւ ասէ ցիս Յովսէփ. Այո՛ եղբայր. գողացան զիս Քանանացիքն վաճառականքն բռնութեամբ. և եղեւ ընդ երթալն նոցա թաքուցանէին զհանդերձս իմ, եթէ պատահեաց ինձ գազան և սպան զիս. և ապա[7] վաճառեցին զիս Իսմայելացւոցն, և ոչ ատեցին նոքա զայս ասելով. քանզի կամէր թաքուցանել յինէն[8]։ Եւ կոչեցեալ առանձինն զեղբարսն իւր[9] և ասէ. Մի ասէք հօր իմոյ զոր արարէքն ընդ իս. այլ այնպէս ասացէք զոր օրինակ ասացեալ[10] եմ ես Բենիամինի, և խորհուրդք եղիցին[11] ի միջի ձերում այսպիսիք[12] և մի ելցեն բանքս այս ի սիրտ հօր իմոյ։

Եւ[13] դուք, որդեակք իմ, նմանողք եղերուք առն բարւոյ և ճշմարտի, վասն զի մինչեւ ի մահ իւր ոչ կամէր ասել վասն ինքեան։ Բայց Յակոբայ գիտացեալ ի Տեառնէ, ասէ ցնա. այլ սակայն և այսպէս ուրանայր, հազիւ ուրեմն հաւասարեալ[14] երդմանցն[15] իս-

1. Չիք յայլս աջոյ։
2. Ա և Բ. յաւելուն. Յովսեփայ հօր մերոյ։
3. Ա. քո յորեան. Բ և Գ. ա-րեամբ։
4. Ա և Բ. առ նա։
5. Ա և Բ. ասէին ցնա և ծանիր։
6. Բ. այսպ. Իբրև ասացի զայս՝ ող-բայր (Ա. ևս ողբայր) Յովսէփ, ասէր ցնա գողացան։
7. Այլք ապա այսպէս խորհրդա-կիցք նորա։
8. Բ. յաւելու զգործս եղբարցն մերոց և կոչեալ (Ա. ևս կո-չեալ)։
9. Բ. յաւելու մեր, և ասէր ի ծա-ծուկ յետին.. մերում։
10. Այլք պատմեալ։
11. Ա և Բ. մի եղիցին։
12. Բ. յաւելու ի ճանապարհէդ զի մի վերասցի Բենիամին և պատ-մեսցի Յովսեփայ։
13. Բ. և արդ։
14. Բնագիրն և այլք այսպէս ունէին զոր Թերևս՝ ուղղելի է հաւատացեալ։
15. Բ. երդմամբ Յովսեփայ։

բայերը. բայց սակայն պաղատեցաւ [1] առ Հայրն՝ զի մի՛ ինչ համարեսցի զայն նոցա ի չարութիւն [2]: Եւ ապա Յակոբայ լուեալ [3] աղաղակէր և ասէր. Որդեակ իմ Յովսէփ, որդեակ իմ, քաղցր պատանի, յաղթեցեր չարութեանց եղբարցն քոց, յաղթեցեր ալեացն Յակոբայ հօր քո. և գիրկս արկեալ [4] համբուրէր զնա իբրեւ ժամս երիս: Եւ ասէ. Կատարեցի ի քեզ մարգարէութիւնն երկնային, որ ասէ, թէ անբիծն վասն անօրինաց պղծեսցի, և անմեղն վասն ամբարշտացն մեռցի:

Արդ տեսէք, որդեակք իմ, զառն բարւոյ զողորմութիւնն [5], նմանողք եղերուք նմա, զի պսակ փառաց ընկալջիք, և իմացարուք [6] զի բարին երբեք ոչ ունի ակն խաւարին. զի ողորմի ամենեցուն, թէպէտ և իցեն մեղաւորք [7]. իսկ զարդարն սիրէ իբրեւ զանձըն իւր. և եթէ փառաւորի ոք՝ ոչ նախանձի [8], և եթէ մեծանայ ոք ոչ չարակնէ. զայրին [9] գովէ և զիմաստունն օրհնէ. և որ ունի շնորհս ի Տեառնէ՝ սիրէ հաւասար անձին իւրոյ: Եւ եթէ լինիցիք բարիք՝ չար մարդիկք խաղաղութիւն ունիցին ընդ ձեզ, և եղծեալքն [10] պատկառեսցեն ի ձէնջ, և [11] նոյն ինքն գազանքն երկիցեն ի ձէնջ. և եթէ թշնամանէ [12] զայր ճշմարիտ՝ ապաշաւէ [13]. վասն զի ողորմի բանարկուին և լուռ կայ. և եթէ ոք թշնամանէ զհոգի արդար [14] ազայ, վասն զի ետես զնա խոնարհեալ և զղջացաւ. զոր օրինակ եղեւ Յովսէփ եղբայրն իմ. խոր-

1. Բ. յաւելու Յովսէփ:
2. Բ. յաւելու զի մի արդարեւսն եղբարքս:
3. Ա և Բ. ուղղագոյն դնեն լալով:
4. Ա. Բ և Գ. զերես արկեալ զնովաւ:
5. Ա և Բ. զողորմածութիւն (Բ. յաւելու զՅովսէփայն):
6. Չիք յայլս և իմացարուք:
7. Բ. մեղաւոր ոք դեռանի:
8. Բ. յաւելու նախանձի ընդ փառաւորութիւն նորա:
9. Ա. յաւելու երկիւղածն:
10. Ա և Բ. պղծացեալքն:
11. յԱ և յԲ. տող մի պակասի:
12. Ա և Բ. ոք թշնամանէ զայն..
13. յԱ և յԲ. տող մի պակասէ:
14. յԱ և յԲ. չիք արդար:

հուրդք առն բարւոյ ոչ են ի ձեռն մոլորական չնչոյն բե-լիարայ[1]։ «Վասն զի հրեշտակ խաղաղութեան առաջ-նորդէ հոգւոյ նորա, ոչ հայի ընդ ապականացուս, և ոչ գիտէ զմեծութիւն և ոչ զուարճանայ ընդ փափկու-թիւն, վասն զի Տէր է նորա բաժին։ Բարի խորհուրդք ոչ գիտեն զփառս մարդկան և զամենայն նենգութիւնս և զստութիւն և զկռիւ և զչարախօսութիւն ոչ գիտէ, վասն զի Տէր ի նմա է և լուսաւորէ զհոգի նորա, և խնդայ ընդ ամենեսեան յամենայն ժամ։ Բարի խոր-հուրդն, ոչ ունի երկուս խորհուրդս օրհնութեանց և ա-նիծից կամ թշնամանաց և տրտմութեանց և չողո-քորթանաց, հանդարտութեան և խռովութեան, կեղ-ծաւորութեան և ճշմարտութեան. այլ զմին ունի առ ամենեսեան հաստատուն և յստակ. ոչ ունի լսելիս և տեսանելիս կրկնապատիկս, զի ամենայն որ առ-նէ զգործս Աստուծոյ և բելիարայ կրկնապատիկ է և ոչ պարզմտութիւն»։ Որդեակք իմ, փախերուք ի պոռնկութենէ և ի չարութենէ, վասն զի սուր ընձե-ռէ[2] որք հաւատան ի նա. և սուր է եօթն չարի մայր զոր[3] ունի ի ձեռն բելիարայ. և է առաջինն նա-խանձ, երկրորդն կորուստ, երրորդն նեղութիւն[4], չորրորդն խռովութիւն[5], հինգերորդն կարօտութիւն, վեցերորդն բարկութիւն[6], եօթներորդն ամայու-թիւն[7]։ Վասն այսորիկ և Կայէն եօթն վրէժխնդ-րութեանց մատնեցաւ[8] ի Տեառնէ, և[9] ի հարիւր ամի վրէժած ի վերայ նորա, զի յերկերիւր երրոր-դի կենաց իւրոց կրեաց[10] զայն, և յինն հարիւր ամի

1. Աստի մինչև և ոչ պարզմտու-թիւն յաւելուած բառ այլ օ-րինակաց՝ զի չգոյր ի բնա-գրին։
2. Ա և Բ. ասոր է յետին է։
3. Ա և Բ. և տանի է յետանէ։
4. Բ. նենգութիւն։
5. Ա և Բ. փերութիւն։
6. Ա և Բ. խռովութիւն։
7. Ա. անամօթութիւն. Բ. ամօ-թութիւն։
8. Ա և Բ. ընկալաւ։
9. Ա. Բ և Գ. վասն զի։
10. Բ. ոչխարս կերակրոյ. Գ. առող մի պակասէ։

կենաց իւրոց [1] մեկնեցաւ ի նմանէ ; յորժամ եկն ջրհեղեղն և կրեաց զայն վասն Հաբելի եղբօր իւրոյ [2]. և եօթն չարեաց [3] դատէր եօթանասուն անգամ Ղամեք, վասն զի մինչ ի վախճան յաւիտենից՝ որք նման նոցա են տանջեսցին:

Արդ, որդեակք իմ, փախերուք ի չարութենէ և մերձեցարուք ի բարին. զի թէ ունիցի ոք զնա, ոչ տեսանէ զկին մարդ ի պոռնկութիւն [4], և ոչ ճանաչէ զպոռնկութիւն պղծութեանն, վասն զի հանգչի ի նա [5] հոգին սուրբ, վասն զի արեգակն ոչ ապականի հայելովն յաղբ և ի տիղմ՝ այսպէս և միտք յըստակ ի պղծութիւնս երկրայինս ոչ պաշտին, բայց զմտաւ ածեմ ես զի գործք չարութեան լինելոց են ի ձեզ. վասն զի լուայ ես ի բանից հարցն մերոց, զի պոռնկեսջիք դուք զպղծութիւն [6] Սոդոմայեցւոցն, մինչ [7] և ի դոյզն կորնչիցիք՝ և նորոգեսջիք ի խայտառակս կանանց, և արքայութիւն Տեառն ոչ եղիցի ի ձեզ՝ վասն զի [8] այր ուղղամիտ առցէ զնա: Բայց սակայն ի բաժնին ձերում եղիցի ժառանգութիւն նորա, և վասն տանն [9] բարձրացոյց զխս Յակոբ՝ զի փառաւորեցայց ի նմա, և երկոտասանեսին ցեղքն՝ անդր ժողովեսցին և ամենայն հեթանոսք, և Տէր թշնամանեսցի և անպատուեսցի [10] և փոխեսցի յերկրէս ի յերկինս, և [11] կամ զի՞նչ չափ նորա և տեղի և ճանապարհ:

Արդ մինչ էր Յովսէփ յԵգիպտոս և կարօտէր

1. ԺԱ և ԺԲ. չիք կենաց իւրոց:
2. Ա և Բ. յաւելուն արդարոյ:
3. Բ. չարիքն դատէր զնա, և եօթանասուն անգամ զՂամէք. վասն զի մեծմիտութեանն Աստուածոյ Ղամէք առաւ ի կայենէ... նման կայենի էցեն տանջեսցին:
4. Ա և Բ. ի պատճառս պոռնկութեան.. պղծութեան:
5. Ա և Բ. ի նմա:
6. Այլք պոռնկութիւն:
7. Ա և Բ. մինչ ողն կորնչիք և նորոգեսջիք ի խայտառակ կանանց:
8. Ա և Բ. վասն զի ուղղամիտ առցէն զնա. ԺԳ. չիք այր:
9. Այլք յաւելուն Տեառն:
10. Ա և Բ. պատուեսցի:
11. Ա և Բ. յաւելուն զի ծանեայ եթէ որդիս ի յերկրի և կամ որդիս յերկինս:

ես տեսանել զերեսս Նորա՝ և աղօթիւք հօր մերոյ[1] Յակոբայ տեսի զերեսս Նորա կենդանի. և այժմ, որդեակք իմ, ահա ես վախճանիմ և պատուիրեմ ձեզ գործել զարդարութիւնս և զճշմարտութիւնս և զդատաստանս[2] ի հաւատս Տեառն. զայս տամ ձեզ փոխանակ ամենայն ժառանգութեան, և դուք տուք զայս ի ժառանգութիւն որդւոց ձերոց յաւիտենական. զայս արարին Աբրահամ, Իսահակ և Յակոբ, և քան զամենայն ինչ զայս մեզ ժառանգեցուցին, և ասացին թէ այսպէս արարէք մինչև յայտնեսցէ Տէր զփրկութիւն իւր յամենայն երկրիս. յայնժամ տեսանէք[3] զԵնովք և զՆոյ և զԱբրահամ և զԻսահակ և զՅակոբ. յայնժամ յարիցուք և մեք իւրաքանչիւր ոք ի գաւազան[4] իւր, և երկիր պագցուք երկնաւոր Թագաւորին. յայնժամ և մեք[5] Նորոգեսցուք, ոմանք ի փառս, և ոմանք յանարգանս. վասն զի դատի Տէր յառաջագոյն զԻսրայէլ վասն անիրաւութեանն զոր արարին: Եւ ապա այսպէս զամենայն հեթանոսս[6], և յանդիմանեսցէ զԻսրայէլ ընտրեալ հեթանոսօք, զոր օրինակ յանդիմանեաց զԵսաւ Մադիանացւովքն՝ որք սիրեցին զեղբարս իւրեանց. արդ լերուք, որդեակք իմ, ի բաժինս[7] երկիւղածաց Տեառն. զի թէ գնայցէք սրբութեամբ՝ դարձեալ բնակեսջիք յիս, և ժողովեսցի առ իս ամենայն Իսրայէլ, և ոչ ևս կոչեսջիք[8] այնուհետև աւազակապետ և գայլ՝ վասն յափշտակութեան ձերոյ, այլ սիրելի արարչին[9] և հաճոյից բերան Նորա:

Եւ իբրեւ կատարեաց Բենիամին[10] զբանս իւր ասէ ցնոսա. Պատուիրեմ ձեզ[11], որդեակք իմ, հանէք զոսկերս իմ յԵգիպտոսէ, և թաղեցէք ի Քեբրոն մերձ

1. Ա և Բ. Աբրահամ:
2. յԱ և յԲ. պակասին և զդատաստանս ի հաւատս:
3. Ա և Բ. տեսանիցէք:
4. Ա և Բ. ի գաւազանս իւր:
5. Ա և Բ. ամենեքեան... ոմանք ի փառս:
6. յԱ և յԲ. տող մի պակասէ:
7. Ա և Բ. բաժինս:
8. Այլք կոչեսջիք:
9. Ա և Բ. և արարչին հաճոյից կամաց. Բ. բերանոյ նորա:
10. Այլք չունին Բենիամին:
11. Այլք Յետ հանել. Բ. Բարձել.

առ Հարան իմ։ Եւ վախճանեցաւ Բենիամին հարիւր քսան և հինգ ամաց[1] բարւոք ծերութեամբ, և եդին զնա ի պահարանի։ Եւ յիններորդ[2] ամսեաններորդ ամին բերեն զոսկերսն հօրն[3] իւրեանց ինքեանք և եղբարք իւրեանց ի ծածուկ՝ մինչ դեռ էին ի պատերազմի Քանանացիքն. և թաղեցին զնա ի Քեբրոն մերձ հարցն[4] իւրեանց, և ինքեանք դարձան[5] ի Քանանացւոց, և բնակեցան յԵգիպտոս մինչեւ յօր ելիցն իւրեանց յԵգիպտոսէ։

1. Այլք ասէ չինայ եարայ է բա-րէաւ ծերութեան։
2. Ա և Բ. տասներորդ։
3. Այլք հարց։
4. Այլք առ հարսն իւրեանց։
5. Ա և Բ. յերկիրն Քանանացւոց։



Դ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՍԱՆԵԹԱՅ

---

Ւ եղեւ յամին յառաջնումն[1], որ օր էր եօթ-ներորդ ամսոյն՝ առաքեաց փարաւոն զՅով-սէփ շրջել ընդ ամենայն երկիրն Եգիպտացւոց։ Եւ եկեալ[2] հասեալ յութ և տասն օրն ի սահմանս Ա-րեգ քաղաքի. և ժողովէր ցորեան յերկրին յայնմիկ իբրեւ զաւազ ծովու։ Եւ էր այր մի ի քաղաքին այն-միկ, որ էր[3] Նախարար փարաւոնի[4], և էր մեծա-գոյն քան զամենայն մեծամեծս փարաւոնի խորհրդա-կանութեամբ. և անուն էր առն այնորիկ Պետա-փրէ[5] քուրմ Արեգ քաղաքին։ Եւ էր դուստր մի Նորա կուսան իբրեւ ութուտասան ամաց[6], կոյս մեծ և գեղե-ցիկ կերպարանօք յոյժ քան զամենայն կուսանսն իբ-րեւ[7] ի վերայ երկրի. և[8] ոչ ինչ ունէր ի դստերացն

1. Ա. եօթն ամաց չխաւարեանց յամ-ռեանն որ օր հինգ էր ամսոյն։
2. Ա. եկեալ Յովսէփ յառաջին ա-մին որ օր եօթն և տասն էր ամ-սոյն ի սահմանս։
3. յԱ. չիք որ էր։
4. Ա. յաւելու և սա էր իշխան ա-րեւ մեծամեծացն Փարաւոնի վասն զի մեծագոյն։
5. Ա. յաւելու և էր։
6. Ա. յաւելու և էր։
7. Ա. որ էին ի վերայ. Գ և Դ. որ է։
8. Ա. և սա ոչ ինչ նմանութեան ունէր յինքեան ազնուութիւն ի դստե-րացն. Գ. և Դ. ոչ ինչ նմա-նութիւն ունէր դստերացն։

Եգիպտացւոց, այլ ամենեւին[1] նմանեալ դստերաց Եբրայեցւոցն։ Մեծահասակ էր իբրեւ զՍառա, և գեղեցիկ որպէս Հռեբեկա, վայելուչ[2] քան զՀռաքէլ։ Եւ էր անուն նորա[3] Ասանէթ. և չոգաւ հռչակ գեղեցկութեան նորա ընդ ամենայն երկիր[4], և խնդրէին զնա ի կնութեան ամենայն որդիք նախարարացն և որդիք մեծամեծացն և թագաւորացն, երիտասարդքն ամենեքին[5] և զօրաւորքն. և էր նախանձ և հակառակութիւն ի մէջ նոցա վասն Ասանեթայ, և պատրաստէին[6] ի պատերազմել ընդ իրեարս վասն նորա։ Եւ լուաւ վասն նորա անդրանիկն փարաւոնի, և աղաչէր զհայրն իւր տալ[7] նմա ի կնութիւն։ Եւ ասէ ցնա փարաւոն հայրն իւր. Ընդէ՞ր խնդրես դու կին անարգագոյն քան զքեզ. զի թագաւոր ես Եգիպտոսի. ո՞չ աւանիկ խօսեցեալ է վասն քո զդուստր[8] արքային Մովաբացւոց։

Եւ Ասանէթ անարգէր[9] և արհամարհէր զամենայն արամբք, և էր յոյժ[10] հպարտ և ամբարտաւան առ ամենեսեան. և ոչ ոք յարանց ետես զԱսանէթ ուրեք. վասն զի աշտարակ Պետափրեայ մերձ էր յապարանս իւր[11], և ինքն ի վերայ նորա

1. Ա. ամենայնիւ նման դստերացն Եբրայեցւոց։
2. յԱ. չիք վայելուչ. Գ. վայելչագոյն։
3. Ա. կոչէին անուանէին. Գ և Դ. կոչէին։
4. Ա. յամենայն և ընդ ծագս։
5. Ա. ամենայն և զօրաւորքն ամենայն։
6. Ա. և պատրաստեցան ի պատերազմ վասն անուան նորա։ Եւ լուեալ. անդրանիկն որդին։
7. Ա. զի տացէ զնա նմա։
8. Ա. դուստր Մովաբացւոց թագաւորին ասացեալ է քեզ ի կնութիւն, զի և գեղեցիկ յոյժ։
9. յԱ. չիք անարգէր։
10. յԱ. չիք յոյժ։
11. Ա. Գ և Դ. վերնատունն մեծ և բարձր յոյժ, և ի վերայ աշտարակին այնորիկ էր տասն սենեակն մեծ և վայելուչ ոսկեզօծ (Գ. ծիրանեօք) զարդարեալ, և որմք նորա կնքեալ գունագունեալ և պատուական քարամբք պճնեալ, և ձեղուանք սենեկին ոսկեձոյլք, և էին երկրորդ սենեկին մերձ յորմն նկարեալ աստուածք Եգիպտացւոց։

ի վերնատուն մի զարդարեալ, յորում բնակէր Ասա-
նէթ անուն ի մարդկանէ. և էր վերնատունն այն
մեծ և բարձր յոյժ՝ վայելուչ[1] կճճայեաք և ծիրա-
նաք զարդարեալ, և որմունքն պատուական քարամբք
ճաճանչաւորաք պաճուճեալ, և ձեղունս սենեկին եդեալ
զչաստուածսն Եգիպտացոց՝ ոսկեղէնք և արծաթե-
ղէնք, որոց ոչ գոյր համար: Եւ զամենեսեան զնոսա
պաշտէր Ասանէթ, և երկնչէր ի նոցանէ, և ողջակէզս
և խունկս[2] մատուցանէր նոցա զօրհանապազ: Եւ
երկրորդ սենեկին սապատք զարդարուն[3] Ասանեթայ,
յորում կայր ոսկի և արծաթ[4], և հանդերձք ոսկե-
հուռք, և ակունք[5] ընտիրք և պատուականք[6], և ամե-
նայն զարդ կուսութեան նորա: Եւ յերրորդ[7] սենե-
կին էր շտեմարանքն Ասանեթայ: Եւ էին եօթն կուսանք
սննդակիցք Ասանեթայ, և էին ամենքեան հաւասա-
րիմք[8], ի մի գիշերի ծնեալք ընդ Ասանեթայ. և էին
ամենքեան գեղեցիկք իբրեւ զաստեղս երկնից. և այր
ոչ խօսէր ընդ նոսա ամենեւին, և ոչ մանուկ արու.
և էին պատուհանք[9] երեք մեծ սենեկին Ասանեթայ՝
յորում[10] կուսութիւն նորա դարմանէր: Եւ էր մեծ
պատուհանն առաջին մեծ յոյժ, որ հայէր ի գաւիթն
ընդ յարեւելս, և երկրորդն հայէր ընդ հարաւ[11], և
երրորդն հիւսիսի ի մէջն ճանապարհս գնաց ուղղոց:
Եւ էին[12] ի նմա ոսկի տախտակն հաստատեալ ի սե-

1. Գ. յաւելու. յորում էին սե-
նեակք տան և էր առաջին
սենեակն մեծ և վայելուչ կճա-
յեօք:
2. յԱ. չիք և խունկս:
3. Ա. զարդարա Ասանեթին իւրշին
յորում.. Գ. զարդարան:
4. Ա. յաւելու ատապիճ յոյժ. Գ.
ատապիճ:
5. Ա. ակնանք:
6. Ա. յաւելու և ճխտանք պատուա-
կանք նշանաւորք, և ամենայն:
7. Ա. Երրորդ սենեակն շտեմարանք
Ասանեթ.. և եօթնն:
8. Ա. զայն հասակաւ ի միում ծը-
նեալ. Գ. զայն հասակաւ:
9. Ա. Պատուհանք երեք մեծա-
մեծք սենեկին:
10. Տող մի չիք յԱ. օրինակին:
11. Ա. ընդ հիւսիսի և երրորդն
հայէր ընդ ճանապարհ քաղա-
քացն. Գ. ի միջնաճանապարհն
քաղաքացն:
12. Ա և Գ. էր:

նեկին որ հայէր ընդ[1] պատուհանն յանդիմանն յարևե-
լից. և էր տախտակն զարդարեալ անկողնօք ծիրանօք
և ոսկեթելօք, որ էր յակնկոյ[2] և ի ծիրանոյ և ի բե-
հեզոյ էր[3]. և յայն[4] տախտակին ննջէր Ասանէթ, և
այր և կին ոչ էին երբեք[5] նստեալ ի վերայ նորա։
Եւ[6] մեծ գաւիթ էր յապարանս շուրջանակի. և էր[7]
որմունք գաւթին մեծ յոյժ՝ քարամբք[8] մեծամեծօք
չորեքանկիւնիւ շինեալ, և դրունք էին գաւթին ե-
րեք[9] երկաթեղէնք. և զնոսա պահէին ութ արք զօ-
րաւորք[10] և վառեալք, և էր ի ներքոյ գաւթին պըտ-
ղաբերք[11] գեղեցիկ ազգի ազգի ամենայնի, և էր
ամենայն պտուղն նորա հասուն միրգ առ ի կթել, և
էր գաւթին մէջն յաջակողմանէ աղբիւր[12] մեծապէս.
ի ներքոյ աղբերն հնծան մեծ որ ընդունէր զջուրս
յաղբերն, և անտի գայր ի մէջ գաւթին, և առոգանէր
զամենայն ծառ որ էին ի մէջ գաւթին։

Եւ եղեւ յամին յառաջնում եօթն ամք[13] լիութեան, ի չորրորդում որ օր ութուտասան էր ամսոյն՝ եկն Յովսէփ ի սահմանս Արեգ քաղաքի. և ժողովէր զցորեան լիութեան ժամանակաց։ Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ Յովսէփ ի քաղաքն այն, առաքեաց այրս[14] կարապետս առ Պետափրէս քուրմ և ասէ. Առ քեզ իջից՝ զի[15] միջօրէ ժամ ճաշոյն և ջերմութիւն արեգական սաստիկ

1. Ա. ընդդէմ պատուհանին։
2. Ա. և Գ. յակինթոյ։
3. Ա. յաւելու զոր էր արքային։
4. Ա. յայսմ ի տախտակի ննջէր Ասանեթ միայն. Գ. յայնմ տախտէ։
5. յԱ. չիք երբեք։
6. Ա. և էին գաւթին մեծ ապարանս շուրջանակի. Գ. էին։
7. Ա. էին որմք։
8. Ա. քարեղէնք շարեալ անկիւնաւոր մեծամեծօք շինեալք։
9. Ա և Գ. չորք։
10. յԱ. չիք զօրաւորք և վառեալք։
11. Ա և Գ. ծառք ի յորմն պտղա-բերս գեղեցիկս և ազգի ազգի պըտղաբերս յամենայնի։
12. Ա. Ջրոյ գեղեցիկ մեծապէս և բխայր ընդ մէջ գաւթին և ոռոգանէր.. Գ. ջրոյ։
13. Ա. ամացն լիութեանց.. ամսեանն.. Գ. ամսեան։
14. Ա. պատգամաւորս։
15. Ա. ի միջօրէի ի ժամ ճաշոյ, զի ջերմութեան։

է․ արդ եկեալ իջից և զովացայց և հանգեայց ընդ հովանեաւ[1] տան քո։ Իբրև լուաւ Պետափրէս, խնդաց խնդութիւն յոյժ և[2] ասէ․ Օրհնեալ է աստուածն Ցովսեփայ, որ հաճեցաւ եւս այսօր գալ առ մեզ։ Եւ կոչեաց Պետափրէ զվերակացու տանն իւրոյ, և ասէ ցնա․ Փութա և պատրաստեա[3] զտունն և ճաշ մեծապէս կազմեա, վասն զի Ցովսէփ զօրաւորն Աստուծոյ գայ այսօր առ մեզ։ Եւ լուաւ Ասանէթ եթէ եկին յանդից[4] ժառանգութեան հայր և մայր նորա, խնդաց և ասէ․ Երթայց տեսից զհայրն իմ և զմայր, որ եկին յանդէ[5] ժառանգութեան մերոյ․ վասն զի ժամանակ էր հնծոց[6]։ Եւ փութացաւ Ասանէթ և զգեցաւ զպատմուճանն բեհեզեայ՝ յոսկւոյ կճեայպաճուճ[7], և ած զգօտին ոսկեղէն ընդ մէջ իւր և ապարանճան[8] ի ձեռս և յոտս իւր, և ընդ պարանոց[9] իւր արկաւ քեռս պատուականս, և կօշիկս ոսկեզօծ ագաւ[10] յոտս իւր․ և ակամբք զանազան[11] էր կազմեալ յամենայն կողմանց։ Եւ էին անուանք չաստուածոց Եգիպտացւոց դրոշմեալք յամենայն զարդուն յապրջանս և յակունս պատուականս կերպարանք կռոց էին նկարեալք․ և վարշամակք եդեալ ի վերայ գլխոյ նորա, և թագ կապեալ ընդ ծամակալովքն․ և ամարայնոց գլխադրաւ ծածկեաց զգլուխ իւր․ և փութացեալ[12] ընդ սանդուխտն ի վերնատանէն և եկաւ[13]

1. Ա. ընդ հովանեաւդ։ Եւ յետոյ։
2. Ա. մեծ և սուրբ․․ Ցովսեփայ։ Եւ կոչեաց։
3. Ա. պատրաստ արար և փառ ընծայս մեծապէս կազմեալ։
4. Ա. յանդեից ժառանգութեան եւրեանց ծնողին իւր։
5. Ա. յանդեից։
6. Ա. հնչոց։
7. Ա. յոյժընտրապատճառ. Գ. ընտրապատճառ։
8. Ա. ապարանջան։
9. Ա. ընդ պարանոցաւ իւրով երկուս քարս։
10. Ա. չիք ագաւ։
11. Ա. ազգի ազգաւ էր պաճուճեալ (Գ. ազգի ազգի պաճուճեալ) յամենայն կողմանց. և էին անուանք չաստուածոց Եգիպտացւոց դրոշմեալ ի զարդուսն և յապարանջանս և յակունս պատուականս։
12. Ա և Գ. յաւելուն էջ։
13. Ա և Գ. եկն։

առ հայրն իւր և մայրն ի տես[1]. և երկիր եպագ նոցա և ողջունեաց զնոսա: Եւ ուրախացաւ Պետափրէս և կին նորա ի վերայ դստերն իւրեանց ուրախութիւն մեծ. վասն զի տեսանէին զնա պաճուճեալ իբրև զհարսն զարդուածոյն[2]. և հանին զամենայն բարութիւնսն, որ[3] բերեալ է յագարակէ ժառանգութեան իւրեանց ամենայն բարութիւն: Եւ ուրախ եղև Ասանէթ ի վերայ ամենայն մրգաց և ի վերայ խաղողոյ և թզոյ և արմաւոյ[4] և այլոց մրգաց զոր բերին: Եւ ասէ Պետափրէ ցդուստր իւր Ասանէթ. Որդեակ իմ. և ասէ Ասանէթ. Ահաւասիկ եմ, տէր: Եւ ասէ Պետափրէս. Եկ նիստ ի միջի մերում, և խօսեցայց ընդ քեզ զբան իմ: Եւ նստաւ Ասանէթ ի մէջ հօր և մօրն իւրոյ. և կալաւ Պետափրէս[5] զաջոյ ձեռն դստերն իւրոյ և համբուրեաց զնա, և ասէ. Որդեակ իմ Ասանէթ. և ասէ Ասանէթ. Ահաւասիկ, տէր իմ հայր: Եւ ասէ Պետափրէս. Յովսէփ զօրաւորն Աստուծոյ գայ այսօր առ մեզ. և նա է իշխան ամենայն[6] երկրիս Եգիպտացոց. զի Փարաւոն կացոյց զնա ի վերայ ամենայն ընչից[7] իւրոց. և նա է փրկիչ ամենայն երկրիս, զի նա տայ ցորեան աշխարհիս[8], և ապրեցուցանէ զմարդիկս ի հանդերձեալ և յառաջիկայ սովոյն: Եւ Յովսէփ այր աստուածապաշտ[9] և ողջախոհ լի իմաստութեամբ և պար-

1. յԱ և յԳ. չիք ի տես:
2. Ա. շաղապատածոյն. Գ. զարդարատարածոյն:
3. Ա և Գ. որ ետուն նոցա բերին յագարակի ժառանգութեան իւրեանց, և եղան դատերն իւրեանց. և ուրախ եղև ի վերայ ամենայն բարութեանցն Ասանէթ և ի վերայ:
4. Ա. արմաւենեաց և ողաննեաց և նշենեաց զոր բերին:
5. Ա. հայրն զաջոյ յետ աննեն նորա. Գ. զձեռանն:
6. Ա. ամենայն Եգիպտոսի:
7. Ա. երկրիս և նա տայ:
8. Ա. յաւելու ծերոյն և արբեցուցանէ զնա յառաջին և ի հանդերձեալ աւուրն:
9. Ա. աստուածապաշտ և ողջախոհ և պարկեշտ և նմանեալ ի հեշտալիերիս: Եւ ի Յովսէփ այր.. իմաստուն հանճարով:

կեշտ և նմա վայելէ ։ Եւ Յովսէփ էր այր զօրաւոր իմաստութեամբ և հանճարով, զի հոգի Աստուծոյ և շնորհք Տեառն են ընդ նմա ։ Արդ[1] եկ այժմ, որդեակ, տաց զքեզ նմա ի կնութեան, և ի հարստութիւն[2] եղիցի քեզ փեսայութեան յաւիտեանս ժամանակաց ։ Եւ եղեւ իբրեւ լուաւ Ասանէթ զբանն հօրն իւրոյ, այլագունեցաւ[3] երես նորա, և տրտմեցաւ յոյժ բարկութեամբ[4]. և խեթիւ հայելի հայէր ։ Խօսեցաւ Ասանէթ և ասէ. Տէր իմ հայր, ըստ բանիցս այսոցիկ տալ զիս իբրեւ զգերի առն այլազգոյն և փախստականի և[5] վաճառելոյ. ո՞չ է նա[6] որդի հովուաց յերկրէն Քանանացոց. և[7] յանդիմանեալ եղեւ անձամբ ննջելով ընդ տիկնոջն իւրում. և տէր նորա, արկ զնա ի բանտ խաւարին. թէ և եհան զնա ի բանտէն Թագաւորն[8], զի մեկնեաց զերազ նորա, զոր օրինակ մեկնեն կանայք պառաւունք Եգիպտացոցն. ոչ եղիցի այդպէս. այլ ամուսնացայց ընդ անդրանիկ որդւոյն Փարաւոնի. վասն զի նա է Թագաւոր ամենայն Եգիպտոսի ։ Եւ պատկառեաց[9] Պետափրէս դարձեալ խօսել ընդ դստերն իւրոյ վասն Յովսեփայ. զի[10] յանդգնաբար և բարկութեամբ արար պատասխանի ։ Եւ այր մի ծառայ գայր առ Պետափրէս և ասէ. Ահաւասիկ Յովսէփ առ դուրս մերձ կայ գաւթիս ։ Եւ Ասանէթ փախեաւ յերեսաց հօր և մօր իւրոյ, յորժամ լուաւ

1. Ա. որդեակ իմ, այժմ լուար զինչ և տաց։
2. Ա. և նա եղիցի ժեղէ փեսայութեան։
3. Ա և Գ. շառագունեցան երեսք նորա։
4. Ա և Գ. տրտմութեան մեծ և խեթիւ հայեցաւ ընդ հօրն իւրոյ և ասէ. ընդէ՞ր խօսեցար Տէր իմ և հայր իմ ըստ բանիցս այսոցիկ։
5. Ա. յաւելու ծառայէ։
6. Ա. ոչ որդի հովուին։
7. Ա. որ... ննջել։
8. Ա. Փարաւոն, վասն զի։
9. Ա և Գ. պատկառեր.. անդրէն դարձեալ։
10. Ա. զի ցանկնա բարկութեամբ և ամբարտաւանութեամբ արար պատասխանի. և ընթացեալ երեւեցաւ մի ի ծառայիցն Պետափրեայ.. առ դուռն դրանն նորա. Գ. և ահա մի ոմն ընթացեալ ի ծառայիցն։

զբանն[1] զայն որ խօսէին զնա վասն Յովսէփայ. և ել ի վերնատունն և եմուտ ի սենեակ իւր։ Եւ եկաց ի պատուհան[2] իւր մեծ, որ հայէր ընդ յարեւելս, վասն տեսանելոյ Յովսէփ, յորժամ մտանէր ի տուն հօր իւրոյ։

Եւ ելին[3] Պետափրէս և կինն և ամենայն ծառայք նորա ընդ առաջ Յովսէփայ և ամենայն սպասաւորք տանն. և բացեալ զդրունս գաւթին, որ հայէր ընդ յարեւելս, և մուտ Յովսէփ նստելով ի վերայ կառացն փարաւոնի. և էին լծեալ ի կառսն չորս ձիս սպիտակս իբրեւ զձիւն՝ ոսկեսանձք ամենեքեան. և կառքն էին ամենեւին[4] բոլորովին ոսկի։ Եւ էր Յովսէփ զգեցեալ զհանդերձս սպիտակս և գեղեցիկ, և ձորձ անկանելոյն[5] ծիրանի բեհեզոյ՝ ընդելուզեալ ոսկւով. և պսակ[6] ոսկի ի գլուխ նորա, և շուրջ զպսակաւ էին երկոտասան ակունք պատուականք, և ի վերայ ականցն էին երկոտասան ոսկեղէն ճառագայթատարած[7] կերպարանք. և գաւազան յահեակ ձեռին նորա. և յաջոյ ձեռին[8] իւրում բարձր ոստս ձիթենեաց, յորում էր պարարտութիւն պտղոց, և պտուղ ունէր պարարտութիւն սաստիկ։ Եւ եմուտ Յովսէփ ի գաւիթն, և փակեցան դրունքն ամենայն. և այր և կին մնաց[9] արտաքոյ գաւթին. զի պահապանք դրանցն ախեցին զդրունսն, և ոչ ումեք ետուն մտանել։ Եւ եկին Պետափրէս և կին իւր և ամենայն ազգականք նորա, բայց ի յԱսանեթայ ի դստերէ[10] նոցա, և երկիր պագին Յովսեփայ ի վերայ երեսաց իւրեանց յերկիր։ Եւ Յովսէփ էջ ի կառաց իւրոց և ընկալան

1. Ա. զբանսն զայսոսիկ վասն։
2. Ա և Գ. պատուհանին մեծի, որ։
3. Ա և Գ. ելին ընդ առաջ Յովսեփայ Պետափրէս և կին նորա և ամենայն [illegible] նորա, և բացին զդրանն գաւթին։
4. յԱ. չիք ամենեւին։
5. Ա. արկանելոյ նորա ծիրանի.
6. Ա. պսակ գլխոյ նորա, և։
7. Ա. ճառագայթ տարածանէին կերպարանօք.. ճառագայթաձևն.. Գ. եւ ճառագայթաձևն։
8. Ա. ունէր բարձր.. որ ունէր պարարտութիւն։
9. Ա. կացին։
10. յԱ. չիք ի դստերէ նոցա։

զնա ի գիրկս իւրեանց։ Եւ ետես Ասանէթ զՅովսէփ, և սիրեաց զնա ի սէր մեծ, և խորտակեցաւ անձն նորա, և լուծան ծունկք նորա, և դողայր ամենայն մարմին նորա, և ահ մեծ անկաւ ի վերայ նորա, և յերկիւղ սաստիկ երկեաւ Ասանէթ. յոգւոց եհան ի սրտէն և ասէ. Զի՞նչ գործեցից[1] այժմ ո՜վ թշուառականս. ո՞չ այժմ արհամարհելով խօսէին ընդ իս[2] հայր և մայր իմ և ասէին թէ որդին հովուին գայ առ մեզ յերկրէն Քանանացւոց, ո՞չ պատմէին[3] վասն Յովսեփայ. և սա իբրեւ զարեգակն եկն առ մեզ, և եմուտ ի տաճարս մեր. և ես անզգամս և յանդուգս և անպիտան՝[4] արհամարհելով արհամարհեցի զնա, անարգելով, և խօսեցայ բանս չար վասն նորա։ Եւ ոչ գիտէի թէ Յովսէփ իբրեւ որդի Աստուծոյ իցէ, քանզի ո՞վ ոք ի մարդկանէ ծնանիցի այսպէս գեղեցիկ. և՛ յորպիսի՞[5] յարգանդէ երկնիցի այսպիսի լուսաւոր մարդ. այլ ես հէգս և անզգամս խօսեցայ ընդ հօր իմոյ վասն նորա բանս չարս. և այժմ ո՞ւր երթայց և թագեայց յերեսաց նորա, զի մի տեսցէ Յովսէփ սիրելին Աստուծոյ. վասն զի խօսեցայ բանս չար վասն նորա. և ո՞ւր[6] թագեայց յերեսաց նորա. ինձ այսպէս թուի, նա զամենայն ծածուկս տեսանէ, և ոչինչ թագչի և զանխլանի ի նմանէ, վասն լուսոյն մեծի որ ի նմանէ է։ Եւ այժմ քաւեաց[7] զիս, տէր, ի նմանէ, զի խօսեցայ վասն նորա բանս չար անգիտութեամբ։ Եւ արդ տացէ զիս հայր իմ[8] յաղախնութիւն և ի սպասաւորութիւն, և եղէց նմա յաղախնութիւն յաւիտեանս յաւիտենից։

Եւ եմուտ Յովսէփ ի տաճարն Պետափրէի, և նստաւ ի վերայ աթոռոյն. և լուացին զոտս նորա, և եդին

1 Աստի թուղթ անկեալ յԱ. օրինակէն։

2. յԳ. չիք ընդ իս. չիք եւ յերկրէն Քանանացւոց։

3. Գ. յաւելու ճշմարտութեամբ։

4. Չիք յԳ. անպիտան արհամարհելով։

5. Գ. որ արգանդ երկնեցի։

6. յԳ. չիք ուր թագեայց յերեսաց նորա։

7. Գ. քաւեսցէ։

8. Գ. յաւելու Յովսեփայ։

նմա սեղան առանձին, զոր ոչ ուտէր Յովսէփ ընդ Եգիպտացիսն. վասն զի պղծութիւն համարէր ճաշակել ընդ նոսա: Եւ սաէ Յովսէփ ցՊետափրէս և ցամենայն ազգականն իւր. Ո՞վ է կինն այն որ կայ ի վերնատանն, մերձ ի պատուհանն. ի բաց գնասցէ յապարանիցս յայսցանէ. զի երկնչէր Յովսէփ, զմտաւածէր այսպէս. մի՛ գուցէ աշխատեսցէ զիս. զի ձանձրացուցանէին զնա ամենայն[1] կանայք և դստերք մեծամեծացն Եգիպտոսի. յորժամ տեսանէին զՅովսէփ, չարաչարախտանային վասն գեղեցկութեան նորա: Բայց Յովսէփ արհամարհէր զնոքօք, և հրեշտակս զոր[2] առաքէին կանայքն Եգիպտացւոցն հանդերձ ոսկւով և արծաթով և ընծայիւք մեծամեծօք, ի բաց դարձուցանէր ապառնալեօք և թշնամանօք: Վասն զի ոչ մեղայց, ասէ, այլ՝ առաջի Տեառն փրկչին իսրայելի. և զկերպարանս Հօր իւրոյ Յակոբայ առաջի աչաց իւր կարգէր յամենայն ժամ[3]. վասն զի ասէր Յակոբ ցՅովսէփ և ցամենայն որդիսն. Պահեցէք զանձինս ձեր, որդեակք իմ, ի կանանց օտարաց, առ ի չհաւասարելոյ ընդ նոսա. վասն զի հաւասարութիւն նոցա կորուստ է և ապականութիւն: Վասն այսորիկ ասաց Յովսէփ. ի բաց երթիցէ կինն այն յապարանաց աստի: Ասէ ցնա Պետափրէ. Զնա զոր տեսեր ի վերնատունն՝ ոչ է օտար կին, այլ դուստր մեր և ծառայ քո, կուսան[4] առն. և ոչ ոք ետես զնա յարանց, բայց միայն ի քէն այսօր. եթէ կամիս՝ եկեալ երկրպագցէ քեզ. վասն զի դուստր մեր է որպէս զքոյր քո: Եւ ուրախ եղեւ յուրախութիւն մեծ յաւելն Պետափրեայ՝ եթէ կոյս է, և ասէ[5] ակնարկել զամենայն առն. և Յովսէփ խորհեցաւ ի մտի իւրում և ասաց, թէ կոյս է և ատէ զամենայն այր, ոչ աշխատ առնէ զիս: Եւ ասէ Յովսէփ ցՊետափրէս և

1. յԳ. չիք ամենայն:
2. Գ. զոր առաքէին առ նա:
3. Գ. յաւելու և յեղէր զկերպա- րանս Հօր իւրոյ:
4. Գ. կուսան որ ոչ երբէք անկեալ է յայն առն:
5. Գ. և տես յայն անկանել ամե- նայն առն:

ցամենայն ազգատոհմն Նորա. Եթէ դուստր քո է և կուսան եկեսցէ, զի [1] քոյր իմ է, և սիրեցից զնա յայսմ հետէ իբրև զքոյր իմ։ Եւ մայրն Նորա ի վերնատունն, և ած զԱսանէթ, և կացոյց զնա առաջի Յովսեփայ։ Եւ ասէ Պետափրէս ցԱսանէթ դուստր իւր. Ողջունեա զեղբայրդ քո. զի դա է կոյս իբրև զքեզ մինչեւ ցայսօր, և ատէ զամենայն կին՝ որպէս և դու զամենայն այր օտար։ Եւ ասէ Ասանէթ ցՅովսէփ. Ուրախ լեր տէրդ օրհնեալդ յԱստուծոյ բարձրելոյ։ Եւ ասէ Յովսէփ ցԱսանէթ. Օրհնեսցէ զքեզ տէր, որ կենդանի առնէ զամենայն ինչ։ Եւ ասէ Պետափրէ ցդուստր իւր. Մատիր և համբուրեաց զեղբայրդ քո։ Եւ եղեւ իբրեւ մերձեցաւ Ասանէթ համբուրել զՅովսէփ, ձգեաց Յովսէփ զձեռն իւր և եդ ի վերայ կրծոց Նորա, և ասէ. Ոչ վայել է [2] աստուածապաշտի որ օրհնէ զԱստուած [3] կենդանի, և ճաշակէ զհաց օրհնեալ և զկենդանարար, ըմպէ զբաժակ օրհնեալ անմահութեան, օծանի օծմամբ անապականութեան, համբուրել զկին օտարոտի, որ օրհնէ բերանով զկուռս մեռեալս և համերս, և ճաշակեալ ի սեղանոյ Նոցա կերակուրս հեղձուցիկս, և ըմպէ ի սեղանոյ ի բաժակէ Նոցա գինի նենգութեան, և օծանի օծմամբ կորստեան։ Այլ պարտ է առն աստուածապաշտի համբուրել զիւր բարեկամ և զբարեպաշտ մայր և քոյր, և զամենայն որ թէ ի ցեղէն իւրմէ իցէ և յազգէ, և զկին զանկողնակից իւր, և բերանով իւրով խոստովանի զԱստուած կենդանի։ Նոյնպէս և կնոջ բարեպաշտի ոչ վայել է համբուրել զայր օտարական. վասն զի պղծութիւն է առաջի Տեառն Աստուծոյ։ Եւ իբրեւ լուաւ Ասանէթ զբան Յովսեփայ զղջացաւ յոյժ և տրտմեցաւ մեծապէս. յոգւոց հանէր և հառաչէր, և պշուցեալ ընդ Յովսէփ հեզն և ողորմածն և երկիւղածն յԱստուծոյ։ Եւ հայէր, և

1. Գ. չէք զի քոյր իմ է։
2. Գ. յաւելու առն։
3. Գ. զԱստուած և ճաշակող զհաց օրհնեալ և զկենդանարար։

լցան արտասուօք աչք նորա։ Եւ ետես զնա Յովսէփ, և ողորմեցաւ նմա. և ամբարձեալ զաջ ձեռն իւր Յովսէփ՝ և եդ ի վերայ գլխոյն Ասանեթայ, և ասաց. Տէր Աստուած հօր իմոյ Իսրայելի զօրաւոր և բարձրեալդ Յակոբայ, որ կենդանացուցեր զամենայն, և կոչեցեր ի խաւարէ ի լոյս, և ի մոլորութենէ ի ճշմարտութիւն, ի մահուանէ ի կեանս. դու, Տէր, օրհնեա զկոյսս զայս, և նորոգեա զսա հոգւովդ քո և ստեղծմամբդ [1] քո, վերստին կենդանացո զսա ծածուկ ձեռամբդ քո։ Եւ կերիցէ հաց կենաց, և արբցէ բաժակ կենդանութեան. և համարեա զսա ի ժողովուրդս քո, զոր ընտրեցեր յառաջ քան զլինելն ամենայնի, և մտցէ ի հանգիստ քո զոր պատրաստեցեր սիրելեաց քոց, և կացցէ ի կենդանութեան քում յաւիտեանս ժամանակաց։

Եւ ուրախ եղեւ Ասանէթ յօրհնութեան Յովսեփայ ուրախութիւն մեծ. և դարձեալ գնաց ի վերնատունն առանձինն, և անկաւ ի վերայ մահճաց իւրոց հաշաչելով. վասն զի էր նորա ուրախութիւն և տրտմութիւն և երկիւղ և դողումն և քրտունք սաստիկ. յորժամ լուաւ զամենայն բանսն Յովսեփայ, զոր խօսեցաւ ընդ նմա անուամբ Աստուծոյ բարձրելոյ, ելաց լալիւն մեծ դառնապէս, և զղջացաւ սիրտ նորա յաստուածոց իւրոց զոր պաշտէր, և ատեաց զամենայն կուռս իւր. և անսաց մինչեւ ի մերձենալ երեկոյին։ Եւ Յովսէփ եկեր և արբ. և ասէ ցմանկունսն զի լծեսցեն զձիս և զկառսն. վասն զի ասաց թէ Երթայց ընդ երկիրս ընդ այս։ Եւ ասէ Պետափրէ ցՅովսէփ. Հանգիցէ տէր իմ այսօր աստ, և վաղիւն երթիցես զճանապարհն քո։ Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ գնացից այսօր, վասն զի այս օր է յորում սկսաւ առնել Տէր զամենայն արարածս իւր։ Եւ յաւուրն եօթներորդի յորժամ դարձցի օրս այս՝ դարձայց և ես առ ձեզ, և [2] հանգեայց առ ձեզ։

Եւ գնաց Յովսէփ զճանապարհ իւր. և Պետափրէ

1. Գ. ստեղծ ձեռամբքդ քո։ 2. ԺԳ. չիք և հանգեայց առ ձեզ։

ընտանեօք իւր գնացին ի ժառանգութիւն իւրեանց. և մնաց Ասանէթ միայն հանդերձ եօթն կուսանօք. և ծանրանայր և լայր մինչև ի հաշել արևուն. և հաց ոչ եկեր և ջուր ոչ էարբ: Եւ եղև իբրև մերձեցաւ գիշերն, և ննջէին ամենեքին որ ի տանն էին, և Ասանէթ միայն արթուն էր, և զմտաւ ածէր զՅովսէփ, և լայր և կոծէր[1] զկուրծսն սաստկապէս, և երկնչէր երկիւղ մեծ և դողայր ի դողումն սաստիկ: Եւ իբրև խաղաղացան ամենեքեան, յարեաւ Ասանէթ ի տախտէն իւրմէ, և էջ հանդարտ ընդ սանդուխն՝ ի վերնատանէն, և եկն մերձ ի յերկանս երկանաղացն՝ և երկանաղացն ննջէր հանդերձ որդւովքն. և փութացաւ Ասանէթ և քակեաց ի դրանց զխորգ վարագուրաց, և ելից զնա մոխրով ի հնոցարանէն. և հանեալ ի վերնատունն՝ եդ ի վերայ գետնոյն, և առեալ զդուրսն փակեաց դռնափակովքն. և հառաչեաց հառաչմամբ մեծաւ և արտասուօք: Եւ լուաւ դայեակն հանդերձ կուսանօքն՝ որ էին ընդ նմա սննդակից, զոր սիրէր Ասանէթ քան զամենայն կուսանսն[2]. եկին ի դուրսն Ասանեթայ, և գտին զդրունս փակեալ, և լուան զհառաչանսն և զլալումն, և եկին ի դուրս նորա և ասէին. Զի՞ է քեզ, տիկին մեր Ասանէթ, և զի՞նչ է որ վշտացուցանէ[3] զքեզ. բաց մեզ և տեսցուք զի՞ եղև քեզ: Եւ ոչ եբաց Ասանէթ զդրունսն. բայց ի ներքուստ ասէ ցնոսա. Գլուխ[4] իմ ծանրացաւ, և ոչ հանգչիմ յանկողնի իմում. և յառնել և բանալ ձեզ ոչ կարեմ. վասն զի տկարացայ յամենայն անդամոց իմոց. և դուք գնացէք յիւրաքանչիւր սենեակս և հանգերուք, և թոյլ արարէք ինձ, զի ես դադարեցից, և[5] սակաւ մի հանգիստ առից:

Եւ կուսանքն վասն բանի նորա չոգան իւրաքանչիւր ի սենեակն: Յայնժամ յարեաւ Ասանէթ, և եբաց

1. Գ. յաւելու ձեռօք:
2. Գ. յաւելու և զօրինոյց զոյլ եւս վեց յասանան, և դորին:
3. Գ. . չտաղեցուցանէ:
4. Ա և Գ. զհիւանդանալ ցաւս ծանր է:
5. յԱ. չիք և սակաւ մի հանգիստ առից:

զդուրսն լռելեանս, և չոգաւ յերկրորդ[1] սենեակն, ուր էին սապատք զարդուց նորա. և[2] բացեալ զարկղն՝ և եհան զագանելիսն սեաւս և թխրաթուխս[3]. և այն էր հանդերձ նորա սգոյ, յորժամ մեռաւ եղբայրն նորա կրտսեր՝ զայն հանդերձն զգեցեալ էր Ասանէթ, և ձայնիւ սգայր զեղբայր իւր։ Եւ ագաւ[4] Ասանէթ զսեաւ ագանելիս իւր, և եբեր ի սենեակս իւր. և եդեալ զդրունսն փակեաց դռնափակովքն. և փութացաւ Ասանէթ, և եհան զհանդերձսն զարքունականսն և զբեհեզսն և զընդելուզեալ ոսկւով ծիրանիսն, և զգօտին ոսկի, և զթագն գլխոյ, և զապարանջան ի ձեռացն և յոտիցն. և առեալ ընկէց զամենայն ընդ պատուհանն, որ հայէր ընդ հիւսիսի. և փութացաւ Ասանէթ և էառ նոյնպէս զչաստուածսն[5] ամենայն զոսկեղէնս և զարծաթեղէնս, որոց ոչ գոյր[6] թիւ համարոյ, ընկէց ընդ պատուհանն ի վերնատանէն[7]. և առ զընթրիսն իւր զարքունականսն Ասանէթ զհացն և զձուկն և զմիս երնջոցն, և զամենայն ողջակէզս չաստուածոցն իւրոց, և զկահ գինւոյն՝ յորում ողջակէզն առնէր, և ընկէց զնա ընդ պատուհանն. և ետ զամենայն կերակուր շանց օտարաց. վասն զի ասաց Ասանէթ. Մի՛ գուցէ կերիցեն շունք իմ յընթրեաց[8] և յողջակիզացն գառանց կռոց, այլ կերիցեն շունք օտարաց։ Եւ եղեւ յետ այսորիկ, և առ Ասանէթ[9] զմաշկ քրձին, քակեաց զոր ելից մոխրով, և տար արկ զայն ի վայր. և ածաւ քուրձ ընդ մէջ իւր, և լու-

1. Ա. յերրորդ։
2. յԱ. պակասին բառք ինչ։
3. Ա. Թուրաթուխս՝ վասն զի այն։
4. Ա և Գ. ուղղագոյն գնեն և ա՛ռ Ասանէթ։
5. Ա. յաւելու Եգիպտոսի. յԳ. պակասի ոսկեղէն և արծաթեղէն։
6. Ա. ոչ գոյր համար. Գ. որոց ոչ էր համար։
7. Ա. յաւելու ի վայր։
8. Ա. յընթրեաց և յողջակիզաց կռոցն՝ զի մի՛ պղծեսցին յայսմհետէ՝ այլ կերիցեն շունք օտարացն։
9. Ա. Ասանէթ պատուհանն ուր է էջ մոխրով, և արկ ի վերայ յատակի գետնոյ տանն, և քակեաց զմաշկ քրձին և եած ընդ մէջն, և քակեաց զհերաւակս։

ծեալ զհիւսեակս հերացն, և արկ ի վերայ գլխոյն իւրոյ[1] զմոխիրն ի մէջ գետնոյն, և բախեաց ձեռօքն զկուրծսն, և ելաց լալիւն մեծ[2] դառնապէս զգիշերն ամենայն կոծելով մինչև ցառաւօտն: Եւ եղև ընդ առաւօտանալն, և ետես Ասանէթ զմոխիրն կաւացեալ յարտասուացն՝ որ ի վերայ տանն յատակին: Եւ դարձեալ անկաւ[3] ի վերայ երեսաց իւրոց մինչև ցերեկոյն մերձ ի հաշել արևուն. և այսպէս արար Ասանէթ մինչև յեօթներորդ օրն. այլ չարչարէր և տառապեցուցանէր զանձն իւր յեօթն աւուրսն, հաց ոչ եկեր և ջուր ոչ արբ: Յաւուրն ութերորդի ընդ առաւօտանալն յորժամ սկսաւ ճռնչիւն հաւուցն լինել, և հաջիւն շանց ի ճանապարհորդսն, համբարձեալ զգլուխ իւր ի վեր, վասն զի էին կթուցեալ և լուծեալ անդամք իւր առ կարօտութեան կերակրոցն եօթն աւուրցն. և անկեալ[4] ի ծունկսն՝ եդ զձեռն ի վերայ գետնոյն՝ ի վայր ունելով զգլուխն. և էր հեր գլխոյն լուծեալ և փթթեալ ի սաստկութենէ մոխրոյն. և ձեռն կցեալ[5] Ասանէթ աշխարէր զգլուխ իւր, և կոծէր զկուրծս իւր, յոգւոց հանէր մեծապէս և հառաչէր, զհեր գլխոյն իւր ճողէր, և մոխիր ի վերայ արկանէր: Եւ այնպէս աշխատեցաւ Ասանէթ և նեղաարտեցաւ և տկարացաւ ի զօրութենէ իւրմէ. և դարձաւ յորմն կոյս, և նստաւ ի վերայ պատուհանին որ հայէր յարևելս[6]. և զգլուխն եդ ի գոգ իւր, և կցեաց զձեռն ի վերայ

1. Ա. իւրոյ և ցանեաց (Գ. ցընդեաց) զմոխիրն ընդ մէջ գետնոյն:
2. Ա. մեծ. և այնպէս առնէր Ասանէթ զգիշերն ամենայն: Եւ յառաւօտուն եօթներորդի յորժամ առաւօտ եղև և սկսաւ ճչումն (Գ. ճռճիւն) հաւուցն լինել, համբարձեալ զգլուխ ի վեր:
3. Ա. չանգնեալ (Գ. և չանգնեալ) ի ծունկս իւր, յոգւոց եհան մեծապէս, և զհեր գլխոյն իւրոյ ճողէր և մոխիր ի վերայ իւր արկանէր: Եւ աշխատեցաւ Ասանէթ:
4. Գ. յանկելոյ ի վերայ յատակէ տանն:
5. Գ. յեռացեալ կալ:
6. Ա. ընդ յարևելս, և զգլուխ իւր եդ ի գոգ իւր, և խօսք հատեալ էին:

ծնկացն իւր. և խօսք ամենեւին հատեալ էին ի բե-րանոյ նորա, և ոչ եբաց Ասանէթ զբերան իւր եօթն[1] օր ի նեղութեան իւրում. և ասաց Ասանէթ ի սրտի իւրում, թէ Զի՞նչ գործեցից, կամ զո՞ արա-րից ապաւէն, կամ յո՞ երթայց կոյս որբ և անոք[2]. թողեալ ատեցեալ ամենեցուն զիս՝ ի հօր իմոյ ատեցեալ եղէ. վասն զի ես ատեցի զաստուածսն նոցա, զոր կո-րուսի զնոսա, և կոխումն արարի ամենայն մարդկան, և վասն այսորիկ ատեցին[3] զիս հայր և մայր իմ և ամենայն ազգականքն իմ. և ասաց հայրն իմ. Ոչ եւս կոչեսցի մեզ դուստր Ասանէթ, վասն զի կորոյս զաստ-ուածսն մեր զոսկեղէնս և զարծաթեղէնս. և ահա ա-տելի եղէ ամենայն մարդկան, վասն զի ամբարտաւա-նեցի ես զամենայն մարդովք և զամենեքումբք[4] որոց խօսէին զիս. և այժմ յայս նեղութեանս իմում ատելի եղէ ամենեցունց. և ուրախ եղէ ընդ նեղութիւնս իմ։ Զայս միայն խորհէր, և[5] ասէր. Տէր Աստուած բարձրեալդ Յովսեփայ, որ ատես զամենեսեան որ պաշ-տեն զկուռս մեռեալս և համերս և անշունչս, վասն զի դու ես Աստուած վրէժխնդիր և ահաւոր ի վերայ աստուածոց օտարաց։

Յաղագս այսորիկ և զիս ատեաց[6] Աստուած. զի ես պաշտեցի զկուռսն անմռունչս և համերս և անշունչս, և օրհնեցի զնոսա և[7] կերայ ի զոհից նոցա, և բերան իմ պղծեցաւ ի սեղանոյն[8], և ոչ ունիմ իշխանութիւն կարդալ առ Աստուած երկնից[9] և առ բարձրեալ փըր-կիչն Յովսեփայ. վասն զի ապականեցաւ անձն իմ ի զոհից կռոցն և ողջակիզաց նոցա. և արդ լուայ յո-մանց՝ զի Աստուածն ճշմարիտ է Եբրայեցւոցն, և Ա-

1. Ա. եօթն օր և ասաց ի սրտի իւրում։
2. Ա. ամենեքին ատեցին զիս .. ա-տելի։
3. Ա. ատեն։
4. Ա. զամենեքեանս որ խօսեին ընդ իս։
5. Ա. և չէր այսորիկ։
6. Ա. ատեցեր։
7. Ա. յաւելու և կերայ զհաց նոցա։
8. Ա. ի զոհից նոցա։
9. Ա. երկնի և երկրի։

տուած կենդանեաց է, Աստուած ողորմած, երկայնամիտ է և բազումողորմ[1], և ոչ համարի մարդոյ[2] զմեղս. համբերէ ապաշխարողի, և ոչ յանդիմանէ զմարդ ի ժամանակի նեղութեան իւրոյ։ Եւ արդ համարձակեցայց և դարձայց առ նա, ապաւէն արարից զնա, և խոստովան եղէց նմա զամենայն մեղս իմ, և հեղից զպաղատանս իմ առաջի նորա, և ողորմեսցի ինձ։ Ո՛ գիտէ եթէ հայի. ի տառապանս իմ[3], թերևս հայեսցի յամայութիւնս և գթասցի յիս։ Ո՛ գիտէ[4] եթէ տեսցէ զողբումն իմ, և օգնեսցէ ինձ. վասն զի նա է հայր որբոց և օգնական նեղելոց. համարձակեցայց և աղաղակեցից առ նա, զի թերևս թողութիւն արասցէ ինձ։

Եւ յարեաւ Ասանէթ յորմոյն յոր[5] նստէրն, և դարձաւ ի պատուհանն որ հայէր ընդ արեւելս. և կանգնեցաւ ի ծունգս իւր, և համբարձեալ զձեռս իւր յերկինս, և երկեաւ Ասանէթ բանալ զբերան իւր յերկինս և ասել զանունն Աստուծոյ։ Դարձաւ անդրէն յորմն կոյս և նստաւ, և եհար ձեռամբ[6] զկուրծս իւր և զգլուխն բազում անգամ, և խօսէր ի սրտի իւրում, զբերանն ոչ բանալով, և ասէր. Ո՛վ տառապեալս՝ որբ և ամայացեալս. բերան իմ ի զոհից կռոցն պղծեալ է յօրհնելոյ զաստուածսն Եգիպտացւոց. և այժմ արտասուօք իմովք այսու և մոխրովք չարչարեցից զմարմին իմ. սակայն և այժմ ոչ իշխեմ բանալ զբերան իմ, և օրհնել զանուն քո սուրբ և ահաւոր. մի՛ գուցէ բարկասցի ինձ Աստուած վասն կարդալոյ զանուն նորա սուրբ։ Արդ զի՞նչ գործեցից ես թշուառականս. համարձակեցայց և բացից զբերան իմ առ նա, և եթէ սրտմտեալ ընթադրեսցէ զիս՝ կարող է դարձեալ

1. Ա. յաւելու և համբերող։
2. Ա և Գ. ապաշխարողի. և ոչ յանդիմանէ։
3. Ա. իմ և ողորմեսցի ինձ, թերևս հայեսցի յամայութիւնս իմ և գթասցի։
4. Ա. ո՞ գիտէ զիմ զողորմութիւնս և օգնեսցէ։
5. Ա. յորում. Բն. որ։
6. Ա. զկուրծս իւր ձեռամբ իւրով և ասէ. Արդ զի՞նչ գործեցից։

բժշկել զիս։ Եթէ[1] խրատեսցէ զիս տանջանօք, կարող է կրկին[2] մխիթարել զիս, և ի խրատելն դարձեալ նորոգեսցէ զիս ողորմութեամբն իւրով։ Եթէ տրտմեսցի[3] վասն մեղաց իմոց, հաշտեսցի ընդ իս, և թողցէ զամենայն մեղս իմ։ Արդ համարձակեցայց և բացից զբերան իմ առ նա, թերևս ողորմեսցի ինձ և թողցէ զմեղս իմ[4]։

Եւ յարեաւ Ադամ յորմոյ անտի, և կանգնեցաւ ի ծունգս իւր, և համբարձեալ զձեռս իւր յարևելս՝ հայեցաւ յերկինս, եբաց զբերան իւր առ Աստուած, և ասէ. Տէր Աստուած յաւիտեանց[5], որ ստեղծեր զամենայն և կենդանացուցեր[6], կենդանութիւն ամենայն արարածոց քոց. որ հաներ զաներևոյթս ի լոյս[7]. որ ստեղծեր զարարածս քո զերևելիս յաներևութից և յոչէից[8]։ Որ բարձրացուցեր զերկինս և հիմնեցուցեր զնա ի վերայ հողմոց. որ հաստատեցեր զերկիրս ի վերայ ջուրց սուրբ քարամբք քով։ Որ հեղեր[9] քարինս մեծամեծս ի վերայ ջուրց. քարինք ոչ ընկղմին, այլ են իբրև զտերև կաղնոյ ի վերայ ջուրց. և են քարինքն կենդանի, և ձայնի քում լսեն, Տէր։ Վասն զի դու, Տէր, կենդանարար ես ամենայն արարածոց քոց. ի քեզ ապաւինիմ, Տէր, և առ քեզ սփռեմ ըղպաղատանս իմ, և քեզ[10] յայտնեցից զանօրէնութիւնս իմ։ Խնայեա յիս, Տէր, զի մեղայ և յանցեայ առաջի քո, Տէր. բազմապատիկ մեղայ և անօրինեցայ, ամբարշտեցայ, և խօսեցայ բանս չար և անճառելի. պղծեցաւ բերան իմ ի զոհից կռոցն. յաղագս որոյ բազում անգամ պղծեցայ անգիտութեամբ, և պաշ-

1. Ա. յաւելու դարձեալ։
2. Ա. դարձեալ նորոգեսցէ զիս ողորմութեամբ իւրով։
3. Ա. տրտմեսցի (Գ. ևս տրտմեսցէ) ընդ իս, դարձեալ թողցէ և թողցէ զմեղս իմ։ Արդ։
4. Ա և Գ. ինչ։
5. յԱ. չիք յաւիտեանց։
6. Ա. և Գ. որ ետուր շունչ կենդանութեան։
7. Յաւելու բանս լոյս ըստ Ա. օրինակին։
8. Ա. յոչնչէ։
9. Ա և Գ. եդեր... ի վերայ անդնդոց ջրոց։
10. Բն. քեզ։

տեցի զկուռս մեռեալս և զհամերս: Եւ արդ ոչ եմ արժանի բանալ զբերան իմ վասն բազում մեղաց իմոց: Ես Ասանէթ դուստր Պետափրէ քրմին[1] դշխոյ որ եմ, էի երբեմն դժոխք և ամբարտաւան և ամբարտաւանեալ, և բարձրացեալ մեծութեամբ քան զամենայն մարդ. այժմ որբ եղէ և ամայի[2], թողեալ յամենեցունց. առ քեզ ակն ունիմ[3], Տէր, և առ քեզ աղաղակեմ. դու փրկեա զիս յառաջ քան զհասանելն հալածանաց իմոց: Զի որպէս մանուկ տղայ զարհուրեալ[4] փախչի առ հայրն իւր, և հայրն ձգեալ զձեռն առցէ[5] զնա ի գետնոյն. և մանուկն պնդէ ձեռամբն զպարանոցաւ հօրն, և ապահովացի յահէն[6] և հանգչիցի ի գիրկս հօրն իւրոյ. այնպէս և ես խռովեալ եմ յամենայն կողմանց, և առ քեզ, Տէր և հայրդ իմ, փախստական անկանիմ. արդ դու ձգեա զձեռն քո, և յափշտակեա զիս յերկրէ: Զի ահաւասիկ վայրենի և ծերացեալ առիւծն փախստական[7] առնէ զիս. զի նա է հայր աստուածոցն Եգիպտացւոցն. վասն զի որդի[8] առիւծի են ամենայն կուռք հեթանոսաց. և ես ընկեցի զամենայն աստուածսն ի բաց և կորուսի զնոսա, և առիւծն հայրն նոցա սրտմտեալ հալածէ զիս: Ապրեցո զիս, Տէր, ի ձեռաց նորա, և ի բերանոյ նորա փրկեա զիս. մի՛ գուցէ յափշտակէ զիս, և գէշ գէշ պատառէ և արկցէ[9] ի հուր հնոցի, և հուրն արկցէ ի մէջ մրրկի. մրրիկն շաղապատէ զինեւ, և խաւարեցուցանէ զիս, և արկանէ զիս յանդունդս խորոց, և կլցէ զիս կէտն[10] մեծ, որ ի սկզբանէ էր, և կորեայց[11] յաւիտեանս ժամանակաց: Փրկեա զիս, Տէր, յառաջ

1. Ա. դրժն որ ոչ խօսէի երբեմն և ամբարտաւանէի և ամբարտաւան էի և բանձրացեալ մեծութեամբ. Գ. որ եմ և էի երբեմն դժոխք:
2. Ա. ամայէ:
3. Ա. անկանիմ:
4. Ա. յորժամ (Գ. ես յորժամ), զարհուրէ:
5. Ա. առնու զնա յափշտակեալ ի գետնոյ:
6. Ա. յերկնաղէն:
7. Ա. հալածական:
8. Ա. որդիք առաքածացն և ընկեց զամենայն:
9. Ա. արկանէ զիս ի հուր հնոցին, և հնոցն:
10. Ա. գետն մեծ:
11. Ա. կորեաւ:

քան զգալն այսր ամենայնի ի վերայ իմ. փրկեա և ամբացո[1] զօտարացեալս, վասն զի մայր իմ և հայր իմ ուրացան զիս և աստացին. Ոչ է մեր[2] դուստր Ասանէթ, վասն զի կորոյս զաստուածսն մեր և ատեաց զնոսա[3]. յաղագս այսորիկ ատելի եղէ նոցա և[4] ամայի և որբ. և լոյս ի քեզ եղէ, Տէր, և ոչ այլ ոք. յայլ ոք ոչ ապաւինիմ, բայց միայն ի քեզ, Տէր. զի դու ես հայր որբոց և հալածելոց և օգնական նեղելոց: Ողորմեա ինձ կուսանիս և տառապելոյս և որբոյս. զի դու ես բարի և քաղցր հայր և մայր: Ո՞ հայր է իբրեւ զքեզ, Տէր[5], քաղցր, և ո՞ր մայր գթած որպէս զքեզ Տէր. և ո՞վ երկայնամիտ մեղուցելոց իբրեւ զքեզ: Ահա զամենայն[6] զոր ետ ինձ հայր իմ Պետափրես[7] ի ժառանգութիւն անցաւոր և առժամանակեայ, ոչ են անապական և յաւիտենական, իսկ քո ամենայն ինչ շնորհք և ժառանգութիւն անանց է և անվաղճան: Եւ այժմ հայեաց յիս ի տառապեալս և ողորմեա ինձ:

Ահաւասիկ փախստական եղէ յամենեցունց, և զքեզ, Տէր, ապաւէն ինձ արարի. ահաւասիկ զամենայն բարութիւնս երկրի թողի, և զքեզ յոյս ինձ արարի: Եւ արդ խորգով և մոխրով աչխարեմ[8] առ քեզ, և լամ զմեղս իմ. ահա ի բաց մերժեցի յինէն զթագաւորական զգեստն[9], զբեհեզ, զգնդապաճոյճն և զոսկեհուռն, և զգեցայ զհանդերձ սգոյ. ահա լուծի զգօտի իմ ոսկեղէն, և զգեցայ քուրձ. ահա զթագն իմ և զպսակն իմ ընկեցի ի գլխոյ իմմէ, և զգեցայ[10] զմոխիր. ահաւասիկ

1. Ա. և Գ. ապրեցո զօտարացեալս, վասն զի հայր իմ և մայր իմ:
2. Բն. մեր:
3. Բն. զնոա:
4. Ա. եւ որբ, և լոյս իմ է քեզ է. և այլ ով ուրեք ոչ է քեզ, Տէր, և ոչ զոք ապաւինիմ... զքեզ...
5. յԱ. տող մի պակասէ. և ո՞վ:
6. Ա. յաւելու ժառանգութեանս:
7. Ա. Պետափրես՝ անցաւոր է և առժամանակեայ (Գ. ժամանակեայ է) իսկ քո ամենայն շնորհքդ ժառանգութիւն անապական են և յաւիտենական: Եւ այժմ:
8. Ա. աղաղակեմ զմեղս իմ. ահա
9. Ա. զգեստն և զոսկեհուռն իմ, և զգեցայ սեաւ զի իմ եմ ագաւոր:
10. Ա. և փոխանակ այնր մոխրով զգեցայ:

յատակ տան իմոյ յօրինեալքս էին կճայովք[1] և պայծառ ծիրանովք. և որպէս յառաջագոյն զանոյշս ցանէի, և պայծառ կտաւովք մաքրէի. այժմ ցանեցան արտասուօք իմովք, և ընդ մոխրելն յամօթ եղեն. ահաւասիկ յարտասուաց իմոց մոխիրս կաւացաւ[2] և եղեւ իբրեւ կաւս գռեհաց և ճանապարհաց: Ահաւասիկ յարտասուաց իմոց զընթրիսն իմ արքունական ետու կերակուր շանց օտարաց, և ես զեօթն[3] գիշեր հաց ոչինչ ճաշակեցի, և ջուր ոչ արբի. բերան իմ ցամաքեցաւ զօրէն[4] թմբկի, և լեզու իմ եղեւ որպէս զեղջիւր չոր, և շրթունք իմ իբրեւ զխեցի. դէմք իմ ի վայր խոնարհեցան, և աչք իմ այտուցեալ ամօթալից ի սաստիկ արտասուաց իմոց[5], և նուազեցաւ յինէն ամենայն զօրութիւն իմ. արդ ես զչաստուածսն զոր յառաջագոյն պաշտէի անգիտութեամբ, և այժմ ծանեայ զի էին կուռք անմռունչք և խուլք, և ետու զնոսա ի կոխան, և գողք յափշտակեցին զոսկին[6] և զարծաթն, և կորուսի զամենայն յերեսաց իմոց: Վասն զի ի քեզ ապաւինեցայ, Տէր աստուած Յովսեփայ. դու ապրեցո զիս, Տէր, և թողութիւն արա ինձ. զի[7] վասն մեղաց անգիտութեամբ և տխմարութեամբ մոլորեցայ, և խօսեցայ բանս հայհոյութեան վասն տեառն իմոյ[8] Յովսեփայ, զի ոչ գիտէի թէ իբրեւ զորդի սիրելի իցէ քո: Այլ[9] խօսեցան ընդ իս մարդիկ իբրեւ պարզմտութեամբ, և ասացին թէ Յովսէփ որ-

1. Ա. կճճեանս ծիրանիս և պայծառս. և զոր յառաջագոյն եղ անոյշ (Գ. եղն անոյշն) ցանէի, և մաքրէի կտաւօք պայծառանօք... արտասուօք իմ ընդ մոխրով յամօթ եղէն:
2. Ա. կաւացաւ իբրեւ զճանապարհաց գռեհից. Գ. կաւացաւ իբրեւ զկոյտս գռեհից և ճանապարհաց:
3. Ա և Գ. զեօթն օր և զեօթն գիշեր:
4. Ա. իբրեւ զօրէն թմբկի (Բն. թմբրի):
5. Ա և Գ. լռեալ և նուաղեալ ցենէն ամենայն զօրութիւն իմ:
6. Ա. զամենայն ոսկեղէնն և արծաթեղէնն:
7. Ա. զի մեղայ անգիտութեամբ և տխմարութեամբ մոլորեցայ:
8. Ա. ծերոյ:
9. Ա. արդ:

դի է հովուի միոյ յերկրէն Քանանացւոց. և ես հաւատացի նոցա, մոլորեցայ և արհամարհեցի զնա, և խօսեցայ բանս չարութեամբ վասն նորա, և ոչ գիտէի թէ Յովսէփ իբրև զորդի սիրելի է քեզ. վասն զի ո՞վ ոք ի մարդկանէ ծնցի այսպիսի գեղեցկութիւն, և այսքան իմաստութիւն և առաքինութիւն: Պահեա զնա, Տէր, իմաստութեամբ շնորհի քո. և զիս յանձն արա նմա իբրև զաղախին և սպասաւոր. զի և ես արկից զանկողինս նորա և լուացից զոտս նորա, և եղէց նմա որպէս զաղախին:

Եւ եղեւ իբրև դադարեաց Ասանէթ ի խօսելոյ[1] առ Տէր, և արուսեակն ծագեաց. և զաստղն տեսեալ Ասանեթայ՝ ուրախ եղեւ և ասաց. Լուաւ[2] Տէր արդեօք աղօթից իմոց, զի ահաւասիկ աստղն Աստուծոյ, որ էր հրեշտակ և քարոզ՝ ծագեաց: Եւ դարձեալ տեսանէր Ասանէթ, և ահա մերձ յերկինսն[3] պատառեալ լուծանէր երկինք, և երեւեցաւ լոյսն մեծ և անճառելի. և[4] դայս տեսեալ՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց ի վերայ մոխրոյն: Եւ իջեալ յերկնից ի նմանութիւն առն, և կացեալ հանդէպ գլխոյն Ասանեթայ, և կոչեաց և ասէ. Ասանէթ: Եւ նա ասէ. Ո՞վ է որ կոչեացն զիս. զի դուռք սենեկիս փակեալ են, և աշտարակս բարձր է. զիա՞րդ արդեօք[5] մարթեաց մտանել ի սենեակս իմ: Եւ կոչեաց երկրորդ անգամ այրն զնա և ասէ. Ասանէթ: Եւ Ասանէթ ասէ[6]. Եթէ ո՞վ ես դու՝ պատմեա ինձ: Եւ ասէ այրն. Ես եմ իշխանն իսրայելի[7], և զօրաւոր քան զամենայն սուրբս բարձրելոյն. արի կանգնեաց և կաց ի վերայ ոտից քոց, և խօսե-

1. Ա. խօսակցանելոյ զՏէր:
2. Ա. Լուաւ ինձ Տէր և աղօթից.. աստղն Աստուծոյ էր և քարոզ ծագեաց.
3. Ա. յորոյ ամենայն էր պայծառեալ լուսոյն. Գ. լուսոյն մեծ:
4. Ա. երեւ Ասանէթ և անկաւ է վերայ մոխրոյն..
5. Ա. ով կարաց:
6. Ա և Գ. յաւելուն ահաւասիկ եմ տէր:
7. Ա. Տեառն (Գ. ես) և զօրաց ամենայն զօրութեամբ (Գ. զօրութեան բարձրելոյն):

ցայց ընդ քեզ զբանս իմ։ Եւ ամբարձ Ասանէթ զգլուխ իւր և ետես. և ահա այրն էր ամենեւին նման Ցովսեփայ՝ պատմուճանաւն և պսակաւն և թագաւորական գաւազանաւն. բայց դէմք նորա էին որպէս փայլակն, և աչք նորա որպէս զճառագայթս արեգական, և հեր գլխոյ նորա իբրեւ[1] զբոց, և ձեռք նորա որպէս երկաթ հրացեալ, և կայծակունք թօթափէին ի ձեռաց և յոտից նորա՝ իբրեւ յեռանդնացեալ հրոյ[2]. զոր տեսեալ Ասանեթայ՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր, և երկեաւ երկիւղ մեծ, և զդողումն[3] հարան ամենայն անդամք ոսկերաց նորա։ Եւ այրն[4] ասէ ցնա. Քաջալերեաց, Ասանէթ, և մի երկնչիր. այլ արի կաց ի վերայ ոտից քոց, և խօսեցայց ընդ քեզ զբանս իմ։ Եւ յարեաւ Ասանէթ, և եկաց ի վերայ ոտից իւրոց։ Եւ ասէ այրն. Երթ՝ և ի բաց հան զպատմուճանդ[5] քո զայդ սեաւ և սգոյ՝ զոր զգեցար. խորգդ՝ որ զմիջովդ է ի բաց դիցես, և ի բաց թօթափեալ զմոխիրդ ի գլխոյ քումմէ, և լուա զքեզ[6] ջրով կենդանութեան, և զգեցիր զպատմուճանն աղէկն[7] և փառաւորեալն, և ած զգօտի ոսկի՝ որ է կուսութեան քո. և եկ խօսեցայց ընդ քեզ զբանս իմ։ Եւ փութացաւ Ասանէթ, եմուտ յերկրորդ սենեակն իւր, ուր էին սապատք զարդու նորա. և բացեալ զարկղն՝ առ անտի զգեստս կտաւեայս և երեւելիս, որ ոչ էին երբեք շօշափեալք յումեքէ. և մերկացեալ յինքենէ զպատմուճանն սեաւ և սգոյն, և ի բաց եհան զխորգն ի միջոյն իւրմէ. և զգեցաւ զհանդերձսն զերեւելիս, և ածեալ զերկոսին գօտիսն, որ էին կուսութեան իւրոյ, զմինն ած ընդ մէջ իւր, և զմինն[8] ածաւ ի վերայ կրծոց իւրոց՝ հանդէպ ստեանցն։

1. Ա. իբրեւ զփրփուր հրացեալ, և։
2. Ա. երկաթոյ. և ոտք մի պակասէ։
3. Ա. զդողի հարան ամենայն ոսկերք նորա։
4. Ա. սաէ այրն. համբերեա, կաց ի վերայ։
5. Ա. զպատմուճանդ սեւ և զկարմիր ի գլխոյ թօթափեա ի բաց։
6. Ա. զքեզ ես։
7. Ա և Գ. նոր երեւելիս և փառաւորեալս. և չիք ըԳ. ասէ մինչև թօթափեաս։
8. Ա. գօտին։

Եւ ի բաց թօթափեաց զմոխիրն ի գլխոյ իւրմէ, և լուաց զձեռս և զերեսս իւր, և առ զվարշամակ[1] կտաւեայ՝ նոր և պայծառ, և ծածկեաց զգլուխն իւր. եկն առ այրն յառաջին սենեակն, և եկաց առաջի նորա: Եւ ասէ ցնա այրն. Ի բաց առ զվարշամակդ ի գլխոյ քումմէ. ընդէ՞ր արարեր[2] զայդ այսօր. և դու կոյս սուրբ ես և պարկեշտ՝ մինչեւ ցայսօր ժամանակի. և գլուխ քո է իբրեւ զառն երիտասարդի: Եւ եհան Ասանէթ զվարշամակն ի գլխոյ իւրմէ. և ասէ ցնա այրն. Քաջալերեաց, Ասանէթ, կոյսդ սուրբ. ահա լուայ բանից քոց խոստովանութեանն և աղօթիցդ[3]. ահա տեսի զտառապանս եօթն աւուրց կարօտութեանց քոց. ահաւասիկ՝ ի մոխրոյ և յարտասուաց՝ կաւ սաստիկ տեսանեմ ես առաջի աչաց իմոց. քաջալերեաց, Ասանէթ, կոյս սուրբ, ահա գրեալ է անուն[4] քո մատամբն Աստուծոյ ի գիրն կենդանեաց յերկինս՝ ի սկզբանէ գրելոցն, և յառաջ քան զբազմաց՝ գրեցաւ անուն քո անջինջ[5] յաւիտեանս յաւիտենից: Ահա յայսմ հետէ նորոգեսցիս, վերստին կենդանասցիս[6], և կերիցես զհաց օրհնութեան կենդանարար, և զբաժակ օրհնեալ անմահութեան արբցես, և օծմամբ անապականութեամբ օծցիս[7]: Քաջալերեաց Ասանէթ, կոյս սուրբ. ահա ետու զքեզ այսօր հարսն[8] Յովսեփայ յաւիտեանս ժամանակաց: Եւ անուն քո ոչ եւս կոչեսցի Ասանէթ, այլ կոչեսցի Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ապաւինեսցին ազգք բազումք ի Տէր Աստուածն երկնից. և ընդ հովանեաւդ քո ծածկեսցին[9] յուսացեալք ի Տէր Աստուած, և ընդ պարսպաւդ քո պարապեսցին[10]

1. Ա. վարշամակ նոր և երկնից, և ծած:
2. Ա. արկեր:
3. յԳ. տող մի պակասէ մինչև ահաաաակ:
4. Ա և Գ. անուն քո յերկինս է գիրն...
5. Ա. ող Ընձեցես. Գ. մատամբն Աստուծոյ ող Ընձի:
6. Ա. կենդանեսցես:
7. Բն. ծնցես:
8. Ա. յաւելու յանուանութիւն. Գ. և նա եղեցի քեզ կնոյ:
9. Ա և Գ. յաւելուն ժողովուրդք:
10. Ա. ամրասցին:

հնազանդեալք բարձրելոյն՝ անուամբ ապաշխարութեան. որ հանէ[1] մերձ յերկինս, իբրեւ զսիրելի բարձրելոյն առնէ զմարդն, որ զնա կատարեալ մտօք խնդրեսցէ. զի նա է տուիչ[2] ամենայն պարգեւաց, եւ զօրացուցիչ ամենայն կուսանաց, եւ խնդրէ զկուսութիւն եւ սիրէ յոյժ, եւ ի վերայ ձեր ակն ածէ յոյժ յամենայն ժամ, եւ զամենեսեան՝ որ եթէ ապաշխարեն՝ առ ինքն ի յարկն իւր ընդունի, եւ տեղի հանգստեան պատրաստէ նոցա յերկինս, եւ հանգուցանէ զամենայն ապաշխարողս. ընդ այցելութեամբ նորա եղիցին հանապազ յաւիտեանս ժամանակաց, եւ նա խնայեսցէ ի նոսա: Եւ ես ահաւասիկ երթամ առ Յովսէփ, եւ խօսեցայց ընդ նմա վասն քո զամենայն բանս իմ. եւ մտցէ[3] առ քեզ Յովսէփ այսօր, եւ ուրախ եղիցի վասն քո, եւ սիրեսցէ զքեզ. եւ եղիցի քեզ ի փեսայութեան, եւ դու եղիցես նմա ի հարսնութեան յաւիտեանս: Եւ արդ, լուր ինձ, Ասանէթ կոյսդ, եւ զգեցիր զպատմուճան հարսնութեան քո, որ ի սկզբանէ պատրաստեալ է քեզ.. եւ ամենայն զարդուք կարգեալ[4] եւ պաճուճեալ զքեզ իբրեւ հարսն բարի. եւ յարուցեալ գնասցես ի պատահումն Յովսեփայ, վասն զի նա ահա այսօր եկեսցէ առ քեզ:

Եւ եղեւ իբրեւ կատարեաց այրն զխօսսն, խնդաց[5] Ասանէթ ի խնդութիւն մեծ ի վերայ ամենայն բանից նորա[6]. եւ անկեալ ի վերայ ոտից նորա՝ երկիր եպագ նմա ի վերայ երեսաց, եւ ասէ. Օրհնեալ է Աստուած բարձրեալն, որ առաքեաց զքեզ եւ փրկեաց[7] զիս ի խաւարէս յայսմանէ, եւ վերածեաց ի հիմանց անդընդոց, եւ օրհնեալ է անուն քո յաւիտեան: Եւ ասա՝[8]

1. Ա եւ Գ. վասն զի ապաշխարութիւն հանէ:
2. Ա. տեսուչ ամենայն կուսանաց եւ սիրէ զկուսութիւն յոյժ, եւ ձեր վերայ ակն ածէ յամենայն ժամ. եւ զամենայն որ եթէ զապաշխարութեամբ (Գ. զօրութեամբ) ապաշ.. յերկինս ընդունի:
3. Ա. տեսցէ զքեզ եւ ուրախասցէ եւ:
4. Ա. զարդարեա եւ պաճուճեա:
5. Ա. ցնծաց:
6. Ա. յաւելու զոր խօսեցաւ:
7. Ա. բերեւ:
8. յԱ եւ յԳ. չիք եւ ասա:

զի՞նչ է անուն քո, ասէր. պատմեա ինձ, զի օրհնեցից զքեզ, ասէր, յաւիտեանս ժամանակաց: Ասէ ցնա այրն. իմ անունս յերկինս է՝. ի գիրն բարձրելոյն գրեալ է յաւիտեանս ժամանակաց՝ մատամբն Աստուծոյ ի սկըզբանէ գրելոցն՝ յառաջ քան զամենեցունց. վասն զի ես եմ իշխան բարձրելոյն. և ամենայն անուանք՝ որ եթէ գրեալ են ի գիրս բարձրելոյն, անպատմելի են, և մարդոյ ոչ է լսելի և ոչ տեսանելի յայսմ աշխարհիս[1]. վասն զի մեծ են անուանք նոցա և զարմանալի և գովեալք յոյժ: Եւ Ասանէթ ասէ. Գտի շնորհս առաջի քո, և գիտեմ զամենայն բանս զոր խօսեցար ընդ իս[2]. բայց սակայն խօսեցի աղախինն քո առաջի քո: Եւ նա ասէ. Խօսեաց: Եւ ասէ Ասանէթ. Աղաչեմ զքեզ, տէր[3]: Եւ ընդ ասելն՝ մերձեցաւ ձեռն իւր ի ծունկս նորա, և պաղատելով ասէր ցնա. Նիստ[4] փոքր մի ի վերայ սախտոյս այսմիկ. վասն զի սախտս այս մաքուր է և առանց պղծութեան, և այր և կին ոչ երբեք նստեալ[5] է ի վերայ սորա. և եդից առաջի քո սեղան, և բերից յշտեմարանաց հաց և գինի հին և անոյշ, և դու կերիցես և արբցես, և ապա[6] երթիցես զճանապարհն քո: Եւ ասէ ցնա այրն. Փութացիր և բեր[7]: Եւ փութացաւ Ասանէթ, և եբեր առաջի նորա սեղան ունայն. և ինքն գնացեալ յերեսաց նորա, և կամէր մտանել յշտեմարանս իւր, զի բերցէ և դնիցէ առաջի նորա հաց: Ասէ ցնա. Բե՛ր ինձ խորիսխ մեղու[8]. և զտեղի առեալ Ասանէթ՝ տրտմեցաւ. վասն զի ոչ ունէր խորիսխ մեղու[9] յշտեմարանս իւր: Ասէ այրն. Ընդէ՞ր զտեղի առեալ տրտմեցար: Եւ ասէ Ասանէթ. Առաքեցից մանուկ արտաքոյ քաղաքիս, վասն

1. Ա. յաւելու և Թողութեան եղև:
2. Ա. վասն իմ:
3. Ա. և չգիտաց զձեռն իւր և մերձեցոյց ի ձեռն նորա և ի ծունկսն և ասաց.:
4. Ա. հանգիր:
5. Ա. նստաւ:
6. Ա. յետ այնորիկ:
7. Ա. արա: Եւ փութացաւ Ասանէթ, և եդ զապարէն զոհեղանն առաջի նորա:
8. Ա. և Գ. մեղրոյ:
9. Ա. մեղրոյ չէ դրեալ առաջի նորա: Եւ ասէ ցնա այրն. Ընդէ՞ր խնդրեցեր և ասէր զմեղր:

զի մերձ է այսր ժառանգութիւնս մեր, և բերցէ[1] անարի փաղփաղակի խորիսխ մեղուաց, և եդից առա-ջի քո, տէր իմ: Ասէ ցնա այրն. Գնացեալ մտցես յշտեմարանս քո, և գտցես խորիսխ մեղուաց ի վե-րայ սեղանոյն, զոր առեալ բերցես այսր: Ասէ այրն. Ե՛րթ մուտ, և գտցես: Եւ եմուտ Ասանէթ յշտեմա-րանս իւր, և եգիտ մաղս[2] մեղուաց՝ որ կայր ի վե-րայ սեղանոյն. և էր մաղն[3] մեծ և սպիտակ իբրև գձիւն, լի մեղու. և էր մաղն որպէս զցօղ երկնից, և հոտ նորա որպէս զհոտ կենդանութեան: Եւ զարմա-ցաւ Ասանէթ, և զմտաւ ածէր թէ[4] ի բերանոյ առնս այսորիկ ել արդեօք խորիսխս այս. վասն զի հոտ սո-րա իբրև զհոտ սունս[5] այսորիկ է: Եւ առ Ասանէթ զխորիսխն զայն[6], և եբեր առաջի առն, և եդ ի վե-րայ ունայն սեղանոյն, զոր պատրաստեաց յառաջա-գոյն: Ասէ ցնա այրն. Զի՞ է՝ որ ասացեր թէ ոչ գոյ խո-րիսխ մեղու յշտեմարանս իմ. և արդ[7] բերաւ աւադիկ խորիսխ մեղուաց յշտեմարանացդ աքանչելապէս: Եւ զարհուրեալ Ասանէթ ասաց. Ես, տէր, խորիսխ մե-ղուաց ոչ ունէի յշտեմարանս իմ. բայց դու խօսեցար, և եղև. գուցէ ի բերանոյ քումմէ ելեալ է սա. վասն զի հոտ սորա իբրև զհոտ բերանոյ քո է[8]: Եւ ժպտեալ առն՝ զմտաւ ածէր զԱսանեթայ զգաստութիւնն: Եւ կոչեաց զնա առ ինքն, և մերձեցոյց զաջ[9] ձեռն ի գլուխ նորա.

1. Ա. բերցէ խորհուրդ մեղուաց: Եւ ասէ այրն. Անհնարին է նա ի վերայ սեղանոյ յշտեմարանիդ քո, առեալ բերցես այսր, և ա-սէ (Գ. հս) Ասանեթ խորհուրդ մեղուաց յշտեմարանս իմ ոչ գոյ. և ասէ այրն երթ...
2. Ա. ծաղս մեղուաց որ կայր:
3. Ա. ծաղն... լի մեղրով, և էր ծաղն.
4. Ա. վասն աւելոյ ասենն այնորիկ ասացի արդեօք լեալ խորհրդոյ այս, վասն զի:
5. Ա. բերանոյ առնն. այնորիկ է:
6. Ա. զայն և եդ ի վերայ սունոյն սեղանոյն՝ զոր եդ յառաջագոյն առաջի նորա:
7. Ա. և արդ ասացի՞ ի խորհուրդ մեղուաց յշտեմարանս քո ոչգտա-նէի:
8. Ա. յաւելու անուշահոտ:
9. Ա. զաջոյ ձեռն և եդ ի վերայ գլխոյ նորա:

և երկեաւ Ասանէթ ի ձեռանէ առն. վասն զի կայծակունք Թափէին[1] ի բերանոյ նորա իբրև յերկաթոյ եռանդնացելոյ։ Եւ զարհուրեալ Ասանէթ՝ պըշուցեալ հայէր ի ձեռս առն։ Եւ[2] տեսեալ՝ ժպտեցաւ առէր. Երանի է քեզ, Ասանէթ, զի յայտնեցան քեզ ծածուկքն[3] Աստուծոյ բարձրելոյն. և երանի ամենեցուն՝ որ կացցեն առաջի Տեառն ապաշխարութեամբ, զի ի խորսխոյս յայսմանէ կերիցեն. վասն զի այս խորիսխս շունչ կենդանութեան է. և զսա գործեցին մեղուք դրախտին փափկութեան Աստուծոյ, այսինքն ի ցօղոյ վարդենեաց[4] կենդանութեան Աստուծոյ. վասն զի ամենայն հրեշտակքն Աստուծոյ ի սմանէ ճաշակեսցեն. ամենայն որդիք բարձրելոյն, և ընտիրքն Աստուծոյ[5]. զի խորիսխ կենդանութեան է սա. և ամենայն ոք որ կերիցէ ի սմանէ՝ ոչ մեռցի յաւիտեանս ժամանակաց։

Եւ ձգեաց այրն զձեռն և եբեկ[6] ի խորսխէն մասն ինչ սակաւ, և կերաւ ինքն՝ և զմնացորդսն որ ի ձեռին՝ արկ ի բերան իմ, և առէ ցիս. Ասանէթ, ահա կերար հաց կենաց, և արբեր բաժակ անմահութեան, և օծար օծմամբ անապականաւ. ահա յայսմհետէ մարմին քո բողբոջեսցէ որպէս ծաղիկ, և հանցէ կրկին որպէս[7] յերկրէ բարձրելոյն. և ոսկերք քո պարարտասցին որպէս զմայրս[8] փափկութեան դրախտին Աստուծոյ, և զօրութիւնք անաշխատք պարփակեսցեն զքեզ, և մանկութիւն քո զծերութիւն ոչ տեսցէ, և գեղեցկութիւնդ քո յաւիտեան ոչ պակասեսցի. և եղիցիս քաղաք ամենեցուն որպէս պարսպեալ յանուն տեառն Աստուծոյ թագաւորին յաւիտենից։ Եւ[9] ձգեաց այրն զձեռն իւր, և մերձեցոյց ի խորիսխն յոր բեկեալն

1. Ա. սաստիկ հրացեալ Թափէին ի բերանէ նորա։
2. Ա. և այրն նայեցաւ ժպտելով. Գ. և առն տեսեալ ասաց ժպտելով։
3. Ա. խորհրդականքն։
4. Ա. արքայից։
5. Ա. յաւելու ի սմանէ կերակրին։
6. Ա. եառ մասն ինչ սակաւ և կեր ինքն և զմնացորդսն։
7. Ա և Գ. զծաղիկ կենդանի յերկրէ։
8. Ա. զմայրս։
9. Ա. և յետ այսորիկ ձգեաց։

էր. և անդէն կատարեալ առլցաւ[1] բեկուածն և անդէն եղեւ ողջ որպէս[2] էր յառաջագոյն: Եւ դարձեալ ձգեաց զաջ ձեռն իւր և զմատն իւր ցուցական, և մերձեցոյց յեզր խորսխին՝ որ հայէր ընդ յարեւելս, և ած[3] ի կողմն՝ որ հայէր ընդ յարեւմուտս. և եղեւ տեսիլ մատին նորա որպէս[4] զարիւն. և ձգեաց երկրորդ անգամ զձեռն իւր, և մերձեցոյց յեզր[5] խորսխին՝ որ հայէր ընդ հիւսիսի, և ած ի կողմն՝ որ հայէր[6] ընդ հարաւ. և տեսիլ մատին նորա[7] որպէս զարիւն:

Եւ Ասանէթ հայէր[8] և տեսանէր՝ զոր ինչ առնէր այրն: Եւ ասէ այրն ցխորիսխ մեղուաց. Ե՛կ այսր: Եւ համբարձան մեղուքն յարկաց մաղին[9] այնորիկ, բիւրք բիւրոց և հազարք հազարաց մեղուք՝ սպիտակ իբրեւ զձիւն, լի մեղու. և թեւք նոցա ծիրանիք երկայնագոյնք որպէս զորդան կարմիր, և ոմանց որպէս[10] բեհեզս ընդելուզեալս, և զօրէն ոսկեղէն պսակաց շուրջ զգլխովն իւրեանց. պատուական էին կերպարանօք, և խայթոցք էին նոցա սուրք, և ոչ ումեք մնասէին. և շուրջ պատեալ ամենայն մեղուքն զԱսանեթաւ՝ յոտից մինչեւ ցգլուխն: Եւ այս[11] մեղուքս ընտիրք էին և մեծամեծք որպէս զթագուհիք. և յարուցեալ յերեսաց մաղին՝ պատեցան զերեսօքն Ասանեթայ, և գործեցին զերեսօքն նորա գործ. և շրթունք խորսխին[12] էր ի բերանն Ասանեթայ: Եւ ասէ այրն ցմեղուսն. Երթայք իւրաքանչիւր ի տեղի իւր: Եւ յարեան ամենայն մեղուքն և թռեան, և չոգան հանդէպ երկնից[13] և որք.

1. Ա. եղէց:
2. Ա. [illegible]:
3. Ա. դարձեր ի կողմն որ էր յարեւմուտս:
4. Ա. եւ հեղուն էին զարիւն:
5. Ա. զմատն ի կողմն հիւսիսոյ:
6. Ա. էր:
7. Ա. յաւելու եւ հեղուն եղեւ:
8. Ա. կայր հայեցեալ:
9. Ա. յամենայն ուրեք ծով զնէ փոխանակ մաղին:
10. Ա. որպէս ընդելուզեալս, օրէնով ոսկեղէն:
11. Ա. այլ:
12. Ա. խորսխոց էին:
13. Ա. երկրին եւ որք կանգնեցան նորոգ ի վերայ. [illegible]:

կամեցան վնասել Ասանեթայ՝ անկան և մեռան։ Եւ ձգեաց այրն զգաւազանն ի մեղուսն մեռեալ, և ասէ ցնոսա. Արիք և դուք երթայք ի տեղիս[1]։ Եւ յարեան մեռեալ մեղուքն, և չոգան համօրէն ապարանիցն Ասանեթայ, և նստան ի վերայ ծառոց պտղաբերաց։ Եւ ասէ այրն ցԱսանէթ. Իմացա՞ր զտեսիլդ։ Եւ նա ասէ. իմացայ[2]։ Եւ ասէ այրն. Այսպէս եղիցի քեզ բանք իմ այսօր։ Եւ ձգեաց երրորդ անգամ զաջ ձեռն իւր, և հասոյց ի հատուածս խորսխին, և եկեր զխորիսխն. և սեղանն ոչ վնասեցաւ, և հոտ հատուածի խորսխին՝ ելից զսենեակն. և էր հոտ յոյժ հեշտալի։ Եւ ասէ Ասանէթ ցայրն. Են առ իս եօթն կուսանք սննդակիցք իմ. ի միում գիշերի ծնեալք ես և նոքա. և ես սիրեմ զնոսա որպէս զքորս իմ. կոչեցից աստ՝ զի օրհնեսցես զնոսա, որպէս և օրհնեցեր զիս։ Եւ ասէ այրն. կոչեա։ Եւ կոչեցեալ կացոյց զնոսա առաջի առնն. և ասէ ցնոսա այրն. Օրհնեսցէ զձեզ Տէր Աստուած բարձրեալն. եղիջիք սիւնք եօթն քաղաքի[3], և ի ձեր վերայ հանգիցէ օրհնութիւն Տեառն յաւիտեանս ժամանակաց։ Եւ ասէ ցԱսանէթ. Փոխեա ի բաց զսեղանդ ի տեղւոյդ։ Եւ Ասանէթ էառ զսեղանն ի տեղւոջէն և դարձաւ ի միւս կողմն, զի դիցէ զսեղանն ի տեղին իւր. և այրն աներեւոյթ եղեւ յԱսանեթայ։ Եւ եւտես Ասանէթ որպէս կառս՝ զի գնայրն[4] յարեւելս յերկինս. և կառքն էին որպէս զհուր, և ձիք նորա որպէս փայլակն, և այրն այն կայր ի վերայ կառացն այնորիկ։ Եւ ասէ Ասանէթ. Անմիտս յանդուգս, զի խօսեցայ համարձակութեամբ և ասացի՝ թէ մարդ եկն ի սենեակս իմ, և ոչ գիտացի՝ թէ հրեշտակ Տեառն եկն. այսօր յերկնից առ իս. և ահա գնաց ի տեղի իւր։ Եւ ասէ. Քաւեա զիս, Տէր իմ, և խնայեա յաղախին քո. վասն զի խօսեցայ առաջի քո յանդգնաբար անգիտութեամբ զամենայն զբանս իմ։ Եւ մինչդեռ զմտաւ ածէր Ասանէթ վասն այսորիկ, և ահա

1. Ա և Գ. յաւելուն չեր։
2. յԱ. աստ թուղթ անկեալ է։
3. Բն. քաղաքին ոսկորքն։
4. Գ. գնայրն ընդ յարեւելս։

մանուկ մի ընթացեալ ի սպասաւորացն Պետափրեայ, և ասէ․ Ահա Յովսէփ զօրաւորն Աստուծոյ գայ առ մեզ․ զի կառքն[1] առաջի գուլթիս է։ Եւ փութացաւ Ասանէթ և կոչեաց զդայեակն իւր՝ որ էր ի վերայ ամենայն ստացուածոցն, և ասէ․ Փութա և կազմեա զտաճարն, և արա ընթրիս ազնիւս վասն Յովսեփայ զօրաւորին Աստուծոյ, որ գայ աստ այսօր։ Եւ տեսեալ զնա դայեակ իւր, և ահա ի վայր անկեալ էին երեսք նորա ի կարօտութենէ կերակրոց եօթն աւուրցն․ և տրտմեցաւ յոյժ, և ելաց․ և կալաւ զաջոյ ձեռանէ նորա, և համբուրեաց զնա, և ասէ․ Զի՞ ես, որդեակ, զի՞ այսպէս ի վայր անկեալ են երեսք քո։ Ասէ Ասանէթ․ Ցաւ ծանր անկաւ զգլխով իմով, և քուն հատաւ յաչաց իմոց․ վասն այնորիկ վատեալ են երեսք իմ։ Եւ չոգաւ դայեակ նորա և պատրաստեաց զտաճարն, և կազմեաց զընթրիսն։ Եւ յիշեաց զայրն և զպատուիրանս նորա․ և փութացեալ եմուտ ի սենեակն իւր երկրորդ, ուր էին սպասք զարդուց նորա․ և բացեալ զարկղն մեծ, և եհան զագանելիսն[3] իւր հարսանութեան զառաջինն և զընտիրն՝ իբրև զփայլակն, և զգեցաւ զնա․ և ածաւ զգօտին ոսկի և զթագաւորականն, որ էր բեւեռօք յօրինեալ ազգի ազգի․ և ի ձեռս և յոտս իւր ագաւ[4] ապարանջանս ոսկի, և զարդու պատուականօք զարգարեաց զպարանոց իւր, յորում էին ակունք պատուականք յեղյեղեալք՝ անհամարք և բիւրք․ և պսակ ոսկի եդեալ ի վերայ գլխոյ նորա․ և[5] էր պսակին աջոյ կողմանէն՝ հանդէպ ճակատոյն ակն՝ ակունք մեծ աստի և անտի, վեց ակունք պատուականք և մեծագինք․ և ամարանոց արկեալ զգլուխ իւր՝ որպէս զհարսն․ և առ զգաւազանն թագաւորական ի ձեռին իւրում։ Եւ յիշեաց Ասանէթ զբանս դայեկին իւրոյ, որ ասաց նմա՝ թէ տրտմեալ են երեսք քո․ յոգ-

1․ Գ․ վասն զի կարապետն նորա ա-ռաջէ։

2․ ՅԳ․ չէք զի՞ էք։

3․ Գ․ զարկանելին իւր։

4․ Գ․ արկաւ։

5․ ՅԳ․ պակասին բառք ինչ մին-չև և ամարանոց։

ւոյ եհան և տրտմեցաւ յոյժ, և ասաց. Եթէ դէմք իմ վատթարք են, եթէ տեսանիցէ զիս Յովսէփ՝ արհամարհէ զիս: Եւ ասէ ցմնողակիցն իւր. Բեր ինձ ջուր յատակ յաղբերէն և լուացից զերեսս իմ: Եւ բերեալ արկ ի դաշխուրանն. և խոնարհեալ Ասանէթ՝ զի լուասցէ զերեսս իւր. և տեսեալ զդէմս իւր ի ջուրն՝ զի էին որպէս զարեգակն, և աչք նորա որպէս զաւուսեակ զի ծագէ, և գնացք ոտից նորա որպէս զաւիկոսս հարթ և գեղեցիկս. այտք նորա կարմիր որպէս հատորս նռան, և շրթունք իւր որպէս զվարդ փթթեալ՝ յորժամ ի հակուկացն ի դուրս ժագէ, ատամունք նորա[1] որպէս զաշտարակ գեղեցիկ:

Եւ այսպէս տեսեալ Ասանէթ զինքն ի ջուրն, և ուրախացաւ ուրախութիւն մեծ, և ոչ եւս լուաց զերեսս իւր: Եւ եկեալ դայեակն ի պատմել նմա վասն ամենայնի՝ զոր ինչ հրամայեաց նմա. և եղեւ իբրեւ ետես զնա՝ հիացաւ և եկաց յափշտակեալ[2] իբրեւ ժամս երկուս. և երկեաւ երկիւղ մեծ ի տեսլենէ նորա, և խոնարհեալ յոտս նորա, ասէ. Զի՞նչ է այս, տիկին իմ, և կամ ուստի՞ է այդ մեծ գեղեցկութիւնդ քո, աքանչելի և հրաշալի. կարծեմ թէ տէր Աստուածն երկնից ընտրեաց զքեզ ի հարսնութիւն Յովսեփայ: Եւ մինչ դեռ խօսէին՝ ահա եհաս եկն մանուկ մի, և ասէ ցԱսանէթ. Ահաւասիկ Յովսէփ առ դուրսն դաւթիս է: Եւ փութացեալ Ասանէթ՝ էջ ընդ սանդուխսն եօթն կուսանօք ի պատահումն Յովսեփայ. և եկաց ի փողոցս ապարանիցն: Եւ եմուտ Յովսէփ ի դաւիթն, և փակեցան դրունքն, և արտաքոյ մնացին ամենայն օտարականքն: Ասանէթ ել ի փողոցն ի պատահումն Յովսեփայ: Եւ տեսեալ զնա Յովսէփ, և զարհուրեցաւ վասն յոյժ գեղեցկութեան նորա, և ասէ. Ո՞վ ես դու, պատմեա՛ ինձ վաղվաղակի: Եւ նա ասէ. Ես եմ ա-

1. Գ. Նորա չորքեան ճեղեալ որպէս զվահանաւորս ի պատերազմ, և հեր գլխոյ նորա իբրև ձայնք ի դաշտ լսեալ պղնձի. պարանոց նորա որպէս զաշտարակ:

2. Գ. տագնեալ:

ղախին քո Ասանէթ, որ ըստ հրամանի քում զամե-
նայն զկուռսն ի բաց ընկեցի և կորուսի. և այր մի
եկն այսօր եւ ետ ինձ հաց կենաց և կերայ. և բաժակ
օրհնութեան արբի. և ասէ ցիս. Ահա ետու զքեզ հարսն
Յովսեփայ, և նա եղիցի քեզ փեսայ յաւիտեանս ժա-
մանակաց. այլ նա ասաց ցիս՝ թէ ոչ եւս կոչեսցիս
Ասանէթ, այլ Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ա-
պաւինեսցին ազգք բազումք ի տէր Աստուած բար-
ձրեալն: Եւ ասաց ցիս. Գնացից առ Յովսէփ և խօսե-
ցայց յականջս նորա զբանս իմ վասն քո: Եւ այժմ
դու ճանաչես, տէր իմ, եթէ եկն այրն այն առ քեզ
և խօսեցաւ ընդ քեզ զբանս իմ: Եւ ասէ Յովսէփ
ցԱսանէթ. Օրհնեալ ես դու ի Տեառնէ Աստուծոյ
բարձրելոյն. վասն զի Տէր Աստուած հիմնաւորեաց
զպարիսպ քո[1] անդամանդեայ՝ պարիսպ կենդանու-
թեան. վասն զի բազումք կենդանիք որդիք մարդկան
բնակեսցեն ի Քաղաքիդ ապաւինի, և Տէր Աստուած
թագաւորեսցէ նոցա յաւիտեանս ժամանակաց: Զի
այրն այն եկն այսօր առ իս, և ըստ բանիցս այսոցիկ
խօսեցաւ վասն քո: Այժմ ե՛կ առ իս, կոյս սուրբ. և
ընդէ՞ր կացեր հեռի յինէն: Եւ ամբարձ զձեռն իւր,
և կոչեաց զԱսանէթ[2]. և եկն առ Յովսէփ, և անկաւ
ի վերայ գրկաց նորա. և կենդանացան հոգիքն նո-
ցա, և լցան ուրախութեամբ: Եւ ողջունեալ Յովսէփ
զԱսանէթ, ետ նմա հոգի կենդանութեան և հոգի
իմաստութեան և հոգի ճշմարտութեան. և չաղապա-
տեալք ընդ միմեանս՝ բազում ժամս զուարճանային
ընդ իրեարս: Եւ ասէ Ասանէթ. Ե՛կ այսր, տէր իմ,
մո՛ւտ ի տունս մեր. զի և ես պատրաստեցի զտաճարս
մեր, և կազմեցի ընթրիս մեծամեծս: Եւ կալեալ զձե-
ռանէ նորա՝ արկ ի տունն. և նստոյց յաթոռ հօր
իւրոյ. և եբեր ջուր՝ զի լուասցէ զոտս նորա: Եւ ա-
սէ Յովսէփ. Եկեսցէ մին ի կուսանացն և լուասցէ
զոտս իմ: Ասէ Ասանէթ, թէ Ոչ այդպէս, տէր իմ.

1. Գ. քո է բարձրանա պարիսպ քո:
2. Գ. յաւելու և փութացաւ Ասանէթ:

յայսմ հետէ ես եմ աղախին քո. և ընդէ՞ր է քեզ այդ, զի ա՛յլ ոք լուացէ զոտս քո. վասն զի ոտքդ քո ոտք իմ են, և անձն քո՝ անձն իմ. և բռնադատեաց զնա և լուաց զոտս նորա: Եւ տեսանէր Յովսէփ զի ահա ձեռք նորա էին որպէս զձեռս կենդանութեան, և մատունք նորա էին որպէս գրիչ արագագրի: Եւ զկնի այսո-րիկ կալաւ Յովսէփ զաջոյ ձեռանէ նորա, և համբու-րեաց զնա. և Ասանէթ համբուրեաց զգլուխ նորա. և նստաւ ընդ աջմէ նորա: Եւ եկին հայր և մայր նորա յագարակէ իւրեանց, և ամենայն ազգականքն նորա. և տեսին զԱսանէթ որպէս ի տեսլեան լուսոյ, և էր գեղեց-կութիւն նորա որպէս գեղեցկութիւնս երկնայինս. և[1] տեսին զնա զի նստէր ընդ Յովսեփայ, և զգեցեալ էր հանդերձ հարսանեաց. և զարհուրեցան և սքանչացան վասն գեղեցկութեան նորա. և ետուն փառս Աստու-ծոյ՝ որ կենդանի առնէ զամենայն: Եւ զկնի այսո-ցիկ՝ կերան և արբին և ուրախ եղեն: Եւ ասէ Պե-տափրէս ցՅովսէփ. Ի վաղիւն կոչիցես զնախարարս և զմեծամեծս Եգիպտացւոց, և արարից ձեզ հարսա-նիս, և առցես զդուստր իմ զԱսանէթ քեզ ի կնու-թիւն: Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ վաղիւն գնացից առ Փարաւոն արքայ, վասն զի նա իմ՝ է որ-պէս զհայր, և կարգեաց զիս իշխան ի վերայ երկրի. և խօսեցայց վասն Ասանեթայ յականջս նորա, և նա տացէ զԱսանէթ ինձ ի կնութիւն: Եւ ասէ Պետափ-րէս. Երթ ի խաղաղութիւն: Եւ մնացեալ Յովսէփ զօրն զայն առ Պետափրէս, բայց ոչ ննջեաց ընդ Ա-սանեթայ. վասն զի ասէր Յովսէփ՝ թէ ոչ վայել է առն աստուածապաշտի նախ քան զհարսանիսն՝ ննջել ընդ ամուսնոյ իւրոյ: Եւ յարեաւ ընդ առաւօտն Յովսէփ, և չոգաւ առ Փարաւոն, և ասէ ցնա. Տո՛ւր ինձ զԱսանէթ դուստր Պետափրէ քրմի ի կնութեան, յԱրեգ քաղա-քէն: Եւ ասէ Փարաւոն. Ո՞չ ահա[2] զնա խօսեալ էր քեզ[3]

1. յԳ. տող մի պակասէ:
2. Ա. ահա կոչեցի տեղ ի հարսնութիւն:
3. Գ. տեղ է ակնկալեալ և եղիցի տեղ ի հարսնութիւն:

ի հարսնութիւն յայամշետէ յաւիտեանս ժամանակաց: Եւ առաքեաց փարաւոն, և կոչեաց զՊետափրէս[1]: Եւ ած զԱսանէթ և կացոյց առաջի փարաւոնի. և հիացաւ փարաւոն ընդ գեղեցկութիւն նորա, և ասէ. Օրհնեսցէ զքեզ Աստուածն Յովսեփայ, որդեակ. և մնասցէ ի քեզ գեղեցկութիւն քո յաւիտեանս յաւիտենից. զի յիրաւի ընտրեաց զքեզ[2] տէր հարսն Յովսեփայ՝ յաւիտեանս ժամանակաց. վասն զի սա է որպէս զորդի Աստուծոյ, և դու կոչեսցիս յայամշետէ դուստր բարձրելոյն: Եւ առ փարաւոն զՅովսէփ և զԱսանէթ, և եդ նոցա պսակս ոսկիս, որ էր[3] ի տան գանձուց յաւիտեանս ժամանակաց[4]: Կացոյց փարաւոն զԱսանէթ յաջմէ Յովսեփայ, և եդ զձեռս ի վերայ գլխոյ, նորա և զաջ ձեռն ի վերայ գլխոյն Ասանեթայ, և ասէ. Օրհնեսցէ զքեզ[5] Աստուած բարձրեալն, և փառաւորեսցէ զքեզ[6] յաւիտեանս ժամանակաց: Եւ դարձոյց զնոսա փարաւոն յիրեարս, և մերձեցոյց զնոսա, և համբուրեցին զմիմեանս: Եւ[7] զկնի այսորիկ արար փարաւոն հարսանիս և ընթրիս մեծամեծս և ուրախութիւնս բազումս՝ զաւուրս եօթն: Եւ կոչեաց[8] զամենայն իշխանս Եգիպտացւոցն և զթագաւորս ազգաց: Եւ քարոզ կարդայր ամենայն երկրին Եգիպտացւոց, և ասէր. Ամենայն ոք որ գործէ զգործ զեօթն օր հարսանեաց Յովսեփայ և Ասանեթայ՝ մահու մեռցի: Եւ եղեւ յետ այսորիկ՝ եմուտ Յովսէփ առ Ասանէթ, և յղացաւ, և ծնաւ զՄանասէ[9] ի տուն Յովսեփայ, ի փառս Աստուծոյ. ամէն:

1. Ա. յաւելու հանդերձ դարե-րովն:
2. Ա. յաւելու Աստուած Յովսե-փայ... ժամանակաց և կոչեցեր:
3. Ա. որ էին ի տան զարդարոց նորա ի սկզբանն ժամանակաց:
4. Աստի մինչև և դարձոյց պակա-սէ յԳ:
5. Ա. զձեզ:
6. յԱ. չիք զձեզ:
7. Ա. չունի և:
8. Ա. յաւելու յառաջ. յԳ. եր-կուս տողս պակասէ:
9. Ա. զՄանասէ և զԵփրեմ (Գ. և անուն զԵփրեմ) ի տանն Յով-սեփայ զօրութեամբն Աստու-ծոյ կենդանւոյ:

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

## ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ԱՍԱՆԵԹԱՑ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

Ա. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, ես Ասանէթ դուստր Պետափրեայ քրմի Արեգ քաղաքի[1], որ վերակացուն էր աստուածոցն ամենայնի։

Բ[2]. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և յանցեայ և պաշտեցի զաստուածսն, որոց ոչ գոյ թիւ, և ուտէի ի զոհից նոցա։

Գ. Մեղայ, Տէր, մեղայ և յանցեայ. ես էի կոյս հպարտ և ամբարտաւան։

Դ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ. զհաց հեղձուցիկ կերայ և զբաժակ յարոգայթից արբի, և ուտէի ի սեղանոյն մահու։

Ե. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, և ոչ գիտէի զՏէր Աստուած երկնից, և ոչ յուսացայ ի բարձրեալն Աստուած ի կենդանին յաւիտենից։

Զ. Մեղայ, Տէր, մեղայ[3] և բազում յանցեայ. և յուսացայ ի մեծութիւն փառաց իմոց և ի գեղեցկութիւն, և էի հպարտ և ամբարտաւան։

Է. Մեղայ, Տէր, մեղայ, և առաջի քո բազում յանցեայ, արհամարհելով զամենայն մարդով, և ոչ էր այր՝ որ երեւէր առաջի իմ։

1. Ա. քաղաքին տափառանձոցն որ վերակացու էր ամենայնի։
2. Ա. Նախ զԳ. տունն դնէ և պակաս զԲ։
3. Ա և Գ. յաւելուն առաջի քո։

Ը[1]. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո. յանցեայ, բազում յանցեայ. զի սաէի՝ ոչ գոյ իշխան երկրի՝ որ լուծանէ զգօտի կուսութեան իմոյ։

Թ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ[2]. և ատեցի զամենեսին՝ որք կամէին զիս ի հարսնութիւն, և արհամարհէի զնոսա և անգոսնէի։

Ժ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ. այլ[3] գթութեամբ քո եղէց հարսն որդւոյն մեծի Թագաւորի. այլ արա ինձ Թողութիւն[4]։ Մինչ եկն զօրաւորն Աստուծոյ Յովսէփ, նա ինքն իջոյց զիս ի զօրութենէ իմմէ[5]. և խոնարհեցոյց զիս յամբարտաւանութենէ իմմէ, և գեղեցկութեամբ իւրով որսաց զիս, իմաստութեամբն իւրով[6] որպէս ձուկն Թակարդիւ՝ կալաւ զիս։ Եւ հոգւով դեղ կենաց արբոյց ինձ, և զօրութեամբ իւրով հաստատեաց զիս, և մատոյց զիս Աստուծոյ յաւիտենից, և ետ ուտել ինձ հաց կենաց, և ըմպել զբաժակ անմահութեան արբոյց ինձ, և եղէ նմա հարսն յաւիտեանս։

Եւ[7] յետ այսորիկ անցին եօթն ամ լիութեան. և սկսաւ գալ եօթն ամ սովոյն։

Եւ[8] լուաւ Յակոբ վասն Յովսեփայ որդւոյ իւրոյ, և եկն յԵգիպտոս ամենայն ազգականօք իւրովք յերկրորդ ամսեանն Նիսանի[9] ԻԱ ամսոյն, և բնակեցաւ յեր-

1. Ա. նախ դնէ զԹ. տունն՝ և ապա զԸն։
2. Գ. յանցեայ, այլ գթութեամբ քո.... մեծի Թագաւորի։
3. Ա. այլ ես համարէի զիս հարսն մեծի որդւոյ փարաւոնի, մինչ։
4. Ա և Գ. յաւելուն զԱյլ Թողութիւն իբր զխորագիր։
5. յԳ. տող մի պակասէ։
6. Ա. իւրով հնազանդեցոյց զիս և որսաց որպէս ձուկն Թակարդիւ։ Եւ հոգւով դեղ կենաց և զօրութեամբն։
7. յԱ. աստ մինչև, յայսմ խորագիր է երկրորդի մասին, և չիք խորագիր եղեալն ի բնագրին։
8. Բն. ունի իբր զխորագիր Վասն գալըն Յակոբայ ամենայն ընտանեօք և բնակելոյն ի Գեսեմ։
9. յԱ. չիք Նիսան։

կլին Գեսեմ։ Եւ ասէ Ասանէթ ցՅովսէփ. Երթամ տեսանեմ զհայրն քո, վասն զի հայրն քո Յակոբ որ-պէս Աստուած է իմ։ Եւ [1] Յովսէփ. Եկեսցես ընդ իս, և տեսցես զհայրն իմ։ Եւ եկին Յովսէփ և Ասանէթ յերկիրն Գեսեմ. պատահեցան նոցա եղբարքն Յով-սեփայ, երկիր պագին նոցա, մանաւանդ [2] Ասանեթայ, ի վերայ երեսաց իւրեանց յերկիր։ Եւ մտին առ Յակոբ, և [3] տեսին նստեալ ի վերայ մահճաց իւրոց։ Եւ էր ինքն ալեւոր և ծերացեալ յոյժ։ Եւ ի տեսա-նելն զնա Ասանեթայ՝ զարհուրեցաւ անձն նորա. վասն զի էր Յակոբ բարի [4] տեսլեամբ և ծերունի, և ծե-րութիւն որպէս զառն մանկան՝ յոյժ գեղեցիկ երի-տասարդի. և գլուխ նորա ամենեւին սպիտակ իբրեւ զձիւն, և հեր գլխոյ նորա թանձրուր [5] յար ի գլուխն և խիստ յոյժ իբրեւ զառն հնդկի, և մորուսն՝ սպի-տակ և փայլուն՝ նստեալ ի վերայ լանջացն նորա, և աչք նորա խանդացուցիչ և փայլուն [6] և գեղեցիկ, և լանջք նորա և ուսքն և բազուկքն և մատունք ձեռաց նորա իբրեւ զհրեշտակի զօրաւոր, և բարձք նորա և սրունք նորա որպէս զհսկայի. և [7] այնպէս երեւէր այրն Յակոբ՝ որպէս թէ կռուիցի ոք ընդ Աստուծոյ։ Եւ [8] ե-տես զնա Ասանէթ և զարհուրեցաւ, և երկիր եպագ նմա ի վերայ երեսաց իւրոց յերկիր։ Եւ ասէ Յա-կոբ ցՅովսէփ. Ա՞յս է հարսն իմ կին քո. օրհնեալ եղիցի [9] սա յԱստուծոյ բարձրելոյն։ Եւ կոչեաց զնա առ ինքն, համբուրեաց զնա և օրհնեաց. ձգեաց և Ասանէթ զձեռս իւր, և կալաւ [10] զպարանոցէն Յակո-

1. Ա. Եւ ասէ։
2. յԱ. չիք մանաւանդ Ասանե-թայ։
3. Ա. և իւրաքանչիւր նստաւ ի վերայ. Գ. և էր Յակոբ նստեալ։
4. Ա. բարի և էր ծերութեան նո-րա որպէս մանկութեան և գե-ղեցիկ յոյժ. և։
5. Ա. յաւելու սպիտակ է գլուխ հեր գլխոյ նորա, և խորքն յոյժ որպէս զառն հնդկի։
6. Ա. փայլուն., և իւր լանջք... թաղանթն իբրեւ զհրեշտակի, և թարշ...։
7. Ա. և էր այրն Յակոբ իբրեւ [illegible]։
8. Ա. իբրեւ։
9. Ա. ի։
10. Ա. անկաւ զպարանոցաւն։

բայ, և կախեցաւ զուսովք[1] հօր իւրոյ, որպէս ոք յոր- ժամ ի պատերազմէ ապրեալ եկեացէ ի տուն։ Եւ յետ այսորիկ կերան և արբին. և գնացին Յովսէփ և Ասանէթ ի տունս իւրեանց[2]։ Եւ յուղարկեցին զնա եղբարքն Յովսեփայ որդիքն Լիայ միայն. բայց որ- դիքն Զելփայ և Բալլայի՝[3] յաղախնոյն Լիայ և Ռա- քելի, ոչ ուղարկեցին զնա ընդ նոսա, վասն զի նա- խանձէին և թշնամիք էին նոցա։ Եւ էր Ղեւի յաջմէ կողմանէ Ասանեթայ, և Յովսէփ ի ձախմէ կողմանէ նո- րա. և էր Ասանեթայ կալեալ զձեռանէն Ղեւեայ. և սի- րէր Ասանէթ զՂեւի քան[4] զամենայն եղբարսն Յով- սեփայ. վասն զի գիտէր Ղեւի զանճառսն բարձրելոյն[5], և յայտնէր զամենայն Ասանեթայ գաղտնի բանիւք. և Ղեւի սիրէր զԱսանէթ յոյժ, և տեսանէր զտեղի հանգստեան նորա ի բարձունս, և պարիսպ նորա որ- պէս զպարիսպ անդամանդեայս, և զհիմունս[6] վիմի երկրորդ երկնից։ Եւ եղեւ ի գալն Յովսեփայ և Ա- սանեթայ, ետես զնա անդրանիկ որդին Փարաւոնի ի պարսպէն, և զղջացաւ և թշուառացաւ[7] ծանրութեամբ, և զչարէր ի վերայ գեղեցկութեանն Ասանեթայ, և ա- սէր. Ոչ այդպէս եղիցի։ Առաքեաց հրեշտակս որդին Փարաւոնի, և կոչեաց առ ինքն զՇմաւոն և զՂեւի. և եկին կացին առաջի նորա։ Եւ ասէ ցնոսա որդին Փարաւոնի՝ անդրանիկն. Ճանաչեմ ես այսօր, զի դուք էք արք հզօր քան զամենայն մարդիկ՝[8] որ են ի վե-

1. Ա. զուսովքն նորա՝ զոր օրհնեալ լինի ու զուսովքն հօր իւրոյ՝ յոր- ժամ դարձեալ ի պատերազմէ և ե- կեալ ի տուն իւր. իսկ Գ. զուսովքն նորա, զոր օրհնեալ լինի ու զուսովքն հօր իւրոյ։

2. Ըստ աւարտի Գ. օրինակն այ- սու բանիւք փառաւորելով զԱստուած որ է օրհնեալ յա- ւիտեանս ամէն։

3. Ա. Զաղղայի և Զեղփայի ոչ եկին ընդ նոսա յուղարկել զնոսա, վասն զի նախանձէին և թշնամի էին նոցա. բայց աղախնորդի էին Լիայի և Ռաքելայ։

4. Ա. առաւել քան։

5. Ա. յաւելու և զծածկեալ խոր- հուրդն Աստուծոյ..

6. Ա. զհիմունս նորա որպէս զհի- մունս վիմի։

7. Ա. դժուարացաւ ծանրութեամբ։

8. Ա. մարդ որ է։

րայ երկրի, և յաղոյ ի ձեր[1] յայդոցիկ երկուց՝ աւերեցաւ քաղաքն Սիկիմացւոց, և յերկուս աւուրս[2] յաջոյ ձեր յայսոցիկ կոտորեցան երեսուն հազար արանց պատերազմողաց։ Եւ ահա առից զձեզ որպէս զընկերս[3], և տաց ձեզ ոսկի և ծառայս և աղախնեայս և տունս և վիճակս մեծամեծս և բարիս. բայց սակայն զբանս զայս արարէք, և ընդ իս արարէք ողորմութիւն. վասն զի թշնամանեցայ ես առնաբար[4] յեղբօրէն ձերմէ Յովսեփայ, վասն զի առ զԱսանէթ զկինն իմ, զոր ինձ էր խօսեցեալ[5] ի սկզբանէ։ Եւ այժմ եկայք կռուեցարուք ընդ Յովսեփայ եղբօր ձերում. և սպանանեմ զնա սրով իմով, և առնում զԱսանէթ ինձ ի կնութիւն. և դուք եղիջիք ինձ յեղբարս և սիրելիս և հաւատարիմս. բայց զբանս զայս դուք ինձ արարէք։ Իսկ եթէ դուք դանդաղիցէք[6] առնել զբանս զայսոսիկ, և արհամարհիցէք զխորհրդովք իմովք, ահա սուր իմ պատրաստ է առ ձեզ։ Եւ մինչ դեռ զայս ասէր՝ մերկացոյց զսուր իւր և եցոյց նոցա։ Եւ իբրեւ լուան զբանս զայսոսիկ արքն Շմաւոն և Ղեւի, և զղջացան յոյժ, վասն զի ձեւով գոռոզի խօսեցաւ ընդ նոսա[7] որդին Փարաւոնի։ Եւ էր Շմաւոն այր յանդուգն և համարձակ, և խորհեցաւ արկանել զձեռն իւր ի դաստակն[8] սրոյ իւրոյ, և ձգել զնա ի պատենից իւրոց, և սպանանել զորդին Փարաւոնի, վասն զի խստութեամբ խօսեցաւ ընդ նոսա։ Եւ ետես Ղեւի զխորհուրդս սրտի նորա, և զի էր Ղեւի այր մարգարէ[9], և տեսանէր սրբութեամբ մտաց իւրոց, և աչօքն իւրովք կարդայր զգրեալսն ի սիրտ մարդոյն[10]. և կոխեաց ոտամբն իւր[11] առաջոյ զոտն նորա, և նե-

1. Ա. ձեռն ձեր երկուցը աւերեցաւ։
2. Ա. աւուրս ձեր։
3. Ա. զընդերս։
4. Ա. արհամարհաբար։
5. Ա. խօսեալ էր ի սկզբանն։
6. Բն. դանդաղիցիք առնել զբանս։
7. Ա. յաւելու ողորմելով։
8. Ա. դաստակն։
9. Ա. յաւելու ծածկաբեր։
10. Ա. մարդոյն։
11. Ա. եդոյ առաջոյ զոտն Շմաւոնի։

ղեաց զնա, և նշանակեաց[1] դադարել նմա ի բարկութենէ իւրմէ. և ասէ Պետի հեզաբար ցՇմաւոն. Ընդէ՞ր դու բարկութեամբ ցասեար ի վերայ առնս այսորիկ. և մեք արք[2] աստուածապաշտք, և ոչ վայել է մեզ՝ նմա հատուցանել չար փոխանակ չարի։ Եւ ասէ Պետի ցորդին Փարաւոնի հանդերձ համարձակութեամբ. և բարկութիւն ոչ դոյր ի նմա, և ոչ սակաւ մի ի հեզութեանն[3] սրտի նորա, և ասէ ցնա. Ընդէ՞ր խօսի տէր մեր ըստ բանիցս այսոցիկ. և մեք եմք աստուածապաշտք, և հայր մեր սիրելի է Աստուծոյ բարձրելոյ, և Յովսէփ եղբայրն մեր սիրելի է Աստուծոյ։ Արդ, զիա՞րդ արասցուք մեք զբանդ զայդ չար, և մեղանչիցեմք առաջի Աստուծոյ մերոյ, և առաջի հօրս մերոյ Յակոբայ, և առաջի եղբօր մերոյ Յովսեփայ։ Եւ այժմ լուր բանից իմոց. ոչ վայել է առն աստուածապաշտի զրկել զամենայն ոք ըստ ամենայն օրինակի. իսկ թէ ոք կամի զրկել զայր աստուածապաշտ[4], վասն զի սուր է ի ձեռն նորա. և դու պահեա[5] այժմ խօսել վասն եղբօր մերոյ Յովսեփայ ըստ բանիցս այսոցիկ։ Իսկ եթէ[6] դու մնաս ի չարի խորհրդեանդ այդմիկ, ահա սուրք մեր հանեալ են ի յաջոյ ձեռս մեր՝ վասն քո։ Եւ ձգեցին զսուրսն իւրեանց արքն Շմաւոն և Պետի՝ ի պատենից իւրեանց, և ասեն. Ահա տեսեր զսուրս զայս ի ձեռս մեր. սուրք՝ որով խնդրեաց Տէր զվրէժ և զթշնամանս ի Սիկիմացւոցն, որով թշնամանեցին զորդիսն Իսրայելի վասն քեռ[7] մերոյ Դինայի, զոր պղծեաց Սիւքեմ[8] որդին Եմովրայ։ Եւտես որդին Փարաւոնի զսուրսն[9] երկսայրի, և յոյժ դողաց ամենայն ոսկերք նորա. վասն զի փայլէին սուրքն որպէս զբոց հրոյ. և չլացան աչք որդւոյն Փարաւոնի և անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր[10]։

1. Ա. նշնաց։
2. Ա. եմք։
3. Ա. հեզութենէ։
4. Ա. յաւելու և բարկանայ այրն այն աստուածապաշտ, և սուրբ է յեռանդ նորա թէ ոք զրկանաց զնա։
5. Բն. պահե։
6. Ա. եթէ ոչ ահա սուրք։
7. Ա. քեռւերն մեր։
8. Ա. ի Սիքեմ։
9. Ա. զսուրսն և։
10. Ա. յաւելու և երկեաւ յոյժ։

Եւ ձգեաց Ղեւի զձեռն իւր և կալաւ զնա, և ասէ ցնա. Արի և մի երկնչիր. բայց պահեա զքեզ՝ զի մի ես խօսեցիս յաղագս Յովսեփայ եղբօր մերում բան չար: Եւ ելին յերեսաց որդւոյն փարաւոնի՝ Շմաւոն և Ղեւի: Եւ էր որդին փարաւոնի լի ահիւ և տրտմութեամբ. վասն զի երկնչէր յերեսաց Շմաւոնի[1]: Եւ եղեւ զի ծանրանայր ի գեղոյն Ասանեթայ, և տրտմէր ի տրտմութիւն մեծ՝ առաւել քան զչափն: Եւ խօսեցան ծառայքն նորա յականջս նորա և ասեն. Ահա որդիք Բալլայ և որդիքն Զելփայ աղախնոյն[2] Յակոբայ թշնամի են ընդ Յովսեփայ և ընդ Ասանեթայ, և նախանձին ընդ նոսա. և եղիցին նոքա ձեռամբ քով ըստ կամաց քոց: Եւ առաքեաց որդին փարաւոնի Հրեշտակս[3], և կոչեաց զնոսա առ ինքն, և եկին առ նա ի ժամ գիշերոյն, և կացին առաջի նորա: Եւ ասէ ցնոսա որդին փարաւոնի. Բանք իմ են ընդ ձեզ[4], վասն զի դուք էք արք զօրաւորք: Եւ ասեն ցնա Դան և Գադ երկու եղբարքն. Խօսեսցի այժմ տէր մեր, և լուիցուք ծառայք քո, և արասցուք ըստ կամաց քոց: Եւ խնդաց որդին փարաւոնի խնդութիւն մեծ, և ասէ ցծառայս իւր. Ի բաց կացէք յինէն ամենեքեան սակաւ մի. վասն զի բանք իմ են գաղտնիք[5] ընդ արս ընդ այդոսիկ. և ի բաց կացին ամենեքին: Եւ ասէ ցնոսա որդին փարաւոնի. Ահա օրհնութիւն և մահ առաջի աչաց ձերոց. առէք առաւել զօրհնութիւն քան զմահ. վասն զի դուք[6] արք զօրաւոր էք, և ոչ մեռանիք որպէս զկանայս[7]. վասն զի լուայ ես ի Յովսեփայ եղբօրէն ձերմէ, զի ասէր ցփարաւոն ցհայրն իմ յաղագս ձեր՝ եթէ որդիք աղախնեաց մօր իմոյ են և ոչ են եղբարք իմ, և անսամ մահուան հօր իմոյ, և

1. Ա. յաւելու և Ղեւեայ: Եւ ծանրանայր և նեղէր ի գեղոյն:
2. Ա. որդւոց աղախնոյն:
3. Ա. յաւելու առ նոսա:
4. Ա. չեղ. ասեն ցնա երկոքեանց եղբարքն Դան և Գադ:
5. մԱ. չիք գաղտնիք:
6. Ա. դուք էք արք, և:
7. Ա. յաւելու այլ թախանձեցէք զօրաւոր արք, և հարացէք թշնամեաց ձերոց... վասն զի...

ղախին քո Ասանէթ, որ ըստ հրամանի քում զամե-
նայն պկուռսն ի բաց ընկեցի և կորուսի. և այր ոմն
եկն այսօր ետ ինձ հաց կենաց և կերայ. և բաժակ
օրհնութեան արբի. և ասէ ցիս. Ահա ետու զքեզ հարսն
Յովսեփայ, և նա եղիցի քեզ փեսայ յաւիտեանս ժա-
մանակաց. այլ նա ասաց ցիս՝ թէ ոչ եւս կոչեսցիս
Ասանէթ, այլ Քաղաք ապաւինի. վասն զի քեւ ա-
պաւինեսցին ազգք բազումք ի տէր Աստուած բար-
ձրեալն: Եւ ասաց ցիս. Գնացից առ Յովսէփ և խօսե-
ցայց յականջս նորա զբանս իմ վասն քո: Եւ այժմ
դու ճանաչես, տէր իմ, եթէ եկն այրն այն առ քեզ
և խօսեցաւ ընդ քեզ զբանս իմ: Եւ ասէ Յովսէփ
ցԱսանէթ. Օրհնեալ ես դու ի Տեառնէ Աստուծոյ
բարձրելոյն. վասն զի Տէր Աստուած հիմնաւորեաց
զպարիսպ քո[1] անդամանդեայ՝ պարիսպ կենդանու-
թեան. վասն զի բազումք կենդանիք որդիք մարդկան
բնակեսցեն ի Քաղաքիդ ապաւինի, և Տէր Աստուած
թագաւորեսցէ նոցա յաւիտեանս ժամանակաց: Զի
այրն այն եկն այսօր առ իս, և ըստ բանիցս այսոցիկ
խօսեցաւ վասն քո: Այժմ ե՛կ առ իս, կոյս սուրբ. և
ընդէ՞ր կայցես հեռի յինէն: Եւ ամբարձ զձեռն իւր,
և կոչեաց զԱսանէթ[2]. և եկն առ Յովսէփ, և անկաւ
ի վերայ գրկաց նորա. և կենդանացան հոգիքն նո-
ցա, և լցան ուրախութեամբ: Եւ ողջունեալ Յովսէփ
զԱսանէթ, ետ նմա հոգի կենդանութեան և հոգի
իմաստութեան և հոգի ճշմարտութեան. և շաղապա-
տեալք ընդ միմեանս՝ բազում ժամս զուարճանային
ընդ իրեարս: Եւ ասէ Ասանէթ. Ե՛կ այսր, տէր իմ,
մո՛ւտ ի տունս մեր. զի և ես պատրաստեցի զտաճարս
մեր, և կազմեցի ընթրիս մեծամեծս: Եւ կալեալ զձե-
ռանէ նորա՝ արկ ի տունն. և նստոյց յաթոռ հօր
իւրոյ. և եբեր ջուր՝ զի լուասցէ զոտս նորա: Եւ ա-
սէ Յովսէփ. Եկեսցէ մին ի կուսանացն և լուասցէ
զոտս իմ: Ասէ Ասանէթ, թէ Ոչ այդպէս, տէր իմ.

1. Գ. քո է բարձրացեալ պարիսպ քո:
2. Գ. յաւելու և փոխեցաւ Ասանէթ:

յայսմ հետէ ես եմ աղախին քո. և ընդէ՞ր է քեզ այդ, զի ո՛չ ոք լուացէ զոտս քո. վասն զի ոսկրք քո ոսկր իմ են, և անձն քո՝ անձն իմ. և բռնադատեաց զնա և լուաց զոտս նորա: Եւ տեսանէր Յովսէփ զի ահա ձեռք նորա էին որպէս զձեռս կենդանութեան, և մատունք նորա էին որպէս գրիչ արագագրի: Եւ զկնի այսորիկ կալաւ Յովսէփ զաջոյ ձեռանէ նորա, և համբուրեաց զնա. և Ասանէթ համբուրեաց զգլուխ նորա. և նստաւ ընդ աջմէ նորա: Եւ եկին հայր և մայր նորա յագարակէ իւրեանց, և ամենայն ազգականքն նորա. և տեսին զԱսանէթ որպէս ի տեսլեան լուսոյ, և էր գեղեցկութիւն նորա որպէս գեղեցկութիւնս երկնայինս. և[1] տեսին զնա զի նստէր ընդ Յովսեփայ, և զգեցեալ էր հանդերձ հարսանեաց. և զարհուրեցան և սքանչացան վասն գեղեցկութեան նորա. և ետուն փառս Աստուծոյ՝ որ կենդանի առնէ զամենայն: Եւ զկնի այսոցիկ՝ կերան և արբին և ուրախ եղեն: Եւ ասէ Պետափրէս ցՅովսէփ. Ի վաղիւն կոչիցես զնախարարս և զմեծամեծս Եգիպտացւոց, և արարից ձեզ հարսանիս, և տացես զդուստր իմ զԱսանէթ քեզ ի կնութիւն: Եւ ասէ Յովսէփ. Ոչ այդպէս. այլ վաղիւն գնացից առ Փարաւոն արքայ, վասն զի նա իմ է որպէս զհայր, և կարգեաց զիս իշխան ի վերայ երկրի. և խօսեցայց վասն Ասանեթայ յականջս նորա, և նա տացէ զԱսանէթ ինձ ի կնութիւն: Եւ ասէ Պետափրէս. Երթ ի խաղաղութիւն: Եւ մնացեալ Յովսէփ զօրն զայն առ Պետափրէս, բայց ոչ ննջեաց ընդ Ասանեթայ. վասն զի ասէր Յովսէփ՝ թէ ոչ վայել է առն աստուածապաշտի նախ քան զհարսանիսն՝ ննջել ընդ ամուսնոյ իւրոյ: Եւ յարեաւ ընդ առաւօտն Յովսէփ, և չոգաւ առ Փարաւոն, և ասէ ցնա. Տո՛ւր ինձ զԱսանէթ դուստր Պետափրէ քրմի ի կնութեան, յԱրեգ քաղաքէն: Եւ ասէ Փարաւոն. Ո՞չ ահա[2] զնա խօսեալ էր քեզ[3]

1. յԳ. տող մի պակասէ:
2. Ա. ահա խոստացի տեղ է հարսանութեան:
3. Գ. տեղ է ողջնանի և երկրէի տեղ է հարսանութեան:

ի Հարսնութիւն յայսմհետէ յաւիտեանս ժամանակաց։ Եւ առաքեաց փարաւոն, և կոչեաց զՊետափրէս[1]։ Եւ ած զԱսանէթ և կացոյց առաջի փարաւոնի. և հիացաւ փարաւոն ընդ գեղեցկութիւն նորա, և ասէ. Օրհնեսցէ զքեզ Աստուածն Յովսեփայ, որդեակ. և մնասցէ ի քեզ գեղեցկութիւն քո յաւիտեանս յաւիտենից. զի յիրաւի ընտրեաց զքեզ[2] տէր Հարսն Յովսեփայ՝ յաւիտեանս ժամանակաց. վասն զի սա է որպէս զորդի Աստուծոյ, և դու կոչեսցիս յայսմհետէ դուստր բարձրելոյն։ Եւ առ փարաւոն զՅովսէփ և զԱսանէթ, և եդ նոցա պսակս ոսկիս, որ էր[3] ի տան գանձուց յաւիտեանս ժամանակաց[4]։ Կացոյց փարաւոն զԱսանէթ յաջմէ Յովսեփայ, և եդ զձեռս ի վերայ գլխոյ, նորա և զաջ ձեռն ի վերայ գլխոյն Ասանեթայ, և ասէ. Օրհնեսցէ զքեզ[5] Աստուած բարձրեալն, և փառաւորեսցէ զքեզ[6] յաւիտեանս ժամանակաց։ Եւ դարձոյց զնոսա փարաւոն յիրեարս, և մերձեցոյց զնոսա, և համբուրեցին զմիմեանս։ Եւ[7] զկնի այսորիկ արար փարաւոն հարսանիս և ընթրիս մեծամեծս և ուրախութիւնս բազումս՝ զաւուրս եօթն։ Եւ կոչեաց[8] զամենայն իշխանս Եգիպտացւոցն և զթագաւորս ազգաց։ Եւ քարոզ կարդայր ամենայն երկրին Եգիպտացւոց, և ասէր. Ամենայն ոք որ գործէ զգործ զեօթն օր հարսանեաց Յովսեփայ և Ասանեթայ՝ մահու մեռցի։ Եւ եղեւ յետ այսորիկ՝ եմուտ Յովսէփ առ Ասանէթ, և յղացաւ, և ծնաւ զՄանասէ[9] ի տան Յովսեփայ, ի փառս Աստուծոյ. ամէն։

1. Ա. յաւելու հանդերձ դստերօք։
2. Ա. յաւելու Աստուած Յովսեփայ . . . ժամանակաց և յաւիտենից։
3. Ա. որ էին ի տան գանձուց նորա ի սկզբանէ ժամանակաց։
4. Աստի մինչև և դարձոյց պակասէ ԺԳ։
5. Ա. զձեզ։
6. ԺԱ. չիք զձեզ։
7. Ա. չունի և։
8. Ա. յաւելու յառաջ. ԺԳ. երկուս առաջս պակասէ։
9. Ա. զՄանասէ և զԵփրեմ (Գ. և ունի զԵփրեմ) ի տանն Յովսեփայ զօրութեամբն Աստուծոյ կենդանւոյ։

# ՕՐՀՆՈՒԹԻՒՆ

## ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԵԱՆ ԱՍԱՆԵԹԱՑ ԱՌ ԱՍՏՈՒԱԾ

Ա. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, ես Ասանէթ դուստր Պետափրեայ քրմի Արեգ քաղաքի[1], որ վերակացուն էր աստուածոցն ամենայնի:

Բ[2]. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և յանցեայ և պաշտեցի զաստուածսն, որոց ոչ գոյ թիւ, և ուտէի ի զոհից նոցա:

Գ. Մեղայ, Տէր, մեղայ և յանցեայ. ես էի կոյս հպարտ և ամբարտաւան:

Դ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ. զհաց հեղձուցիկ կերայ և զբաժակ յորոգայթից արբի, և ուտէի ի սեղանոյն մահու:

Ե. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ, և ոչ գիտէի զՏէր Աստուած երկնից, և ոչ յուսացայ ի բարձրեալն Աստուած ի կենդանին յաւիտենից:

Զ. Մեղայ, Տէր, մեղայ[3] և բազում յանցեայ. և յուսացայ ի մեծութիւն փառաց իմոց և ի գեղեցկութիւն, և էի հպարտ և ամբարտաւան:

Է. Մեղայ, Տէր, մեղայ, և առաջի քո բազում յանցեայ, արհամարհելով զամենայն մարդով, և ոչ էր այր՝ որ երևէր առաջի իմ:

1. Ա. քաղաքին աստուածոցն որ վերակացու էր ամենայնի:
2. Ա. նախ զԳ. տունն դնէ և ապա զԲ:
3. Ա և Գ. յաւելուն առաջի քո:

Ը[1]. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո. յանցեայ, բազում յանցեայ. զի ասէի՝ ոչ գոյ իշխան երկրի՝ որ լուծանէ զգօտի կուսութեան իմոյ։

Թ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ[2]. և ատեցի զամենեսին՝ որք կամէին զիս ի հարսնութիւն, և արհամարհէի զնոսա և անգոսնէի։

Ժ. Մեղայ, Տէր, մեղայ առաջի քո և բազում յանցեայ. այլ[3] գթութեամբ քո եղէց հարսն որդւոյն մեծի Թագաւորի. այլ արա ինձ թողութիւն[4]։ Մինչ եկն զօրաւորն Աստուծոյ Յովսէփ, նա ինքն իջոյց զիս ի զօրութենէ իմմէ[5]. և խոնարհեցոյց զիս յամբարտաւանութենէ իմմէ, և գեղեցկութեամբ իւրով որսաց զիս, իմաստութեամբն իւրով[6] որպէս ձուկն թակարդիւ՝ կալաւ զիս։ Եւ հոգւով դեղ կենաց արբոյց ինձ, և զօրութեամբ իւրով հաստատեաց զիս, և մատոյց զիս Աստուծոյ յաւիտենից, և ետ ուտել ինձ հաց կենաց, և ըմպել զբաժակ անմահութեան արբոյց ինձ, և եղէ նմա հարսն յաւիտեանս։

Եւ[7] յետ այսորիկ անցին եօթն ամ լիութեան. և սկսաւ գալ եօթն ամ սովոյն։

Եւ[8] լուաւ Յակոբ վասն Յովսեփայ որդւոյ իւրոյ, և եկն յԵգիպտոս ամենայն ազգականօք իւրովք յերկրորդ ամսեան Նիսանի[9] ԻԱ ամսոյն, և բնակեցաւ յեր-

1. Ա. նախ դնէ զԹ. տունն՝ ապա զԸն։
2. Գ. յանցեայ, այլ գթութեամբ քո... մեծի Թագաւորի։
3. Ա. այլ ես համարէի զիս հարսն մեծի որդւոյ փարաւոնի, ընդ։
4. Ա և Գ. յաւելուն զԱյլ փարաւոնին իբր զխորագիր։
5. յԳ. տող մի պակասէ։
6. Ա. բարով հնազանդեցոյց զիս և որսաց որպէս ձուկն թակարդիւ։ Եւ հոգւով որպէս դեղ կենաց և զօրութեամբն։
7. յԱ. առաջ մինչև, յաւելու խորագիր է երկրորդի մասին, և չիք խորագիր եղեալ ի բնագրին։
8. Բն. ունի իբր զխորագիր Վասն գալոյն Յակոբայ ամենայն ընտանեօք և բնակելոյն ի Գեսեմ։
9. յԱ. չիք Նիսան։

կերն Գեսեմ: Եւ ասէ Ասանէթ ցՅովսէփ. Երթամ տեսանեմ զհայրն քո, վասն զի հայրն քո Յակոբ որպէս Աստուած է ինձ: Եւ [1] Յովսէփ. Եկեսցես ընդ իս, և տեսցես զհայրն իմ: Եւ եկին Յովսէփ և Ասանէթ յերկիրն Գեսեմ. պատահեցան նոցա եղբարքն Յովսեփայ, երկիր պագին նոցա, մանաւանդ [2] Ասանեթայ, ի վերայ երեսաց իւրեանց յերկիր: Եւ մտին առ Յակոբ, և [3] տեսին նստեալ ի վերայ մահճաց իւրոց: Եւ էր ինքն ալեւոր և ծերացեալ յոյժ: Եւ ի տեսանելն զնա Ասանեթայ՝ զարհուրեցաւ անձն նորա. վասն զի էր Յակոբ բարի [4] տեսլեամբ և ծերունի, և ծերութիւն որպէս զառն մանկան՝ յոյժ գեղեցիկ երիտասարդի. և գլուխ նորա ամենեւին սպիտակ իբրեւ զձիւն, և հեր գլխոյ նորա զանգուր [5] յար ի գլուխն և խիտ յոյժ իբրեւ զառն հնդկի, և մորուսն՝ սպիտակ և փայելուչ՝ նստեալ ի վերայ լանջացն նորա, և աչք նորա խանդաղացուցիչ և փայլուն [6] և գեղեցիկ, և լանջք նորա և ուսքն և բազուկքն և մատունք ձեռաց նորա իբրեւ զհրեշտակի զօրաւոր, և բարձք նորա և սրունք նորա որպէս զհսկայի. և [7] այնպէս երեւէր այրն Յակոբ՝ որպէս թէ կռուիցի ոք ընդ Աստուծոյ: Եւ [8] ետես զնա Ասանէթ և զարհուրեցաւ, և երկիր եպագ նմա ի վերայ երեսաց իւրոց յերկիր: Եւ ասէ Յակոբ ցՅովսէփ. Ա՞յս է հարսն իմ կին քո. օրհնեալ եղիցի [9] սա յԱստուծոյ բարձրելոյն: Եւ կոչեաց զնա առ ինքն, համբուրեաց զնա և օրհնեաց. ձգեաց և Ասանէթ զձեռս իւր, և կալաւ [10] զպարանոցէն Յակո-

1. Ա. Եւ ասէ:
2. յԱ. չիք մանաւանդ Ասանեթայ:
3. Ա. և իւրաքանչիւր նստաւ ի վերայ. Գ. և էր Յակոբ նստեալ:
4. Ա. բարի և էր ծերութեան նորա որպէս մանկութեան և գեղեցիկ յոյժ. և:
5. Ա. յաւելու ալեհեր ի գլուխ հեր գլխոյ նորա, և խիտ յոյժ որպէս զառն հնդկի:
6. Ա. փայլուն., և թէ լանջք... բազուկն իբրեւ զհրեշտակի, և բարձք...:
7. Ա. և էր այրն Յակոբ իբրեւ թէ:
8. Ա. իբրեւ:
9. Ա. ե:
10. Ա. անկաւ զպարանոցան:

բայ, և կախեցաւ զուսովք[1] հօր իւրոյ, որպէս ոք յորժամ ի պատերազմէ ապրեալ եկեսցէ ի տուն։ Եւ յետ այսորիկ կերան և արբին. և գնացին Յովսէփ և Ասանէթ ի տունս իւրեանց[2]։ Եւ յուղարկեցին զնա եղբարքն Յովսեփայ որդիքն Լիայ միայն. բայց որդիքն Զելփայ և Բալլայի՝[3] յաղախնոյն Լիայ և Ռաքելի, ոչ ուղարկեցին զնա ընդ նոսա, վասն զի նախանձէին և թշնամիք էին նոցա։ Եւ էր Ղեւի յաջմէ կողմանէ Ասանեթայ, և Յովսէփ ի ձախմէ կողմանէ նորա. և էր Ասանեթայ կալեալ զձեռանէն Ղեւեայ. և սիրէր Ասանէթ զՂեւի քան[4] զամենայն եղբարսն Յովսեփայ. վասն զի գիտէր Ղեւի զանճառսն բարձրելայն[5], և յայտնէր զամենայն Ասանեթայ գաղտնի բանիւք. և Ղեւի սիրէր զԱսանէթ յոյժ, և տեսանէր զտեղի հանգստեան նորա ի բարձունս, և զպարիսպ նորա որպէս զպարիսպ անդամանդեայս, և զհիմունս[6] վիմի երկրորդ երկնից։ Եւ եղեւ ի գալն Յովսեփայ և Ասանեթայ, ետես զնա անդրանիկ որդին Փարաւոնի ի պարսպէն, և զղջացաւ և թշուառացաւ[7] ծանրութեամբ, և զչարէր ի վերայ գեղեցկութեանն Ասանեթայ, և ասէր. Ոչ այդպէս եղիցի։ Առաքեաց հրեշտակս որդին Փարաւոնի, և կոչեաց առ ինքն զՇմաւոն և զՂեւի. և եկին կացին առաջի նորա։ Եւ ասէ ցնոսա որդին Փարաւոնի՝ անդրանիկն. Ճանաչեմ ես այսօր, զի դուք էք արք հզօր քան զամենայն մարդիկ՝[8] որ էն ի վե-

1. Ա. զսուսերն նորա՝ զոր օրինակ կախէ ոք զսուսեր հօր իւրոյ՝ յորժամ ապրէ ի պատերազմէ և եկեալ է ի տուն իւր. իսկ Գ. զսուսերս նորա, զոր օրինակ կախէ ոք զսուսերս հօր իւրոյ։
2. Այս աւարտի Գ. օրինակն այսու բանիւք. փառաւորելով զԱստուած որ է օրհնեալ յաւիտեանս ամէն։
3. Ա. Զալլայի և Զելփայի որդիքն ընդ նոսա յուղարկել զնոսա, վասն զի նախանձէին և թշնամիք էին նոցա. բայց աղախնորդիքն Լիայի և Ռաքելայ։
4. Ա. առաւել քան։
5. Ա. յաւելու և զծածկեալ խորհուրդն Ասանեթայ..
6. Ա. զհիմունս նորա որպէս զհիմունս վիմի։
7. Ա. դժուարացաւ ծանրութեամբն։
8. Ա. մարդ որ է։

րայ երկրի, և յաջոյ ի ձեր[1] յայդոցիկ երկուց՝ աւերեցաւ քաղաքն Սիկիմացւոց, և յերկուս աւուրս[2] յաջոյ ձեր յայսոցիկ կոտորեցան երեսուն հազար արանց պատերազմողաց։ Եւ ահա առից զձեզ որպէս զընկերս[3], և տաց ձեզ ոսկի և ծառայս և աղախնեայս և տունս և վիճակս մեծամեծս և բարիս. բայց սակայն զբանս պայս արարէք, և ընդ իս արարէք ողորմութիւն. վասն զի թշնամանեցայ ես առնաբար[4] յեղբօրէն ձերմէ Յովսեփայ, վասն զի ա՛ռ զԱսանէթ զկինն իմ, զոր ինձ էր խօսեցեալ[5] ի սկզբանէ։ Եւ այժմ եկայք կռուեցարուք ընդ Յովսեփայ եղբօր ձերում. և սպանանեմ զնա սրով իմով, և առնում զԱսանէթ ինձ ի կնութիւն. և դուք եղիցիք ինձ յեղբարս և սիրելիս և հաւատարիմս. բայց զբանս զայս դուք ինձ արարէք։ Իսկ եթէ դուք դանդաղիցէք[6] առնել զբանս զայսոսիկ, և արհամարհիցէք զխորհրդովք իմովք, ահա սուր իմ պատրաստ է առ ձեզ։ Եւ մինչ դեռ զայս ասէր՝ մերկացոյց զսուր իւր և եցոյց նոցա։ Եւ իբրև լուան զբանս զայսոսիկ արքն Շմաւոն և Ղեւի, և զզջացան յոյժ, վասն զի ձեւով գոռոզի խօսեցաւ ընդ նոսա[7] որդին Փարաւոնի։ Եւ էր Շմաւոն այր յանդուգն և համարձակ, և խորհեցաւ արկանել զձեռն իւր ի դաստակն[8] սրոյ իւրոյ, և ձգել զնա ի պատենից իւրոց, և սպանանել զորդին Փարաւոնի, վասն զի խստութեամբ խօսեցաւ ընդ նոսա։ Եւ ետես Ղեւի զխորհուրդս սրտի նորա, և զի էր Ղեւի այր մարգարէ[9], և տեսանէր սրբութեամբ մտաց իւրոց, և աչօքն իւրովք կարդայր զգրեալսն ի սիրտ մարդոյն[10]. և կոխեաց ոտամբն իւր[11] առաջոյ զոտն նորա, և նե-

1. Ա. յետ այր երկուցն աւերեցաւ։
2. Ա. աւուրս յեր։
3. Ա. զընդերս։
4. Ա. արհամարհաբար։
5. Ա. խօսեալ էր ի սկզբանէ։
6. Բն. դանդաղիցէք առնելզբանս։
7. Ա. յաւելու ապականալով։
8. Ա. դաստապան։
9. Ա. յաւելու ծածկապես։
10. Ա. արդարոյն։
11. Ա. խարով զառաջոյ զոտն Շմաւոնի։

ղեաց զնա, և նշանակեաց[1] դադարել նմա ի բարկութենէ իւրմէ. և ասէ Ղեւի հեզաբար ցՇմաւոն. Ընդէ՞ր դու բարկութեամբ ցասեար ի վերայ առնս այսորիկ. և մեք արք[2] աստուածապաշտք, և ոչ վայել է մեզ՝ նմա հատուցանել չար փոխանակ չարի։ Եւ ասէ Ղեւի ցորդին Փարաւոնի հանդերձ համարձակութեամբ. և բարկութիւն ոչ գոյր ի նմա, և ոչ սակաւ մի ի հեզութեան[3] սրտի նորա, և ասէ ցնա. Ընդէ՞ր խօսի տէր մեր ըստ բանիցս այսոցիկ. և մեք եմք աստուածապաշտք, և հայր մեր սիրելի է Աստուծոյ բարձրելոյ, և Յովսէփ եղբայրն մեր սիրելի է Աստուծոյ։ Արդ, զիա՞րդ արասցուք մեք զբանդ զայդ չար, և մեղանչիցեմք առաջի Աստուծոյ մերոյ, և առաջի հօրս մերոյ Յակոբայ, և առաջի եղբօր մերոյ Յովսեփայ։ Եւ այժմ լուր բանից իմոց. ոչ վայել է առն աստուածապաշտի զրկել զամենայն ոք ըստ ամենայն օրինակի. իսկ թէ ոք կամի զրկել զայր աստուածապաշտ[4], վասն զի սուր է ի ձեռն նորա. և դու պահեա[5] այժմ խօսել վասն եղբօր մերոյ Յովսեփայ ըստ բանիցս այսոցիկ։ Իսկ եթէ[6] դու մնաս ի չարի խորհրդեանդ այդմիկ, ահա սուրք մեր հանեալ են ի յաջոյ ձեռս մեր՝ վասն քո։ Եւ ձգեցին զսուրսն իւրեանց արքն Շմաւոն և Ղեւի՝ ի պատենից իւրեանց, և ասեն. Ահա տեսեր զսուրս զայս ի ձեռս մեր. սուրք՝ որով խնդրեաց Տէր զվրէժ և զթշնամանս ի Սիկիմացւոցն, որով թշնամանեցին զորդիսն Իսրայելի վասն քեռ[7] մերոյ Դինայի, զոր պղծեաց Սիւքեմ[8] որդին Եմովրայ։ Եւ տես որդին Փարաւոնի զսուրն[9] երկսայրի, և յոյժ դողաց ամենայն ոսկերք նորա. վասն զի փայլէին սուրքն որպէս զբոց հրոյ. և շլացան աչք որդւոյն Փարաւոնի և անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր[10]։

1. Ա. Նշնաց։
2. Ա. իմք։
3. Ա. հեզութենէ։
4. Ա. յաւելու և քարոզչաց այդն այն աստուածապաշտ, և ասացեն է յետ նորա եթէ ողորմեսցի զնա։
5. Բն. պահէ։
6. Ա. եթէ ոչ ահա ասացէ։
7. Ա. քուերն մեր։
8. Ա. ի Սիքեմ։
9. Ա. զաստերն և։
10. Ա. յաւելու և երկրին յայն։

Եւ ձգեաց Ղեւի զձեռն իւր և կալաւ զնա, և ասէ ցնա. Արբ և մի երկնչիր. բայց պահեա զքեզ՝ զի մի եւ խօսեցիս յաղագս Յովսեփայ եղբօր մերում բան չար։ Եւ ելին յերեսաց որդւոյն փարաւոնի՝ Շմաւոն և Ղեւի։ Եւ էր որդին փարաւոնի լի ահիւ և տրտմու-թեամբ. վասն զի երկնչէր յերեսաց Շմաւոնի[1]։ Եւ եղեւ զի ծանրանայր ի գեղոյն Ասանեթայ, և տրտմէր ի տրտմութիւն մեծ՝ առաւել քան զչափն։ Եւ խօսե-ցան ծառայքն նորա յականջս նորա և ասեն. Ահա որ-դիք Բալլայ և որդիքն Զելփայ աղախնոյն[2] Յակոբայ թշնամի են ընդ Յովսեփայ և ընդ Ասանեթայ, և նա-խանձին ընդ նոսա. և եղիցին նոքա ձեռամբ քով ըստ կամաց քոց։ Եւ առաքեաց որդին փարաւոնի հրեշ-տակս[3], և կոչեաց զնոսա առ ինքն, և եկին առ նա ի ժամ գիշերոյն, և կացին առաջի նորա։ Եւ ասէ ցնո-սա որդին փարաւոնի. Բանք իմ են ընդ ձեզ[4], վասն զի դուք էք արք զօրաւորք։ Եւ ասեն ցնա Դան և Գադ երկու եղբարքն. Խօսեսցի այժմ տէր մեր, և լուիցուք ծառայք քո, և արասցուք ըստ կամաց քոց։ Եւ խնդաց որդին փարաւոնի խնդութիւն մեծ, և ասէ ցծառայս իւր. Ի բաց կացէք յինէն ամենքեան սակաւ մի. վասն զի բանք իմ են գաղտնիք[5] ընդ արս ընդ այ-դոսիկ. և ի բաց կացին ամենեքին։ Եւ ասէ ցնոսա որ-դին փարաւոնի. Ահա օրհնութիւն և մահ առաջի ա-չաց ձերոց. առէք առաւել զօրհնութիւն քան զմահ. վասն զի դուք[6] արք զօրաւոր էք, և ոչ մեռանիք որ-պէս զկանայս[7]. վասն զի լուայ ես ի Յովսեփայ եղ-բօրէն ձերմէ, զի ասէր ցփարաւոն ցհայրն իմ յա-ղագս ձեր՝ եթէ որդիք աղախնեաց մօր իմոյ են և ոչ են եղբարք իմ, և անսամ մահուան հօր իմոյ, և

1. Ա. յաւելու և Ղեւեայ։ Եւ ծանրանայր և նեղէր ի գեղոյն։
2. Ա. որդիք աղախնոյն։
3. Ա. յաւելու առ նոսա։
4. Ա. չեղ. ասեն ցնա իւրեանց եղ-բարքն Դան և Գադ։
5. յԱ. չիք գաղտնիք։
6. Ա. դուք էք արք, և։
7. Ա. յաւելու այլ քաջալերեցա-րուք և լերուք արք, և հաստա-ցէք բնութեամբ ձերոց... վասն զի...

խորտակեցից զնոսա և զազգս նոցա, մի՛ գուցէ ժա֊ ռանգեսցեն ընդ մեզ. վասն զի որդիք աղախնեաց են, և դոքա են որ վաճառեցին զիս Իսմայելացւոցն. և ես հատուցից նոցա ըստ ամենայն չարեացն՝ զոր չարացան ի վերայ[1] իմ. միայն մեռցի հայր իմ։ Եւ գովեաց զնա Փարաւոն հայր իմ, և ասէ. Բարի ասացեր, արդ առ[2] յինէն արս հազարս պատերազմողս, և ես եղէց քեզ օգնական։ Եւ իբրև լուան արքն զբանս որդւոյն Փա֊ րաւոնի՝ խռովեցան յոյժ և տրտմեցան, և ասեն ցորդին Փարաւոնի. Աղաչեմք զքեզ, տէր, զի օգնեսցես մեզ։ Եւ նա ասէ. Ես եղէց ձեզ օգնական, եթէ լուիջիք ինձ։ Եւ ասեն. Մեք եմք ծառայք քո առաջի քո, հրաման տո՛ւր մեզ՝ և արասցուք ըստ կամաց քոց։ Եւ ասէ ցնոսա որդին Փարաւոնի. Ես սպանանեմ զհայրն իմ[3] յայսմ գիշերիս, վասն զի Փարաւոն է հայր Յովսեփայ. արդ օգնեցէք[4] ինքեան առաջի ձեր, և դուք սպանէք զՅով֊ սէփ. և առից զԱսանէթ ինձ ի կնութեան. և դուք[5] և եղբարք ձեր եղիջիք ինձ ժառանգակիցք. բայց սակայն զբանս զայս արարէք։ Եւ ասեն ցնա Դան և Գադ. Մեք եմք ծառայք քո այսօր, և արասցուք զոր ինչ և հրամայեցեր[6] մեզ. և մեք լուաք այսօր ի Յովսեփայ, զի ասէր ցԱսանէթ. Գնա վաղիւն[7] ի ժառանգութիւն մեր, զի ժամանակ է կթոյ։ Եւ ետ նմա արս վեց[8] հարիւրս՝ զօրաւորս ի պատերազմի, և յիսուն այր յառաջընթացս։ Եւ այժմ լուր մեզ, և խօսեսցուք ընդ քեզ։ Եւ խօսեցան ընդ նմա գաղտնի բանս. և ետ որդին Փարաւոնի չորից եղբարցն՝ առ այր իւրաքան֊ չիւր եօթն հազար[9] այր, և զնոսա կացոյց իշխանս և

1. Ա. ընդ իս։
2. Ա. առնէ յետ այս հազարս, և եկն ընդ նոսա ի պատերազմն և եղէց քեզ օգնական թէ լուի֊ ջիք ինձ. և ասեն նոքա մեք եմք։
3. Ա. յաւելու Փարաւոն։
4. Ա. օգնեցէք ինձ, և ես երթայց առաջի ձեր և օգնեցէք..
5. Ա. և դուք եղիջիք իմ եղբարք և ժառանգակիցք։
6. Ա. Պատուիրեցեր դու մեզ։
7. Ա. վաղիւն։
8. յԱ. չիք վեց։
9. յԱ. չիք եօթն։

առաջնորդս։ Եւ ասեն ցնոսա[1] Դան և Գադ. Մեք գնասցուք ի գիշերիս[2], և դարանակալ լիցուք ի ճա-նապարհին, և թագիցուք ի հիւթս եղեգանն. և դու առ քեզ յիսուն այր աղեղնաւոր՝ ձիով հանդերձ և գնա ի հեռուստ. եկեսցէ Ասանէթ և անկանի ի ձեռս մեր. և մեք կոտորեսցուք զզօրսն՝ որ ընդ նմա իցեն, և փախիցի Ասանէթ առաջի կառացն, և անկանի ի ձեռս քո, և արասցես նմա որպէս ցանկանայ անձն քո. և յետ այսորիկ սպանանեմք զՅովսէփ[3], մինչ-դեռ տրտմեալ է վասն Ասանեթայ. և զորդիսն նորա սպանանեմք առաջի աչաց նորա։ Եւ խնդաց որդին Փարաւոնի իբրեւ լուաւ զբանս նոցա, և առաքեաց զնո-սա և երկու հազար արանց զինուորաց ընդ նոսա։ Եւ եկին ի հեղեղատն, և թագեան ի մէջ հիւթոց[4] եղե-գանն. և նստան յանդըն հեղեղատին աստի և անտի, և ի միջի նոցա ճանապարհ լայն և ընդարձակ։ Եւ յարեաւ որդին Փարաւոնի ի գիշերին յայնմիկ, և եկն ի տուն հօր իւրոյ՝ զի սպանցէ նա սրով զհայրն իւր։ Եւ պահապանք հօր նորա արգելին զնա մտանել առ հայր իւր, և ասեն ցնա. Զի՞նչ խնդրես[5], տէր մեր։ Եւ ասէ ցնոսա որդին Փարաւոնի. Զի տեսից զհայր իմ, և երթամ կթել զայգին զնորատունկն։ Եւ ասեն ցնա պահապանքն. Գլուխն ցաւեցաւ[6] հօրն քո, և արթուն եկաց զամենայն գիշերս, և այժմ դադարեցաւ սա-կաւ մի. և ասաց հայրն քո. Մի՛ ոք մերձենայ առ իս։ Եւ գնաց որդին Փարաւոնի և առ զզօրս իւր, և ի լու-սանալն եղեւ դարանակալ։ Եւ ահա գայր Ասանէթ կա-ռօքն և զօրօքն առաջի և զկնի։ Եւ ի յարձակել թշնա-մեացն՝ Դան և Գադ և որդին Փարաւոնի յարձակե-ցան ի վերայ նոցա. և ետես Ասանէթ, և կարդաց առ Աստուած բարձրեալն։ Եւ ահա այրն Աստուծոյ՝ որ[7]

1. Ա. ցնա։
2. Ա. գիշերս ի ճանապարհին և թաքիցուք ի խիթ եղեգանն։
3. Ա. յաւելու և զորդին նորա ա-ռաջի աչացնորա, մինչդեռ դա դրդմեալ։
4. Ա. խրճիթոյն։
5. Բն. մտանես տէր։
6. Ա. ցաւեաց։
7. Ա. որ յառաջ էջեալ։

եկեալ էր առ Ասանէթ՝ երեւեցաւ, և Տէր պաշտպան ե-
ղեւ նմա. և ջարդեցան սուրք նոցա[1], և ամենայն պատե-
րազմունք հալեցան որպէս զմոմ առաջի հրոյ. և ան-
կաւ որդին Փարաւոնի ի յերկիր առաջի Ասանեթայ,
և կործանեցաւ, և եղեւ նման մեռելոյ. և լուաւ որդ-
ւոցն[2] Յակոբայ, գային բարկութեամբ[3]:

Եւ Դան և Գադ տեսեալ զի Տէր պատերազմեցաւ,
երկեան և ասեն. Տէր պատերազմի ընդ մեզ. և ան-
կան առաջի Ասանեթայ, և ասեն. Տիկին մեր և թա-
գուհի դու ես, և մեք անօրինեցաք առ քեզ, և Տէր
հատոյց մեզ ըստ գործոցն մերոց: Եւ աղաչեմք մեք
ծառայքս քո, ողորմեա մեզ և փրկեա զմեզ ի ձեռաց
եղբարցն մերոց. քանզի և նոքա վրէժխնդիրք թշնա-
մեաց եկին առ մեզ, և սուրք նոցա առաջի մեր[4] են:
Եւ ասէ Ասանէթ. Քաջալերեցարուք և մի երկնչիք
յեղբարցն ձերոց. վասն զի նոքա են արք երկիւղածք
ի Տեառնէ, աստուածապաշտք, և ամաչեն յամենայն
մարդոյ. երթայք դուք ի հիւթոց[5] եղեգանդ այդո-
րիկ, մինչեւ քաւեցից զնոսա վասն ձեր, և ցածուցից
զբարկութիւն նոցա. վասն զի դուք մեծապէս հա-
մարձակեցարուք[6], և մի՛ երկնչիք. բայց դատ արասցէ
Տէր ընդ[7] ձեզ: Եւ փախեան ի պուրակս եղեգանն
Դան և Գադ և եղբարք նոցա: Եւ ահա գային որ-
դիքն Լիայի՝ ընթանալով իբրեւ զերամս[8] եղջերուաց.
և էջ Ասանէթ ի կառացն իւրոց ծածկելոց, և ընկա-
լաւ զնոսա հանդերձ արտասուօք: Եւ նոքա անկեալ
երկիր պագին նմա ի վերայ երկրի, և լացին մեծա-
ձայն. և խնդրեցին զեղբարսն իւրեանց: Եւ ասէ Ա-
սանէթ. Խնայեցէք[9] դուք յեղբարսն ձեր, և մի՛ առ-

1. Ա. Նշանձայն:
2. Բն. որդւոյն:
3. Աստ գոյ էջ մի միջանկեալ ի կտակէն Յովսեփայ որում ոչ հանդիպեցաք ի բուն կտակի իւրում, զոր ի վերջոյ դնեմք ի վայելս բանասիրաց:
4. Ա. առաջ մերոց:
5. Ա. ի տեղի:
6. Ա. յաւելու ընդդէմ նոցա, համբերեցարուք և մի:
7. Ա. ընդ ձեզ և ընդ: Եւ նոքա փախեան ի փող եղեգանն:
8. Ա. բաղամս:
9. Բն. խնդրեցէք զեղբարս ձեր:

նէք չար՝ փոխանակ չարի. վասն զի Տէր պաշտպան եղեւ ինձ ի նոցանէ, և ջարդեաց զուրս նոցա, և հալեցան ի վերայ երկրի իբրեւ զմոմ առաջի հրոյ: Եւ է այս բաւական, զի [1] Տէր է պատերազմող զպատերազմն. և դուք խնայեցէք ի նոսա, զի եղբարք ձեր են և արիւն [2] հօր ձերոյ Իսրայելի: Եւ ասէ ցնա Շմաւոն. Ընդէ՞ր տիկին [3] մեր խօսի բարի վասն թշնամեաց մերոց. ոչ, այլ կոտորեսցուք զնոսա սրովք մերովք. վասն զի նոքա խորհեցան յաղագս՝ ձեր և հօրն մերոյ Իսրայելի, և վասն եղբօր մերոյ Յովսեփայ, ահա այս երիցս անգամ. տիկին մեր և թագուհի դու ես: Եւ ձգեաց զձեռն իւր Ասանէթ, կալաւ զմօրուացն նորա և համբուրեաց զնա, և ասէ ցնա. Մի՛ [4] երբեք զայդ առներ, եղբայր իմ, և չար փոխանակ չարի հատուցաներ. Տեառն տացես թշնամութիւն. և նոքա եղբարք ձեր են, և ծնունդք հօր ձերոյ, և փախեան ի Հրէաստանէ [5] յերեսաց ձերոց: Եւ մատեաւ առ նա Ղեւի, և համբուրեաց զձեռս նորա, և իմացաւ եթէ ապրեցուցանել կամի զեղբարսն իւրեանց: Եւ նոքա էին ի պուրակս հիւթոց եղեգանն. և ծանեաւ յեղբարցն նոցա. ոչ ծանոյց զնոսա, քանզի երկեաւ մի՛ գուցէ բարկութեամբ իւրեանց սպանանիցեն: Եւ որդին Փարաւոնի յարեաւ յերկրէ [6] և նստաւ. և խաղայր արիւնն ընդ ականջս և ընդ բերանն նորա: Եւ ընթացաւ առ նա Բենիամին, և առ զսուսերն նորա, և ձգեաց ի պատենից իւրոց, և կամէր սպանանել զնա՝ և հարկանել ի լանջսն որդւոյն Փարաւոնի: Եւ ընթացաւ առ նա Ղեւի, և կալաւ զձեռանէ նորա և ասէ. Եղբայր իմ, մի՛ առներ զգործս զայդոսիկ. վասն զի մեք եմք աստուածապաշտք, և ոչ վայել է [7] աստուածապաշտի հատուցանել չար փոխանակ չարի. և

1. Ա. զոր Տէր պատերազմեսցէ զպատերազմն և դուք խնայեցէք ի նոսա:
2. Ա. որդիք:
3. Ա. տիկին խնդրես բարիս...
4. Ա. մի առներ զայդ եղ:
5. Ա. ի Հրէաստանէ:
6. Ա. ի գետնոյն:
7. Ա. ոչ է պարտ:

ոչ ումեք՝ անկելոյ[1] ի ձեռս ուրուք կոխել կամ նեղել զթշնամին՝ մինչեւ ի մահ: Եւ այժմ դարձո զսուր քո ի տեղի իւր. ե՛կ օգնեա ինձ, և բժշկեսցուք զնա ի վիրացն նորա, և կեցցէ և եղիցի մեր սիրելի յետ այսորիկ, և փարաւոն է որպէս զհայր մեր: Ցարոյց Ղեւի զորդին փարաւոնի, և ջնջեաց[2] զարիւնն յերեսաց նորա, և պատեաց վարշամակաւ զերեսս նորա, և եդ զնա ի վերայ ձիոյն իւրոյ. և տարաւ առ հայր իւր փարաւոն, և պատմեաց նմա զամենայն բանս զայսոսիկ[3]: Եւ յարեաւ փարաւոն յաթոռոյն և երկիր եպագ Ղեւեայ: Եւ յերրորդում աւուր մեռաւ որդին փարաւոնի[4]:

1. Ա. և ամենեքեան անկելոյ:
2. Ա. ողբեաց.
3. Ա. յաւելու զառաջինն և զկետքն:
4. Ա. յաւելու որ էր խոցեալ հարուածով ի Տեառնէ:



# Ե

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՄՈՎՍԷՍԻ

---



ՆԱԽԱՄԱՐԳԱՐԷՆ և աստուածախօսն Մովսէս՝ որ առաջին էր ամենայն մարգարէիցն, և յԱստուծոյ՝ աստուած փարաւոնի անուանեցաւ. և Ահարոն եղբայր նորին՝ առաջին[1] քահանայապետ ձեռնադրեցաւ ի Մովսէսէ. զի Աստուած զՄովսէս ձեռնադրեաց և նա զԱհարոն և զորդիսն նորա: Սոքա էին յազգէն Ղեւեայ, որդիք Ամրամայ՝[2] որդւոյն Յակոբայ, որդւոյն Իսահակայ, որդւոյն Աբրահամու. և Յակոբ յօրհնութիւնս որդւոցն ետ զքահանայութիւն Ղեւեայ և զթագաւորութիւնն Յուդայի: Մովսէս ծնաւ որդի Ամրամայ յՈգաբեթայ մօրէ, որ էր դուստր Ղեւեայ: Եւ այսպէս եղեւ ծնունդն Մովսէսի: Գէտք Եգիպտացոց ասացին փարաւոնի, թէ յայս նիշ աւուրս՝ յայս քանիս՝ այս անուն ամսոյ՝ փրկիչ ծնցի Իսրայելի. և նա ազատեսցէ զԻսրայէլ ի ծառայութենէ քումմէ: Զայս իբրեւ լուաւ փարաւոն զգուշացաւ խորհրդոյն. և ի նոյն ամսեանն էառ զամենայն արուն[3] Իսրայելի և գնաց յորս էրէոց. և մնաց ի դուրս ամիսս[4] ողջոյն: Իսկ նախախնամութիւնն Աստուծոյ այնպէս տնօ-

1. Բ. որ առաջին:
2. Բ. յաւելու որդւոյն Կահաթայ որդւոյն Ղեւեայ:
3. Բ. որդիսն:
4. Բ. զամիսն:

րինեաց, որ տարաւ Ամրամ զՈքաբէթ ընդ իւր. և յղացաւ ի նշանակեալ աւուրսն՝ զոր ասացին աստղագէտքն։ Եւ յորժամ ծնաւ Մովսէս՝ թագուցին ի տան ամիսս երիս. և զի էր կայտառ մանուկն՝ և թաքուցանել ոչ կարէին, վասն որոյ պրտուեայ տապանաւ ի գետն ընկեցին ի յահէ մանկասպանն Փարաւոնի։ Զի Փարաւոն յորժամ զգացաւ զծնունդ փրկչին Իսրայելի, հրամայեաց[1] զորս ի ծնունդն հեղձուցանել, և զորս ի գետն ընկենուլ։ Վասն այսորիկ զՄովսէս երիս ամիս թագուցին ի տանն, և[2] այլ ոչ կարացին պահել. և յընկենուլն ի գետն՝ դադարեցաւ տապանն ի պտոյտ մի գետոյն։ Եւ յիջանելն դստերն Փարաւոնի առ ափն գետոյն՝ տեսեալ նաժշտացն զտապանն՝ առին ի խաղէ պտուտին և տարան առաջի դստերն թագաւորին. և[3] տեսեալ խանդաղատեցաւ զնովաւ՝ և ասաց, ի մանկանցն Եբրայեցւոցն է դա։ Իսկ Մարիամ քոյրն Մովսէսի՝ որ մի և նա էր ի նաժշտաց դստերն Փարաւոնի, ա՛ռ զմանուկն և տարեալ[4] ետ ի մայրն իւր յՈգաբէթ՝ իբր ի դայեակ սնուցանել զտղայն վասն դստերն Փարաւոնի. զոր սնոյց և եբեր առ դուստրն Փարաւոնի։ Եւ նա առեալ տարաւ զնա[5] առ հայրն իւր Փարաւոն, և ասաց. Ի մանկանցն Եբրայեցւոցն է սա, զոր ի գետոյն առեալ արարի ինձ յորդէգիրս[6]։ Եւ էր Մովսէս մանուկն կայտառ և բարետեսակ. ընդ որ գիւր թուեցաւ Փարաւոնի՝ և ա՛ռ զնա ի գիրկն իւր՝ և համբուրեաց։ Եւ նոյնժամայն բուռն եհար Մովսէս տասն մատամբ զմօրուացն Փարաւոնի, ընդ որ բարկացեալ թագաւորն[7] հրամայեաց սպանանել զտղայն։ Իսկ իմաստունքն որ անդ կային՝ ոչ թողին զարքայն[8] նենգել տղային. ասելով՝ թէ ի

1. Բ. յաւելու զամենայն արուա մանուկսն Եբրայեցւոց։
2. յԲ. պակասի և այլ ոչ կարացին պահել։
3. Բ. և նա։
4. Բ. տարաւ։
5. Բ. չունի զնա։
6. Բ. յորդեգիր։
7. Բ. Փարաւոն հրամայեաց։
8. Բ. արքային։

տխմարութենէ արար[1] և ոչ գիտութեամբ արքայ. և թէ կամիս փորձեսցուք, ասեն։ Եւ բերին առաջի տղային սկուտեղ[2] մի կայծակունս հրոյ, և սկուտեղամբ մի ոսկի կարմիր որպէս զհուր, ասելով. եթէ[3] զոսկին առցէ՝ յայտ է զի խորամանկութեամբ էարկ զձեռն իւր ի մօրուսն արքայի. Իսկ եթէ զհուրն առցէ՝ երեւի թէ անմեղութեամբ արար[4] վասն տխմարութեան։ Եւ ձգեաց Մովսէս զձեռն իւր ի հուրն և կափուցաւ կայծակն ի ձեռն[5] տղային. և նա տարեալ[6] վաղվաղակի լալով ի բերանն զձեռն կափուցեալ կայծին զոր ի մատն էր մածեալ՝ եդ ի վերայ լեզուին՝ և լեզուն եւս այրեցաւ. վասն այնորիկ ծանրալեզու և թոթովախօս էր Մովսէս ի տան Փարաւոնի, փրկիչն Իսրայելի։ Եւ վարժեցաւ Մովսէս[7] ամենայն իմաստութեամբն Եգիպտացոց, զի Մառի՝ դուստր Փարաւոնի զնա որդէգիր արար, և եղեւ զօրավար Եգիպտացոցն. և յորժամ գերեցին Եթովպացիքն զՄառի՝ զանուանեալ մայրն Մովսէսի. վասն որոյ տասն ամ պատերազմեցաւ Մովսէս, և էառ զԵթովպիա և դարձոյց զՄառի. առ[8] գերի և զթագուհի նոցա զԹեարբի։ Եւ յետ մահուանն Մառեայ անուանեալ[9] մօրն Մովսէսի՝ նախանձեցան Եգիպտացիքն[10] և փախեաւ ի Մադիամ, և կեցեալ անդ ամս քառասուն ի տան Հռաքուէլի[11], ուր ծնաւ երկուս որդիս՝ զԳերսամ և զԵղիազար։ Իբրեւ եղեւ Մովսէս եօթանասուն ամաց՝ երեւեցաւ նմա Աստուած ի մորենոջն[12] ի հուր վառեալ, և ասաց երթալ յԵգիպտոս և ազատել զազգն

1. Բ. արար զայն։
2. Բ. սկուտեղամբ մի ոսկի կարմիր որպէս հուր, և հուր ընդ նմին ի խառն, ասելով։
3. Բ. զի թէ։
4. Բ. արար զայն։
5. Բ ի մատն։
6. Բ. տարաւ վաղվաղակի լալով ի բերանն, և եդ։
7. Բ. չիք Մովսէս։
8. Բ. առեալ։
9. Բ. չունի անուանեալ։
10. Բ. յաւելու ընդ Մովսէսի և խորհեցան սպանանել զնա, և իմացեալ Մովսէսի եղան զեֆէդրոյքն, և։
11. Բ. Հռաքէլի։
12. Բ. հրով ի մորենին և ասաց երթալ։

Իսրայելի։ Եւ նա ոչ կամէր գնալ, այլ յապաղեաց տասն ամ՝ պատճառելով զնրբութիւն ձայնին և զծանրութիւն[1] լեզուին։ Եւ դարձեալ երեւեցաւ նմա Աստուած յութսուն ամի կենացն, և ասաց նմա երթալ յԵգիպտոս և ազատել զազգն Իսրայելի. և նա դեռ եւս յապաղէր ի գնալն, մինչեւ ետ առնել նմա Աստուած զսքանչելի նշանսն։ Եւ ասաց նմա. Ո՞ արար զխուլն և զհամրն, զկոյրն և զականին. ո՞չ ապաքէն ես Տէր Աստուած. և արդ երթ գնա յԵգիպտոս, և Ահարոն եղբայր քո եղիցի քեզ բերան, և դու նմա պատգամաբեր յաստուածակոյս կողմանէ։ Եւ գնացեալ Մովսէս արար զնշանսն առաջի Ահարոնի և ամենայն ժողովրդեան նորա. որք հաւատացին յԱստուած և ի ծառայն նորա Մովսէս. և ապա գնացին Մովսէս և Ահարոն առաջի Փարաւոնի և արարին մեծամեծ նշանս։ Զի ձգեաց Մովսէս զգաւազանն իւր առաջի Փարաւոնի և եղեւ վիշապ։ Յայնժամ յառաջ կացին դիւթքըն Փարաւոնի Յանէս և Յամրէս. արհամարհեցին զՄովսէս, և ասացին Փարաւոնի, թէ սա աշակերտ է մեր, և մերով ուսմամբ առնէ[2]։ Եւ ընկեցին նոքա[3] երկոքեանն զգաւազանս իւրեանց յերկիր, և եղեն օձք առ աչօք և ոչ ճշմարտութեամբ։ Զի Մովսէսի օձն եկուլ զկախարդացն զերկու գաւազանսն՝ և առժամայն հալեալ[4] մարսեաց. և ձգեաց Մովսէս զձեռն իւր և կալաւ զտուտն օձին և եղեւ գաւազան ի ձեռին նորա։ Արար և զայլ երկու նշանսն. արարին և կախարդքն առ աչօք և ոչ ճշմարտութեամբ։ Ասաց Փարաւոն ցԱհարոն. Զի՞նչ խնդիր է ձեր. ասաց Ահարոն. Տէր Աստուած հարցն մերոց ասէ ցքեզ[5], արձակեա զժողովուրդ իմ զԻսրայէլ։ Ասաց Փարաւոն. ԶՏէր ոչ ճանաչեմ, և զԻսրայէլ ոչ արձակեմ։ Ասաց Ահարոն բանիւն Մովսէսի ցՓարաւոն. թէ դու զՏէր ոչ գիտես՝ ինքն յերեւան գայցէ[6] քեզ. զայս ասացին ուժով, և ելին

1. Բ. չունի զծանրութիւն։
2. Բ. յաւելու զոր ինչ առնէ։
3. Բ. չունի նոքա։
4. Բ. հալեալ։
5. Բ. քեզ։
6. Բ. գայ։

Մովսէս և Ահարոն յերեսացն Փարաւոնի։ Եւ տասն հարուածովք պատժեաց[1] Տէր զԵգիպտոս, և եհան զԻսրայէլ. և հերձեալ զծովն Կարմիր անցոյց զժողովուրդն և ընկղմեաց զՓարաւոն զօրօք իւրովք։ Եւ եհան զԻսրայէլ յանապատն, և զամս քառասուն կերակրեաց զնոսա մանանայիւն երկնից և լորամարգիւն ի ծովէն. և արբոյց նոցա ջուր ի վիմէն։ Եւ սեամբ հրոյ և ամպոյ լուսատու և հովանի եղեւ[2] նոցա ի տուէ և ի գիշերի։ Պահեաց երեք քառասուն և ընկալաւ զտախտակս քարեղէնս՝ գրեալ մատամբն Աստուծոյ, զտասն բանս օրինացն։ Կազմեաց զխորանն ի նմանութիւն երկնից, և ձեռնադրեաց զԱհարոն և զորդիս նորա ի քահանայութիւն Տեառն. կարգեաց և զղեւտացիսն ի սպաս[3] պաշտաման Տեառն. և վանեաց աղօթիւք և տարածմամբ ձեռացն զԱմաղէկ[4]. եհար զՍեհոն և զՕգ արքայ, և զամբարշտեալսն յԻսրայէլէ սատակեաց. բորոտեցոյց զքոյրն իւր զՄարիամ. և Ահարոնի բարկացաւ Տէր ի սատակել զնա վասն Մովսէսի. քանզի քոյրն և եղբայրն բամբասեցին զՄովսէս[5] զծառայն Աստուծոյ, որ հեզ էր քան զամենայն մարդիկ։ Եւ զի պատուէր զԹագուհին Եթովպացոց մեծարանօք՝ զոր ինքն գերեալ էր անտի։ Զի[6] ի ժամանակին յայնմիկ որ Մովսէս էր զօրերն Փարաւոնի՝ տասն ամ պատերազմեցաւ ընդ Եթովպիայ. և անոյց եղունս և ձագս արագլաց. և նոքօք պատերազմեցաւ ընդ Եթովպիայ և էառ զնա. զի օձուտ էր ճանապարհն որ մտանէր ի Հապաշաստան. և նոքա եղունքն և արագիլքն զօձն սատակեցին. և ապա կարաց Մովսէս ի Հապաշաստան մտանել և գերել զնոսա։ Զայն Թագուհին զոր, գերեալ էր Մովսէս՝ դեռ եւս յԵգիպտոս էր. յետ քառասուն և

1. Բ. պատժեաց զԵգիպտացիսն։
2. Բ. լինէր։
3. Բ. ի սպաս պաշտաման։
4. Բ. զԱմաղէկ։
5. Բ. զնա որ հեզ..
6. Ասա Բ. օրինակն փոփոխէ վրիպակաւ զպարբերութիւնս ի տեղւոջէ ի տեղի, որով և խզի զօղ պատմութեանն։

երկու ամաց գերութեան, և ի հանել ժողովրդեանն յԵգիպտոսէ՝ զնա եւս եհան անտի, իբր թէ գութ և ողորմութիւն առնել նմա։ Եւ սոյնպէս[1] մեծարանօք շրջեցուցանէր զնա յանապատին՝ ընդ ժողովրդեանն Իսրայելի. վասն այնորիկ բամբասեցին զՄովսէս Մարիամ և Ահարոն՝ և պատուհասեցան։ Եւ ապա վաղճանեցաւ Ահարոն ի Հովր լեառն, և թաղեաց զնա Մովսէս ի գլուխ լերինն. և յառաջ քան զմեռանելն Ահարոնի՝ մերկացոյց Մովսէս զպատմուճանն ի նմանէ, և զգեցոյց Եղիազարու որդւոյ նորա[2]։ Եւ ապա մեռաւ Ահարոն և թաղեցաւ. և լացին զԱհարոն որդիքն Իսրայելի զաւուրս երեսուն։ Եւ երեք ամաւ մեծ էր Ահարոն քան զՄովսէս. և երեք ամաւ յառաջ մեռաւ քան զնա։ Եւ կացոյց Մովսէս զԵսու որդի Նաւեայ փոխանակ իւր առաջնորդ Իսրայելի. և ինքն ել ի գլուխ լերինն Նաբաւու[3], և անդ վաղճանեցաւ Մովսէս հարիւր և քսան ամաց։ Եւ ոչ վատեցան աչք նորա, և ոչ թարշամեցան ծնօտք նորա, զի յերեւմանէն Աստուծոյ լուսաւորեցան երեսքն Մովսէսի՝[4] իբրեւ զպայծառութիւն հանդերձեալ կենացն, և զոր Ադամ ի դրախտին ունէր. մինչ զի ոչ կարէին որդիքն Իսրայելի հայել ի նա՝ զատ յԱհարոնէ և Յեսուայ. վասն որոյ եօթն քօղ ձգէին ի վերայ երեսացն Մովսէսի, և ապա կարէին խօսել ընդ նմա որդիքն Իսրայելի։ Եւ մօրուս ոչ ունէր Մովսէս ի պայծառ[5] լուսափայլութենէ դիմացն։ Սա ցանկացաւ տեսանել զԵրուսաղէմ և զայլ տնօրինական տեղիսն. և ոչ թողացոյց նմա Աստուած. զի բարկացոյց զՏէր ի վերայ ջուրցն բամբասանաց. և պատճառն այս է։ Զի Մարիամ քոյրն[6] Մովսէսի՝ որ էր կոյս և մարգարէ՝ մեռեալ էր, և Մովսէս ի սուգ մտեալ[7]. և ժողովուրդն

1. Բ. և այնպէս։
2. Բ. յաւելու և չխանդարելոյ զնա տաժանաց փոխանակ հօր նորա։ Եւ ապա։
3. Բ. Նաբաւ։
4. Բ. նորա։
5. Բ. չունի պայծառ։
6. Բ. քոյրն Ահարոնի և Մովսէսի ծնեալ էր։
7. Բ. նստեալ։

ծարաւեալ տրտնջեաց զԱստուծոյ, և բամբասեցին զՄովսէս: Վասն որոյ գնաց Մովսէս տրտմութեամբ և եհար զվէմն բարկութեամբ[1]. զի պարտ էր խոնարհութեամբ և աղօթիւք հարկանել զվէմն, որպէս և յայլ աւուրսն սովոր էր առնել՝ և ոչ բարկութեամբ: Վասն այսորիկ ոչ եթող նմա Աստուած տեսանել զերկիրն աւետեաց. այլ ասաց նմա ելանել ի լեառն Նաբաւու[2], և անտի տեսանել զերկիրն Երուսաղեմայ, և մեռանել անդ ի գլուխ լերինն Նաբաւու՝ մերձ ի տուն Փեգովրայ[3] կռոցն, յայնդիման Երիքովի, յայնկոյս[4] Յորդանանու: Եւ թաղեաց զնա Միքայէլ հրեշտակապետն, և ոչ ոք գիտաց զգերեզման նորա և զոսկերսն ի մարդկանէ մինչեւ ցայսօր, վասն երկուց պատճառաց. նախ զի Աստուած անուանեալ էր Մովսէս, վասն[5] այն գաղտ մեռաւ և աներևոյթ ի մարդկանէ, զի մի տեսցեն զաստուածն իւրեանց մեռեալ: Եւ դարձեալ՝ զի մի առնուցուն մարդիկ ի պաշտօն զգերեզման նորա և[6] զոսկերսն: Զի ոչ եղեւ մարգարէ յԻսրայէլէ իբրեւ[7] զՄովսէս՝ զոր ծանեաւ Տէր յանդիման նշանօք և արուեստիւք զոր արար նովաւ: Եւ լացին զՄովսէս որդիքն Իսրայէլի յԱրաբովթ Մովաբու՝ յանդիման Երիքովի՝ զաւուրս երեսուն, և ոչ աւելի կամ պակաս: Զի թիւ լուսնին երեսուն օր է, և արդ[8] նոր ծնանի, և ցուցանէ զյարութիւն մեր ի հողոյ, և զվերստին նորոգումն յանմահութիւն: Մարգարէն Մովսէս չորս ծննդեան հանդիպեցաւ, առաջին՝ ի մօրէն, երկրորդ՝ ի ջրոյ, երրորդ՝ ի հրոյ, որ մնաց առ Աստուած ի գլուխ լերինն Սինեայ աւուրս քառասուն ի մէջ հրոյն, և ապա ծնաւ նա հրոյն. չորրորդ ծնունդն Մովսէսի ի վիմէն, որ եդ զնա Աստուած ի փապ վիմին, որ ետես զյետոյսն Աստուծոյ, և անտի ծնաւ Մովսէս որդի վիմի: Պահեաց Մովսէս երեք

1. Բ. յաւելու. ընդ որ բարկացաւ Աստուած, և ոչ եհեր ջուր ի վիմէն:
2. Բ. Նաբաւա:
3. Բ. Փեգրովրայ:
4. Բ. չունի յայնկոյս Յորդանանու:
5. Բ. չունի վասն այն:
6. Բ. չունի և զոսկերսն:
7. Բ. որպէս:
8. Բ. անդ:

քառասուն, ըստ թուոյ ամաց. նորա որ ընդ տարւոյ. զի ամք կենաց նորա էին երեք քառասուն, որ[1] դայ հարիւր և քսան տարի. և ոչ ոք գտաւ նման նմա յամենայն ազգս[2] և ի մարգարէսն Իսրայելի. զի բերան ի բերան ընդ Աստուծոյ խօսեցաւ. և նորա կատարեալ յարութիւն եղեալ է, որ յարուցեալ եկն ի Թաբօր վկայ աստուածութեանն Յիսուսի Քրիստոսի որդւոյն Մարիամու։

1. Բ. չունի որ դայ։

2. Բ. չունի ազգս։



# Զ

# ՄԱՀ ՄԱՐԳԱՐԷԻՑ

## ՄԱՀ ԵՍԱՅԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Ա էր որդի Ամովսայ ի Թեկուայ ի ցեղէ Յուդայ. և մեռաւ ի Մանասէէ սղոցեալ յերկուս. եւ եդաւ ի ներքոյ կաղնւոյն Ռոգելեայ, մերձ յանցս ջրոյն զոր կորոյս Եզեկիա թագաւոր՝ խցեալ զնա. վասն այնորիկ զնշանն ի Սելովամ Աստուած վասն մարգարէին արար. զի յառաջ քան զմեռանելն ժողովուրդն ի ծարաւոյ, յաղօթս եկաց զի գտցեն ջուր ըմպելոյ, և վաղվաղակի առաքեցաւ նմա ի յԱստուծոյ. վասն այնորիկ կոչեցաւ Սելովամ՝ որ թարգմանի առաքեալ: Եւ առ Եզեկիայիւ յառաջ քան զառնելն զջրհորսն և զաւազանսն. աղօթիւք Եսայեայ սակաւ մի ջուր բղխեաց, յորժամ էր ժողովուրդն պաշարեալ յայլազգեացն. ունէին զՍելովամ, զի մի ապականեսցի ժողովուրդն առ ի չգոյէ ջրոյ. և պատեալ զքաղաքն պատնիշօք. նստէին շուրջ պատերազմօղքն աւուրս բազումս. և հարցեալ, թէ ուստի՞ ըմպեն ջուր քաղաքացիքն, և ուսեալք՝ նստան այնուհետեւ այլազգիքն առ Սելովամ: Եւ յորժամ գային Հրեայքն հանդերձ Եսայեաւ, գայր յանկարծակի ելանէր ջուրն. և յորժամ այլազգիքն գային՝ ոչ ելանէր. վասն որոյ մինչեւ ցայսօր ելանէ ջուրն զի ցուցցի խորհուրդն: Արդ վասն զի Եսայեայ աղագաւ այն եղեւ, վասն յիշատակի նորին, ժողովուրդն՝ մօտ ի Սելովամ եդին զնա

փառաւորապէս, զի ի ձեռն աղօթից նորա, և յետ մահուան նորա ունիցին վկայ զջուրն. քանզի և հրաման իսկ տուան նոցա այնպէս առնել: Եւ է գերեզման նորա մօտ ի գերեզմանս թագաւորացն յետուստ կուսէ առ գերեզման քահանայիցն ի հարաւոյ կողմանէ: Եւ է մինչեւ ցայսօր անյայտ ի բազմաց, ի քահանայից անտի, և յամենայն ժողովրդեանն:

## ՄԱՀ ՈՎՍԷԻ ՄԱՐԳԱՐԷԻ

ՈՎՍԷԷ էր ի Բելմովթայ[1], ի ցեղէ Իսաքարայ, և շատ մարգարէացաւ ի վերայ Իսրայելի: Մեռաւ և թաղեցաւ յերկրի իւրում խաղաղութեամբ[2]. և ետ նշան, եթէ եկեսցէ Տէր յերկրի[3], և ընդ մարդկան շրջեսցի: Եւ կաղնին որ ի Սելով՝ բաժանեսցի յերկոտասան մասն, և եղիցի երկոտասան կաղնի. և զհետ երթիցեն և հնազանդեսցին երեւելոյն Աստուծոյ, և նովաւ կեցցէ ամենայն երկիր:

1. Զ. Բեթլեմովթայ. ԺԸ. Բեթմա-մովթայ. ԺԹ. Բեթդեմովթայ:
2. ԺԹ. չունի խաղաղութեամբ:
3. ԺԹ. յերկիր:

## ՄԱՀ ԱՄՈՎՍԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Ամովս էր ի Թեկուայ, և Ամասիա կոչկոճեաց զնա[1]. յետոյ և սպան զնա որդի նորա՝ բեկեղբ[2] ջաղջախեալ գծամելիսն[3]. և ոգւոմն եկն յերկիր իւր, և յետ սակաւ աւուրց մեռաւ և թաղեցաւ անդ[4]:

## ՄԱՀ ՄԻՔԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Միքիէ էր ի Մոսորովթայ[5], յազգէ Եփրեմի. բազում ինչ արարեալ ընդ Աքայաբ, սպանաւ յԻովրամայ[6] որդւոյ նորա, և թաղեցաւ յերկրի իւրում միայն, մօտ ի շիրիմն Ենակիմայ[7]:

1. Զ. նա էր ի Թեկուայ, և Ամասիայ քրմին Բեթելեայ յաճախ խոշտանեալ զնա. ԺԸ և ԺԹ. նման են բնագրիս միայն յաւելուն՝ բազում անգամ խոշտանէր զնա:
2. ԺԸ. բակեղբ:
3. Զ. ունի և զայս. Եւ մինչ դեռ ի նմա ևս կայր շունչն, դարձեալ որդին նորա եհար բրով զգլխոյ դեղէ նորա:
4. Զ. ի Ներքոյ Թեկուայ:
5. Զ և ԺԹ. Մոասթրեթեայ:
6. Զ. յԱքաաբայ որդւոյ նորա, ընկեցեալ եղեւ ի վիմէ. վասն զի յանդիմանէր զնա ի վերայ ամպարշտութեան հօրն նորա. այսպէս ունին և ԺԸ և ԺԹ:
7. ԺԸ. Անակիմայ:

## ՄԱՀ ՅՈՎԵԼԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

ՅՈՎԷԼ՝ էր յազգէ Ռուբենի. մարգարէացաւ վասն սովոյն և նուաղութեան գոհիցն[1] և վասն չարչարանաց մարգարէին արդարոյ. և եթէ Նովաւ Նորոգին[2] արարածք ի փրկութիւն: Մեռաւ խաղաղութեամբ և թաղեցաւ յագարակի[3] իւրում:

## ՄԱՀ ԱԲԴԻՈՒ ՄԱՐԳԱՐԷԻ

ԱԲԴԻՈՒ՝ էր յերկրէ Սիքիմայ[4], յագարակէ Բեդքարայ[5]:

Սա՝ էր աշակերտ Եղիայ, բազում ինչ վիշտս կրեաց[6] վասն նորա՝ զի ապրեցուցէ զնա: Սա էր[7] երրորդ յիսնապետն՝ յոր խնայեաց Եղիա և էջ առ արքայ[8]. և յետոյ թողեալ զպաշտօնութիւնն արքային՝ մարգարէանայր: Մեռաւ և թաղեցաւ առ հարս իւր:

1. ԺԸ. հացին:
2. Զ. ԺԸ և ԺԹ. յաւելուն ամենայն:
3. ԺԸ. յերկրէ:
4. Զ և ԺԹ. Սեքարայ. ԺԸ. Սեքեմայ:
5. Զ. ԺԸ և ԺԹ. Բեթքարեմայ:
6. Զ և ԺԹ. վշտակրեաց:
7. Զ և ԺԹ. չունին առ էր, այլ եղեալ են՝ և:
8. Զ. և ԺԹ. Ոքոզիա, իսկ ԺԸ. Աքաաբ:

# ՄԱՀ ՅՈՒՆԱՆՈՒ ՄԱՐԳԱՐԷԻ

ՅՈՒՆԱՆ՝ էր յերկրէն Կարիաթմաւուսայ՝[1] որ մերձ յԱզովտոս՝ ի քաղաքն այլազգեաց ի[2] ծովեզե-րին։ Եւ ընկեցիկ եղեալ արտաքս ի կիտէն[3], չոգաւ միւսանգամ[4] ի Նինուէ, և դարձեալ միւսանգամ ան-տի, ոչ մնաց յերկրի իւրում, այլ առեալ զմայր իւր չոգաւ պանդխտեցաւ ի Սուր, և[5] ի գաւառին այլազ-գեաց ընդ հեթանոսս. զի[6] ասէր թէ այսպէս բարձից զնախատինս իմ, զի ստեցի ի մարգարէանալ իմում վասն Նինուէի քաղաքի մեծի[7]։ Յայնժամ յանդիմա-նէր[8] Եղիա զԱքայար՝ և զԵզաբել կին նորա։ Եւ կո-չեաց սով ի վերայ երկրին, և փախեաւ[9] ի Սարեփ-թա[10], եգիտ զայրին հանդերձ որդւովն իւրով, և մնաց առ նմա[11], քանզի ոչ կարէր լինել ընդ անթլփատս, և օրհնեաց զնոսա վասն օտարընկալութեանն. զի յառա-ջագոյն գիտէր[12] զնոսա ի վաղուց հետէ, զորոյ զոր-դին յարոյց Աստուած[13]. ցուցանել նմա թէ ոչ ոք կա-րէ փախչել յԱստուծոյ։ Եւ յարուցեալ Յունան յետ սովոյն եկն յերկիրն Յուդայ, և մեռաւ մայրն նորա ի ճանապարհին. Թաղեաց զնա մօտ ի կաղնին Դե-բովրայ, և բնակեցաւ Յունան յերկրին Սարարայ. մե-

1. ԺԸ. կարխաթարմայ։
2. Զ և ԺԹ. որ է։
3. ԺԸ. և ընկեցեալ ի կէտէն ար-տաքոյ։
4. Զ. ԺԸ և ԺԹ. չունին միա-անգամ։
5. Զ. ԺԸ և ԺԹ. չունին և։
6. Զ և ԺԹ. քանզի այսպէս։
7. ԺԸ. չունի մեծի։
8. ԺԸ. յանդիմանեաց։
9. ԺԸ. եկեալ։
10. ԺԸ. ի Սարեփթա Սիդոնաց-ւոց։
11. Զ և ԺԹ. Նոսա։
12. Զ. ԺԸ և ԺԹ. ճանաչէր։
13. Զ. ԺԸ և ԺԹ. ունին և զայս. ի մեռանելոյ Յէսեան Եղիայի կամե-ցաւ Աստուած ցուցանել..։

ռաւ և Թաղեցաւ յայրին Կենազայ[1] դաստաւորի եղե-լոյ ի ցեղէ միոջէ յաւուրս անիշխանութեանն։ Եւ ետ նշան յԵրուսաղէմ, թէ յորժամ տեսանիցեն[2] զքար զի գոչեսցէ գորովալիր, և զբոտոտ[3] ի փայտի, զի ա-ղաղակեսցէ մերձ լինել փրկութիւն[4]. յայնժամ տեսա-ցեն զԵրուսաղէմ տապալեալ ի հիմանց, և մտցեն ի նա յամենայն ազանց[5] յերկրպագութիւն Տեառն։ Եւ ա-ռեալ զքարինս Նոցա[6] դիցեն ի կողմանէ արեւելից[7]. և անդ լիցի[8] երկրպագութիւն օծելոյն՝ վասն պղծե-լոյն[9] Երուսաղեմի յաւերածին գազանաց և յամե-նայն գարշելեաց. և յայնժամ եկեսցէ կատարած ա-մենայն երկրի։

## ՄԱՀ ՆԱՒՈՒՄԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

ՆԱՒՈՒՄ՝ էր յԵղկեայ[10] յայնկոյս Յորդանանու ի Բեդաբրէէ[11], ի ցեղէ Շմաւոնի. Նա[12] ետ հանդերձ Յունանու նշան ի Նինուէ թէ ի քաղցր[13] ջրոյ և ի հրոյ գետնականէ կորիցէ. վասն որոյ և եղեւն իսկ. զի[14] ծովակն որ շուրջ զնովաւ հեղեղեաց զնա շարժմամբ՝

1. Զ. ԺԸ և ԺԹ. կենեզայ։
2. ԺԸ. տեսանիցեն։
3. ԺԸ. բորոտ։
4. Զ և ԺԹ. և զբոտոտ զի է փայ-տէ առ Աստուած աղաղակեսցէ, մերձ է լինել փրկութիւն. ԺԸ. և զբորոտ զի զփայտն աղաղակեսցէ. պակասէ մերձ է լինել փրկութիւն։
5. Զ. ԺԸ և ԺԹ. ամենայն հե-թանոսք։
6. Զ և ԺԹ. նորա։
7. Ի լս. բնագրիս և ԺԳ. օրի-նակին ունի. արեւմտից։
8. ԺԸ. եղիցի։
9. Զ և ԺԹ. պղծութեան։
10. Զ և ԺԸ. յԵղկեսեայ որ է։
11. Զ և ԺԸ. Բեթաբրէ։
12. Զ և ԺԸ. նա։
13. ԺԸ. շունի քաղցր։
14. Զ և ԺԸ. քանզի։

և կորոյս[1]. և հուր յանապատէ եկեալ զբարձաւանդակ[2] նորա այրեաց։ Եւ մեռաւ խաղաղութեամբ և թաղեցաւ[3] յերկրի իւրում։

## ՄԱՀ ԱՄԲԱԿՈՒՄԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

ԱՄԲԱԿՈՒՄ էր ի ցեղէ Շմաւոնի, յագարակէ բեթսուքարայ[4]։ Սա եստես յառաջագոյն զգերութիւնն. և վասն աւերածոյն Երուսաղեմի ոգացաւ յոյժ. և յորժամ եկն Նաբուգոդոնոսոր յԵրուսաղէմ՝ փախեաւ յՈւստրակինէ[5], և եղեւ պանդուխտ յերկրին Իսմայելի. և իբրեւ դարձան Քաղդէացիքն յերկիրն[6] իւրեանց, և մնացորդք Հրէիցն՝ որ էին յԵրուսաղէմ՝ ի-ջին յԵգիպտոս։ Ցայնժամ դարձեալ եկն յերկիր իւր և պաշտէր զհնձօղս ագարակի իւրոյ. և իբրեւ առ զկերակուրն՝ մարգարէացաւ ընտանեաց իւրոց և ասէ. Երթամ յերկիր հեռաստան, և վաղվաղակի գամ. և եթէ յամիցեմ՝ դուք տարէք[7] ճաշ հնձողացն։ Եւ երթեալ[8] ի Բաբելոմն ի ձեռն հրեշտակին որ առաջնորդեաց նմա, և տարեալ ճաշ[9] Դանիելի, և դարձեալ չոգաւ[10] առ հնձօղսն։ Եւ տարաւ[11] նոցա ի տանէ այլ կերակուրս, չյայտնեալ ինչ զտեսորական ժամն, և ոչ ումեք պատմեաց զեղեալն[12]. և իմացաւ եթէ վաղվաղակի դարձցի ժողովուրդն ի Բաբելոնէ։ Եւ յետ երկուց ամաց դար-

1. ի Ձ. պակասէ և կորոյս։
2. Ձ և ԺԸ. բարձրաւանդակ։
3. ի Ձ. պակասէ և թաղեցաւ։
4. Ձ և ԺԹ. Աստաքարայ. ԺԸ. Աստաքիրայ։
5. ԺԸ. յՈստորակինէ։
6. ԺԸ. է տեղիս։
7. Ձ և ԺԹ. տարայք։
8. Ձ և ԺԸ. յաւելուն նորա։
9. Ձ. ԺԸ և ԺԹ. ըճաշն.
10. Ձ և ԺԹ. դարձայ։
11. ԺԸ. տարեալ է տանէ նոցա։
12. Ձ. ԺԸ և ԺԹ. զեղեալն։

*ձան[1] ի գերութենէ. և ետ նշան որոց ի Հրէաստանի, եթէ ի կատարածի՝ մարգարէ[2] որդի Աստուծոյ յարիցէ և ուսուցէ, ի տաճարին, և[3] որք հաւատան ի նա տեսցեն զլոյս հայեցեալ ի փառս Միածնին, և որք ոչ լսեն նմա, եղիցին ի խաւարի։ Եւ վասն վախճանի տաճարին, ասաց յառաջագոյն, եթէ յարեւմտից[4] ազգէ աւերեսցի։ Յայնժամ, ասէ, վարագոյր դաբիրային մանր[5] ծուէնս պատառեսցի, և ելեալ սրբոյ հոգւոյն ի տաճարէն, և աղաւաղագէպք[6] երկուց սեանցն բարձցին, և[7] ոչ ոք գիտասցէ թէ ուր լինիցին. այլ ի հրեշտակաց բերցին յանապատ ուր ի սկզբանէ կառուցաւ խորանն վկայութեան. և նոքօք ծանիցի Տէր և լուսաւորեսցէ զփախուցեալսն յօձէն, և պատսպարեցուցէ[8] զնոսա յարդարութիւն յաւիտենից։ Եւ մեռաւ[9] և թաղեցաւ յագարակի իւրում միայն։*

1. Աստի մինչև ցվերջ պակասէր յօրինակին, յաւելաք ըստ Զ և ԺԹ օրինակաց։
2. ԺԸ. մարգարէութեանն։
3. ի ԺԸ. պակասէ մինչև և որք։
4. ԺԸ. արեւմտայն։
5. ԺԸ. չունի մանր։
6. ԺԸ. աղխաղխագէտք։
7. ԺԸ. չունի մինչև այլ։
8. ԺԸ. պատսպարեսցէ։
9. ԺԸ. յաւելու խաղաղութեամբ։

## ՄԱՀ ՍՈՓՈՆԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

ՍՈՓՈՆԻԱ՝ էր ի ցեղէն Շմաւոնի, յագարակէ Սարաթայ[1]։ Սա մարգարէացաւ վասն քաղաքին Երուսաղեմի, և վասն վախճանի[2] նորին և վասն փրկութեան և մտին հեթանոսաց, ամօթոյ ամպարշտաց, և վասն դատաւորին ամենայն[3] չնչոց որդւոցն[4] Աստուծոյ։ Մեռաւ[5] և թաղեցաւ յագարակի իւրում։

## ՄԱՀ ԱՆԳԷԻ ՄԱՐԳԱՐԷԻ

ԱՆԳԷԱՍ մարգարէ՝[6] էր ի ցեղէն Ղեւեայ. ծնաւ ի Բաբելոն. և մինչ դեռ մանուկն էր՝ եկն ի Բաբելոնէ յԵրուսաղէմ, և յայտնապէս վասն դարձի ժողովրդեանն մարգարէացաւ, և ետես զշինուածս տաճարին։ Մեռաւ խաղաղութեամբ և թաղեցաւ յԵրուսաղէմ մերձ ի գերեզմանս քահանայիցն փառաւորապէս, զի[7] և նա յազգէ քահանայապետիցն[8] էր։

1. ԺԸ. Մանաթայ։
2. ԺԸ. տաճարէ։
3. Ջ և ԺԹ. այսպէս յարմարեն զբանսդ. դատաւորն ամենայնի որդւոյն Աստուծոյ։
4. ԺԸ. եղական դնէ ճնչոյ որդւոյն։
5. ԺԸ. յաւելու խաղաղութեամբ։
6. Ջ. ԺԸ և ԺԹ. չունին մարգարէ։
7. Ջ և ԺԹ. վասն զի. իսկ ԺԸ. քանզի։
8. Ջ. ԺԸ և ԺԹ. քահանայից։

# ՄԱՀ ԶԱՔԱՐԻԱՑ ՄԱՐԳԱՐԷԻ

ԶԱՔԱՐԻԱ՝ էր յազգէն[1] Ղեւեայ, և ծնաւ ի Գաղդի յերկրին[2] Քաղդէացւոց[3]։ Երիտասարդ հասակաւ, շատ մարգարէացաւ վասն ժողովրդեանն և նշան ետ[4] ի հաստատութիւն բանիցն։ Սա ասաց զՅովսեդեկեայ թէ ծնցի որդի և[5] յԵրուսաղէմ քահանայասցի անարատութեամբ յօրինակ ճշմարիտ քահանայապետին։ Սա զՍաղաթիէլ վասն որդւոյն[6] օրհնեաց, և անուանեաց Զօրաբաբէլ։ Եւ առ Կիւրոսիւ՝ ետ նշան ի յաղթութիւն[7]. և վասն սպասաւորութեան նորա յառաջագոյն ասաց, զոր առնելոց էր[8] յԵրուսաղէմ, և օրհնեաց զնոսա[9] յոյժ. և զհանդերձեալսն մարգարէացաւ յԵրուսաղէմ, և վասն կատարածի նորին, և սկիզբն[10] հեթանոսաց և վախճանի տաճարին և աւերածոյն, և դատարկութեան մարգարէիցն[11] և շաբաթուցն։ Եւ վասն կրկին դատաստանի նշանակեաց։ Եւ մեռաւ խաղաղութեամբ և բարւոք ծերութեամբ[12], և թաղեցաւ մերձ յԱնգէ։

1. ԺԲ. ի ցեղէ։
2. Զ և ԺԲ. յերկիրն։
3. ԺԲ. յաւելու աստ, Եւ եկեալ յերկրէն Քաղդէացւոց երիտասարդ..։
4. Զ և ԺԹ. նշանս ետ։
5. ԺԲ. այսպէս ունի՝ ծնցի որդի յԵրուսաղէմ, և քահանայասցի։
6. Զ և ԺԹ. չունին որդւոյն։
7. Զ և ԺԹ. նշան յաղթութեան։
8. Զ և ԺԹ. առնելոց էին։
9. ԺԲ. զնա։
10. Զ. ԺԲ և ԺԹ. ի սկզբան։
11. Զ և ԺԹ. յաւելուն՝ և քահանայիցն։
12. Զ և ԺԹ. ի բարւոք ծերութեան. իսկ ի ԺԲ. պակասէ բարւոք։

# ՄԱՀ ՄԱՂԱՔԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

ՄԱՂԱՔԻԱՄ՝ յետ դարձի գերութեանն[1] ծնաւ ի Սոփփերայ ի ցեղէն[2] Ղեւեայ. և մինչ դեռ մանուկ եւս էր՝ բարի վարս եցոյց յանձին: Եւ վասն զի[3] ամենայն ժողովուրդն պատուէր զնա իբրեւ զանարատ և զհեզ, և կոչեցին զնա Մաղաքիաս, որ կոչի հրեշտակ. զի էր տեսլեամբ վայելուչ. այլ որպէս ինքն ասաց ի մարգարէանալն[4] իւրում, ի նմին աւուր հրեշտակ երեւեալ[5] երկրորդէր զբան նորա, և զհրեշտակն ոչ ոք յանարժանիցն տեսանէր, այլ միայն զձայն նորա լսէին[6]:

Իսկ արժանաւորքն[7] և զտեսիլ նորա տեսանէին, որ եղեւ յաւուրս անիշխանութեանն. որպէս և գրեալ է ի Սփիրափոտեիմ[8], այսինքն դատաւորացն գիրս[9]: Մինչ դեռ եւս մանուկ էր յաւելաւ առ ժողովուրդ[10] իւր. և թաղեցաւ յագարակի իւրում:

1. Ջ. դարձին գերութեանն:
2. Ջ և Ժթ. ի Սոփարայ յազգէն:
3. Ջ և Ժթ. չունին վասն զի:
4. Ջ և Ժթ. ի մարգարէութեան:
5. Ջ և Ժթ. իջեալ հրեշտակ Աստուծոյ:
6. Ջ և Ժթ. լսէր:
7. Ջ և Ժթ. արժանիքն:
8. Ջ և Ժթ. Սփարօփոտիմն:
9. Ջ և Ժթ. չունին գիրս:
10. Ժթ. հարս.

# ՄԱՀ ԴԱՆԻԵԼԻ ՄԱՐԳԱՐԷԻ

*Ըստ ԲԱ.*

Դանիէլ էր յազգէ Յուդայ, ի գլխաւորաց՝ յարքունի սպասաւորութենէ. այլ մինչ դեռ մանուկ էր ածաւ ի Հրէաստանէ յերկիրն Քաղդէացւոց։ Եւ ծնաւ ի Բեթոմրի[1] վերնում. և էր այր քարձ, մինչեւ կարծել Հրէիցն թէ ներքինի իցէ։

Բազում սգով սգացաւ սա ի վերայ քաղաքին, և պահօվք կրօնաւորեցաւ յամենայն ցանկալի կերակրոց, և էր այր վտիտ երեսօք, այլ գեղեցիկ էր շնորհօք բարձրելոյն։

Սա՝ բազում աղօթս արար վասն Նաբուքոդոնոսորայ, քանզի աղաչէր զնա Բաղտասար

*Ըստ ԺԸ օր.*

Դանիէլ էր ի ցեղէն Յուդայ՝ յիշխանացն ի թագաւորական սպասաւորութենէն. այլ մինչդեռ մանուկ եւս էր, չոգաւ ի գերութիւն ի Հրէաստանէ ի Քաղդէացիս։ Բայց ծնեալ էր ի Բեթորոմն վերնումն. և էր այր զգաստ և տեսլեամբ քարձ, մինչեւ կարծեալ զնմանէ Հրէիցն եթէ ներքինի իցէ։ Սա շատ սգացաւ ի վերայ տաճարին և քաղաքին Երուսաղեմի. և ի պահս ճգնեցաւ՝ արգելեալ զինքն յամենայն ցանկալի կերակրոց՝ ունդս ուտելով ամս քսան և մէկ. և էր ցամաք տեսլեամբ, այր գեղեցիկ շնորհօք բարձրելոյն։ Սա շատ աղօթս արար վասն Նաբուգոդոնոսորայ. աղաչէ ըզնա վասն Բաղտասարայ

1. Ձ. Բեթորոմէ

որդի նորա յորժամ եղեւն գազան եւ անասուն, զի մի կորնչիցի։ Քանզի առաջոյ կողմանէ՝ եզին էր գլխովն հանդերձ, եւ ոտքն զատօքն հանդերձ՝ առիւծու. եւ յայտնեցաւ սրբոյն վասն խորհրդոցն այնորիկ. թէ անասուն՝ վասն ցանկասիրութեան եւ խստապարանոցութեանն, զի իբրեւ զեզն ընդ լծով լինին Բելայ, եթէ զնոյն ունիցին իշխանքն ի Բելայ. եւ յետոյ գազանք լինին, քանզի յափշտակեն սատակեն, սպանանեն եւ կոտորեն։

Իմացեալ Աստուծով սուրբն՝ թէ իբրեւ զարջառ՝ խոտ ուտիցէ, եւ լինիցի մարդկեղէն բնութեան կերակուր. վասն այնորիկ Նաբուքոդոնոսոր յետ հանդարտելոյն, յորժամ ի միտս մարդկան եղեւ՝ լայր եւ աղաչէր զՏէր զամենայն տիւ եւ զգիշեր՝

որդւոյ նորա, յորժամ եղեւ նա գազան եւ անասուն, զի մի կորիցէ։ Եւ էր նորա առաջի կողմն գլխով հանդերձ՝ իբրեւ զեզին, եւ յետի կողմն ոտիւքն հանդերձ՝ իբրեւ զառիւծու։ Եւ յայտնեցաւ սրբոյն Դանիէլի վասն խորհրդոյն այնորիկ, եթէ անասուն՝ յաղագս անառակ ցանկութեան եղեւ եւ խստապարանոցութեանն, զի ընդ լծով ծառայութեան եղեւ բելխարայ։ Եւ առիւծ վասն բռնաւորական եւ յափշտակողական եւ գազանական բարուցն. քանզի զայս ունէին բռնաւորքն յիշխանութեան զառաջինն. եւ յետոյ ի կատարածին գազանք լինէին յափշտակողք եւ սատակիչք եւ ամբարիշտք, եւ զնոցին փոխարէնս առին եւ առցեն յարդար դատաւորէն Աստուծոյ։ Գիտաց սուրբն Աստուծով՝ թէ իբրեւ զեզն ուտէ զխոտ, եւ լինէր նմա մարդկեղէն բնութեանն կերակուր վասն այնորիկ եւ Նաբուգոդոնոսոր՝ յետ հալելոյ զկերակուրն, ի մարդոյ միտս եղեալ, լայր եւ աղաչէր քառասնակիցս, եւ խնդրէր զպատապարու-

քառասուն անգամ խնդրուածս մատուցանէր Բնէմութ Աստուծոյ, յորժամ հասանէր ի վերայ նորա, և մոռացաւ զայն յորժամ մարդն եղեւ, բարձաւ լեզու նորա զի մի խօսեսցի. և յորժամ իմանայր՝ անդէն զարտասուս արկանէր: Աչք նորա շաղղացեալ էին ի լալոյ. բազումք եղանէին ի քաղաքէն և տեսանէին զնա: Բայց Դանիէլ միայն, զի ոչ կամեցաւ տեսանել զնա, զի զամենայն ժամանակս նորա՝ առնէր աղօթս վասն նորա, քանզի ասէր թէ միւսանգամ լինելոց է մարդ և չհաւատայինն նմա: Եւ Դանիէլ զեւթն ամս զորս կոչեաց եւթն ժամանակս՝ արար նմա լինել եւթն ամիս. և խորհուրդն եւթնժամանակեան կատարեցաւ ի վերայ նորա. զի դարձոյց յեւթն ամիս զվեց ամս և զվեց ամիս: Եւ ապա անկանէր առաջի Տեառն, և խոստովան լինէր զամպարշտութիւնն իւր, և յետ թողութեան անորէնութեանն, դարձոյց անդրէն ի նոյն զթագաւորութիւնն. ոչ հաց եկեր և ոչ միս, և ոչ գինի արբ ի խոստովանութիւն իւր, և լինէր երբեմն զի մոռանայր եթէ եղեւ սիրտ իւր իբրեւ զմարդոյ, զի բարձաւ լեզու նորա առ ի չխօսել. և իմացեալ վաղվաղակի արտասուէր, և աչք նորա էին իբրեւ ըղշաղեղ ի լալոյն, և բազումք եղանէին ի քաղաքէն և տեսանէին զնա: Բայց Դանիէլ միայն ոչ կարէր տեսանել զնա, այլ զամենայն ժամանակս այլափոխման նորա աղօթէր վասն նորա. քանզի ասէր եթէ դարձեալ մարդ լինիցի, և յայնժամ տեսից զնա. և նոքա հաւատային նմա:

Իսկ Դանիէլ զեօթն ամ զոր ասաց նմա Աստուած՝ եօթն ժամանակս, կալով յաղօթս առ բարձրեալն, արար լինել եօթն ամիսս. և խորհուրդ եօթն ժամանակացն կատարեցաւ ի վերայ նորա. և պատապարեալ յետ եօթն ամսեանն՝ զայլ եւս զվեց ամս, և զհինգ ամիսն անկանէր առաջի Տեառն, և խոստովանէր զամենայն ամբարշտութիւնս իւր և զանօրէնութիւնս: Եւ յետ թողութեան անօրէնութեանց նորա, ետ նմա Տէր

թեանն, զի Դանիէլ պատուէր ետ նմա ընտանեօք Թրշելովք և դալարուք՝ արկանել պաշտաման առաջի Աստուծոյ:

Վասն այնորիկ կոչեաց զանունն նորա Բաղտասար, ժառանգակից որդւոյն[1] իւրոյ կամէր առնել զնա: Այլ սուրբն ասէր. Քաւ լիցի ինձ թողուլ զժառանգութիւն հարցն իմոց, և յարել ի ժառանգութիւն անթլփատիցն: Եւ առ այլովք թագաւորօք Պարսից, բազում նշանս արար զոր ոչ գրեցին: Եւ անդէն մեռաւ և թաղեցաւ յարքունի այրսն միայն մեծարանօք:

Եւ նա ետ նշան ի լերինսն որ ի վերոյ կան Բաբելոնի, թէ յորժամ հրով ծխեսցի ի հիւսիսոյ կողմանէ, եկեսցէ վախճան Բաբելոնի: Եւ յորժամ հրով վառեսցի՝ վախ-

զթագաւորութիւնն իւր. և հաց և միս ոչ եկեր, և գինի ոչ արբ. խոստովանելով Տեառն զվեց ամն և զհինգ ամիսն: Քանզի Դանիէլ հրամայեաց ընդովք Թրշելովք և բանջարովք և ողորմութեամբ հաշտեցուցանել զԱստուած: Վասն այնորիկ անուանեաց զանուն նորա Բաղտասար, զի կամեցաւ զնա ժառանգակից կացուցանել որդւոյ իւրոյ: Իսկ Դանիէլ ոչ առ յանձն, ասէ. Քաւ լիցի ինձ թողուլ զժառանգութիւն հարց իմոց, և ժառանգակից լինել անթլփատից թագաւորաց Պարսից: Բազում նշանս արար Դանիէլ՝ որք ոչ են գրեալ ի գիրս տեսլեանց նորա: Մեռաւ խաղաղութեամբ անդրէն ի Բաբելոն, և եդաւ յայրի թագաւորականի միայն փառաւորապէս: Եւ ետ նշան զլերանցն որ ի վերայ Բաբելոնի, և ասէ, եթէ յորժամ հիւսիսային հողմն ծխեսցի, եկեսցէ վախճան Բաբելոնի. և յորժամ յարեւելից ջուր բխեսցէ, յայն-

[1] Զ. որդւոց իւրոց:

ճան ամենայն երկրի։ Եւ եթէ ի հարաւոյ կողմանէ ջուր բղխեսցէ՝ դարձցի ժողովուրդն յերկիր իւր։ Եւ եթէ արիւն բղխեսցէ՝ սատակումն եղիցի ի Բելայ ամենայն երկրի. և ամփոփեսցաւ խաղաղութեամբ։

ժամ Աստուած յերկրի երեւեսցի որպէս մարդ, և յինքն առցէ զամենայն անօրէնութիւնս աշխարհի, ի խաչելն իւրում ի քահանայից և ի ծերոց ժողովրդոցն Իսրայելի։ Յայնժամ սպանումն եղիցի բելիարայ և պիղծ հոգոյ նորա, և վաղվաղակի հոգի շնորհաց հեղցի յամենայն հեթանոսս։ Եւ յորժամ հարաւակողմն հրով այրեսցի, յայնժամ կատարած եղիցի ամենայն երկրի. և եթէ հարաւ ջուր բխեսցէ, դարձցի ժողովուրդն յերկիր իւր. և եթէ արիւն բղխեսցէ սպանումն եղիցի ամենայն ոգոյ պղծոյ։ Եւ ննջեաց Դանիէլ սուրբն Աստուծոյ։

## ՄԱՀ ԵՐԵՄԻԱՅ ՄԱՐԳԱՐԷԻ

Սա՝ էր յԱնաթովթայ Բենիամինի յաւուրս քահանայիցն։ Ի Տափնաս քաղաքի յԵգիպտացւոցն քարկոծեալ մեռաւ. և եդաւ մերձ յապարանան Փարաւոնի. քանզի Եգիպտացիքն փառաւորեցին զնա՝ բարի գտեալ ի նմանէ ի ձեռն աղօթից նորա, վասն զի աղօթս արար. և քարբքն որ սպանանէին զնոսա սատակեցան. Նոյնպէս և գազանք ջրոցն զորս Եգիպտացիքն կոչեն Նե-

փոտ. և Ցոյնք անուանեն Կրոկոդիլոս. և որք միանգամ հաւատացեալ են յԱստուած, մինչեւ ցայսօր յաղօթս կան առ Աստուած ի տեղւոջն յայնմիկ, և առնուն հող յերկրէն, և զհարուածս քարբից բժշկեն. և զջրային գազանսն փախուցանեն: Լուաք մեք ի ծերոց արանց. եթէ Աղեքսանդրոս Մակեդոնացի հասեալ ի տեղին ուր էր գերեզման նորա, և գիտացեալ զսքանչելիսն զայն և զխորհուրդսն, զնշխարս նորա բարձեալ տարաւ յԱղեքսանդրիա. և անդ եդեալ փառաւորապէս, և սատակեցան որ անդ քարբքն, նոյնպէս և կրոկոդիլոսքն: Այս Երեմիա՝ ետ նշան քրմացն Եգիպտոսի, թէ պարտ է կռոց նորա անկանել և փշրել ի ձեռն փրկչի մանկան ծնեցելոյ ի կուսէ ի մսուր աստուածացուցեալ:

Այս մարգարէ յառաջ քան զաւերել տաճարին յափշտակեաց զտապանակ օրինացն և որ ինչ ի նմա, և արար զնոսա կլանել վիմին: Եւ ասէ. Գնաց Տէր ի Սինէ յերկինս, և դարձեալ եկեսցէ օրէնսդիրն Սիոնի, նշանաւոր լիցի ձեզ ի նորա գալստեանն: Յայնժամ փայտի ամենայն ազինք երկիր պագանիցեն. և ասէ. Թէ, զտապանակս զայս ոչ ոք հանցէ եթէ ոչ Ահարոն. և զտախտակս որ ի նմա ոչ ոք բացցէ եթէ ոչ Մովսէս ընտրեալն Աստուծոյ: Եւ ի յարութեանն, նախ տապանակն յարիցէ ի վիմէն. և դիցի ի լերինն Սինայ, և ամենայն սուրբք առ նա ժողովեսցին սպասելով Տեառն, և փախիցեն ի թշնամւոյն որ կամիցի զնոսա սպանանել: Եւ ի վիմին կնքեաց մատանեաւ զանունն Աստուծոյ, և եղեւ օրինակ իբրեւ գրոշմած երկաթոյ. և ամպ լուսաւոր ծածկեաց զանունն, և ոչ ոք իմանայ զտեղին և կամ կարդալ զնա, և է մինչեւ ցայսօր, և մինչեւ յաւիտեան: Եւ է վէմն յանապատին ուր զառաջինն եղեւ տապանակն, ի մէջ երկուց լերանցն յորս կան Մովսէս և Ահարոն, և ի գիշերի ամպ լինի լուսոյ ի տեղւոջն յայնմիկ՝ ըստ առաջնում օրինակին: Քանզի ոչ դադարեն շնորհքն Աստուծոյ յօրինացն իւրոց:

# ՄԱՀ ԵԶԵԿԻԵԼԻ ՄԱՐԳԱՐԷԻ

*Ըստ ԲՑ.*

ԵԶԵԿԻԷԼ էր յերկրէն Սարիրայ[1] ի քահանայից. և մեռաւ յերկրին Քաղդէացւոց։ Եւ քանզի առ գերութեամբն էր, բազում ինչ մարգարէացաւ այնոցիկ որ ի Հրէաստանի էին։ Սպան զնա իշխան ժողովրդեանն Իսրայելի, անդէն, քանզի յանդիմանէր զնա վասն կռապաշտութեանն։ Եւ թաղեաց զնա ժողովուրդն յագարակին Մաւուրայ՝ ի գերեզմանին Սեմայ և Արփաքսադայ՝ հարցն Աբրահամու։ Եւ է գերեզմանն այրք կրկին, զի և Աբրահամ ի Քեբրոն ըստ այսմ նմանութեան արար զգերեզմանն Սառայի. և կրկին յայն սակս ասի զի շրջանակաւ է և յայտ։ Վեց՝ կրկին վերնատուն և կախեալ զվիմէ։ Այս մարգարէ նը-

*Ըստ ԺՐ օր.*

ԵԶԵԿԻԷԼ էր յերկրէն Աբիսխքա ի քահանայից. և մեռաւ յերկիրն Քաղտէացւոց ի գերութեանն։ Շատ մարգարէացաւ որոց ի Հրէաստանի. և ըսպան զնա առաջնորդն ամենայն ժողովրդեանն Իսրայելի, յանդիմանեալ ի նմանէ վասն կռապաշտութեան։ Եւ թաղեցին զնա յագարակին՝ որ կոչէր Մաւսիրա, ի գերեզմանին Սեմա Արփաքսադա հարցըն Աբրահամու. և էր գերեզմանն այր կրկին. և Աբրահամն ի Քեբրոն ըստ նմանութեան նորա արար զգերեզմանն Սառայի։ Կրկին ասի՝ վասն զի շրջանաւ էր, և ի ծածուկ ի ներքնատանն՝ վերնատուն, և յերկրի ի վիմի ծածկեալ։ Այս մարգարէ նշան ետ ժողովրդ-

1. Զ. Իսրայելէ։

շանս ետ ժողովրդեանն միտ դնել Քովբար գետոյ, թէ յորժամ ջուրքն պակասեսցեն՝ ակն ունել գերանդւոյն աւերածոյն որ գալոց է զերկիրն փախճանել։ Եւ յորժամ յարիցէ՝ ակն ունել դարձին յԵրուսաղէմ, քանզի անդ իսկ բնակեալ էր սուրբն. և բազումք առ Նա ժողովէին, և յորժամ կարի բազումք երբեք ժողովէին առ Նա՝ կասկածէին քաղաքացիքն եթէ գուցէ ապստամբիցեն, և գային կոտորել զնոսա. և կացուցանէր զՋուրսն, զի յայնկոյս փախնուցուն. և որք ժպրհէին ի Թշնամեացն զհետ երթալ Նոցա, ընկղմէին ի Ջուրսն։

Սոյնպէս աղօթիւք իւրովք ինքնին կերակուր ձկան առատութեամբ շնորհէր Նոցա, և բազմաց պարտասելոց՝ կենդանանալ յԱստուծոյ աղաչէր։

Սա՝ ի կորստեան ժողովրդեանն ի Թշնամեացն, մատչէր առ զօրավարսն, և Նշանագործութեամբքն[1] զարհուրէին, և դադարէին ի կոտորելոյ զնոսա։

դեանն ուշ ունել Քոբար գետոյ, զի յորժամ Նուազիցի գալ ի վերայ զաւերածոյն մինչեւ ի փախճան. և յորժամ յարիցէ գետն դարձեալ լինել զելոյն յԵրուսաղէմ, քանզի անդ բնակեալ էր ի սահմանսն, և բազումք յօրինապահացն ընդ Նմա շրջէին. և երբեմն վասն բազմութեան որ ընդ Նմա, երկուցեալ Քաղդէացւոցն յապստամբութենէ Եբրայեցւոցն, հասին ի վերայ Նոցա սպանանել զնոսա։ Եւ հրաման ետ մարգարէն բաժանել Ջրոյն, զի փախիցեն յայնկոյս, և ի Թշնամեացն որք իշխեցին հալածել՝ բազումք ընկղմեցան։

Սա ի ձեռն աղօթից ի ժամանակի սովոյն առատութիւն ինքնամատոյց կերակրոց շնորհեաց ձկանց, և բազում թալկացելոց կեանս տալ՝ զԱստուած աղաչեաց։

Այս Եզեկիէլ ի կորնչել ժողովրդեանն ի Թշնամեացն, մատեաւ առ առաջնորդսն Քաղդէացւոցն, և Նշան խաւարի արարեալ ի վերայ Նոցա՝

1. Բն. Նշանագործութիւնքն։

Եւ յայնժամ ասէր Իսրայէլ թէ սպառեցաք, կորեաք, հատաւ յոյս մեր, և նշանօք ոսկերացն որ յարոյց՝ հաւանեցոյց զնոսա թէ լինելոց է յոյս Իսրայելի, և աստ և ի հանդերձելում աշխարհին։ Սա՝ մինչ դեռ անդ էր՝ ցուցանէր ժողովրդեանն Իսրայելի որ ինչ յԵրուսաղէմ գործէր ի տաճարին։ Սա՝ յափշտակեցաւ անտի և եկն յԵրուսաղէմ առ ի յամբաստանութիւն[1] ապըստամբացն։

Սա՝ ըստ օրինակի Մովսիսի ետես զձեւ տաճարին և զպարիսպն և զպատուարն ընդարձակ[2], որ պէս և Դանիէլ ասաց, թէ շինելոց է։

Սա՝ դատեցաւ Բաբելոն զազգն Դանայ և զԳադայ, զի ամպարիշտք էին[3] ի Տեառնէ, հալածելով զօրինապահսն. և արար նոցա նշան մեծ, զի օձք կոտորէին զմանկունս

և դադարեցոյց զպատերազմողսն զարհուրեցուցեալ զնոսա յերկնից։ Յայնժամ ասէր Իսրայէլ. Կորեաւ յոյս մեր և մեռաք, և նշանաւ ոսկերօք մեռելոցն հաւանեցոյց զնոսա, եթէ կայ յոյս ժողովրդեանն ի հանդերձեալսն, և աստ և անդ եւս։ Սա ի Բաբելոնի երեւեցուցանէր ժողովրդեանն Իսրայելի, որ ինչ յԵրուսաղէմ ի տաճարին գործիւր։ Սա յափշտակեցաւ և եկն յԵրուսաղէմ ի նմին ժամու ի յանդիմանութիւն անհաւատիցն յԱստուծոյ։

Սա իբրեւ զՄովսէս ետես զօրինակ տաճարին և զպարիսպն և զպատուարսն, և զդուռն ընդ որ Տէր մտցէ, և եղիցի դուռն փակեալ, և ի նա յուսասցին ամենայն հեթանոսք։ Սա դատեաց ի Բաբելոնի զցեղն Դանայ և Գադայ, վասն զի ամբարըշտէին ի Տէր, հալածելով զօրինապահսն. և արար նշան մեծ. քանզի օձք խածանէին զտղայս նոցա

1. Չ. յապստամբութեան։
2. Չ. ընդարձական։
3. Չ. ամպարշտէին։

նոցա և զամենայն զխաչինս նոցա ։

Եւ յառաջագոյն ասէր վասն նոցա, թէ ոչ դառնայ ժողովուրդըն յերկիր իւր, այլ ի Մարս լինելոց են մինչև ի վախճան մոլորութեան նոցա. և ի նոցանէ էր որ սպանն զնա. քանզի հակառակ կայր նմա զամենայն աւուրս կենաց իւրոց ։

և զանաստունս վասն ամբարըշտութեանն, և դադարեցոյց զմահ նոցա ։ Եւ յառաջագոյն ասաց, վասն նոցա թէ Ոչ դարձցի ժողովուրդն յերկիրն իւրեանց, այլ ի Բաբելոն լիցին մինչև ի վախճան մոլորութեան նոցա, և ի նոցանէ էր որ սպան զնա. քանզի հակառակ կայրն նմա զամենայն աւուրս կենաց իւրեանց ։

---

# Է

# ՎԱՍՆ ՍՈՂՈՄՈՆԻ ԱՐՔԱՅԻ

---

ԱՍՆ զի գրեաց Մովսէս, թէ[1] մի՛ առնուցուս զդուստր նոցա դստեր քում, և մի՛ տացես զաւակի քում փեսայանալ նոցա, զի մի՛ մոլորեցուցանիցեն զնոսա[2] զկնի դիցն իւրեանց. այլ զբագինս նոցա հրով այրեսցես, և զդիս նոցա խորտակեսցես, և մի՛ դնիցես ընդ նոսա ուխտ՝ զի ոչ կամեցան նոքա ձեռն տալ ժողովրդեանն, որպէս Գաբաւոնացիքն և որպէս տունն Ռահաբու եօթանասուն հոգւով: Իսկ Սողոմոն արար իւր կանայս ըստ[3] բազմութեան եօթն հարիւր: Եւ զի ոչ շատացաւ այսուիկ, այլ դիմեաց նա ի վերայ հեթանոսաց, և առ հարճս երեք հարիւր պիղծս ի Քանանացւոց անտի, զդստերս թագաւորաց և զիշխանաց նոցա, ի գայթակղութիւն անձին իւրոյ և յարհամարհութիւն բազմութեան կանանց իւրոց. որք ժողովեցան առ նա վասն զարմանալի գիտութեանն իւրոյ, որպէս իմաստուն կինն՝ որ եկն յԵթովպացւոց անտի վասն օրհնութեան առն իմաստնոյ, և գիտել զիմաստութիւնն նորա, զոր լուաւ ի վաճառականաց անտի Քիրամայ արքայի: Այլ էառ նա զկանայս զատեալս՝ ի բազում գայթակղութիւն որդւոցն Իսրայելի: Ոչ

1. Բ. չունի թէ:
2. Բ. չունի զնոսա:
3. Բ. չունի ըստ:

միայն պոռնկելն՝ այլ և հաղորդելն պաշտաման գայթակղութեանն։ Զի խաբեցաւ ի պատճառս իմաստութեան իւրոյ, և Թոյլ ետ խորհրդոցն գնալ ի ճանապարհս կանանցն որք խորհեցան միաբանութեամբ զլուծումն անձին Նորա․ մինչև կանգնեաց զպատկերս ի վերայ լերանց․ և յայտնապէս պոռնկեցաւ ղէմ յանդիման տաճարին սրբութեան և Թշնամեաց իւրոց։

## ՀԱՐՑՄՈՒՆՔ ԴՇԽՈՅԻՆ

### ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻՔ ՍՈՂՈՄՈՆԻ ՈՐԴՒՈՅ ԴԱՒԹԻ

Դշխոյն․ ասէ․ Զի՞նչ է Աստուածն քո, և ո՞ւմ նման է, և որո՞վ կերպարանի։

Սողոմոն․ Աստուածն իմ Է է, և ամենայն է՝ ի նմանէ է, և ամենայն էից վերագոյն է, և ի յինչ ոչ կերպարանի․ զի ամենայն ինչ յեղումն և հակառակ ունի․ և իմ տէրն անյեղ և անհակառակ է։

Դշխոյն․ Ո՞րպէս շարժի գունդն երկնից․ յա՞ջ թէ յահեակ․ և ի շրջագայութեանն իւրում բոլորի՞ն շրջագայի թէ մասամբ։

Սողոմոն․ Երկուս ունի զօրինակ շրջագայութեանն։

Դշխոյն․ Ո՞րպէս։

Սողոմոն․ Շրջաբոլորն հաստատութեանդ՝ յարևելից յաջակողմ շարժմամբ՝ ընդ հարաւ յարևմուտս կոյս գնացեալ դառնայ ընդ հիւսիւ ի նոյնն, և այնպէս սրասլաց եղեալ հրամանաւ հարկի ընդ տիւ և ընդ գիշեր շուրջ մի կատարէ։ Իսկ մոլորական կոչեալ լուսաւորքըդ՝ շրջագային յարևմտից ընդ ձախակողմ յարևելս կոյս․ և իւրաքանչիւր ոք ի նոցանէ ըստ բարձրութեան և ըստ ցածութեան,

ըստ արձակութեան և ըստ նեղութեան գոտեացն՝ կատարեն զշուրջն իւրեանց, յամաց երեանից մինչեւ յաւուրս երեսուն ի Կառնոսէ մինչեւ ի Սահր, որ է յԵրեւակէն մինչեւ ի Լուսին։

Դշխոյն. Նախ քան զէանալն ամենայնի ո՞ւր կայր ամենարարն. և զկնի լուծմանն ամենեցունց յորո՞ւմ տեղւոջ կացցէ անշարժականն։

Սողոմոն. Նախ քան զգոյանալ եղականացս՝ կայր արարողն յինքեան, և լի էր յէական բնութեանն, և զուարճանայր յանեզրական բարիսն։ Եւ յորժամ ոչ իցեն էացեալքս, նոյնպէս կայ յիւրում անշարժութեանն. և այժմ ի նա են ամենայնք, և յայնժամ ի նա իցեն մաքրոցն հոգիքն, և նա ի նոսա։ Փառաւորէ և փառաւորի անյեղաբար և նոյնապէս։

Դշխոյն. Զի՞նչ է պատճառ կնոջ հնդկայնոյ, զի յետ ուտելոյ նուռն ոչ ևս յղանայ։

Սողոմոն. Նուռնն հով է և գէճ, և հնդիկն ջերմին է և չորին. իսկ կինն գիջին է և ցրտին. և բնութիւն կնոջ խառնեալ ընդ նռան՝ ընդդէմ բնութեան երկրին ոչ լինի յղութիւն։

Դշխոյն. Զի՞նչ է զի այր հնդուի գինըմբու՝ անպտուղ է սերմամբ։

Սողոմոն. Բնութիւն գինոյ յաւելու ի քուն. և առաւել ի հնդիկք. և է ջերմին և չորին. գինին և երկիրն միաւորեալ ի միասին՝ առնեն անբեղնաւոր։

Դշխոյն. Իմաստութիւնն ընդհանո՞ւր է թէ մասնական, և բնութեա՞մբ է թէ պարգեւօք։

Սողոմոն. Ընդհանուր է և մասնական. ընդհանուր՝ սեռիւ. և մասնական՝ տեսակօք։ Եւ բնութեամբ է՝ և պարգեւօք. բնութեամբ՝ հասարակ է գոյեղինաց կենդանականաց մասանց. և պարգեւականն՝ ոչ է հասարական այլ յատկական. և ընտրութիւնն՝ առ֊

տուողին է, և նորին է և բնութեամբն։

Դշխոյն. Տունկն թագ կապեաց և ոչ ի բնութենէ, և բոցով շառաւեղք վարսեցան. և պսակ փառաց հիւսեաց որդւոցն անարժանից։

Սողոմոն. Լուեալ է քո զի Աստուած վառեալ մորենաւ յայտնեցաւ Մովսէսի, և ի տեսլենէ անտի հարցուածք և դարձուածք խօսից երևեցան։

Դշխոյն. Լուեալ էաք զիմաստից քոց, այլ թէ խորհրդոց ծածկատես ես՝ ոչ կարծէաք. և արդ հաւատամ եթէ Աստուածն քո՝ նա է ճշմարիտ Աստուած, Աստուած երևելեաց և աներևութից։

Դշխոյն ասէ. Մայր օտար, և որդիք օտար, սպանող և սնուցանող անօրինաց, յայտնեալ գողութիւն և ապրեալ գողն, սնոյց թագաւորս արատով։

Սողոմոն. Զհայրն իմ և զիս նախատե՞ս. զի Թամար կարծողն սպանող արանցն՝ գողութեամբ ի Յուդայէ սնոյց զհարսն մեր։

Դշխոյն. Ո՞ր է զազիրն որ փոխմամբ սնուցանէ ըզթագաւորս. և պատուեալ ամպօք յանդաստանս կանայօք երթայ։

Սողոմոն. Ի դաշտանէ կանանց փոխեալ ի ստինս ամպոց, թագաւորք և աղքատք սնանին։

Դշխոյն. Խորտկարար թագաւորի յաճախեալ զխահարարսն, յաղագս զանազանութեան համոց աշխատի և աշխատէ, և մի է ճաշակն։

Սողոմոն. Թէ ունիս ազնիւ խահագործ յերկրէն քո, յաւել ի հազարս մեր. այլ որպէս և ասեսըդ՝ մի է ճաշակն. բայց դա՛ն է անօրէնն և հեռի ի Տեառնէ իմմէ, և մնայ ի դատաստան։

Դշխոյն. Փեսայն ոչ երևի, և հարսանիքն ոչ փոփոխի, և սենեակն անախտ կայ. և կատաղեալ հարսինն ամաչէ։

Սողոմոն. Մի նախատեր զժողովուրդս մեր հարսնա-

ցեալ անմահապէս Աստուծոյ անճառելի խոստմամբ, և ոչ պտունկիմք ընդ օտար աստուածս, որ թէ ամաչեմք և դուք ամաչէք պաշտելով զթրանէ թռչունն։

Սողոմոն. Բայց ա՛ռ ի մէնջ և դու առակ մի. ասէ. Աշտարակ մի զօրաւոր, և անօթ վիրաւորութեան. տաճար երեքանկիւնի, քարինք նորա ցնծութիւն և հիմն նորա սէր, և շինուած նորա ջուր. հիմնարկութիւն նորա գգուանք. և ձեղունք նորա կաքաւք. սիւն նորա ուրախութիւն, և գիւտ սորա օտար. և բնակողաց նորա ոչ գոն անձինք. և հետեւող սորա ընդ վայր է և անհաստատ. և մարդակայք ի նմանէ և յինքն. և լուսամուտք նորա առանձնականք են և մեկնակք, և գործիքն հակառակք են շինմանն, և պահանորդք նորա ոչ երեւին։

## ՎԱՍՆ ԳՐԵԱՆՑՆ ՍՈՂՈՄՈՆԻ

ՅՈՐԺԱՄ յարոյց Աստուած սատան Սողոմոնի զԱդրազար արքայ Եդովմայ, և նա բազում անգամ կափահարեալ և վատնեալ ի նմանէ, ծանեաւ եթէ ձեռն Տեառն դարձաւ ի թշնամութիւն ի վերայ իւր, և եղեւ զօրավիգն թշնամեաց նորա, զի բարկացոյց զԱստուած երեք մոլորութեամբ խորհրդոց։

Նախ՝ խափանեաց զօրէնսն որ յառաջագոյն գրեալ էր ի ձեռն Մովսիսի. Մի՛ արասցես խնամութիւն որ շուրջ զքեւ ազգք իցեն։ Երկրորդ՝ վասն շինելոյ զտունն Տեառն ի մայրից Լիբանանու, և զտուն դստերն Փարաւոնի յոսկոյ կեփազեայ և յոսկերաց փղաց։ Երրորդ, զի խոտորեցաւ սիրտ նորա զհետ Աստարտայ գարշելոյն Սիդոնայ։ Եւ իբրեւ մերժեցաւ նա յօգնա-

կանուԹենէ Տեառն, հրամայեաց սենեկապետին իւրոյ հրկէզ առնել զիւր գրեանն՝ որ էին հոգւով գիտութեամբ երեք հազար առակաց։ Ի մայրիցն Լիբանանու մինչեւ ցզոպայն որ յորմն ելանէ. և ի Թռչնոց և ի գազանաց և ի սողնոց. բայց առեալ մասն ինչ Թագուցանէր, զոր և յետոյ իսկ գրեցին բարեկամքն Եզեկիայի։ Եւ իբրեւ հարցանէր Սողովմոն վասն պատուիրանացն հրկիզութեան, Թէ արդարեւ կիզեցա՞ն բոլոր գրեանն, և զի՞նչ նշան հայեցածն ցուցանէր։ Պատասխանեալ սենեկապետն ասէ. Բորբոքեալ բոցոյն՝ հուր կիզանող վերացեալ մտանէր ընդ երկնիւք։ Պատասխանեալ Սողովմոն ասէ. Այն՝ Հոգին սուրբ էր որ ազդեալ էր ինձ խօսել զնոսա։ Եւ եղեալ յարտասուս՝ զղջացեալ ելաց դառնապէս. և համարեցաւ նմա Աստուած յապաշխարութիւն։

## ՑԱՂԱԳՍ ԳՐԵԱՆՑՆ ՍՈՂՈՄՈՎՆԻ

ԵՐԱՆԵԼԻՆ Եփրեմ ասէ այսպէս. Եթէ Սողոմոն իմաստունն յետ մեղացն և հեռանալոյն յԱստուծոյ ի խաբից կանանցն, յաւուր միում նստէր ի ձմերոց՝ ի տան հօր իւրոյ Դաւթի, և յիշեաց զպատուիրան նորա ի ժամ մահուն, և եմուտ ի սենեակ իւր, և ելաց առաջի Տեառն լալիւն մեծ. և եդ սահման անձին իւրոյ լալ մինչեւ ի դուռն սենեկին, առանց ձեռին բացցէ զոր այլք ասեն փակեսցի. բայց բանալն է ի դէպ նշանակ լինել բացման դրան ողորմութեան Աստուծոյ. որպէս և եղեւ։ Զի բացաւ դուռն սենեկին ինքնին. ապա ելեալ արտաքս և ասաց ի մտի իւրում, եթէ բազմութիւն գրեանցն իմ պատճառ լինի բազմաց կորստեան, Թերանալոյ յԱստուծոյ և ի բարեաց գործոց։ Քանզի ասեն, Թէ նա այն ամենայն իմաստութեամբ ընդէ՞ր մեկնեցաւ ի Տեառնէ, եթէ բարի է

պաշտելն զնա։ Եւ հրամայեաց հաւատարմաց իւրոց այրել զամենայն գրեանն՝ որք էին ի Նմանէ ասացեալքն յառակս և յօրհնութիւնս, իբրեւ ութ հազար։ Որք և տրտմութեամբ ելին յերեսաց Նորա, խորհեցան և ոչ այրեցին, և դարձան պատմեցին Նմա, թէ եղեւ զոր հրամայեցերն։ Եւ ասէ զի՞նչ տեսիք. և ասեն. Ոչինչ։ Եւ ել ի Նմանէ ցասումն սաստիկ, և բարկութեամբ հրամայեաց այրել. և ելին այրեցին. և եկեալ պատմեցին, եթէ լուսով և անուշ հոտով լցաւ ամենայն երկիր. և ապա հաւաքեալ վերացաւ յերկինս որպէս զաղաւնի, և մտեալ ծածկեցաւ։ Եւ լուեալ զայս՝ եհար զՆա սիրտ իւր, և տրտմեալ սաստիկ ի խղճէ մտացն հեղձնոյր։ Եւ իշխան ոմն պահեալ ունէր ի ծոց իւր ի խնամոցն Աստուծոյ զգիրս զայս զԱռակաց, որ գտանի յեկեղեցի յԱռակացն Գ գլուխ, և մի զգլջման գիրք՝ որ Ժողովողն կոչի. և գլուխ մի օրհնութեանցն՝ որ Երգ երգոց ասի, զոր երիս հատուածս որոշեալ՝ կատարէ զերիս հասակս մարդկան. իսկ Սիրեցէք գլուխն՝ ընդ կասկածանօք է, թէ իցէ Նորա. և այս է ուղիղն։

Բայց զի եղեւ Նմա ժամ պարապոյ ի սենեկի իւրում, և խորհեցաւ ի միտս իւր յիշել զպատուէր հօր իւրոյ, գնալ Նմա ի ճանապարհս Տեառն, և յօրէնսն Մովսիսի ծառայի Նորա։ Եւ յիշեաց Նա զպատուէր հօր իւրոյ և զժամ մահուն Դաւթի. և ելաց Նա ի խորոց սրտէ իւրմէ, մինչեւ առոգանել զսենեակն և զմահիճան իւր ի տան ձմերոցաց արքայութեան իւրոյ, և զդուրս սենեկին իւրոյ ինքնին ձգեաց առանց ձգողի։ Զի Դաւիթ ելաց զամենայն գիշերս, և Սողոմոն հեղեղեաց զսենեակ իւր։



Ը

# ԱՂՕԹՔ

## ՄԱՆԱՍԷԻ ԹԱԳԱՒՈՐԻ

---



Տէր ամենակալ, Աստուած Աբրահամու, Սահակայ, Յակովբայ, զաւակի նոցա արդարոց:

Որ արարեր զերկինս և զերկիր՝ և զամենայն զարդ նոցա:

Կապեցեր զծով բանիւ հրամանաւ քով, փակեցեր զխորս, կնքեցեր ահաւոր և փառաւորեալ անուամբ քով:

Որ ամենայն ինչ սարսեալ և դողայ յերեսաց ահի զօրութեան քո:

Անբաւ է մեծվայելչութիւն փառաց սրբութեան քոյ. սաստիկ է բարկութիւն սպառնալեաց քոց ի վերայ մեղաւորաց, անչափ և անքնին են ողորմութիւնք աւետեաց քոց:

Դու, Տէր, բարձեալ երկայնամիտ բազումողորմ, և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան:

Դու, Աստուած, ոչ եդիր ապաշխարութիւն վասն արդարոցն Աբրահամու, Սահակայ, Յակոբայ, որք ոչն մեղան քեզ:

Այլ եդիր ապաշխարութիւն վասն իմ մեղաւորիս, զի մեղայ աւելի քան զաւազ առ եզր ծովու. և բազմացան անօրէնութիւնք իմ:

Չեմ արժանի հայել և տեսանել զբարձրութիւնս երկնից՝ ի բազմութենէ անօրէնութեան իմոյ:

Կորացեալ եմ ես ի բռնութենէ կապանաց երկաթեաց. և ոչ գոյ ինձ հանգիստ:

Բարկացուցի սրտմտութեամբ, և չար առաջի քոյ արարի, կանգնեցի պատկեր և բազմացուցի զցասումն:

Եւ արդ խոնարհեցուցանեմ զծունր սրտի իմոյ, և խնդրեմ ի քաղցրութենէ քումմէ:

Մեղայ, Տէր, մեղայ, և զանօրէնութիւնս իմ ես ինձէն գիտեմ:

Աղաչեմ և խնդրեմ ի քէն, թող ինձ, Տէր, թող ինձ. և մի՛ կորուսաներ զիս ըստ անօրէնութեան իմոյ:

Մի՛ յաւիտեան բարկանար ինձ, և մի՛ յիշեր զչարիս իմ, և մի՛ պարտաւորեր զիս ընդ այնոսիկ որ իջանեն ի ներքոյ երկրի չարեօք:

Զի դու, Աստուած, Աստուած ապաշխարողաց ես, և յիս ցոյց զբարերարութիւնդ քո՝ որ անարժանս եմ:

Զքեզ, Տէր, օրհնեն ամենայն զուարթունք երկնից, և քո են փառք յաւիտեանս. Ամէն:



Թ

# ՏԵՍԻԼ ԴԱՆԻԷԼԻ

## ԵՕԹՆԵՐՈՐԴ

....[1] մի.. Զկնի ամենայն յայտնութեան՝ որ տուան Դանիէլի, առաքեցաւ ի Տեառնէ Գաբրիէլ հրեշտակ, առաքեալ առ նա յառաւջագոյն, և ասաց ցնա. Դանիէլ, այր ցանկալի, առաքեցայ ի Տեառնէ առ քեզ ասել քեզ բանս, և ցուցանել քեզ զկատարումն աւուրցն՝ որ լինելոց են զկնի գալստեանն բանին, որ ի ձեռն իմ աւետարանեցի։ Եղիցի կոյս յԻսրայեղի և ընկալցի ի բանէն բան. և նա մարգարէասցի վասն աշխարհի, և կեցուսցէ զբազումս ի մէջ Իսրայեղի։ Եւ դիր զմիտս քո և լուր զյառաջիկայ պատահումն ի կատարումն աւուրցն, յամենայն ի քաղաքս և ի գաւառս, վասն անօրէնութեան մարդկան։ Եւ ասացի ես Դանիէլ. Այո՛, Տէր իմ։ Եւ ասաց ցիս. Յետ կատարելոյ զամենայն բանս մարգարէականս՝ վասն ամենայն քաղաքաց և գաւառաց, Ասիաս, Պոնտոս, Փռիւգիաս, Գաղատիաս, Կապադովկիաս, Կարպաթիաս, Զմիւռնէս, Անդիոքաս, Աղեքսանդրիաս, Եգիպտոս, Նիկէաս, Նիկոդեմիաս, Կաղքէդոնիոս, Բիւզէս և Բաբելոնիոս. Հռովմայ[2]...

... Արտասուք որդւոց, և աճումն սովոյ՝ ապականէ զերկիր պտղաբեր. իշխանք քո որդիք հեծմանց. և որ շուրջ զքեւ ստացուածք քո՝ յապականութիւն եղիցին։ Փախիցեն ի քէն Բաբելոնն յԵօթնբլուրն. Պոնդու իշխանն անկցի, և սուր ծակեսցէ զորդիս նորա. զորք

1. Սկիզբն պակասէ յօրինակին։ 2. Աստ պակասէ յօրինակին։

նորա անկցին ի բերան սրոյ. զբազումս տարցին ի Բիւզէ, և անդ թաղեսցին։ Փռիւգիացւոց մանկունք ծախեսցին ի սովոյ հացի և ի ջրոյ. երկիր նորա պատառեսցի, ի կերակուր թռչնոց եղիցին. և բազումք ի նոցանէ փախիցեն ի Քարկեդոնի։

Ի Գաղատիա յերկնից հուր երևեսցի, և որոտմունք և փայլատակմունք ծախեսցեն զնա. և աթոռք իշխանաց նորա յերկիր կործանեսցին, և հարաւային կողմն նորա յարիւն և ի հուր այրեսցի. և բազումք փախիցեն յայնժամ ի Հռոմ։

Ի Փոքր Կապադովկիայ, որդիք նոցա զմիմեանս կոտորեսցեն, և զմիմեանս գերեսցեն, և իշխանք նոցա ի պարտութիւն մատնեսցին. և որ շուրջ զնովաւ իցեն՝ ի նեղութեան և ի հառաչման եղիցին։

Ի Փոքր ի Բաբելոնի, ի Կարպաթիաս. որդիք նոցա ի նեղութեան եղիցին, զհրակիզութիւնս տեսցեն՝ և մի՛ հաւատասցեն. պատառումն եղիցի, ամենեքեան մինչև ի դժոխս հասցեն, բազումք փախիցեն յԵօթնբլուրն։

Ի Զմիւռնէ բարկութիւն յաճախեսցի. լցցի որպէս զբաժակ արեամբ, և անգումն ի բարձանց եղիցի. իշխանք քո բարձցին, և մեծամեծք քո անկցին. վասն զի օր բարկութեան Տեառն եղիցի ի քեզ։

Անդիոքու մանկունք ապականեսցին, և յօրինեալ շինուածք նորա մի՛ վայելեսցին. անկումն շարժման եղիցի ի քեզ, և բազմութիւն մեծութեան քո կորուսցէ զքեզ։

ՅԱղեքսանդրի յուզմունք պատերազմի բազում եղիցին. և պարանոց ստահակութեան նորա մինչ ի նետալարս պարսպաց նորա. իշխանք նորա հալածեսցին։

Եգիպտացւոց մանկունք փախիցեն՝ հարեալք ի սովոյ. ստացուածք քո եղիցին յոչինչ, և Նեղոս ցամաքեսցի, և իշխանք քո կորիցեն։

Նիկէացւոց դստերք ի սուգ և ի տրտմութեան եղիցին, վասն ազգականաց և արանց գերութեան ի զօրաւոր ի մարդկանէ. և իշխանք քո ծառայեսցեն

զօրս ոչ գիտիցեն։ Վա՜յ քեզ Նիկոմիդիայ, որ բարձրացեալ ունիս զեղջիւր քո և կերպար զմարմինս սըրբոց քոց որ էին ի քեզ. ապականեսջիր արեամբ արանց արդարոց, որք հատուցանեն զփոխարէնս քո, և ի դժոխոց յատակեսջիր։ Լաց և ողբա, ով Թշուառացեալ, զի ջնջեցիս հանդերձ որդովք քովք. իշխանք քո՝ իշխանք հեծութեանց, և քահանայք քո ոսկեսէրք և արծաթասէրք. և գեղեցկութիւն պայծառութեանդ քո ընկղմեսցի։

Կարքեդոմն և ազգ Պարսից, զի՞նչ հասանէ քեզ ի վախճան աւուրց, դու ոչ գիտես. և ի կատարածին յաւիտենից, քանի՞ ինչ եղիցի ժամանակ քո. զկնի ամենայն քաղաքաց և գաւառաց. ի սովոյ ապականեսջիր քաղաքդ պաճուճեալ յոսկոյ և յարծաթոյ, և ազգ պճնեալ և զարդարեալ։ Անառակութիւնք բազում եղիցին ի քեզ, և տղայք քո չրաւեսցեն ոսկւով, և ապա ի սովոյ ապականեսցին։

Բիւզայ և Բաբելոմնի երկիրն ընկղմեսցի, ի զօրաւորաց ըմբռնեսցի, և հիմունք նորա ապականեսցին և զօրութիւն նորա անկցի։

Հռովմայ իշխան մի՛ եղիցի ի ժամանակի յայնմ. բայց զէն նորա սրեալ և նետ նորա խստացեալ, և նենգութիւն նորա Թանձրացեալ։ Բազում անգամ իշխան յարիցէ և դարձեալ անկցի. երեքփողոցեան եղիցի, և բազումք երկիցեն ի քէն. վասն բազմանիստ իշխանաց պայծառութեանն, և վասն հպարտացեալ պարանոցի քո և առաւել հարստութեան քո։

Բիւզայ որդիք ի սքանչելագործութեան եղիցին. վասն զի երթիցէ ի նմանէ յանուանեալն Եօթնաբլուրն այր Բուզացի, և հաստատեսցէ զհիմունս նորա ընդ ամենայն բնակիչս աշխարհի, մինչեւ յորոշմունս լեզուաց. և դարձեալ շինեսցէ զնա այր նշանագործ՝ ծնեալ ի կնոջէ բարենշանէ. և ի ժամանակի իւրում ցանկութիւն սրտի նորա կատարեսցի, և գտցէ փայտ կենաց, և եղիցի գաւազան նորա մեծ, և գտցէ բեւեռս որ ի նշանին էին, և դիցէ զնա ի սանձս իւր՝ վասն կրթական պատերազմացն յաղթութեան. և եղ-

ջիւր նորա բարձր և հզօր, և անուն նորա ընդ ամենայն լեզուս. և պարգեւեցի քաղաքին յիշատակ յաւիտենական։

Եւ զկնի նորա յարիցէ երկրորդ գաւազանն, որ զարիւն արանց արդարոց հեղուցու. կարդայցէ զպատուիրանս. և ոչ գիտիցէ զԱստուած, և չօշափեսցէ զգիրս սուրբս կուրացեալ սրտիւ։ Եւ զկնի նորա եկեսցէ այր իմաստասէր ի քեզ, Եօթնաբլուր Բաբելոնի, և պատկեր կանգնեսցէ ի քեզ, վասն որոյ մի բռնադատեսցիս դու։

Եւ զկնի այսր ամենայնի, յարիցեն եղջիւրք բարձունք և գաւազանք մեծամեծք, և զօրասցին ի վերայ քո. և յիշատակ սոցա եղիցի մեծ յոյժ։ Եւ միւս եւս գաւազան է բարձր, զօրասցի աքանչելի և բարձրացեալ, վասն անուան և յայտնութեան Տեառն. վասն զի յԱստուծոյ տուր էր նմա։ Ի ձեռն նորա կեանք եղիցին մեծ, և ի խնդութենէ նորա ուրախասցին ամենայն մարդիկ. և ի քաղաքաց և ի գաւառաց ի քեզ ժողովեսցին, և հասցեն ի քեզ յԵօթնբլուրդ. և իւրաքանչիւր ոք զիւր գործն գործեսցէ. և զօրասցի գաւազան թագաւորութեանն մինչեւ վախճանեսցի։ Եւ ելցեն երկու գաւազանք ի միոյ գաւազանէ և եղիցի մի գաւազանն ձեր գազան, և երկրորդ գաւազանն ձեր յանհասուն, յերկոսեան ի փողոցսն յԵօնաբլուրն։ Ի Հռովմէ ի քեզ հասցէ ընդարձակութիւն բարկութեան, գոգ ունելով և բաժակ լիութեան. մինչեւ հասցէ ժամանակ քո. առաջին նուազ քաղաքին իմաստասիրութիւն երգոց, և երկրորդ հարստութիւն քո, աղբիւր բղխման ամենեցուն եղիցի. որպէս զհարսն զարդարեալ և որպէս զայրի երեւեսցիս. ողկոյզք քո քաղցրաբերք՝ որ էին երբեմն՝ նուազեսցին և անկցին։ Թագաւորութիւնն որ ի քեզ է՝ այլ գաւազան յարուսցէ, որ անուանեալ կոչի Թէոդոսիոս, եղեալ ի սրբութենէ, և անուն նորա ուխտաւորեալ ի քեզ յԵօթնբլուրդ. և ի ծննդեանն նորա որդիք քո ուրախ եղիցին, և գործեսցէ իւրաքանչիւր ոք զոր և խորհեսցի, ծառայեսցէ քեզ ամենայն քաղաք և գա-

ւառ. և ի լիութեան քում՝ վայելչութիւն յերկրի բազում եղիցի, և Նեղոս Եգիպտացոց արբուսցէ զքեզ, և պարիսպ եկեղեցեաց եղիջիր դու. երկիւղ և դողումն եղիցի ի գաւազանի քում մեծապէս. և այս է սկիզբն հեծմանց ի թագաւորութեան քում։ Եւ ժամանակ գաւազանի նորա բազում և մեծ յոյժ. և կալցի գաւազան նորա մինչեւ ի ծագս ամենայն երկրի, յարեւելից և յարեւմտից, ի հիւսիսոյ և ի հարաւոյ. և պարանոց նորա հաստատուն, և աջ նորա զօրաւոր, և ամք նորա բազում, որպէս ոչ ուրուք եղեւ այլ թագաւորաց։ Եւ զկնի այսր ամենայնի դարձուսցէ զերեսս իւր առ հայր իւր, և համար ամաց նորա բազում. և անուն նորա ահեղ, և թագաւորութիւն նորա պայծառացեալ եղիցի։

Եւ երրորդ այլ թագաւոր եղիցի առ քեւ ի Հռովմ Եօթնբլուրդ։ Եօթնբլուր անուանեցար, վասն զի Գարսկաց ամենայն ազգք մտցեն ի քեզ, և Հռովմէ մի՛ թագաւորեսցէ մինչեւ ի կատարած յաւիտենից։ Եւ երկրորդն քո՝ թագաւորեսցէ ծեր, և անուն նորա Մարկիանոս, և գաւազան նորա սակաւաժամանակեայ եղիցի քան զառաջին գաւազանն, ահեղութեամբ թագաւորութիւն նորա յոյժ. և եղիցի ժամանակն այն ոմանց ի բարի և ոմանց ի չար. և եղիցի թագաւորութիւն նորա ի ժամանակս և ի ժամս և ի կէս ժամու։ Եւ պարգեւեալ նմա ի շինողէն զքեզ, ո՜վ Եօթընբլուրդ. առ ինքն վերացուսցէ գրով հաւատոյն, և եղիցի հերձուած մեծ ի թագաւորութեան նորա. քահանայք յաթոռոց իւրեանց անկցին, անգումն քաղաքաց բազմաց եղիցի, և փոփոխմունք մարդկան բազում եղիցի, և վայելչութիւն քո, Եօթնբլուր, և ընդարձակութիւն քո մի՛ պակասեսցէ։ Եւ զկնի այսր ամենայնի և նա վախճանեսցի ընդ հարս իւր, և թագաւորեսցէ միւս գաւազանն ի քեզ, և նա եղիցի գազան, և ընկալցի զառաջին գաւազանն՝ որ երբեմն հարկանելոց է ի շանէն, և եղիցի այս գազան որպէս զառաջին գաւազանն մեծ և զօրաւոր, բանիւք և իմաստութեամբ. և մի՛ արհամարհեսցի ի մեծամեծաց նո-

րա. և պարանոց նորա, որպէս պարանոց զուարակի, և աչք նորա որպէս աչք առիւծու, ահեղութեամբ գոչեսցէ. յեղջերաց նորա դողասցեն ամենայն քաղաքք և գաւառք. և ի ժամանակս նորա աղեղն երեւեսցի յերկինս. և նշանք ազգի ազգիք յերկինս. և յերկրի ձայնք որոտմանց և անկումն քաղաքաց բազմաց լսեսցի. և երկիր պատառեսցի, և շինուածք ի հիմանէ կործանեսցին, ճանապարհք նորա հրեղէնք: Պատերազմունք եղիցին ի նմա և ի քեզ յԵօթնբլուրդ. և յայնժամ հրով այրեսցին շրջանակք վայելչութեան քո, և բարձրութիւն քո յերկիր յատակեսցի, և որդիք քո ողբասցեն ի քեզ, և բազում ուրախութիւն քո ի սուգ դարձցի. և որդիք քո քարշեսցեն զմարմինս մեծամեծաց ի վերայ երկրի. և յանկարծակի փոթորիկ անկցի յերկնից և ծածկեսցէ զերկիր, և ազգք վիշապաձեւք յերկրի երեւեսցին, և բազումք աղքատասցին և բազում տընանկք մեծասցին, և ամբոխ մեծ եղիցի ի քեզ: Աղաղակեցէք զօրք զինուք և սուսերաւորք ի Թրակայ և ի Կիլիկեայ:

Եւ ի ժամանակին յայնմիկ առաքեսցէ յարեւելս գազանն զսուր իւր, և ոչ կարասցէ յաղթահարել. և արհամարհեսցէ զնովաւ այր ոմն վիշապաձեւ ի միջոյ և ի վեր. և առաքեսցէ ի ձեռն նորա զերկրորդ զսուրն յարեւմուտս, և մի՛ ուժեսցէ յաղթահարել զնա. և արհամարհելով արհամարհեսցի ի շանէն վիշապն, բազում ընծայիւք և ոսկւով և ընչիւք բազմօք նեղեսցի գազանն ի շանէն, և յարիցէ շունն ի վերայ գազանին, և յարուսցէ զկորիւնս իւր ի վերայ աթոռոյ գազանին և գաւազանացն, և կորուսանել զգազանն ի շանէն և առնուլ զդարանս նորա: Եւ շունքն կացուսցեն արտաքոյ զգազանն, և ծանիցեն ամենայն մարդիկ, եթէ շուն զառիւծ հալածէ. և դարձեալ անդրէն դարձուսցէ առիւծն և սպանցէ զշունն և զկորիւն նորա. և գոչեսցէ առիւծն գոչումն մեծ յոյժ, և ի գոչիւն նորա լսեսցի յամենայն քաղաքս և ի գաւառս. և երկիւղ նորա ի դարանս նորա. և եղիցին մարդիկ շփոթեալք ի միմեանց վասն գոչման առիւծուն և վասն մահուան շանն. և հալա-

ծեսցէ երկրորդ շունն, շրջելով զլեզու իւր յայլաձեւութիւն, մինչեւ ցզառինս առիւծուն. և մեկնեսցի ի նմանէ իբրեւ ոչ ուժեսցէ նմա, և թաքիցէ կորիւն շանն ի ժամանակս և ի ժամանակ և ի ժամ մի, և ի ժամանակի իւրում թագաւորեսցէ. և եղիցի անուն նորա կորիւն շան, որ թարգմանեալ կոչի գաւազան ազգաց. և գազանն ջնջելով ջնջեսցէ զյիշատակ շանն: Ցառաջ գիտացեալ երգեսցեն զնմանէ զչարախօսութիւն, և ի քաղաքի նորա զպատկեր նորա ջնջեսցեն, և բազումք ի դարանս գազանին խորհեսցին սպանանել զնա, և մի՛ ուժեսցեն նմա, և գաւազանակիցք նորա ի միւսում քաղաքի ի սրոյ մեռցին, և մեծապէս ծանիցեն զխնդրուածս քահանային ի վերայ անծանօթիցն. և մի ոմն ի մեծամեծացն երիտասարդ, ի միջոյ զօրաց գազանին, զբազումս կապեալ ոտիւք և ձեռօք առաքեալ առ գազանն. և ապա իբրեւ առցէ գազանն զբազումս յազգաց ազգաց ծառայս, կոչելով առ ինքն որպէս զՏէր, և կացցէ այլ այր յանդիման նորա, և ընկալցի ի գոգ իւր և հալածեսցէ զարս պատերազմողս. և ինքն հալածեսցի ի նոցանէ, և փախիցէ ի նոցանէ հետի: Եւ մի՛ ոք հասցէ նմա, վասն զի երագ է ոտիւք և փախիցէ առ գազանն և որ ի գոգ նորա, և մնցէ առ նա, և ելցէ գաւազանն փոքր և քաջալերեսցէ. և գազանն մեծ նստուսցէ զնա յաթոռ իւրում. և արասցէ գաւազանակից և աթոռակից փոխանակ ինքեան: Երկու գաւազանք ի միում այրի բնակեալք, կորիւնն քաջալերեսցէ ի գործ պատերազմի, և մեծ գազանն դարձցի յերկիր իւր ուստի էրն. և փոքր գազանն կալցի զտեղի նորա մինչեւ ցժամանակ մի ոչ յումեքէ թագաւորեալ, այլ յանձին բռնութենէ: Եկեսցէ ի դարանս թագաւորութեան, և գազանն փոքր դարձցի առ գազանն մեծ. և թողլով զդարանս՝ իւրում արարողին՝ իշխանեսցէ ի քեզ, Եօթնբլուրդ, և կալցի ի նեղութեան: Խնդութիւն նորա մեծապէս եղիցի, խաղալով խաղասցէ, և ի մեծամեծաց սիրեսցի և ատեսցի ի բազմաց. զկեանս և զլիութիւն տացէ, և

վիշապն խաղաղեաց նովաւ, և որսողական գաւազանաւն վիշապին քարշեաց զնա։

Վա՜յ քեզ յայնմ ժամանակի՝ Եօթնբլուր Բաբելոնի, յորժամ այրի թագաւորեսցէ, և վիշապն հալածեսցէ զայլազգին, և այլազգին որ անուանեալ կոչի Սաղամանդար՝ ի փախուստ դարձցի, դարձուցեալ զերեսս իւր ի կղզիս. ոսկի և արծաթ և ականս պատուականս և պսակք գաւազանացն. և որ ի գոգ գազանին երեքաւորեալ յազգէ Պարսից ի Կարքեդոնի. ոչ ոք հալածեսցէ զնա ի մարդկանէ՝ վասն սիրոյ վիշապին և մեծ պայծառութեանդ՝ որ էին ի քեզ. և փոխեսցի նա յերկրէ յերկիր, և նեղեսցի յայլազգեաց, և այլազգեացն նեղեալ ի դարմանոցն և ի գնացից՝ հառաչեսցէ առ արարիչն իւր՝ անմեղօք իւրովք. և գաւազանն որսորդական որ էր ի գազանէն՝ միաբանեսցի ընդ շանն, և վիշապն կալցի զտեղի նեղութեան և հանդիսի, հանդերձ աթոռովք սնոտովք հետեւեսցի. և զտեղի սրբութեան հալածեսցէ, և սաստեսցէ վիշապն լեզուաւ իւրով ի վերայ արանց սրբոց, և ի վերայ նշխարաց սրբոց։ Եւ զառաջնորդութիւն հայրապետացն խափանեսցէ, և գերեսցէ զեկեղեցիս սրբութեան. և որ ի ծերպս և ի յայրս և ի փապարս երկրի բնակեալք իցեն՝ եկեսցեն առ քեզ յԵօթնբլուրդ՝ բռնաւորեալ ի վիշապէն։

Եւ զկնի այսր ամենայնի զփոշի ոտից իւրեանց թօթափեսցեն ի քեզ՝ վկայեալք ի նմանէ։ Յայնժամ հրով այրեսցի գեղեցկութիւն վայելչութեան քո. և մի ոք փախուցեալ երիտասարդ՝ պատճառանօք որսորդական գաւազանաւն, բերել զառաջին գաւազանն որ է անուանեալ Սաղամանդար. և ապա յայնմ ժամանակի նեղեսցի վիշապն, և ի յաջորդաց իւրոց ըմբռնեսցի. և յահեկորդացն կապեսցի և մի ոք ընկալցի զնա. վասն զի եհեղ զարիւն սրբոց ի քաղաքս և ի գաւառս։ Եւ փախիցէ ի տաճարն սուրբ՝ զոր գերէրն յառաջագոյն, և մի՛ ոք ընկալցի զնա, վասն զի երկնաւոր հարուածք եղիցին ի նմա։ Եւ երիտասարդն հասցէ առ Սաղամանդար և յառաջ ուսուցէ զայլ-

ազգին յանդիման վիշապին. և տեսեալ վիշապին՝ փախիցէ ի նմանէն, և այլազգին մի՛ սպանցէ զվիշապն, որոշեսցէ զնա յերեսաց իւրոց. և երիտասարդն անկցի անկմամբ մեծաւ, և այրին մի՛ ապրեսցի և ցուցցեն նմա զայլազգին և զաթոռակից նորա, և եղիցին հարկատու ի տաղաւարս նորա՝ որ ստեղծն զնա, և յաթոռս նորա խնդրեսցի արիւն հօր նորա. և այլազգին եղիցի մեծ ի սակաւ ժամանակս, և եղիցի լիութիւն ի քեզ յԵօթնբլուրդ, և մահունք բազում մարդկան որ ժողովեալ են ի քեզ ի քաղաքաց և ի գաւառաց: Յայնժամ ի տեղիս տեղիս շարժմունք եղիցին, և լսիցեն զձայն բազմաց՝ և ոչ հաւատասցեն. և հարստութիւն քո և փառք քո տխրեցուցին զքեզ՝ ի լինել քեզ հպարտ և ամբարտաւան. և փառասիրութիւն քո խոնարհեցոյց զքեզ: Բայց լիութիւն և վայելչութիւն քո՝ բազում եղիցի ի քեզ: Կատարած ժամանակի հասցէ քեզ, և ելցէ ի քէն որսողական գաւազանն որ է ի գազանէն, և երթիցեն յայլազգեացն ի տեղիս. և դստերք քո զարդարեսցեն զինքեանս ի գայթակղութիւն երիտասարդաց սպանանել զբազումս, և մեծամեծք քո անկցին, նեղութիւնք և յուզմունք բազում եղիցին:

Յայնժամ մահաբեր հրեշտակն հարցէ զքեզ ամենայն քաղաքօք և գաւառօք, և մահք բռնաւորք առաքեսցին յերկնից. յանկարծակի բարկասցի ի վերայ երկրի, երկիր շարժեսցի և անկցին մեհեանք: Եւ ծով եռացուսցէ զալիս ի վերայ, և ծածկեսցէ զմարդիկ, և իցեն որք փախիցեն և ապրեսցին: Յայնժամ հրեշտակացն ամբոխ եղիցի, և յանդիման կացցեն և աղաչեսցեն առաջի աթոռոյն. յայնժամ Եօթնբլուր Բաբելոնի, զորդիս քո լացցես, քուրձ զգենլով և մոխիր ի վերայ գլխոյ ցանելով. տեսանելով զմարդիկ, զի վասն մեղաց և յանցուածոց անկանիցին, արք աղայովք և կանայք ստինդիացօք հանդերձ կորնչիցին. զի բարկութիւն Տեառն է ի վերայ: Պարիսպք քո պատառեսցին, և յերկիր յատակեսցին տաղաւարք քո, մանգունք ստինդեացք հաշտեալք՝ բերանովք իւրեանց

աղաղակէին առ Աստուած. և քահանայք քո ցանելով կոծեցին զգաւազանս քո. մեծամեծք քո լացցեն և քաղաքակիցք քո յոյժ տրտմեցին. և ճանապարհորդք քո ի նեղութեան եղիցին, և ողկոյզք քո անկցին և այգիք քո պակասեսցին։ Դղրդմամբ մեծաւ պատառեսցի երկիր և կորուսցէ զմարդիկ մինչև ցատնդիւացս և ցծերս։ Բայց մինչև ի սպառ մի՛ կորուսցէ զքեզ Տէր, զԾօթնըլուրդ. վասն զի չէ հասեալ ժամանակ կորստեան քո. բացցի խորխորատ ի ծածկել զմարդիկ և ոչ ծածկեսցի. վասն զի չեւ եւս է հասեալ ժամանակ քո։ Պատրաստեալ են քեզ տանջանք, վասն զի զամենայն անօրէնութիւն գործեցեր ի քեզ, ընդունելով զերկիր ի գործ քո. յաւգմունք խորհրդոց մարդկան բազում եղիցին, մինչև Տէր ի վերուստ հրամայեսցէ կորուսանել զմարդիկ։

Բայց խորհուրդ Տեառն երեւեսցի՝ ուստի պատուհասն լինելոց իցէ, և ապաւինեալքն ի քեզ ընկալցին զտանջանս. ազգն որ յուսացաւն ի քեզ, և գաւազանն որստղական կորուսցէ զքեզ. և կորիւն զկորիւն փախուսցէ, խնդրելով զարիւն հարանց նորա, և ինքնակամօք մատնեսցի այլազգեաց շանցն և ընկերաց նորա, և յարուսցէ լեզուս և ազգս, և տիրեսցէ ի վերայ ազգաց բազմաց. և երկրորդ շունքն մարտիցեն ընդ նմանա, և զմիմեանս կորուսցեն։ Վա՜յ յորժամ այրի թագաւորեսցէ, և նենգութեամբ խաղասցէ ի վերայ այլազգեացն. և միւս այլազգին խնդրեսցէ զկորուստ նորա և նենգութեամբ ջնջեսցէ զնա. և եղիցին դժընդակ և չար աւուրքն այնոքիկ։ Որդիք գաւազանացն ի խռովութիւն եղիցին ընդ միմեանս պատերազմով, և յայնժամ բազում նեղութիւն և չար եղիցի մարդկան, որպէս[1] ոչ լեալ երբեք. և մի՛ վստահասցի իշխանն հաւատացեալ ի Սաղամանդար, վասն զի այլազգի է. և յազգաց նորա ընկալցին զոր ոչն խնդրեցին. և կամիցի փախչել Սաղամանդար, և մի՛ կարասցէ, և հասցէ նմա և սպանցէ զնա Գլակիտաս։

1. Մեզէն ուղղեցաք զի բնագիրն ունէր որպէս զի մեղեւ եղեւ։

Եւ տիրեսցէ միւս գաւազանն ի քեզ յԵօթնբլուրդ, և եղիցին երկունք բազում․ յարիցէ այր աղքատ որ ոչ ճանաչիցէ զշնորհս․ հպարտ, ոսկեսէր, պատերազմասէր՝ և եղիցի անուն նորա Որլողիոս, և աթոռ նորա սակաւաւոր, և բարկացող․ և մեծամեծք նորա ատեսցեն զնա, և քաղաքացիք նորա նեղեալք ի նմանէ․ երկնային բարկութիւն եղիցի յաւուրս նորա․ բազում անգամ նեղեսցէ զԲաբելոնն՝ ի ժամանակս թագաւորութեան իւրոյ․ ձայնք գուժոյ հասցեն առ քեզ, և զօրք բարբարոսաց խռովեցուսցեն զքեզ և մի պատերազմեսցեն։

Եւ յարիցէ այլ թագաւոր բռնաւոր, յանդիման պատերազմեալ հալածեսցէ զնա, և բազում տրտմութեամբ և հեծութեամբ հանցէ զհոգի նորա․ և սա թագաւորեալ կալցի զգաւազանն որ ի քեզ Եօթնբլուրդ, և եղիցի մեծ յաթոռս մեծամեծս և ի պայծառս․ և այրն այն կորովի յաջմէ և յահեկէ․ և ի ժամանակս նորա սով մեծ եղիցի և ոչ փոքր, և ապականեսցի երկիր ի մարդկանէ, և յորձանք ջրոց հոսեսցեն, և օդ սեւաթոյր խառնակեսցի, և այգիք քո սակաւասցին, և վայելչութիւնք քո նեղեսցին, և պակասեսցին աւուրք և եղիցի օրն վեցժամեան։ Վա՜յ մարդկան որ իցեն ի ժամանակին յայնմիկ։ Եւ դարձուսցէ զերեսս իւր թագաւորն յարեւմուտս։ Յայնժամ Վա՜յ քեզ Եօթնբլուրդ, յորժամ թագաւոր քո երիտասարդ․ ի ժամանակի յայնմիկ եղիցի քեզ նեղութիւն մեծ․ այր որ ունիցի զկին եղբօր իւրոյ, որդի զմայրն իւր, և դուստր ելցէ յանկողինս հօր իւրոյ, եղբայր զքոյր իւր․ և յոլովեսցին հայհոյութիւնք, մարդասպանութիւն, և երդմունք, չարախօսութիւնք, ստութիւնք, պղծութիւնք, ցաւք, յափշտակութիւնք, եղբայրատեցութիւնք, խռովութիւնք, հեղումն արեան ի տաճարի սրբոց սպասաւորաց, և թագաւոր ընդ թագաւորս, իշխանք ընդ իշխանս, հզօր յաղքատոյն վերայ յարիցէ, և անկումն եղիցի հարստին և աղքատոյն․ և Բիւթանիա որ է ի ծովեզեր՝ շարժմամբ յատակեսցի․ և բարձրացեալ կուտակեսցին ալիք ծովուն, և ծածկեսցէ զհիմունս

Բիւթանիայ՝ մինչեւ ցկործեր քաղաքն Նիկոմեդիա. և ապա դարձեալ յարիցէ այլ թագաւոր, և ժամանակ նորա սակաւաւոր և չար և ամենեւին անհեղ: Եւ ապա յայնմհետէ ոչ եւս եղիցի ժամանակ բարի՝ այլ չար. և ընդ նմա պատերազմեսցի որդին, և ծախեսցէ զնա ի սրոյ. և միւս թագաւոր յարիցէ յայլազգեաց՝ որ է Արիանոս, սորա..... սեան: Յայնմ ժամանակի վա՜յ քեզ Եօթնբլուրդ, զի քան զամենեսեան աւել..... և զապականս քո: Եւ ապա յարիցեն թագաւորք և իշխանք և առաջնորդք և նահատակք ի վերայ քաղաքաց և գաւառաց և տեղեաց, և եղիցին յուզմունք և խառնակութիւնք բազում՝ մարդկան: Եւ ազգ բարբարոսաց յարիցէ ի վերայ քաղաքաց և գաւառաց. և խոնարհեսցի երկիր ի բազմութենէ ազգաց՝ կանգունս եօթանասուն և երեք. և մի նեղեսցիս յայնժամ Եօթնբլուրդ ի նոցանէ. բայց տաանձին պատերազմ տանջեսցէ զքեզ, և վայելչութիւն երկրի սակաւասցի ի քեզ. բարկութիւն յերկնից եղիցի ի քեզ և հարուածս յոյժ, և երեւեսցի սեւն հրեղէն յերկնից ի յերկիր. և յայնժամ փոխեսցի թագաւորութիւն[1] .......... որ մնացեալ յապականութիւն : ...... և յայնժամ այսպէս ...... :
Եւ բերցէ զերկրորդ գաւազանն ի միւս քաղաքն յոչինչ իշխանեալ. և նետս հրեղէնս տեղասցէ յերկնից, նշանք և արուեստք բազում եղիցին: Եւ յայնժամ տիրեսցէ Նեռնն, և մարդիկ յաստուածպաշտութենէ խոտորեսցին, անհաւատ ի գալստենէն զոր ոչ խնդրէին, և ոչ ակն ունէին. այն որ ոչ հաւատայինն ի նա, որ ամենայնի ընդդիմակացն էր. սա եղիցի և ծնցի զոր ոչն խնդրէին ի կուսէ պղծոյ: Եւ կալցի գաւազանն խաբէութեան զազգ մարդկան ի ժամանակս երիս և ի կէս ժամանակի. ածցէ զոգիս բազմաց ի կորուստ, ժառանգակից լինել գեհեննին յաւիտենից: Յայնժամ յուզումն եղիցի հրեշտակաց տեսանելով զնշանսն զոր յառաջագոյն գնացուցեր:

1. Օրինակն եղծեալ էր:

Եւ զայս իմացեալ քրիստոսասէր մարդկանն, ծանուցեալ և տեսեալ ամենայնի զընդդիմակացն, որ է ազգի մարդկան. որոյ է նշանս այս. Ջօդեալ անկըրկնելի ի ծնգաց հաշմ, ակամբ ողորկայօն, մանգաղամատն, սրագլուխ, շնորհաւոր, մեծաքան, իմաստուն, քաղցրածաղր, տեսանող, խորհրդական, ըաթափ, հեզ, համդարտ, նշանագործ. մօտ ունելով զօգիս կորուսելոցն, ի քարանց հաց հանել, կուրաց տեսանել, կաղաց գնալ, և զլերինս ի տեղւոջէ ի տեղի փոխեսցէ. առ աչօք արասցէ զայս ամենայն, և բազումք հաւատասցեն ի նա: Վա՛յ այնոցիկ ոյք հաւատայցեն ի նա, և առնուցուն զնշանն նորա. աջ նոցա կապեալ՝ որ ոչ դառնայցէ անդրէն յոր յուսացանն յառաջագոյն: Յայնժամ սով եղիցի մեծ յոյժ. մի՛ տիրեսցեն երկինք տալ զանձրեւ, և երկիր մի՛ բուսուսցէ զդալարի. եղիցին չորացեալ ամենայն պտուղք և յայնժամ ամենայն գաւառք և քաղաքք ողբասցեն զինքեանս, փախչելով փախիցեն, և մի՛ փախիցեն յարեւելից յարեւմուտս, և յարեւմտից յարեւելս: Իսկ որ բնակեալ իցեն ի լերինս և յայրս և ի ծերպս և ի փապարս երկրի, նոքա միայն կարասցեն փախչել մինչեւ ցերկրորդ գալուստն որ ծնաւ ի սուրբ Կուսէն: Յայնժամ ընտրեալքն նորա յայտնի եղիցին տեսանելով զյաւիտենական զՏեառն գալուստն. կայցէ յառաջ և բազումք դատեսցին. յերկնից յուզմունք եղիցին, և յայնժամ նեղութիւն ահագին եղիցի ի վերայ տիեզերաց: Վա՛յ յղեաց և ստընտուացն յաւուրս յետինս. վա՛յ անծուծացն որք հաւատացին ի հակառակորդն. վա՛յ այնոցիկ որք երկիր պագին նմա, և վասն գալստեան նորա յայտնեցան:

Եւ յետ լինելոյ այսր ամենայնի և կրելոյ զչարչարանս աստուածաշունչ և յարդար մարդկան՝ որ ի հարկաւորութենէ և ի բռնութենէ նեղեալ էին, հասցէ ապա կատարած. և ոմանց ի մարդկանէ նշան ցուցեալ ծանիցեն զԵօթնբլուրն և ասիցեն. Արդեօք քաղաք լեա՞լ իցէ սա: Եւ կին մի երկրակոխեալ յարեւելս յարեւմուտս ի հիւսիս և ի հարաւ, և մի՛ գտցէ

պտուղ, բայց միայն գտցէ ձիթենի մի, և գիրկս արկեալ ձիթենւոյն՝ յոգոց հանցէ և ասիցէ. Երանի՛ այնմ որ տնկեալ է զձիթենիս զայս. և ոգի նորա վերացի ի նմանէ անդէն ի տեղւոջն։

Յայնժամ արեգակն դարձցի ի խաւար և լուսին յարիւն, աստեղք որպէս զտերև անկցին, և երկինք իբրև զմագաղաթ գալարեսցին, և ծով յանդնդոց եռասցէ ելանել ծածկել զմարդիկ, և ամենայն ինչ յօդոց ապականեալ չորասցի։ Հրեշտակք հրեղէնք յերկնից իջցեն, և հուր բորբոքեսցի ընդ տիեզերս. մկունք հրաձեւք և պղնձիք եղիցին, և որ նման է նոցա. և գազանք գիշակերք ի լերանց ելցեն. և մի՛ երկիցէ զոր ոչն խնդրէին, և երկիր ամբարշտաց կորիցէ, և արդարքն յափշտակեսցին առ Հայր, զի հրաման ել ի Տեառնէ։ Աթոռք անկցին և գիրք բացցին, և դատաստանք յօրինեսցին. հրեշտակք փող հարցեն, և արդարք պարեսցեն, Հօր օրհնութիւնս հանցեն, և ըստ իւրաքանչիւր գործոց դատեսցին։

Բայց միայն Տէր արդար դատաւոր և ամենայն գործք նորա. և ամենայն ազգ մարդկան բացցեն զբերանս իւրեանց աղաղակելով և ասելով. Տէր, Տէր, մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ ի չարէ, զի դու Տէր, գիտես և ճանաչես զի համբերել ոչ կարեմք, վասն զի մարմին եմք. այլ որպէս Հայր բարերար և մարդասէր, գթացիր ի վերայ մեր։ Զի քո են փառք այժմ և միշտ, և յաւիտեանս յաւիտենից. ամէն։



ժ

# ԳԻՐՔ ԵԶՐԻ ԵՐՐՈՐԴ[1]

## ԳԼՈՒԽ Ա.



ԵՍ Սաղաթիէլ՝ որ և Եզր կոչեցայ. և ի Բաբելոն յամին երեսներորդի կայի յանկողնի իմում, և զմտաւ ածէի վասն աւերածոյն Սիոնի, և վասն շինածոյն Բաբելոնի, և անդէն իսկ ապշեալ լինէի ի հոգի իմ, և սկսայ ասել ցբարձրեալն զբանս ահագինս։ Եւ ասացի, ասեմ. Տէր Աստուած իմ, դու արարեր զերկինս և զերկիր և զամենայն որ ի նոսա. և յետ այնորիկ ստեղծեր անապական ձեռօք քովք զմարդն. և փչեցեր ի նմա շունչ կենդանի, և է առաջի քո. և եդեր ի դրախտին փափկութեան՝ զոր տնկեաց աջ քո. որում պատուէր ետուր զի ծանիցեն թէ քո գործ է։ Եւ նա էանց զայնիւ, և պատրեցաւ։ Վասն որոյ յիրաւի որոշեցեր վաղվաղակի վասն նորա զմահ, և ամենեցուն որ ի նմանէ ազգ էին, որք և անցին զօրինօք սրբոց քոց հրամանաց. զի եղեն ազգ և ազինք, և տոհմք ի նոցանէ, որ ոչ գոյ թիւ. ածեր ի վերայ նոցա զջրհեղեղն և կորուսեր զնոսա։ Խնայեցեր ի ծառայն քո Նոյ. և վասն նորա յորդիսն նորա ամենայն տամբն իւրով. և եգիտ շնորհս առաջի քո։

1. Զզուգնաքեայ տարբերութիւնս օրինակաց սորին զանց առնեմք նշանակել, շատ համարելով ուղղագունին զհետ երթալ։

Եւ դարձեալ ի զաւակէ նորա բազմացուցեր զմարդիկ. և նոքա նոյնպէս ամբարշտեցան առաջի քո. և ելին անօրէնութեամբք իւրեանց, և զհետ գնացին անօրէնութեան: Գտաւ այր մի ի նոսա որում անուն էր Աբրահամ, զոր սիրեցեր և հաճեցար ընդ նա միայն, և եդիր ընդ նմա ուխտ բազմացուցանել զզաւակ նորա իբրեւ զաստեղս երկնից բազմութեամբ, և իբրեւ զաւազ առ ափն ծովու անչափ. և այնպէս ետուր նմա որդի զԻսահակ, և Սահակայ՝ զՅակոբ. և Յակոբայ այլաք մետասանիւքն հանդերձ՝ զՅովսէփ, և վասն Յովսեփայ տարար զհարսն յԵգիպտոս և կերակրեցեր զնոսա ամս բազումս: Եւ յետ այնորիկ հաներ զնոսա ի ձեռն ծառային քո Մովսէսի, և տարար զնոսա յԵգիպտոսէ ի յանապատն. և կերակրեցեր զնոսա ամս քառասուն, և յետ այնորիկ տարար զնոսա յերկիրն զոր խոստացար ծառային քո Աբրահամու. և ետուր նոցա օրէնս, և ոչ պահեցին. և ետուր նոցա դատաւորս դատել և խրատել զնոսա յօրէնս քո ամս բազումս, մինչեւ ցՍամուէլ մարգարէն՝ որ կարդայր զանուն քո. քանզի կայր և մնայր ի նոսա ախտ. մերժեցան օրէնք քո ի սրտից նոցա, մինչեւ կացուցեր ի վերայ նոցա իշխան զԴաւիթ ծառայն քո. զոր և ասացեր դարձեալ շինել զԵրուսաղէմ. և ի նմա մատուցանել քեզ պատարագս: Յետ նորա յարուցեր զորդի նորա զՍողոմոն. որում հրամայեցեր շինել զտաճարն ի տեսիլ գիշերոյն. և ի նմա առնել ամենայն ժողովրդեանն զաղօթս, և մատուցանել զպատարագս: Եւ իբրեւ այն լինէր, մեղաւ ժողովուրդն որ ի քաղաքին բնակեալ էր, և վասն նորա մատնեցաւ քաղաքն ի ձեռս հեթանոսաց որ շուրջ զնովաւն էին: Իսկ մինչ դեռ էաք յերկրին մերում, ասէի ի սրտի իմում, միթէ լաւագոյն ինչ գործեն որ ի Բաբելոն բնակեալն են, վասն այնորիկ արհամարհեցաւ Սիոն. զի իբրեւ եկի այսր, տեսի ամբարշտութիւն բազում որ ոչ գոյ թիւ. և ապստամբս բազում յոյժ ետես անձն իմ, այս ահա երեսուն ամ. վասն այնորիկ զարմացեալ է սիրտ իմ, զմտաւ ածելով թէ որպէս ներես անօրինաց, և խնա-

յեցեր յամբարիշտսն, և կորուսեր զժողովուրդսն քո. և խնայեցեր ի թշնամիսն քո։ Մի եթէ լաւագո՞յն ինչ գործեաց Բաբելոն քան զՍիոն. և կամ այլազգի ոք ծանեաւ քան զԻսրայէլ. և կամ ո՞ր ազգ հաւատաց ուխտի քում իբրեւ զՅակոբ, որոց պտուղն ո՛չ երեւեցաւ։ Շրջելով շրջեցայ ընդ ազգս և գտի զնոսա յղփացեալս, որք ոչ յիշէին զպատուիրանս քո։ Արդ այժմ եթէ կշռիցես ի կշիռս զմեր անօրէնութիւնս և զհեթանոսաց, գտցի ի կշիռս կշռոցն՝ եթէ յո՛ր կոյս հակիցէ. Ե՞րբ ոչ մեղան բնակիչք երկրիս այսորիկ առաջի քո. ո՞ր ազգ պահեաց զպատուիրանս քո. թերեւս ուրեք նուազարանս գտանիցես ազգ, և ո՛չ ուրեք։

## ԳԼՈՒԽ Բ.

Եւ յետ խորհելոյն իմոյ զայս, առաքեցաւ առ իս հրեշտակ մի՝ որոյ անուն էր նորա Ուրիէլ, խօսել սկսաւ ընդ իս և ասէ. Ափշեալ է սիրտ քո յայսմ կեանս, առ ի կամել քեզ հասու լինել ճանապարհի բարձրելոյն։ Եւ ասեմ. Աղաչեմ զքեզ խելամուտ արա՛ զիս։ Ետ պատասխանի և ասէ ցիս. Առաքեցայ՝ առակս երիս դնել առաջի քո, և ճանապարհս երիս ցուցանել քեզ, յորոց եթէ զմին ասիցես ինձ, և ես քեզ ասացից վասն որոց փափագեալդ ես գիտել։ Ետու պատասխանի և ասեմ. Ասա՛ տէր իմ։ Եւ ասաց ցիս. Երթ կշռեա՛ դու ինձ զկշիռս հրոյ, և կամ զծանրութիւն հողմոյ, և կամ ընդ կրունկ դարձո՛ զօրն անցեալ։ Ետու պատասխանի և ասացի. Ո՞վ ի մարդկանէ կարէ առնել զայդ, զի ես արարից։ Եւ ասաց ցիս. Ապա եթէ էր իմ հարցեալ զքեզ՝ քանի՛ շտեմարանք են ի սիրտ ծովու, կամ քանի՛ առաջք երեւին երակաց խորոց, կամ քանի՛ շաւիղք են ի վերայ հաստատութեան. կամ քանի՛ ելք են դժոխոց, կամ քանի՛ մուտք են դրախտին։ Ապա եթէ ասիցես ինձ՝ ի ծով ո՛չ իջի, և ո՛չ

ի սկզբանէ եղէ ընդ անդունդս, և ո՛չ ելի ի վերոյ քան
զերկինս, և ո՛չ իջի ի դրունս դժոխոց, ո՛չ մտի ի դրախտն,
այժմ ո՛չ հարցից քեզ զայդ. այլ վասն հրոյ և հող-
մոց, և տուընջեան, որոց սովորն ես, յորոց ո՛չ կա-
րես հեռի լինել. զի որ ինչ ընդ քեզ սնեալն են՝ ո՛չ
կարես ճանաչել, զիա՞րդ կարես այնչափ ճանապար-
հաց բարձրելոյն հասու լինել. քանզի անհաս է ճանա-
պարհ բարձրելոյն. ապականացու ես, և յապականելի
կեանս բնակեալ ես, ո՛չ կարես ճանաչել զճանապարհս
անապականին: Ետու պատասխանի և ասացի ցնա.
Լաւագոյն էր մեզ եթէ ո՛չ էաք ծնեալ, քան եթէ կե-
ցեալ ամբարշտութեամբ և ի տանջանս մտեալ, և չի-
մանալ եթէ ընդէ՛ր գայթակղիմք: Ետ պատասխանի և
ասէ ցիս. Լուր առակին. չոգաւ գնաց անտառին փայտն
ի դաշտն, խորհեցաւ, և ասէ ցընկերս իւր. Եկայք
երթիցուք տացուք պատերազմ ընդ ծովու, զի հեռա-
ցեալ մերժեսցի առաջի մեր, զի արասցուք ի նմա այլ
անտառս: Դարձեալ ալիք ծովուն խորհեցան երթեալ
կռուել ընդ անտառ դաշտին, պատրաստել իւրեանց
այլ տեղի. եկն հուրն և այրեաց զանտառն. նոյնպէս
և աւազն եկաց ընդդէմ, և արգել զալիսն: Արդ ե-
թէ էիր դատաւոր՝ զո՞ ի նոցանէ արդարացուցանէիր,
և կամ դարձեալ զո՛վ պարտաւորէիր: Ասացի. Զերկո-
սեանն, զի ի նանիր խորհուրդ խորհեցան. քանզի
երկիր տուաւ անտառաց. իսկ տեղի աւազոյ ծովու՝
զդէմ ունել ալեացն: Եւ ասաց ցիս. Բարւոք դատե-
ցար. ընդէ՞ր զոր ասացի քեզ ապա ո՛չ դատեցար. որ-
պէս երկիր տուաւ անտառաց, և տեղւոյ աւազոյ ա-
լեացն. այնպէս և որ յերկրի են՝ տուեալ են զեր-
կրաւորս գիտել. և որ յերկինս են՝ զերկնաւորն ճա-
նաչել: Եւ ասացի ես. Խնդրեմ ի քէն, տէր, իսկ
ընդէ՞ր տուան ինձ այնպիսի միտք զայնպիսիսն ածել
զմտաւ, զի ոչինչ յօգուտ է ինձ հարցանել որ ի վեր
է քան զամենայն. այլ լաւ է մեզ զայն գիտենալ՝
որ ընդ մեզ հանապազ անցանեն վիշտք: Արդ՝ ըն-
դէ՞ր Իսրայէլ մատնեցաւ ի ձեռս հեթանոսաց. և զոր
Աստուած սիրէր զժողովուրդն, մատնեցաւ ի ձեռս ամ-

բարշտաց. և մոռացան օրէնք հարցն մերոց, և գրեալ կտակարանքն ո՛չ ուրեք գտանին. և կամք աստ իբրև զմարախ՝ որոց ո՛չ գոն օրէնք, ո՛չ հրամանք, ո՛չ կտակարանք. և գնամք յաշխարհէս՝ չեղեալք արժանի քո ողորմութեանդ. զի՞նչ ևս աւելի ընկալցուք մեք, յորս կոչեցաւ անուն Նորա ի վերայ մեր: Ետ պատասխանի և ասէ ցիս. Այժմ մինչդեռ աստէն ես՝ տեսանես, անդր երթեալ՝ զարմասցիս. քանզի փութայ այս աշխարհս անցանել՝ առ ի չհանդարտել բառնալ զիւրոյ ժամանակի զչար. վասն զի մարդիկ աշխարհիս այսորիկ լի են անօրէնութեամբ. վասն որոյ և անցցեն ի վերայ Նոցա կալք. զի եթէ ո՛չ նախ եկեսցէ ի վերայ Նոցա հունձք, և ո՛չ արդարոցն հասցէ օր բարկութեան, որ բարութեանց են պտուղք: Աղէ ա՛ծ զմըտաւ, զի եթէ սակաւ յանցումն Ադամայ այնչափ չար գործեաց, անճեցեալ յայնմհետէ չարն ի վերայ երկրի՝ ո՞րպէս կորուստ որք անօրինին՝ պատրաստին: Պատասխանի ետու և ասեմ. Մինչև ցե՞րբ իցէ այս: Եւ ասաց ցիս. Չես իմաստնագոյն քան զբարձրեալն, թէ արասցես վաղվաղակի հասանել զկատարածն. զի դու փութա՛ս վասն քո միայն. իսկ բարձրեալն երկայնամտէ վասն բազմաց: Քանզի վասն Նորա խնդրեցին ի բարձրելոյն անձինք արդարոց՝ և ասեն. Մինչև յե՞րբ եմք աստ, ե՞րբ եկեսցէ հասցէ վարձք ժամանակեայ մերոյ: Ետ պատասխանի Տէր Նոցա՝ և ասէ. Համբերեցէք մինչև լցցի սահմանեալ ժամանակն. քանզի չափով չափեաց զամս. կշռեաց զյաւիտենականն, և թուով թուեաց զժամանակս. մի՛ շարժեսցէ, և մի զարթուսցէ մինչև հասցէ սահմանեալ ժամանակն: Ետու պատասխանի և ասեմ. Խնդրեմ ի քէն տէր, ի բազում գթութենէ բարձրելոյն, զի համբերէ վասն մեր անօրինացս, առ ի չածելոյ զկատարածն. այլ երկայնամտէ վասն մեր զարդարսն առ ի վայելել Նոցա զբարիս զոր խոստացեալ է Նոցա: Ետ պատասխանի և ասէ. Այդպէս իսկ է որպէս ասացերդ. բայց եկեսցէ ի ժամու իւրում. զի որպէս կին մարդ ո՛չ կարասցէ յառաջ քան զսահմանեալ ժամանակն ծնանել, ե-

թէ ո՛չ իններորդ ամիսն լցցի. որպէս կին փութայ ի հասանել ժամանակին ապրել յերկանց, և ի վշտէ ծնընդոցն. նոյնպէս շտեմարանք երկրի փութան հատուցանել զպտուղն՝ որ հատուցանելոցն է նմա. արդ յորժամ եկեսցէ ժամանակն, տեսցես և ծանիցես վասն որոց ցանկացեալն ես գիտել: Եւ խնդրեցի ի նմանէն, և ասեմ. Աղաչեմ զքեզ, Տէր, եթէ գտի շնորհս առաջի քո. և եթէ արժանի եմ, յայտնեաս ինձ վասն ժամանակին, եթէ աւելի անցեալ է կամ կացցէ: Եւ ասաց ցիս. Կա՛ց յաջակողմն կոյս, և ցուցից քեզ զկերպարանս առակին. և կացի: Եւ եցոյց հնոց բորբոքեալ. և եղեւ յորժամ վախճանեցաւ բոցն, և ելանէր ծուխ. և յետ վայրի միոջ եկն ամպ ջրալից, և արկ անձրեւ սաստիկ յոյժ, և յետ անցանելոյ անձրեւի՝ ցօղ: Եւ ասաց ցիս. Ի միտ առ զայս. որպէս յաճախէ հուրն քան զծուխն, և անձրեւն քան զցօղն. այնպէս յաճախէ անցեալ մասն ժամանակի: Դարձեալ աղաչեցի զնա և ասեմ. Ո՞ ի մէնջ կենդանի իցէ արդեւք. կամ ո՞վ ի մէնջ իցէ արդեւք յաւուրս յայնս. և կամ զի՞նչ նշան իցէ ժամանակացն այնոցիկ: Ետ պատասխանի և ասէ ցիս. Վասն նշանացն կարեմ քեզ ասել, իսկ վասն կենաց ձերոց ո՛չ առաքեցայ ասել քեզ:

## ԳԼՈՒԽ Գ.

Լո՛ւր վասն շնորհացն. Ահաւասիկ աւուրք գան. և յաւուրսն յայնս զարմասցին մարդիկ զարմանալիս մեծամեծս. ղօղեսցէ յուղղութենէ հաւատոց ճշմարտութեան. և յետ բազմանալոյ յամբարշտութեան, եղիցին ոմանք ի վերայ երկրի խօսել, կամ կորստանօք տութեամբ և առասպելեօք այլայլիւք, ոմանք մոլորեալք ի կեղծաւորութեան որբութեան պաշտամանն ըմբռնեալք անժուժկալութեան. և եղիցի անհանգիստ և անճանապարհ և անապատ այս երկիր, նախ յառաջ

զոր դու տեսանես. Թէ տացէ Աստուած, տեսցես զարմանալիս. յետ երրորդ տեսլեանն եղիցի երկիր ամբոխեալ, և երեւեսցի արեգակն ի գիշերի և լուսին ի տուընջեան. և ի փայտէ արիւն կաթեսցէ. և ի քարէ բարբառ լուիցեն, ժողովուրդք ընդ ժողովուրդս հարցին և բռնասցին նշանագործք. զօրասցին առասպելարկուք: Եւ ի ժամանակին յայնմիկ ծով բազում անգամ տեղիս փոխեսցէ, և վիհք եղիցին. և օդք փոխեսցին, և Թռչունք երկնից տեղափոխեսցին. և Սոդոմայեցւոց ծովն ձկունս եռասցուսցէ. և հուր բազում անգամ առաքեսցէ. և նշան ի կանանց ծնցի, և ի ջուրս քաղցունս աղւութեան գտցի: Մարտիցեն մարդիկ ընդ միմեանս, որդիք ընդ հարս, և հարք ընդ որդիս. մարք ընդ դստերս հակառակք ընդ միմեանս, եղբարք ընդ եղբարս. սիրելիք ընդ ծանօթս. ազգք ընդ ազգս. ժողովուրդք ընդ ժողովուրդս. քահանայք ընդ քահանայս. և Թաքուսցեն զարդար զպատուիրանս բարձրելոյն. և զօրասցի ի նոսա ստութիւն և մերժեսցի իմաստութիւն սրբոց. և յետ այնորիկ խնդրեսցեն և ո՛չ գտցի. զի բազմասցին անելութիւնք, և յաճախեսցէ ստութիւն. և հպարտասցին հարք նոցա, և նուազեսցին ուղիղք, և հարցէ երկիր զմերձաւորս իւր՝ և ասասցէ. միթէ ոք գնասցէ ի վերայ քո որ ունէր զհաւատս, և խօսէր զճշմարտութիւն. կամ գործէր զարդարութիւն, կամ ատէր զանօրէնութիւն, կամ ի կողմ անկանէր ճշմարտութեան. կամ առնէր զողորմութիւն, կամ ատէր զյափշտակութիւն. կամ խնդրէր զբարձրեալն ամենայն սըրտիւ իւրով, կամ սիրէր ոք սրբութեամբ ընկեր զընկեր իւր: Տացէ պատասխանի և ասասցէ. Եթէ ո՛չ ոք գտանի առ իս այսպիսի, ըստ այնմ ժամանակաց ակն կալցին մարդիկ առնուլ ինչ ի բարձրելոյն, խնդրեսցեն և ո՛չ առցեն. վաստակեսցեն աշխատանօք և ո՛չ հանգիցեն. ճաշեսցեն և ո՛չ վայելեսցեն ի գործոց ձեռաց իւրեանց. գնասցեն, և ո՛չ ուղղեսցեն ճանապարհք իւրեանց. ըմբռնեսցեն ի վախճան ժամանակաց ի ցաւոց և ի տրտմութենէ և ի հեծութեանց.

քանզի ո՛չ միայն փոխեցին զօրէնսն, այլ և զնոյն եւս զբարձրեալն ի վերայ երկրի որչափ ի նոսա էր. վասն այնորիկ եկեսցէ ի վերայ նոցա չար, և թագաւորեսցէ յատենի բարձրեալն. և եկեսցէ փոխեսցէ զնոսա. և ցուցցէ յիւրմէ զփառս բարձրեալն ի նոսա. յայնժամ հատուսցէ նոցա զտանջանս, որպէս և խորհեցանն ամբարտաւանութեամբ, և անարգեսցէ զնոսա նոյնպէս: Զայս զնշանս հրամայեցաւ ինձ ասել քեզ. թէ դարձեալ միւսանգամ պահօք և արտասուօք խնդրեսցես ի բարձրելոյն իբրեւ զաւուրս եւթն, և լուիցես քան զայս մեծամեծս:

Եւ իբրեւ զարթեայ՝ և լուեալ զայս ի մտի ունէի, և յերկեղէն եղծան կերպարանք մարմնոյ իմոյ. և զօրութիւն իմ հեռացաւ յինէն, մերձեցաւ անձն իմ ի նուաղել: Ածի զմտաւ և ասեմ. Եթէ ո՛չ ոք կարէ ապրել ի մէնջ, և մեռանիմ որպէս զանասունս, յորս ո՛չ գոյ ի նոսա իմաստութիւն և տանջին ի տանջանսն յաւիտենից: Զայս իմ յոյժ զմտաւ ածեալ հոգայի: Եկն դարձեալ Ուրիէլ հրեշտակ՝ և զօրացոյց զիս, և հաստատեալ կացոյց զիս ի վերայ ոտից իմոց, և ասաց ցիս. Մի՛ տրտմիր, զի ցուցաւ քեզ յառաջ քան զժամանակն զոր առնելոց է բարձրեալն յաւուրսն վախճանին. գտեր շնորհս յԱստուծոյ: Եւ յետ այսորիկ եկն առ իս Փանուէլ, որ էր առաջնորդ ժողովրդեանն, և ասէ ցիս. Ընդէ՞ր այդպէս տգեղացաւ գոյն երեսաց քոց. ո՞չ գիտես եթէ Իսրայէլ քեզ յանձնեաց յայսմ աշխարհիս պանդխտութեանս մերոյ. յոտն կաց և ճաշակեաց հաց՝ զի մի՛ վախճանեսցիս և թողուցուս ըզմեզ որպէս հովիւ զհօտ իւր ի ձեռն գայլոց չարաց: Եւ ես ասացի ցնա. Ի բա՛ց երթ յինէն, և մի՛ մերձենար յիս ցեւթն օր. և գնաց յինէն ըստ բանին: Եւ ես լալով և ողբալով պատմէի զմեղս իմ, և պահեցի զեւթն օր, որպէս և հրամայեաց ինձ հրեշտակն: Եւ եղեւ յետ լնլոյ եւթն աւուրցն՝ դարձեալ խորհուրդք սրտի իմոյ ստիպէին զիս յոյժ: Ընկալաւ սիրտ իմ զհոգի իմաստութեան. և սկսայ ասել առաջի բարձրելոյն զբանս զայս: Եւ ասացի. Ո՜վ Տէր՝ դու ես որ

կամօք բարձրելոյն, զամենայն արարեր և պատրա֊
տեցեր. և իմաստութեամբ քով զամենայն վարես, և
հաստուցանես իւրաքանչիւր ըստ ճանապարհաց իւ֊
րեանց: Դու, Տէր, յամենայն նիւթոց փայտից ընտրե֊
ցեր քեզ զորթ ծառ. և յամենայն ծաղկանց՝ զշու֊
շան ծաղիկ. և յամենայն թռչնոց՝ աղաւնի, և յա֊
մենայն չորքոտանեաց՝ զոչխար, և յամենայն բազ֊
մութեան ջուրց՝ զՅորդանան գետ. յամենայն քաղա֊
քաց՝ զՍիոն քաղաք. և յամենայն բնակութեանց
երկրի՝ զերկիրն սրբութեան. և յամենայն ժողովրդոց
երկրի՝ ընտրեցեր զզաւակն Աբրահամու. և յամենայ֊
նէ ընտրեալք առ ի քէն օրէնք զոր շնորհեցեր ցան֊
կալի ժողովրդեանն: Եւ Տէր իմ երկայնամիտ է, որ
ո՛չ յիշես զմեղս. և ընդէ՞ր մատնեցեր զժողովուրդս
քո ի ձեռս ամբարիշտ ազգի, յորոց կոչեցեալ էր ա֊
նուն քո. և զոր սիրեցեր զաւակ՝ այնպէս ցրուեցեր
ընդ հեթանոսս. և կոխան արարեր որպէս զհող եր֊
կրի ի ներքոյ ոտից նորա. և ատելով ատեցեր զժո֊
ղովուրդն քո վասն չար գործոց նոցա. պա՛րտ էր զնոսա
ի ձեռաց քոց խրատել:

Եւ եղեւ իբրեւ խօսէի ընդ նմա զայս ամենայն,
առաքեցաւ առ իս հրեշտակն, որ յառաջ խօսեցաւն
ընդ իս յանցանելն ի գիշերին, և ասէ ցիս. Լո՛ւր
ինձ և ունկնդիր լեր. և հայեա՛ց, և յաւելից առել
առաջի քո: Եւ ես ետու պատասխանի և ասեմ. Խօ֊
սեա՛ց Տէր իմ, զի լուիցէ ծառայ քո: Եւ ասէ ցիս.
Ընդէ՞ր այդպէս զարմացաւ սիրտ քո խորհել զայդ֊
պիսի խորհուրդս. մի՛ եթէ դու առաւել եւս քան
զբարձրեալն սիրեցեր զԻսրայէլ: Եւ ասացի. Ոչ Տէր,
այլ առ վշտի խօսեցայ. քանզի պահանջեն յինէն հա֊
նապազ երիկամունք իմ, և խնդրեն հասու լինել շա֊
ւղաց բարձրելոյն, և քննել զմասն մի ի դատաստա֊
նաց նորա: Եւ ասէ ցիս. Որ ի վեր քան զքեզն է մի՛
քններ, և զծածկեալն յորդւոց ի մարդկանէ մի՛ զըն֊
ներ. որ ինչ ասացաւն քեզ, զայն պահեա՛ առ քեզ.
և մի՛ քններ զճանապարհս բարձրելոյն, զի մի վրի֊
պիցես ի նմանէն. զի ո՛չ է պիտոյ քեզ վասն զաղա֊

նեաց։ Եւ ասացի. Ապա ընդէ՞ր ծնայ, և ո՛չ եղեւ ինձ գերեզման արգանդ մօր իմոյ, զի ոչ տեսեալ էր իմ զկորուստն Յակոբայ և զմաշն Իսրայելի, և զլրութիւն հեթանոսաց որ ո՛չ ճանաչեն զԱստուած։ Եւ ասաց ցիս. Մի՛ բռնադատեր գիտել զանգէտսն, ահա ասացից քեզ բան մի՝ եթէ ասասցես ինձ։ Եւ ասացի. Ասա՛ ինձ զթիւ ծնելոցն և զմեռելոցն. պատմեա ինձ զլայնութիւն ծովու և զբազմութիւն ձկանց, կամ զբարձրութիւն երկնից, կամ զգունդս աստեղաց. կամ զընթացս արեգական, կամ զգնացս աստեղաց. կամ զկերպարանս հաստատութեան. կամ զընդարձակութիւն երկրի, կամ զթանձրութիւն հողոյ։ Համարեա՛ դու ինձ զթիւ մազոյ մարմնոց քոց, կամ զքթթել ական քո, կամ զլսելոյ զզօրութիւն, կամ զհոտոտելոյ զպատրաստութիւն, կամ զձեռաց զշօշափումն, կամ զխաղալ երակաց, կամ զմտաց գոցես զհետս, կամ զշնչոյ գոցես զտեսիլ, կամ զչափ, կամ զկերպարանս, կամ զգոյնս, կամ զիմաստութեան զբոյնս, կամ զհաւուց թռչնոց զիմաստութիւն. կամ զընտրութիւն զեռնոց որ ի ցամաքի, և որ ի ջուրս միմեանց թշնամիք են. կամ զընթացս առանց ոտից. կամ զչընչել հողմոց. և ամփոփեա՛ դու ինձ զտարած և զափիւռ և զչիթս անձրեւաց, և դալարացո՛ զցամաքեալ ծաղիկս։ Բա՛ց դու ինձ զախեալ չտեսմարանս երկրի, և մատո՛ դու ինձ որ ի նմա արգելեալ և փակեալ կան հողմք. և կամ ցո՛յց ինձ զկերպարանս հողմոյ, և կամ զհողւոյ զտեսիլս, և յայնժամ հասու լիցիս շաւղաց բարձրելոյն, և ծանիցես զընտրութիւն ճանապարհաց նորա։ Եւ զարմացեալ ընդ բանս ընդ այնոսիկ, և ասացի. Ո՞վ Տէր, Տէր. և ո՞վ ի մարդկանէ կարէ զայդ գիտել կամ առնել, եթէ ո՛չ այն՝ որ ընդ մարդկան չէ իւր բնակութիւն։ Եւ ասէ ցիս. Որպէս ո՛չ կարես ի նոցանէն մի ինչ առնել կամ ասել. նոյնպէս ո՛չ կարասցես զիմաստութիւն բարձրելոյն քննել, և գիտել զզօրութիւն ճանապարհաց նորա, և կամ գտանել զդատաստանս նորա. կամ զվախճան սիրոյ նորա՝ զոր խոստացաւ սիրելեաց իւրոց. և կամ առ ի նմանէ զբարիսն՝ զոր

ակն ո՛չ ետես, և ունկն ո՛չ լուաւ, և ի սիրտ մարդոյ ոչ անկաւ. և ո՛չ զմտաւ երբէք ած մարդ՝ զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց: Պատասխանի ետու և ասեմ. Ահա զայս որպէս ասացեր ցիս, որ սրբութեամբ ծառայեցին, և որք լինին նմա հաճոյ, խոստացեալ է. մեք զի՞նչ գործեսցուք մեղաւորքս. զի անօրինեցաք յառաջ քան զգիտելն զայս. և ահա երթամք մեք անդ ունայնք և սոսկք: Եւ ասէ ցիս. Պասկ ի նմանէն իրաւունք նորա, որպէս ո՛չ նուազի ի հեղգութենէ նորա, նոյնպէս ոչ յառաջանայ յարագութենէ նորա: Դարձեալ յաւելի և ասացի ցնա. Ոչ կարէ առնել արդեւք, որք անցինն, և որք կանն, որք լինելոցն իցեն միանգամայն. զի փաղփաղակի անցցէ այս աշխարհս, և եկեսցէ դատաստան. և իւրաքանչիւր ոք գիտասցէ եթէ զի՞նչ է պատրաստել նմա: Եւ պատասխանի հրեշտակն և ասէ ցիս. Գիտեմ զի որոշեաց բարձրեալն ըստ ժամանակի, և ի ժամանակի առնել որ ինչ լինելոցն իցէ. և ո՛չ կարեն փութալ արարածք, որպէս սահմանեալ է բարձրելոյն. քանզի ո՛չ իսկ յանձն առնոյր զամենայն միանգամայն: Եւ ես ետու պատասխանի, թէ զիա՞րդ ասաց բարձրեալն դարձուցանել զամենայն ըզմարդկեղէն արարածս. զի եթէ ասաց բարձրեալն, զամենեսեան միանգամայն յարուսցէ զոր և գտցէ յայնմ ժամանակի՝ զկենդանիս մեռելովք հանդերձ. և յորժամ յարիցեն, և նորոգեսցէ զամենեսեան, և ընկալցի զամենեսեան յայնմ աշխարհ, և համբարիցէ. ընդէ՞ր այժմ այս աշխարհս ո՛չ կարաց ընդունել զամենեսեան միանգամայն: Եւ ասաց ցիս. Հա՛րց դու ցարգանդ կնոջ՝ և ասա՛ ցնա. զի եթէ ծնանելոց իցես տասն անգամ, ընդէ՞ր զամենեսեան միանգամայն ո՛չ ծնանիս, այլ մի ըստ միոջէ: Եւ ասացի ցնա, եթէ ո՛չ կարասցէ զայն առնել: Եւ պատասխանի և ասէ ցիս. Նոյնպէս և երկիր ո՛չ կարէ զայս առնել, քանզի արգանդի նման է. և որոշել ժամանակաց. և հրամայեալ է ի հնազանդութիւն կալ. զի որպէս մանուկ ո՛չ կարէ ծնանել, և ո՛չ յորժամ պառաւ է՝ կարէ ծնանել. նոյնպէս և ո՛չ երկիր յառաջ քան զժամանակն կարէ առնել: Ետու պատասխանի

և ասեմ ցնա. Որովհետեւ գտի շնորհս առաջի քո, հարցից քեզ բան միւս եւս. զի եթէ արդարեւ արգանդ է երկիր և ի նմանէ եմք, յայնժամ մանո՞ւկ էր եթէ ծեր։ Եւ ասէ ցիս. Հա՛րց զծնօղն, և ասա՛, եթէ ընդէ՞ր զորս ծնարն ո՛չ են նմանք առաջնոցն. այլ նուազք են հասակաւ և տկարք զօրութեամբ. և ասասցէ ցքեզ արգանդն, թէ այլ զօրութիւն էր որ ի մանկութեանն ծնանէր, և այլ որ ի ծերութեանն. իմացիր և դու թէ տկարք էք դուք քան զառաջինսն, և որ յետ ձեր լինելոց են՝ քան զձեզ. իբրեւ թէ ի ծերութեանց իցէ երկիր, և անցեալ է մանկութիւն իւր։ Ետու պատասխանի և ասեմ զհրեշտակն. Խնդրեմ ի քէն, Տէր, մի՛ դարձուցանիր զերեսս քո յինէն. որ հարցանեմ զքեզ վասն բազմաց. զայս հրամայեա՛ ինձ ուսանել ի քէն, վասն որոց կամիս հարցանել։

## ԳԼՈՒԽ Գ.

Եւ ասէ ցիս. Հա՛րց որում ցանկացեալ է անձն քո. և ես պատմեցից քեզ՝ զոր պարտ է քեզ գիտել։ Եւ ասեմ ես. Աղաչեմ զքեզ, լուր ինձ երկայնմտութեամբ. հարքն մեր երկայնմտութեանն հաւատացին, քանզի յայտնի ցուցանէր զինքն նոցա. Ենովքայ, Նոյի, Աբրահամու, Իսահակայ, Յակոբու, Մովսէսի, Ահարոնի, և ամենայն սրբոցն նորա. և յետ նոցա ամենեցուն ունէր ժողովուրդն զգիր օրինացն. և ի նոցանէ ուսուցանէին առնել զկամս բարձրելոյն։ Իսկ այժմ ո՛չ բարձրեալն յայտնի խօսի, և սուրբքն փոխեցան աստի. և կտակարանքն այրեցան. ո՛րպէս այս անխրատ ժողովուրդս զկամս բարձրելոյն գիտասցէ։ Ետ պատասխանի և ասէ ցիս. Բարձրեալն եկեացէ և արասցէ և ուսուսցէ. բայց ժողովուրդս այս խստապարանոց է, և անթլփատ ամենայնիւ, և մինչեւ ցվախճան թերեհաւատք. զի եկեացէ ի վերայ նոցա չար։ Եւ ասացի ցնա. Ո՞րպէս եկեացէ բարձրեալն. և կամ

յո՞րբ լցի գալուստ նորա։ Եւ ասէ. Նախ յառաջ ե-
կեսցէ, յետ սակաւ ժամանակի ի կերպարանս որդ-
ւոյ մարդոյ. և ուսուսցէ զծածկեալսն, և անարգեա-
ցեն զնա. և ուրասցեն, և արասցեն իւրեանց չար,
և յետ այնորիկ բազմասցին անօրէնութիւնք. և մո-
լորեցուսցէ զնոսա հոգին մոլորութեան հարթել զլե-
րինս բարկութեամբ. և առնել նշանս, որպէս եթէ և զո-
մանս ի սրբոցն մոլորեցուցանել. և յետ այնորիկ բար-
ձրեալն եկեսցէ ի տեսիլ փառաց, և դադարեցուսցէ
զհոգին մոլորութեան, և թագաւորեսցէ նա, և հատու-
ցէ սրբոց սրբութիւն, և ամբարշտաց զանօրէնութիւն։
Եւ յայնժամ ամենայն անօրէն ազգ ժողովրդեանն կո-
ծեսցին, և ոչինչ օգուտ լիցի նոցա, քանզի ուրացան ի
նմանէ։ Ահա պատմեցի քեզ զխորհուրդս ամենայն. ե-
ղիցի քեզ իբրև զկնիք. վասն այնորիկ ահա պատուիրեմ
քեզ ունել քեզ ի մտի մինչև ի լնուլ ժամանակացն. քան-
զի պատրաստեաց բարձրեալն. և յառաջ քան զլինել
բնութեան երկրի, և յառաջ քան զկշռել զելս աշ-
խարհիս այսորիկ, և յառաջ քան զբազմութիւն օդոց,
և յառաջ քան զգոչել ձայնի որոտմանց. և յառաջ քան
զլուսաւորական զկարգս աստեղաց, և յառաջ քան
ղհաստատել զյատակս դրախտին. և յառաջ քան զե-
րևել զեղեցկութեան նորա. և յառաջ քան զօրանալ
սաստկութեան շարժմանցն նորա. և յառաջ քան զգու-
մարել զանթիւ զգունդս հրեշտակաց. և յառաջ քան
զարարեալ հաստատութեան երկնից. և յառաջ քան
զառնել զհիմն երկրի զհաստատութեան ցամաքի. և
յառաջ քան զմտաւ ածել զաշխարհս ամենայն. և յա-
ռաջ քան զկնքել զվարձս հատուցման, որք զճշմար-
տութիւն հաւատոցն պահիցեն։ Ետու պատասխանի
և ասեմ. Որովհետև գտի շնորհս առաջի քո, ցո՛յց
ինձ զնշանն որ լինելոցն է ի վախճան ժամանակաց։
Եւ ասէ ցիս. Որովհետև խուզես և քննես զճանա-
պարհս բարձրելոյն, արի՛ կաց ի վերայ ոտից քոց։
Եւ յարեայ կացի. և ասէ ցիս. Եթէ լուիցես զձայն
գոչման, և եթէ շարժեսցի տեղին յորում դուն կայ-
ցես, մի՛ երկնչիցիս, զի ի գլուխ ելանելոց է առ ի

նմանէն բանն. դողացաւ երկիր, և շարժեցաւ առ ի խօսելն ընդ քեզ։ Եւ յետ խօսելոյն իմոյ զայս՝ ահա փառքն Տեառն լուսաւորէին զտեղին յորում կային, և անդէն ձայն եղեւ խօսելոյ՝ և բարբառ նորա իբրև զձայն ամբոխի յոյժ. կամ որպէս զջուրց հոսանաց բազմաց հեղեղատեաց զառ ի վայր ընթանայցէ։ Եւ ասաց ցիս. Ահաւասիկ եկեսցեն աւուրք, յորում կամեցայց այց առնել բնակչաց երկրիս. տեսից զանիրաւութիւն անիրաւաց, և զանօրէնութիւն անօրինաց, և զուրացութիւն ուրացողացն. և որով զայթակղեցուցանէին զժողովուրդս իմ. և յորժամ լցցին տառապանք ծառայից իմոց։ Եւ յորժամ կամիցիմ մերձեցուցանել զվախճան այսր կենացս ձերոց, այս նշան եղիցի ձեզ. սիրեսցի ստութիւն, և ծնցի նախանձ, զրգռեսցի անօրէնութիւն, և ատեսցի արդարութիւն. յաճախեսցէ անժուժկալութիւն, և խափանեսցի զգաստութիւն. աճեսցէ պատերազմ, և նուազեսցէ խաղաղութիւն. արհամարհեսցի ողորմութիւն, և փառաւորեսցի արդարութիւն. և յաճախեսցին տառապանք ծառայից իմոց. և բարձրասցին ամբարշտացն ամբարտաւանութիւն։ Վասն այնորիկ եղիցին ի տեղիս տեղիս սովք և շարժմունք և ընկղմութիւնք. և եղիցի նշան յերկնից. հուր յաճախ յօդս երեւեսցի. և յերկրի եղիցին նշանք բազումք ի տեղիս տեղիս. և մանկունք տարեւորք խօսեսցին. և որ յղիքն են, չնորհս ծնցին և կեցցեն և զարգասցին. և յանկարծակի ի տեղիք սերմանեալք՝ առանց սերման ունայնք գտցին. և յարիցեն քաղաքք ի վերայ քաղաքաց, օրէնք ի վերայ օրինաց, որդիք զհարս սպանանիցեն, եղբարք զեղբարս, ազգ զազգս, սիրելիք զսիրելիս, տոհմք զտոհմս. և եկեսցէ յայտնի ապստամբութիւն, զալով եկեսցէ անուն իմ նոր նորոգմամբ անճառ փառաց իմոց և զօրութեան, և զբազումս զայթակղեցուսցէ, և զօրասցի. և որք չհաւատանն ի նա՝ հնազանդեցուսցէ, և յետ այնր նշանացն եղիցի այս ի բազում քաղաքս և ի գիւղս և ի գաւառս. և դադարեսցին ջուրք, և մի՛ գնասցեն յաւուրան յայնոսիկ մինչեւ ի ժամանակս երիս։ Եւ յետ

կատարելոյ նշանացս այսոցիկ ի վերայ երկրի, գիրք բացցին, և յայնժամ երևեսցի փառք իմ, և տեսցեն առ իս զթռուցեալսն ի բարձունս զամենայն զսուրբս իմ. և ամենայն որ գտանի արդար արժանի ինձ, եկեսցէ և փառաւորեսցի և լուսաւորեսցի առաւել քան զարեգակն։ Յայնժամ դարձցին սիրտք բնակչաց աշխարհիս այսորիկ յայլ բարիս. շիջեսցի և բարձցի չարն, և անցցէ նենգութիւն. և յամօթ լիցի թերահաւատութիւնն. ծաղկեսցեն հաւատք. յայտնեսցի ճշմարտութիւն որ կայր մնայր մինչև ցայժմ առանց պտղոյ յայսչափ ամս. կորիցէ ստութիւն, և երևեսցի անապականութիւն. վախճանեսցի ապականութիւն, և այնպէս եկեսցէ հասցէ կատարած աշխարհիս։

Զայս իբրև ասաց ցիս՝ իբրև զտեսիլ փայլատականց երևեցան ինձ փառքն Աստուծոյ, և տեղին յորում կայի շարժէր սակաւ մի. և սկսայ խռովել, և ոչ կարէի հանդուրժել փառացն. և ըմբռնեաց զիս երկիւղ. եկն հրեշտակն և զօրացոյց զիս։ և ասաց ցիս. Մի երկնչիր և մի զարհուրիր. երանի է քեզ՝ զի գտեր շնորհըս ի հզօրէն. գիտացի զուղղութիւն սրտի քո, և զսըրբութիւն անձին քո, զոր ունէիր ի մանկութենէ քումմէ. և վասն այնորիկ արժանի եղեր բարբառոյն Աստուծոյ, և խորհրդոցն ընդերկար ժամանակաց. պահեա դու այլ ևս աւուրս եւթն, և յայտնեսցէ քեզ աւելի ևս քան զայս։

Եւ եղև յետ այսորիկ և պահեցի զեւթն օր. և դարձեալ սիրտ իմ խռովէր՝ և սկսայ առնել առաջի բարձրելոյն. և ասեմ. Տէր Աստուած իմ, դու արարեր զերկինս և զերկիր և զամենայն որ ի նոսա. դու հրամայեցեր ծագել լուսոյ, որոշեցեր ի. խաւարէ, և կոչեցեր զնա տիւ, և որ խառնէրն ընդ բազմութեան ջուրցն ընդ երկրի՝ դու բաժանեցեր և որոշեցեր զերկիր ուրոյն մեկուսի. մասն մի ջրոյն յանդունդս ի ներքինս որոշեցեր՝ հաստատեալ զերկիր ի վերայ նորա. և մասն մի ի վերոյ քան զերկինս կացուցեր, որոյ ի ներքոյ նմանութիւն ձեղուան ձգեցեր, և սահմանեցեր զհաստատութիւն. և որ մնացեալ էր ժողովս ջուրց,

աւազով պարսպեցեր և արգելեր. քանզի յառաջ էին խառնակ ընդ միմեանս, յորոյ վերայ Հոգին շրջէր, և խաւար ունէր այնչափ. և չեւ եւս էր երկիր, քանզի բարբառ մարդոյ չեւ եւս էր. Հրամայեցեր մառչել ճառագայթից լուսոյ, որով երեւեցին գործք քո զարմանալիք: Իսկ յերկրորդումն աւուր զհաստատութիւն երկնից անջրպետեցեր, և բարձրացուցեր ի բարձունս. և Հրամայեցեր ջրոցն ներքնոց՝ մասին միոյ անջրպետել ի միմեանց. զի մասն մի նորա ի վեր անջրպետեցի, և մասն մի նորա ի խոնարհ մնացէ: Եւ դարձեալ յերրորդում աւուրն որ մնայ, զերկիր հաստատեցեր՝ բղխել ի նմանէ զբանջար սերմանեաց և զծաղիկս խոտոց, և զտունկ ծառոց պտղաբերս. և բղխեաց զազգի ազգի բազմութիւնս՝ զսերմանիս ի կերակուր զօրութեանց. և զխոտս անոյշ ի քաղցրութիւն քմաց. և զպտուղս ծառոց յանոյշ ճաշակս: Եւ ի չորրորդում աւուրն Հրամայեցեր արեգական լինել, լուսաւորել, և սնուցանել զաճումն և զբղխումն երկրի. Նոյնպէս և զլուսին լուսաւորել զխաւար գիշերոյ, և մեկնել զփոփոխմունս ժամուց և զընթացս ժամանակաց: Իսկ ի հինգերորդումն աւուր ասացեր երկրի բղխել զեռունս կայտառ շունչ կենդանի, և թռչունս ազգի ազգիս: Եւ եղեւ բազմութիւն կերպարանաց կարգել գեղեցիկ գունովք և ազգի ազգի տեսլեամբք առ ընտրութիւն. սոյնպէս և ծով բղխեաց բազմութիւն ձկանց. զմեծամեծս ի նոցանէ ի վայելել կերակրով յագման. և զմանունս առ ի յաճումն: Եւ դարձեալ ի վեցերորդում աւուրն բանիւ Հրամանաւ քով բըղխեաց երկիր զչորքոտանիս, զսողունս և զթռչունս: Եւ յետ սոցա զտէրն տէրունական ձեռօք ստեղծեր զմարդն, և ի նման քաղաքի տնկեցեր զդրախտն, և եդիր զնա ի ներքս. և որպէս ոք որդւոյ իւրում զամենայն ինչ առաջի արարեր նմա ի վայելել, և ի քաղցրութեան և ի փափաքման՝ այնպէս ամենայն կերպարանօք զարդարեցեր զդրախտն, իբրեւ ժառանգորդի ի ձեռս ետուր զոր ի հողոյն ստեղծեր, և շնչով կենդանացուցեր. և ի կողից նորա զկին նորա ստեղ-

ծեր բնակել ընդ նմա. և խօսակից յարգահատել ազգի մարդկան, զարդարեցեր զնա կամօք ազատութեան և յօժարութեան, իշխան և թագաւոր ի վերայ ամենայնի որ ի քէն եղեալ էին ի վերայ երկրի կացուցեր զնա. այլ և յերկրաւոր սպասաւորէն ոչ արարեր զնա կարօտ, և իբրև զգիրս պատուոյ և ընտրութեան ետուր նմա զպատուիրանն, զոր ընկէց ի ձեռաց՝ և ել ի դրախտէն փափկութեան, օտարացաւ յանապականութենէն, և արժանի եղև աշխատութեան, և սպառնացեալ հրամանացն ի ձեռն մահու մատնեցաւ. հող էր և ի հող դարձաւ, և ի նմանէ ամենեքեան մեք մարդիկ սերմանեցաք: Զայս ամենայն տացի առաջի քո, զի տեսցեր զհեթանոսաց թէ չեն ինչ և յոչինչ համարեցան. և նմանեալ են փշրեալ ապակւոյ՝ և շթոց անձրևաց յանօգուտ. զիա՞րդ իշխեն հեթանոսք ժողովրդեան քում ընտրելոյ, և զծառայի քո Աբրահամու կոխել զզաւակ և զժողովուրդ քո զոր ընտրեցեր. և կոչեցեր ընտրեալ զոր անուանեցեր սեփհական. որում խոստացար տալ ի վիճակ ժառանգութեան զերկիրն բարեաց և զաւետեաց, և մատնեցեր ի ձեռս անպիտան հեթանոսաց զժողովուրդն և զերկիրն խոստմանց: Զի եթէ ժողովրդեան քում խոստացար տալ, զիա՞րդ հեթանոսք որ ոչ ընկալան զօրէնս, առին զնա ի վիճակ ժառանգութեան. և մեք ի պանդխտութեան գերի վարեալք հնազանդիմք ընդ նոքօք, և իշխեն ի վերայ մեր:

## ԳԼՈՒԽ Դ.

Եւ եղև իբրև կատարեցի զբանս զայսոսիկ, առաքեցաւ առ իս հրեշտակն այն որ յառաջն խօսեցաւ ընդ իս, և ասէ ցիս. Եզրա, արի և լուր զոր խօսելոց եմ ընդ քեզ: Յարեայ և կացի և ասեմ. Խօսեաց: Եւ ասէ ցիս. Ծով եթէ կայցէ յընդարձակի տեղւոջ, և

մուտն իւր իցէ ի նեղ, զի եղիցի նա նեղ գետոյ նման. եթէ ոք կամեսցի մտանել ի ծովն և տիրել ի վերայ նորա, ապաքէն եթէ ոչ նախ ընդ նեղն անցանիցէ՝ զիա՞րդ կարասցէ մտանել ի լայնութիւն նորա: Եւ կամ գործեալ յաւտն քաղաք մի զարդարեալ, և գեղեցկացուցեալ ամենայն բարեօք. և մուտ նորա իցէ ի նեղ, և նուրբ, և դժուարատեղիք. իբրու թէ յաջմէ կողման իցէ հուր, և ի ձախմէ ջուր խոր յոյժ, և ճանապարհ մի միայն ընդ մէջն անցանիցէ հրոյն և ջրոյն. մի ինչ այլում ումեք լինել տեղի, բայց միայն շաւիղ ոտին մարդոյ. եթէ ոչ որ կամեսցի զնա ժառանգել, անցանիցէ նախ ընդ նեղն, ոչ կարէ ըմբռնել զժառանգութիւնն: Եւ ես ասացի, թէ այդպէս է: Եւ պատասխանի և ասէ ցիս. Ըստ նմին օրինակի տացի Իսրայէլի մասն ժառանգութեան. զի վասն մարդկան արար Աստուած զաշխարհս զայս և եդից զնա ամենայն բարութեամբ, և ետ նոցա օրէնս. զի որով վարեսցին և թագաւորեսցեն թագաւորութիւն բարի և զգաստ և ամբիծ. իսկ նոքա ոչ պահեցին, այլ մերժեցին զնա. և բարձրեալն եդ ի մտի մերժել զնա, որ ապստամբ եղեն ի նմանէ. վասն այսորիկ մուտ աշխարհիս այսորիկ խիստ են և դժուարին և լի տառապանօք. զի թէ նախ մտցեն ընդ նեղ և ընդ նուրբ շաւիղ աշխարհիս այսորիկ. և մեռեալքն չերկայնմտիցեն, ոչ ընկալցին զպատրաստեալ նոցա բարիսն որ յառաջ քան զաշխարհս էր: Բայց դու մի՛ չփոթիր զի մահկանացու ես, և մի՛ խռովիր զի ապականելոց ես, այլ հպեա առ մօտաւորն, և դիր ի մտի քում որ առ յապայն լինելոց իցէ: Եւ ես ասացի. Ապա ուրեմն արդարք ժառանգեն զբարիս. և վասն այնորիկ բարւոք համբերեն մտանել ընդ նեղ և ընդ նուրբ ճանապարհն. իսկ որ տկարքն են և սրբութեամբ զկեանս իւրեանց ոչ անցուցանեն, և զփորձ նեղութեան ոչ գիտէին, ի մշտնջենաւոր բարութեանցն հեռացան: Եւ ասէ ցիս. Եւ ես քեզ ասեմ, եթէ ոչ ես դու լաւ քան զբարձրեալն, և ոչ քաղցր քան զԱստուած, և ոչ մարդասէր քան զնա. կորիցեն ամենեքեան որ ան-

ցանեն զպատուիրանաւն Տեառն, քան թէ արհամարհեացին օրէնքն Աստուծոյ։ Պատուիրելով պատուիրեաց Աստուած մարդկան թէ զի՞նչ արասցեն, և կեցցեն, եթէ զի՞նչ պահեսցեն և մի՛ տանջեսցին։ Իսկ նոքա յամենայնէ հրաժարեցին. և ի վերայ այսր ամենայնի ասացին թէ ոչ բարձրեալն է, և ոչ հատուցումն բարեաց և չարեաց գործոց. զճանապարհս իւրեանց խոտորեցին, և զօրէնս նորա մերժեցին. և զհրամանս նորա անարգեցին, և ուրացան զուխտ նորա, և ի բանից սրբոց նորա թերահաւատեցին, և զընտրեալս նորա արհամարհեցին, և վասն այսորիկ լուր դու Եզր. ունայնութիւն ունայնից եւ լիութիւն լիոց. ահա եկեացէ ժամանակ, յորում եղիցի նշանն որ յառաջին ասացաւ քեզ. յայտնեսցի քաղաքն որ այժմ ոչ երեւի, և ամենայն ծունր ի վերայ երկրի սողեսցի. և ամենայն որ գտցի անբիծ տեսցէ զփառս բարձրելոյն. յայնժամ երեւեսցի օծեալն Աստուծոյ՝ յայտնի մարդկան, և ուրախ արասցէ զմնացեալսն ի հաւատս և ի համբերութեան, և ամենեքեան կանգնեսցին որ թաղեալն են յերկրի ձայնիւ տեառն. և կայցեն առաջի հզօր դատաւորին, և եկեսցեն հասցեն կեանքն որ ոչ երեւին. և անցցէ ապականութիւն և դադարեսցէ ողորմութիւն, և պարապեսցեն գթութիւնք, և խափանեսցին դրունք ապաշխարութեան, յինքն ամփոփեսցի երկայնմտութիւն, և հաւատք ցուցցեն զպտուղ իւրեանց։ Եւ յետ գործոց վարձք իւր և արդարութիւն ծաղկեսցէ. և յայնժամ երեւեսցի տեղի հանգստեան սրբոցն, և ճշմարիտ դրախտն փափկութեան, և դէմ յանդիման սոցին բովք հրոյ և տանջանք յաւիտենից, և որդն անմահ, զոր պատրաստեալն է ամբարշտաց և անօրինաց։ Եւ յայնժամ ասիցէ բարձրեալն ցարդարսն. Տեսէք զտեղին հանգստեան ձերոյ զոր պատրաստեալն էր ձեզ ի սկզբանէ արարածոց. մտէք այսուհետեւ և հանգերուք, և խայտացէք իբրեւ զորթս արձակեալ ի կապոյ։ Եւ ասասցէ ցամբարիշտսն և ցանօրէնսն. Տեսջիք և խմասջիք զիս որում ոչն ծառայեցէք, և կամ յորմէ ուրացայքն, և կամ զոր օրէնս

արհամարհեցէք. հայեցարուք որ առաջի կայ ձեզ պատրաստեալ արդարոցն փափկութիւն, և ձեզ ամբարըշտաց հուրն և տանջանք յաւիտենից։ Եւ եղիցի օրն դատաստանի այսպիսի. ոչ արեգակն կացցէ լուսատու և ոչ լուսին, և ոչ աստեղք պայծառացեալ, և ոչ ամպք հովանաւորք, և ոչ որոտումն նշանաւոր ժամանակաց, և ոչ հողմ զովացիկ, և ջուր ի ծարաւ հանգստեան, և ոչ հողմ քաղցրախառն և ոչ երեկոյ ի հանգիստ վաստակոց, և ոչ գիշեր ի դադարել աշխատութեանց, և ոչ աջողութիւն գործոց ի յօժարութիւն. և ոչ հասարակ օր ի ճաշակումն կերակրոց. ոչ ձմեռն ի գործ երկրի պատրաստութեան. ոչ գարուն ի ծնունդ երկրի պարարտութեան. ոչ յամառն տօթ, և ոչ աշուն ի խնամ ածել պտղոյ (հասնոյ). ոչ կարկուտ ի բռնութենէ օդոց, և ոչ անձրեւ յաճումն ծառոցն, ոչ ցօղ ի մխիթարութիւն տնկոց, և ոչ առաւօտ որ նշանակէ զլոյս տուընջեան, և ոչ ղամբար գիշերոյ խաւարի յայտնիչ, բայց միայն պսակ փառաց արդարոցն ուրախութիւն։ Իսկ ամբարշտացն՝ հուրն անշէջ, և աղջամուղջ յաւիտենից, և տանջանք մշտնջենաւորք. այս է դատաստանն։ Ետու պատասխանի՝ յոգւոց հանելով և ասեմ. Երանի է նոցա որ սակաւ ժամանակս համբերեցին վասն բարձրութեան փառացն, և եղուկ մեզ՝ որ առ սակաւ ժամանակս արարաք զկամս մարմնոյ մերոյ, և ի տանջանս յաւիտենից մտանեմք, և յանշէջ հուրն տանջիմք հանապազ. լաւ էր թէ չէաք իսկ ծնեալ։ Ո՞վ ի մարդկեղէն կենդանեացս ոչ մեղաւ. և կամ ո՞վ ի ծնելոցն ոչ անց զհրամանաւ նորա. որպէս տեսանեմս՝ սակաւուց է այն աշխարհ յուրախութիւն. և բազմաց ի տանջանս, զի ամենեքեան առ հասարակ անօրէնութեամբք թաթաւեալ եմք, գնացաք զճանապարհս կորստեան և զշաւիղս մահու, և հեռացաք ի ճշմարտութենէ կենացն։ Ետ պատասխանի և ասէ ցիս. Դու ասացեր թէ սակաւք են արդարք, և բազումք են ամբարիշտք. և արդ լո՛ւր առ այս. Ականս պատուականս թէ ունիցիս՝ ապաքէն զամենայն ինչ ըստ նոցա արժանաւորութեանն պատրաս-

տեսցես զնիւթն. միթէ որ անարժանն իցէ՝ նոցա նմա՞ն
համարեսցիս, և կամ նման կապարոյ, և կամ խեցւոյ
և կամ այլ իմիք նման: Եւ ասացի. Ոչ: Եւ ասէ ցիս.
Ասա՛ դու ցերկիր. ընդէ՞ր որպէս զխեցին շատ ծնանիս,
նոյնպէս և զոսկին ոչ բղխես. և նա պատասխանի տացէ
քեզ և ասիցէ. քանզի յաճախ է խեցին քան զերկաթն,
և երկաթն քան զկապարն, և կապարն քան զպղինձն,
և պղինձն քան զարծաթն, և արծաթն քան զոսկին,
և ոսկին քան զականս պատուականս. ընտրեա՛ այսու֊
հետեւ, և տես թէ ո՛ր պատուական է և ցանկալի:
Եւ ասացի, թէ՝ Ո՞վ ոք ո՛չ գիտէ թէ սակաւն և նո֊
ւազն է ցանկալի: Եւ ասէ ցիս, թէ որպէս մարդ֊
կան թուի նուազն՝ պատուական և ցանկալի, նոյն֊
պէս և բարձրելոյն սակաւ արդարք պատուական են.
և ուրախ լինի ի վերայ սակաւուցն, որ փառաւորե֊
ցին զանուն նորա ի վերայ երկրի, և ի ձեռն նոցա
անուն նորա օրհնի և գովի. վասն այնորիկ ծաղկեա֊
ցեն արդարքն, և փառաւորեսցին առաջի Աստուծոյ:
Իսկ բազմամբոխն անխրատ՝ մրրկի նմանեսցէ, և
պատրաստեալ է հրոյն բորբոքելոյ. եղիցին երեսք նո֊
ցա յամօթ և յանարգանս: Եւ զայս մինչդեռ խօսէր
ընդ իս, ես հանի յոգւոց և խռովէի, և նուաղէր յիս հո֊
գի իմ, և ասէի. Ո՜վ երկիր, ընդէ՞ր ծնար զմարդն, զի
ի տանջանսն յաւիտենից մատնեցաւ. վասն այսորիկ
սգասցէ ազգ մարդկան, և ցնծայ գազան վայրի, և կո֊
ծեսցին ամենայն ծնունդք բանաւորաց, և ուրախ լի֊
նիցին ամենայն չորքոտանիք. յոյժ լաւ է նոցա քան
մեզ, զի ոչ յարութեան ակն ունին, և ոչ դատաստա֊
նաց ահան: Մեզ զի՞նչ օգուտ է եթէ ի դատաստան
մտանեմք և ի տանջանս անդադարս. երանի՛ թէ չէր
մեզ յարութիւն, զի յաւիտենից տանջանացն ապրէաք:
Եւ զայս մինչդեռ զմտաւ ածէի, և ասէ ցիս. Իսկըդ֊
բանէ արարածոց յառաջ քան զմարդն լինելոյ ի վե֊
րայ երեսաց երկրի, յառաջագէտն բարձրեալն յա֊
ռաջագոյն պատրաստեաց զտեղի փափկութեան, և
զտանջանաց. իմա՛ց այսուհետեւ, զի ունէին օրէնս ո֊
րով կարէին ապրել՝ և ոչ պահեցին, այլ արհամար֊

հեցին. զի՞նչ պատասխանի ունիցին տալ յաւուրն վախճանի, զի այնչափ ժամանակս երկայնամտեաց բարձրեալն, և նոքա արհամարհելով կորուսին զանձինս իւրեանց: Եւ տու պատասխանի և ասեմ ցհրեշտակն Ցեառն. խնդրեմ ի քէն, Տէր, ասա ինձ, եթէ յետ մահու յորժամ պահանջի ի մէնջ զիւրաքանչիւր զոգիս մեր. երթայցե՞մք ի տեղի տանջանաց, եթէ յանդորրութեան լինիցիմք մինչեւ ցօր դատաստանին, եթէ յայսմ հետէ մտանիցեմք ի տանջանս: Ետ պատասխանի և ասէ. Առացից և զայս քեզ. դու մի՛ հաշուիր զքեզ ընդ մահապարտսն. զի քեզ և նմանողաց քոց պատրաստեալ է գանձն լի բարեօք, որ ոչ յայտնեացին քեզ, մինչեւ ի վախճան ժամանակաց: Լո՛ւր այսուհետեւ վասն որոց հարցերդ, այսպէս է բանն. զի յորժամ հրաման մահու ելանէ յառաջ քան զմարդոյն ոգիս հանելոյ, անդէն վաղվաղակի բաժանի շունչն ի մարմնոյն, և երթայ ի տեղի որոշմանն իւրոյ. և եթէ իցէ լի գործովք բարեօք, և պահեալ զպատուիրանս բարձրելոյն. և յորում ժամանակի էր յապականական ի բնական մարմնոյն բնութեան, ծառայեաց ամբծութեամբ ի հաստատութեան յամենայն ժամու վշտաց. նա ցնծայ և ուրախ լինի ի հանգստեանն յեւթնեկեան ճանապարհին: Առաջին ճանապարհն՝ որ բազում աշխատութեամբ ճգնեցաւ առ ամենայն մեղս: Երկրորդ ճանապարհն՝ տեսեալ զպատրաստական զմեղացն զտանջանսն: Երրորդ ճանապարհն՝ վկայութեանն զոր վկայէ նմա Աստուած, եթէ մեծ հաւատովք պահեաց որ տուան նմա օրէնքն: Չորրորդ ճանապարհն՝ յորում յայտնին նմա պատրաստեալ բարիքն, եթէ որպէս ընդ հրեշտակս ի բազում խաղաղութեան սպասաւորեալ պահի: Հինգերորդ ճանապարհն՝ փառաւորեալ է ուրախութեամբ. զի մերկացաւ զապականութիւն, և այնուհետեւ ընդ հրեշտակս հաշուի ժառանգել զանվախճան լոյսն: Վեցերորդ ճանապարհն՝ յորում ցուցանի թէ որպէս երեսք իւր լուսաւորին իբրեւ զարեգակն, և ոչ այնուհետեւ ապականութեամբ մթանան: Եւթներորդ ճանապարհն՝ որ ի վեր է քան

զամենայն ճանապարհս, յորում պարծի վստահութեամբ և համարձակութեամբ, ոչ ամաչելով և կամ պատկառելով, այլ ցնծալով փութայ տեսանել զերեսս Աստուծոյ. որպէս ծառայեաց ամբծութեամբ ի կենդանութեան, որով և փառաւորելոցն է. և ընդունելոց է զվարձս հատուցմանն։ Այս են ճանապարհք հոգւոցն արդարոցն։ Իսկ ամբարշտացն հոգիք, և որք ոչն պահեցին զպատուիրանն բարձրելոյն, և արհամարհեցին զօրէնս նորա. և գարշեցան ի ծառայից նորա. նոքա ո՛չ մտցեն յաւիտեան ի տեղի հանգստեան, այլ վաղվաղակի որոշեալ հոգիքն ի մարմնոյն տրտմութեամբ և վշտօք ընդ եւթն ճանապարհ մտցեն ի տանջանսն յաւիտենից։ Առաջին ճանապարհն՝ զի թողին զօրէնս և փոխեցին զհրամանս բարձրելոյն։ Երկրորդ ճանապարհն, զի ո՛չ կամեցան դառնալ և ապաշխարել մինչդեռ յայսմ աշխարհի էին։ Երրորդ ճանապարհն՝ յորում նեղին տեսանելով զարդարսն ի հանգիստն, և զիւրեանց տանջանսն։ Չորրորդ ճանապարհն՝ որ կայ և մնայ ի վախճան ժամանակաց ի մըշտընջենաւոր հուրն։ Հինգերորդ ճանապարհն՝ յորում տեսանեն զայլոց հանգիստ հաճոյ բարձրելոյն, և պահպանեալ ի հրեշտակաց ապաստաւորութեան և յանբըծութեան յոյժ։ Վեցերորդ ճանապարհն՝ որ տեսանեն յայնմ հետէ զպատրաստեալ արքայութիւն սրբոց՝ և զիւրեանց անձանցն ամենեւին զկորուստն։ Եւթներորդ ճանապարհն՝ որ է քան զամենայն ճանապարհս ի վեր՝ յորում հաշին և մաշին ամօթով և անարգանօք, և պաշարեալ են խմաստութեամբ և երկեղիւ. իբրեւ տեսանեն զճանապարհս բարձրելոյն որոյ առաջի մեղան կենդանիքն ի մարմնի, և առաջի արդարոցն տանջելոց են։ Եւ ասէ պատասխանի և ասեմ. Տացի՞ ժամանակ հոգւոց առ տեսանել թէ որպէս տանջիցին յետ հրաժարելոյ նոցա ի մարմնոյ անտի։ Եւ ասէ ցիս. Տացի ժամանակ, ո՛չ անդորրութեան՝ այլ տանջանաց. զի ի տեղիս խոշտանգանաց արգելեալ են մեղաւորաց ոգիք, և պահին ի տանջանս ահաւոր հրեշտակաց մինչեւ յօրն յանդիմանութեան և դա-

տառապանաց և հատուցման բարւոյ և չարի։ Ասացի. Խնդրեմ ի քէն՝ ներեա՛ ինձ և զայս հարցանել. Եւ արդ՝ յաւուրն դատաստանի կարիցե՞ն արդարքն հրաժարեցուցանել զամբարիշտն, և կամ տանել յաղաչանս վասն նոցա, որպէս հարք վասն որդւոց, և կամ որդիք վասն հարց. և կամ եղբարք վասն եղբարց, կամ ազգ վասն ազգի, և կամ սիրելիք վասն սիրելեաց։ Եւ պատասխանի ետ և ասէ ցիս. Մի՛ ոք խաբեսցի յայսմ. զի յաւուրն դատաստանի անաչառութիւն լինի. և ամենայն ճշմարտութիւն կնքեսցի. զի զոր օրինակ ո՛չ ոք զոր առաքեսցէ զոմն ի մեռանել ընդ նորա, կամ ի քուն կալ, կամ հիւանդանալ, կամ յուտել կամ յըմպել, նոյնպէս և ո՛չ այն ժամ ոք կարասցէ վասն ուրուք պաղատել. և կամ զոք հրաժարեցուցանել ի տանջանաց. իւրաքանչիւր իւրեանց գործքն բարեխօսեն։ Ետու պատասխանի և ասեմ. Զիա՞րդ գտանեմք, զի եթէ Աբրաամ աղաչեաց զԱստուած վասն Գոմորայ և վասն տան նորա, և Մովսէս վասն հարցն մերոց՝ որ մեղան յաւուրս նորա, և Դաւիթ վասն հարուածոց ժողովրդեանն, և Սողոմոն վասն սրբութեան, և Եղիա վասն գալոյ անձրեւին, և Եղիսէ վասն կենաց մեռելոյն, և Եզեկիայ վասն ժողովրդեանն յաւուրս Սենեքերիմայ, և վասն իւրոյ առողջութեան, և այլք վասն այլոց. զի թէ յորժամ ապականութիւն զարգանայր և անիրաւութիւն աճէր, խնդրեցին արդարքն վասն ամբարշտացն յԱստուծոյ, և ընկալան. ընդէ՞ր յայնժամ այս ո՛չ լինի։ Եւ պատասխանի ետ և ասէ ցիս. Յայսմ աշխարհի եթէ խնդրեսցեն արդարք՝ առցեն. քանզի յօգուտ է նոցա ապաշխարութիւն վասն որոյ բարեխօսեն. զի յաշխարհս այս կատարման է, և ո՛չ փառաց։ Իսկ յայնմ աշխարհի՝ կենաց, յորում անցանէ կարգ ապաշխարութեանն, և վախճանեալ է ապականութիւն, և լուծեալ է աղքատութիւն, և խափանեալ են հաւատք, և զարգանայ արդարութիւն, և ծագէ ճշմարտութիւն, ո՛չ ոք կարէ ողորմել, որ վասն իւրոց յանցանաց գործոցն է ի տանջանս և ի դատաստանի։ Եւ ասացի ցնա. Ո՞չ ի սկզբանէ իսկ ասացի զայս, եթէ լա՛ւ

էր՝ եթէ չէր իսկ ծնեալ ի վերայ երկրի, քան թէ վաղվաղակի կորուսեալ. զի՞նչ օգուտ իցէ մարդոյն, եթէ հասեալ իցէ ի բազում ժամանակս, և կեանքն տրտմութեամբ իցեն, և յետ մեռանելոյն՝ ակնունիցի տանջանաց. մեզ զի՞նչ օգուտ իցէ մեղաւորաց, եթէ խոստացեալ իցէ յարութիւն յետ մահու. և մեք արժանի մահու գործս գործեցաք. զի՞նչ օգուտ իցէ մեզ, եթէ արդարոցն պատրաստեալ իցեն անճառ բարիքն, և մեզ մեղաւորացս ամօթ. զի՞նչ օգուտ իցէ մեղաւորացս, եթէ շտեմարանք բարեա՛ց՝ արդարոց են, և մեք մոլորեալք եմք չարեօք. զի՞նչ հաղորդութիւն իցէ մեր ընդ յուսոյն բարեաց որ գանձեալն է բարեաց. մեք ընդ դժուար ճանապարհ գնացաք. զի՞ առնէ մեզ, եթէ երկնաւոր դրախտն պատրաստեալ իցէ անբծացն, որոյ պտուղն անթառամ է. յորում կայ փափկութիւն և ցնծութիւն անվախճան, թէ մեք ո՛չ մտանիցեմք. և յորժամ արդարոցն երեսք լուսաւորեսցին իբրև զարեգակն, և մեր երեսք մթասցին իբրև զգիշեր աղջամղջին. արդարև իսկ ո՛չ երբէք ածաք զմտաւ ի կենդանութեան եթէ զի՞նչ ունիցիմք յետ մահուն կրել: Ո՜վ Ադամ զի՞նչ գործեցեր. դու միայն մեղար, և քեզ միայնոյ չեղեւ վիշտ, այլ առ հասարակ ամենեցուն որ ի քէն ծնան: Ետ պատասխանի և ասէ. Աշխատեսցին յերկրի մերժել զչարն, զի մի՛ կրեսցեն զայն զոր ասացին. այլ մերժելով ըզչարն՝ ընկալցին զբարիս, առ մարդկանէ ընտրել ըզկեանս և զմահ: Քանզի Մովսէս ասաց զայս նոցա, և նոքա ոչ հաւատացին նմա, և ամենեցուն յետ նորա մարգարէից, և Աստուած որ խօսեցաւ ընդ նոսա:

Ետու պատասխանի և ասեմ. Գիտեմ և այդպէս հաւատամ, եթէ յողորմել ողորմած է բարձրեալն և ի գթալ գթած է՝ որք դառնան առ նա. երկայնամիտ է որք մեղանչենն. և պարգեւիչ, քանզի յօժար է և ի շնորհել և ի թողուլ զյանցանսն. զի՞նչ շահ իցէ բարձրելոյն, եթէ կորիցեն այնչափ ոգիք զոր արար, և սակաւ ոգիք միայն մի՛ կորիցեն. գիտեմ զի

բազումողորմ է. եթէ ո՛չ ողորմեսցի, ոչ կարէ ապրել ամենայն մարդ. Նոյնպէս և շնորհիչ է, եթէ ո՛չ շնորհեսցէ և թեթևացուսցէ զմեղս մեր իւրով մարդասիրութեամբն, ո՛չ կարասցէ ամենայն մարմին ապրել: Դատաւոր է որ յանդիմանէ և դատէ, և յետ յանդիմանութեան չմեղադրէ. զի թէ ո՛չ մեղադրիցէ և տանջիցէ զբազմութիւն ստահակութեան, ո՛չ մնասցէ յամենայն բազմութենէ արտաքս քան զսակաւսն. և ո՞ւր իցէ ողորմութիւն Նորա զոր խոստացաւն, կամ գթութիւն, կամ քաղցրութիւն, կամ մարդասիրութիւն. ո՞ւմ օգուտ իցէ այն, եթէ ոչ տառապեալ մեղաւորացն: Մինթէ վասն ա՞յնորիկ ստեղծ զայնչափ ոգիս՝ զի կորուսցէ. քաւ լիցի. որ գիտութեամբ լի է, չգիտիցէ՞ թէ զի՞նչ գործիցէ մարդն՝ յառաջ քան զծնանելն Նորա. և զամենայնի Նա գիտակ է յառաջ քան զլինելն Նորա:

## ԳԼՈՒԽ Ե.

Ես պատասխանի և ասէ ցիս. Որ ի վեր է քան զքեզ մի՛ խօսիր զայն, և մի՛ կեղծաւորիր առաջի Աստուծոյ. որ հրամայեալ է քեզ զայն իմաց: Զայս աշխարհս վասն բազմաց արար, իսկ զայն վասն սակաւուց. զի թէպէտ և յառաջգիտութիւն առ ի Նմանէն բազում է, այլ զինքնակամ կամսն շնորհեաց մարդկան՝ զգործոյն գիտութիւն, զի գիտասցեն զոր գործենն՝ թէ ո՛չ տանջին. ընդէ՞ր որք զնոյն մարմին ունին, և զնոյն ախտ շարժմանցն՝ և արդարոցն ոչ նմանեցին, ոչ միայն զնոցա ճանապարհն ոչ գնացին, այլ և արհամարհեցին զնոսա, և գարշեցան ի վարուց նոցա. վասն այնորիկ բարձրեալն սակաւս պահեաց յայն յաշխարհ: Աւացից քեզ և առակ մի, և պատասխանի տո՛ւր ինձ. Թէ խնդրեսցես զերկիր տալ քեզ՝ երկիր որ բղխէ տեսիլ պատուականս և մեծագնի. և տացէ քեզ երկիր որ

տանէ տեսիլս ազգի ազգի, որպէս զպատուականն սա-
կաւ, և զանարգն կրկին. ո՛չ նստիցես ընտրիցես քեզ
զպատուականն, և զանարգն ի բաց ընկենուցուս: Ի-
մացայ այսուհետև եթէ ճշմարիտ է օրինակդ. և ա-
սացի թէ ուղիղ է. և սկսայ ասել ընդ միտս իմ.
Ո՞վ անձն իմ, փայելեա որպէս և կամիս. և ցածո՛ ըզ-
միտս երկիր՝ զի լուիցես, և երթիցես ուր ո՛չ կամի-
ցիս. զի ո՛չ եթէ քեզ տուեալ է կամ պատրաստեալ՝
բարիքն վայելչութեան. բայց զայս միայն սակաւ ժա-
մանակս կենաց: Եւ եդի ի մտի դարձեալ ասել բանս
ինչ առաջի բարձրելոյն, եթէ որպէս տացէ մեզ սեր-
մանիս արդեանց, յորում լինիցի մեզ պտուղ. և կամ
որպէս բերիցէ ամենայն տեղի ապականեալ՝ արդիւնս
բարեաց գործոց՝ և ապրեսցէ, թէպէտ և ոչ տայցէ:
Գործ եմք ձեռաց նորա, և վասն այնորիկ արժանի
եմք ողորմութեան նորա, զի աստ կենդանացուցանէ
զմեզ. յա՛յտ է յորոց յարգանդին ստեղծու հանապազ
զմարդն. և տայ կենդանութիւն և կերակուր, նոյն-
պէս և տնտեսութեամբ ազգի ազգի սերմանցն գի-
նով և ձիթով, հրով և ջրով, իննամսեայ ժամանա-
կաւ ի բնութեան յարգանդի մօրն ծնանի զմանուկն,
իմաստութեամբ մատակարարէ նմա և զգուշութեամբ
պահէ զնա. և յորժամ հատուցանէ և տայ ի ժա-
մանակի իւրում զտղայն, զոր նա հրամայեաց ծնանել,
ի դիել զկաթն մինչև ցժամանակ մի, և յետ այնո-
րիկ վարել նմա իւրով իմաստութեամբ, և կերակրել
բերովք պտղոյ իւրոյ. և խրատէ զնա իւրովք օրինա-
կօք. և առ սակաւ սակաւ աճեցուցանել ի նմա զի-
մաստութիւն և զգիտութիւն ամենայն չարեաց և բա-
րեաց, և որ չեն նոյնպէս. և յետ այսր ամենայնի
մեռուցանէ զնա. այնպէս ունի իշխանութիւն ի վե-
րայ գործոց իւրոց. իսկ ապա թէ կորուսցէ զնա յայն-
չափ ժամանակս ստեղծեալ և ծնեալ աշխատութեամբ
և ցաւօք և վաստակօք, սնուցեալ, և խրատեալ դիւ-
րին կարգօք՝ զի՞նչ օգուտ իցէ: Եւ մինչդեռ զայս խոր-
հէի, բացի զբերան իմ և սկսայ աղաչել զբարձրեալն՝
և ասէի. Տէր Աստուած, իբրև զԱստուած քում գոր-

ծոց ողորմեա՛, և քում արարածոց. և օգնական լեր քում ստացուածոց, և աւելի ևս քում ժողովրդեանն. վասն որոյ ես սգամս, և ժառանգութեան քում, վասն որոյ ես տրտմեալ եմ. և ազգիս Իսրայելի, վասն որոյ ես սգամ, և զաւակի Աբրահամու, վասն որոյ ես խռովեալ եմ. Հայեա ի մեզ, և Հաշուեա զմեզ, և զյանցանս մեր. զի լուայ ես զանխնայութիւն մեծ, զոր առյապայն լինելոց իցէ. վասն այնորիկ արարիչ ամենայնի երկայնամիտ բարձրեալ՝ լուր ձայնի իմում, և ունկնդիր բանից իմոց զոր խօսիմս առաջի քո, յաղօթս կալ առաջի քո։

## ԱՂՕԹՔ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵԶՐԱՅ

Որ բնակեալդ ես յաւիտեան, որոյ աչք զամենայն ինչ հաւաստեաւ տեսանեն և քննեն, և վերնայարկք իւր յօդս. որոյ աթոռ անճառ, և փառք անպատում. զորով շուրջ կան բազմութիւնք զօրաց հրեշտակաց՝ երկիւղիւ պաշտել, և հրամանաւ նորա և բանիւ զոգիս ի հուր դարձուցանէ. որոյ բանն անշարժ և հզօր, զամենայն յօրինէ ըստ իւրաքանչիւր կարգի, որոյ հրամանն սաստիկ, և կարգն ահաւոր, որոյ հայելն ցամաքեցուցանէ զանդունդս, և բանն սպառնալեաց՝ պատառէ զերկիր. զամենայն զոր կամի յոչընչէ ստեղծու, և զեղեալն զօրութեամբ փոխէ. որոյ ճշմարտութիւն վկայէ։ Լո՛ւր ձայնի ծառայի քո, և ունկնդիր խնդրուածոց պաշտօնէի քում, անսա՛ բանից իմոց. մինչդեռ կենդանիս եմ խօսեցայց. մի՛ հայիր ի գլորումն. որք ունին կամս պահել զհրամանս քո, յաղթեալ են ի խորհրդոց չարին. այլ ողորմեաց իբրեւ բարերար և փրկիչ. և խնայեա՛ և հաստատեա՛ իբրեւ զդարմանիչ, որ դու միայն ես առանց մեղաց.

այս՝ խնդրեմ ի քէն մի հայիր յանցանս ժողովրդեան քո, այլ որք ուղիղն ծառայեցին քեզ ճշմարտութեամբ․ խնայեա՛, մի՛ հատուցաներ ըստ գործս իւրեանց անօրինաց, այլ վասն այնոցիկ որք երկիւղիւ պահեցին զուխտ քո՝ խնայեա՛․ և մի՛ ածեր զմտաւ վասն այնոցիկ՝ ոյք գնացին չարութեամբ առաջի քո․ այլ յիշեա՛ որք կամօք զերկեղ քո ծանեան, և մի՛ կամիր կորուսանել՝ որք զբարսն իւրեանց անասնոց նմանեցուցին, այլ հայեա՛ց զթութեամբ ի ծառայս քո՝ որ ի փառս քո յուսացեալ են։ Զի մեք և որ յառաջ քան զմեզ արժանի մահու կամաց գործեցաք, դու Տէր մարդասէր, վասն մեր մեղաւորաց երկայնամիտ կոչեցար, զի թէպէտ և մեք ընդ որպիսի բարւոք գործովք էաք, և ո՛չինչ ըստ կամաց քոց արարաք, այլ զհետ մարմնոյ պղծութեան գնացաք, դու զթացիր ողորմել․ յայնժամ կոչեսջիր ողորմած, քանզի սրբովք քովք կամօք գործեցին սրբութեամբ, ո՛չ են կարօտ ողորմութեան․ զի իւրեանց գործոց ունին զվարձս հատուցմանն։ Զինչ եմք մեք մարդիկ, զի բարկացիս մեզ սաստկութեամբ։ Ո՞չ ոք է ի վերայ երկրի ծնեալ՝ որ ո՛չ մեղաւ․ յայսմ ծանիցի քո գթութիւնդ, յորժամ ողորմեսցիս և ներեսցես մեզ․ և թողցես զամբարշտութիւնս մեր, որք ո՛չ ունին զհիւթ բարեաց գործոց։ Ետ պատասխանի ինձ Տէր, և ասէ ցիս․ Եթէ դառնալով դարձցին առ իս մեղաւորք յամենայն սրտէ իւրեանց, ո՛չ խորհեցայց ըստ առաջին մեղաց նոցա հատուցանել․ այլ ի վախճան ելից հոգւոց նոցա, որպէս գտից՝ և դատեցայց․ և այնպէս ուրախ եղէց ի նոսա, որ դառնան ի բարի գործս․ որպէս ուրախ իցեմ յարդարս իմ։ Նմանեցո՛ զիս միամիտ մշակի․ որպէս մշակ վարէ տնկէ՝ որչափ և կամի և յօժարէ․ և ըստ ժամանակի իւրաքանչիւր խնամ տանի, որպէս պարտ է․ թէպէտ լինիցի ի նոցանէ ումեք տկարանալ և մերձենալ յապականութիւն, որոց ի դէպ զհոգաբարձութիւն առնէ․ և եթէ հոգաբարձութեամբն յաղթէ, ուրախութեամբն ուրախ լինի․ զի որ տկարանալն կամէր՝ զօրացաւ․ ապա՛ թէ ոչ ինչ

օգտիցէ ի դէպ ժամանակի, հոգաբարձութիւն ի բաց եղիցի լի տրտմութեամբ. այսպէս եղիցին ի վերայ երկրի, երկայնամիտ լինիցի ի վերայ նոցա բարձրեալն. զի թէ զղջասցին ընդ այն զոր անօրինեցանն, գոր-ծեցին զբարիս. ապա թէ ոչ տանջեսցին: Պատասխա-նի ետու և ասեմ. Որովհետեւ միանգամ ներեցեր ինձ խօսել առաջի քո, աղաչեմ զքեզ ասա́ ինձ ծա-ռայի քում. սերմանիք մշակին, եթէ ոչ առցեն շա-փով զանձրեւն չորանայ, նոյնպէս և մարդ որում դու ո́չ ողորմեսցիս՝ ո́չ կարէ ապրել. վասն այսորիկ խնայեա́ Տէր ի ժողովուրդ քո, և ողորմեա́ց ժառանգութեան քում, քոց ստացուածոց և գործոց ձեռաց քոց ողորմես-ցիս: Ետ պատասխանի և ասէ ցիս. Թշուառութեամբ թշուառասցին մարդիկ՝ որ բնակեալն են յայսմ աշ-խարհի. փոխանակ զի բազում ամբարշտութեամբ գը-նացին. և վասն հանդերձեալ ժամանակին ո́չ գտաւ ի նոսա ումեք գիտութիւն, այլ դու վասն քո ած զմտաւ, և վասն փառացն որ քեզ մնայ՝ հոգա́. զի բաց կայ քեզ ճշմարիտ դրախտն, և տնկեալ ծառն ճշմարիտ դրախտին. և պատրաստեալ են կեանքն՝ հանդեր-ձեալ փափկութեանն. շինեալ է քաղաքն, յօրինեալ է հանգիստն, պաճուճեալ է բարութիւնն, կնքեալ է ի ձէնջ հիւանդութիւնն, խափանեալ է ի ձէնջ մահ. յա-մօթ եղեն դժոխք. հալածեալ է ի ձէնջ ապականութիւն. անջատեալ է ի ձէնջ ամենայն աշխատութիւն. յայտ-նեալ են ձեզ գանձք անմահութեան: Մի́ եւս աղաչեր վասն կորստեան ժողովրդեանն, զի որպէս ձեզ պատ-րաստեալ է՝ որպէս վերագոյնն ասացի. նոյնպէս և նո-ցա պապակումն հանդերձեալ են և տանջանքն: Ես ա-րարի զմարդն զի պահեսցէ զհրամանս իմ, և խորշեսցի ի մահուանէն յաւիտենից. նոքա յամենայն ժամու հա-նապազ դառնացուցին զիս, վասն այսորիկ դատաստան իմ հաստատուն է: Եւ խօսեցայ ընդ Տեառն և ա-սացի: Աղաչեմ զքեզ Տէր՝ խօսեա́ց ընդ թշուառա-կան ժողովրդեանն. զի լուիցեն ի քէն՝ և հաւատաս-ցեն. երկիցեն և դարձցին՝ և մի́ կորիցեն. այլ ապ-րեսցին. զի եթէ այլ ոք խօսեսցի, թերեւս ո́չ հաւա-

տացեն յայսմ ի մարդկանէ։ Ետ պատասխանի Տէր և ասէ. Ես յամենայն ժամ ծառայից իմոց որ հաճոյ են ինձ՝ երեւեցուցի զանձն իմ, և խօսեցայ ընդ արժանիս իմ. իսկ այլոցն ի ձեռն մարդկան ծանուցի զիս. ես եմ Տէր որ քննեմ զսիրտս և զերիկամունս, և ճանաչեմ զմարդն. որ յառաջ քան զելանելն նորա յորովայնէ. ես գիտեմ՝ եթէ խօսեցայց ընդ նոսա յանդիման՝ նոքա ո՛չ հնազանդեսցին, այլ առաւել եւս ստամբակեսցին ստամբակելով։ Ետու պատասխանի Տեառն և ասեմ. Խնդրեմ ի քէն՝ բարձրեալ, ընդէ՞ր ո՛չ տուաւ մեզ այնպիսի սիրտ, զի գիտասցուք միայն զբարի, և զայն միայն արասցուք, և նմա միայն ցանկասցուք, և զնա միայն գիտել քաղցր. այլ յորժամ առաք զչարին գիտութիւնն՝ ընդ այն կամիմք զոր դուն ատես. ընդէ՞ր իսկ բնաւ ստեղծեր զմարդն, զի զայն ունիցիմք և նովաւ մեղանչիցեմք։ Ետ պատասխանի ինձ Տէր, և ասէ. Ես արարի զմարդն զի մի՛ կորիցէ, այլ զի զայս կեանս պատուով կեցցէ. և զայն կեանս ժառանգեսցէ, և հանգոյն հրեշտակաց իմոց ետու նմա զիմաստութիւն, գիտել եթէ զի՞նչ է բարին, կամ զի՞նչ է չարն. և պատուեցի զնա, և ետու նմա զիշխանութիւն առնել զոր և կամիցի. և հնազանդ արարի նմա զամենայն որ ի ներքոյ երկնից, զի իշխեսցէ նոցա. ետու օրէնս և պատուիրանս զի սստ մարթասցեն կեալ, և կամ որպէս զանմահ բարիսն ստասցին։ Իսկ նա զայնպիսի իշխանութիւն յինէ՛ն առ. զոր բարւոք ստեղծեալ էր՝ ոչ բարւոք ի կիր արկ՝ և մեղաւ. ո՛չ եթէ յումէ ինչ ստեղծի, այլ զամենայն զոր արարի բարի յո՛յժ, ուրաքանչիւր որ եղեն՝ ի պէտս իւրեանց եղեն. զի որպէս եղեւ երկաթ, ո՛չ զի սպանցէ, այլ զի զերկիր գործիցէ, և ի պէտս մարդկան եղիցի. իսկ մարդիկ ոչ յոր ստեղծան ի նմին կացին, այլ որ ոչն գործեցաւ բարւոք՝ յայն ձեռնամուխ եղեն. նոյնպէս և զայլ ինչ բարւոք եղեալ՝ ի չար փոխեցին։ Ոչ այսուհետեւ որ բարւոքն ստեղծիցէ պատճառք, այլ որ ոչն վայելեաց բարւոք՝ թշնամանեաց զարարիչն նոցունց. վասն այնորիկ կան միան նոցա տանջանքն. զի որք յինէն

եղեալքն իցեն՝ ամենեցուն պարտ է նոքօք առաջնորդեալ գիտացեն զիս. նա և որ ոչն վայելեաց ի նոցանէն ծանեաւ զիս. զադարեա՛ այսուհետեւ, և մի՛ ինչ հոգար վասն նոցա։ Ետու պատասխանի և ասեմ. Խնդրեմ ի քէն Տէր՝ ո՛չ պահես զոխս, ո՛չ ունի ժոյժ անձըն իմ չհարցանել զքեզ. վասն այսորիկ լո՛ւր ծառայի քում. վասն այսորիկ յաճախեցեր ինձ զբազմութիւն նշանացն. և ո՛չ ասացեր ինձ՝ թէ երբ իցէ կամ յորում ժամու։

## ԳԼՈՒԽ Ջ.

Ետ պատասխանի և ասէ ցիս Տէր. չափելով նշանակեա՛ դու զգալուստ նշանացն, և իցէ՝ յորժամ տեսցես եթէ մերձ իցէ ամենայն առ ի կատարել. յայնժամ իմասջիր զկատարածն. պա՛րտ է նախ լինել որ ասացան նշանքն, և այնպէս գալ կատարածին։ Եղիցի ի մերձենալ ժամանակին՝. խռովութիւն ժողովրդոց, շարժմունք տեղեաց հեթանոսաց, նենգութիւն առաջնորդաց, տատանումն սրբոց, հալածանք քահանայից. խոտորումն սուրբ հաւատոց, և երկմտութիւն ժողովրդեանն. չփոթ հեթանոսաց, նեղութիւն քաղաքի, բորբոքումն հրոյ ի տեղիս տեղիս. սասանութիւն բազում. որոշումն ազգի ազգի քաղաքաց և գիւղից, առաւելութիւնք մոլորութեանց յայսոց պղծոց. յայնժամ իմասցիս եթէ մերձ է վախճան։ Եւ որ յայնժամ գտցի ինձ արժանի, նա ապրեսցի և տեսցէ զփրկութիւն իմ. և զերկիր նոր, և զսահմանս իմ. զոր սրբեցի յառաջ քան զյաւիտեանս։ Եւ յայնժամ տեսցեն արհամարհողք, և կծեսցին և զարմասցին, որ այժմ տեսանեն զճանապարհս իմ. վասն այնորիկ կայ և մնայ նոցա պատրաստեալ դատաստանն. փոխանակ զի ո՛չ ծանեան զերախտիս օրինացն իմոց, պահել զամենայն որ ի նմա գրեալն է։ Բայց դու մի՛ խառներ զքեզ ընդ այնպիսիսն, զոր բոց հրոյն այրելոց է։ Ետու պա-

տասխանի և ասեմ. Տէր, բազում անգամ ասացի եթէ բազումք են կորուսեալք, և սակաւք են ապրեալք, և նոքա բազում աշխատութեամբ. ո՞վ կարասցէ զգուշութեամբ պատրաստել այնպէս, որպէս և քո օրէնքն հրամայեն։ Եւ պատասխանի Տէր և ասէ. Ո՛չինչ ի վեր քան զմարդն հրամայեցի, և ո՛չ անհնար. բայց ասեմ քեզ համառօտիւք, թէ որպէս դու կամիս պատուել ի ծառայէ քումմէ, զնոյն արա՛ և դու Աստուծոյ կենդանւոյ, և որ քեզ չար թուի՝ դու մի ընկերի քում առներ. և որպէս կամիս երախտաւոր լինել, եթէ սիրեացես զնոյն. և դու արասջիր. զի եթէ զայս կրել յեղբօրէ քումմէ քեզ թիւր թուեսցի, և դու նմա արասջիր. զի զձերդ ձեզ իսկ պատուիրեցի. զի որպէս և կամքն են, նոյնպէս և գործքն. և որպէս գործքն են նոյնպէս և վարձքն։ Կորիցէ անզգամն և անմիտ ազգ, և ապրեսցին պատուականքն և մարգարիտքն. զի ոչ կամիմ ընդ բազմութիւն ամբարշտաց՝ որպէս փափաքեմ սակաւուց և սրբոց. այսպէս եղիցի, և այս կացցէ, և այսպէս սահմանեալ է յինէն, և ո՛չինչ ի նոցանէն անցցէ մինչեւ եղիցի դատաստան. և վախճան բանից իմոց։ Եւ իբրեւ դադարեաց Տէր ի խօսելոյ ընդ իս, և տեսանէի զփառս բարձրելոյն բիւրապատիկ լուսաւորագոյն քան զարեգակն. յայնժամ դեռ եւս ունէր զիս ահ և դողումն, յայնչափ ի փառացն գայր առ իս հրեշտակն որ յառաջնումն խօսեցաւ ընդ իս, և զօրացոյց զիս, և դարձոյց զզարմանս իմ յիս։ Եւ պատուէր ետ ինձ և ասէ. Մի՛ երկնչիր և մի՛ դողար, զի գտեր մեծ շնորհս առաջի Աստուծոյ. պահեա դու այլեւս աւուրս եւթն, երթալ ի դաշտն ուր ո՛չ գուցէ տուն կամ յարկ, և ո՛չ այլ ինչ. բայց միայն ծաղիկք. և մի՛ ինչ ճաշակեսցես, և բայց միայն ի ծաղկաց դաշտին, ուր դուն իցես. և խնդրեա՛ ի բարձրելոյն առանց ձանձրանալոյ. և յետ այնորիկ եկից ես առ քեզ։ Եւ գնացի ես ըստ բանի նորա ի դաշտ՝ ի տեղին որ անուանեալ կոչի Արդաբ. և նստայ անդ ի վերայ ծաղկացն, և ճաշակէի անտի, և լինէր ճաշակն նոցա ինձ ի քաղցրութիւն, և յագումն, և ի կարողութիւն զօրու-

թեան իմոյ։ Եւ եղեւ յետ աւուրց՝ մինչ բազմեալ կայի ես ի վերայ խոտոյն, և դարձեալ խռովէր յիս սիրտ իմ որպէս զառաջինն. և բացաւ բերան իմ և սկսայ խօսել առաջի բարձրելոյն՝ և ասել. Ո՛վ Տէր Աստուած՝ որ ամենայն հոգւոց արարիչ ես. յայտնելով յայտնեցար հարցն մերոց յերկիրն յանապատ, յորժամ ելանէին յԵգիպտոսէ անցանելով ընդ անապատն անջուր և անպտուղ. և ասացեր ցնոսա, Թէ լուարո՛ւք որդիք Իսրայելի, և ունկնդիր լերուք բանից իմոց զաւակդ Յակոբայ. ահաւասիկ ես սերմանեմ զօրէնս իմ. եթէ արասցէ պտուղ փառաւորեցայց ի ձեզ. իսկ հարքն մեր ո՛չ պահեցին զօրէնս քո, վասն այնորիկ կորեան։ Նոյնպէս և մեք որ ընկալաք զօրէնս քո՝ յանցեաք և անօրինեցաք. բայց օրէնքն քո ո՛չ կորեան. այլ մնացին ի փառս իւրեանց։ Եւ մինչդեռ զայս ընդ իս խօսէի, համբարձի զաչս իմ և տեսի յաջմէ կողմանէ. և ահա կին մի կոծէր և ցաւէր և լայր մեծաբարբառ յոյժ, պատառեալ զհանդերձս իւր, և արկեալ մոխիր զգլխով իւրով. և թողուի զառաջին զբանս իմ յորում էի, զմտաւ ածեալ զարմանայի, թէ յայսպիսում տեղւոջ կին մարդ երեւեցաւ, դարձեալ առ նա՝ ասէի ցնա, թէ ընդէ՞ր լաս, ընդէ՛ր կոծիս դառնապէս։ Եւ պատասխանի ետ և ասէ ցիս. Թոյլ տուր ինձ տէր՝ զի լացից զիս՝ և յաւելից յաշխարել. զի յոյժ դառնացեալ եմ յոգի իմ, և լի եմ տառապանօք։ Եւ ասեմ ցնա. Զի՞ եղեւ, ասա՛ ինձ։ Եւ ասէ. Ամուլ եղէ ես աղախին քո, և ո՛չ ծնայ՝ զերեսուն ամ կեցեալ ընդ առն իմում. և ես հանապազ ո՛ր և ժամ յերեսուն ամին յայն խնդրէի ի բարձրելոյն ի տուէ և ի գիշերի, և եղեւ յետ երեսուն ամի, և լուաւ Աստուած աղախնոյ քում. և հայեցաւ ի տառապանս իմ, և ետ մեզ որդի. և ուրախ եղաք ի նա՝ ես և այր իմ, և ամենայն քաղաքակիցք իմ, և փառաւորեցաք զԱստուած. և սնուցաք զնա աշխատութեամբ բազմաւ. և եղեւ յորժամ աճեաց և զարգացաւ, և կամէաք առնուլ նմա կին, և առնէաք օր ուրախութեան։

# ԳԼՈՒԽ Է·

Եւ եղեւ իբրեւ եկն որդին յառագաստ իւր, անգաւ և մեռաւ. և անցուցաք զլոյսն, և յարուցաք փոխանակ մեծ ուրախութեանն սուգ անչափ, և յարեան ամենայն քաղաքակիցքն իմ վասն նորա մխիթարել զիս; և յետ բազում մխիթարելոյ զիս՝ դադարեցի մինչեւ ի վաղիւ անդր գիշերոյն. և եղեւ իբրեւ դադարեցին ամենեքեան ի մխիթարելոյ զիս, լռեցի և ես, և յարեայ գիշերի և փախեայ, և եկի այսր, որպէս տեսանես զիս յայսմ դաշտի զմտաւ ածեալ մի՛ եւս դառնալ ի քաղաքն, այլ աստէն դադարել. մի ուտել և մի՛ ըմպել, այլ միշտ սգալ և պահել մինչեւ մեռայց: Եւ թողեալ զբանս իմ յորում էին, ետու պատասխանի ցասմամբ՝ կնոջն և ասեմ. Զոր իմանաստ լաւ ինչ իմանաս քան զամենայն կանայս. ո՞չ տեսանես զսուգս մեր, որ եհաս ի վերայ Սիոնի, որ է մայր մեր ամենեցուն, հեծելով հեծէ Երուսաղէմ, և տրտում է և տառապեալ յո՛յժ. և արդ ո՞չ սգաս առաւել յոյժ. զի ամենեքեան ի տրտմութեան և ի զղջման և ի սուգ եմք, այլ տրտում ես վասն միոյ որդւոյ քո. հարց ցերկիր, և նա ասասցէ քեզ, թէ պարտ է նմա սգալ. զի այնչափ ծնեալ ի նմանէն բազմութիւն յապականութիւն դարձան. արդ ո՞ւմ արժան է սգալ. որ այնչափ բազմութիւն կորոյս. եթէ քեզ վասն միոյն ողբալ. եթէ ասասցես՝ եթէ ո՞չ է նըման տրտմութեան երկրին իմ սուգս, զի ես զպըտուղ որովայնի իմոյ կորուսի զոր ցաւօք ծնայ. իսկ երկիր ըստ ճանապարհաց իւրոց գնաց, մերժեցաւ և գնաց մօտաւոր սուգ նորա՝ որպէս և եկն. և ես քեզ ասացից, թէ որպէս աշխատութեամբ ծնեալ է, նոյնպէս և երկիր ետ զմարդն իսկզբանէ արարչին իւրում. արդ այսուհետեւ կա՛լ դու զտեղին քո, և առաքինու-

թեամբ համբերեա՛ վշտացն որ եղեն քեզ. զի և քո որդին յարիցէ ի ժամանակի իւրում. և դու ընդ կանայս անուանեսցիս. դա՛րձ այսուհետեւ անդրէն ի քաղաք առ այր քո: Եւ ասէ ցիս. Ո՛չ արարից զայդ, և ո՛չ մտից ի քաղաք, այլ աստէն մեռայց: Եւ յաւելի խօսել ընդ նմա և ասացի. Մի՛ առնել զայդ իրս. այլ հաւանեաց վասն տրտմութեան Սիոնի, և մխիթարեա՛ց վասն քաղաքին Երուսաղեմի. հայիս տպաքէն և ի նա, զի սրբութիւն մեր ապականեալ է, և սեղանն կործանեալ է. և օրհնութիւնքն դադարեալ են, և պարծանքն մեր քակտեալ են. և լոյս ճրագին անցեալ է. և տապանակն կտակարանաց մերոց ի գերութեան վարեալ է, և սրբութիւն մեր պղծեալ են. և անունն որ կոչեցեալ է ի վերայ մեր՝ յայնմանէ օտարացեալ եմք. և ազատք մեր թշնամանեալ են, և քահանայք մեր լացեալ են, և ղեւտացիք մեր ի ծառայութիւն անկեալ են, և կանայք մեր բռնադատեցան. և հզօրք մեր ի պարտութիւն մատնեցան, և քան զամենայն ոք աւելի անարգեցաւ Սիոն, իբրեւ զանօթ անպիտան, և լուծաւ ի փառաց իւրոց, և մեք մատնեցաք ի ձեռս թշնամեաց մերոց: Բայց դու թօթափեա՛ ի քէն զբազմութիւն տրտմութեանդ, և ի բա՛ց ընկեա՛ ի քէն զյաճախութիւն ցաւոցդ, զի հաշտեսցի ընդ քեզ հզօրն, և հանգուսցէ զքեզ ի ցաւոց քոց և ի վաստակոց: Եւ եղեւ իբրեւ խօսէի ընդ նմա, զուարթանայրին երեսք նորա յոյժ, և տեսիլ նորա լինէր իբրեւ զփայլակն, և կերպարանք իւր այսպիսի ահագին առ մերձաւորս իւր. և սիրտ իմ յոյժ զարհուրեալ էր, զմտաւ ածեալ ասէի՝ թէ զի՞նչ իցէ այս. և նա յանկարծակի մեծաւ բարբառով աղաղակեաց ահիւ, և ճչեաց առ ի շարժել երկրի ի ձայնէն. տեսանէի, և ահա ո՛չ եւս երեւէր ինձ կինն, այլ քաղաք շինեալ ի հարուստ հիմանց. զարհուրէի՝ և աղաղակէի մեծաբարբառ և ասէի. Ո՞ւր իցէ Ուրիէլ հրեշտակն որ յառաջնում աւուրն եկն առ իս, զի նա արար ինձ գալ յայս տեղի զարմանալեաց, և եղեն ինձ խնդրուածք իմ, և զվախճան ի թշնամանս յոյժ:

Եւ զայս մինչդեռ խօսէի, եկն հրեշտակն՝ և ետես
զիս, և ահա անկեալ դնէի իբրեւ զմեռեալ, և իմաս-
տութիւն իմ եղծանէր. և կալաւ զաջոյ ձեռանէ իմ-
մէ, և զօրացոյց զիս և հաստատեաց զիս ի վերայ
ոտից իմոց, և ասէ ցիս. Զի՞ եղեւ քեզ, ընդէ՞ր խռո-
վեցար, և կամ ընդէ՞ր եղծաւ իմաստութիւն քո, և
միտք սրտի քո։ Եւ ասացի, թէ ընդէ՞ր թողեր զիս,
զի ես արարի ըստ բանի քում, և ելի ի տեղիս յայս,
և ահա տեսի որում ո՛չ կարեմ հասու լինել։ Եւ ասէ
ցիս. Կա՛ց իբրեւ զմարդ, և խօսեցայց ընդ քեզ։ Եւ
ասացի. խօսեա՛ց Տէր, բայց միայն մի՛ թողուր զիս
զի մի՛ ընդ վայր մեռայց. տեսի՝ զոր ո՛չ էր տեսեալ,
և լուայ՝ զոր ոչ գիտէի, բայց միայն միտք իմ մո-
լորեալ են, և անձն իմ ապականեալ է. արդ խնդրեմ
ի քէն պատմեա՛ ծառայի քում, վասն աքանչելեացս
այսոցիկ։ Եւ պատասխանի և ասէ ցիս. լո՛ւր ինձ՝ և
ուսուցից քեզ. վասն որոյ երկնչիսդ, վասն այնորիկ
բարձրեալն յայտնեաց քեզ զբազում խորհուրդս. զի
ետես զուղղութիւն քո, եթէ անձանձրոյթ տրտմեալ
ես վասն ժողովրդեանն. և յոյժ սգաս ի վերայ Սիո-
նի. այս իրք են։ Կինն որ երեւեցաւ քեզ փոքր մի
յառաջագոյն, որ սգով էր. և սկսար մխիթարել զնա.
արդ այսուհետեւ ո՛չ ևս ի կերպարան կնոջ տեսցես,
այլ երեւեցաւ քեզ քաղաք շինեալ. և զի պատմէր քեզ
վասն տրտմութեան որդւոյ իւրոյ. այս կին այն Սիոն
է՝ զոր տեսանէիր, զոր այժմ տեսանես քաղաք շի-
նեալ. և զի ասացն ցքեզ, ամուլ եղէ ես ամս երեսուն, զի
ամս բազումս ունէր յայսմ աշխարհի. և յորժամ եղեւն
և շինեցաւ, մատեաւ ի նմա պատարագ. և յետ այնորիկ
շինեաց Սողոմոն զքաղաքն և զտաճարն, և մատոյց ի նմա
պատարագ։ Ե՞րբ էր յորժամ ամուլն ծնաւ աշխատու-
թեամբ, այն բնակութիւն Երուսաղէմի էր. և յորժամ
ասաց ցքեզ, եթէ որդին իմ իբրեւ եմուտ յառագաստ
իւր և մեռաւ, պատահէր տրտմութիւն յոյժ, այն որ լի-
նէր գլորումն Երուսաղէմի. տեսեր զի սգայր ի վերայ
որդւոյն իւրոյ՝ և սկսար մխիթարել վասն տրտմու-
թեանցն որ հասեալ էին նմա։ Իբրեւ ետես բարձրեալն

եթէ յամենայն սրտէ հոգաս վասն նորա, եցոյց քեզ զլուսաւորութիւն փառաց նորա, և զգեղեցկութիւն վայելչութեան նորա. վասն այսորիկ ասացի քեզ՝ զի մնասցես ի դաշտին ուր տունն շինէր. գիտէի թէ բարձրեալն կամի ցուցանել քեզ զայս ամենայն, և վասն այնորիկ ասացի քեզ գալ ի տեղիս յայս, ուր ո՛չ էր շինուած հիման. ուր ո՛չ կարէր գործ շինուածոց մարդկան, ի տեղւոջն ուր ցուցանելոցն էր քեզ զքաղաքն բարձրելոյ. բայց դու մի՛ երկնչիր, և մի՛ զարհուրեսցի սիրտ քո, այլ մուտ և տե՛ս զպայծառութիւն քաղաքին, և կամ զմեծութիւն շինուածոյն, որչափ ակն քո բաւական է տեսանել. և յետ այսորիկ լուիցես որչափ բաւական իցէ քո լսելիք ականջաց. զի դու երանելի եղեր քան զբազումս. և հանոյ եղեր բարձրելոյն որպէս սակաւք. մնա՛ դու աստ զվաղուեան գիշերն աստէն. և ցուցից քեզ որչափ բարձրեալն ի տեսիլ երազոյ ցուցցէ քեզ՝ որ լինելոցն իցէ ի վերայ բնակչաց երկրի յաւուրս վախճանի: Եւ մտի ի տուն զերկուս գիշերսն որպէս և հրամայեաց ինձ հրեշտակն Տեառն:

## ԳԼՈՒԽ Ը.

Եւ եղեւ յերկրորդում գիշերին, ահա ելանէր ի ծովէ արծուի, որոյ էին թեւքն երկոտասան, և գլուխք երեք. և համբառնայր զթեւս իւր և թռչէր ընդ ամենայն երկիր, և ամենայն հողմք երկնից շնչէին՝ և առ նա ժողովէին. և տեսանէի ի թեւոցն նորա, այլ թեւ բուսեալ, և այն լինէր փոքրիկ թեւս և մանունս. իսկ գլուխք արծուոյն ի լռութեան կային, և միջին գլուխն՝ մեծ էր քան զայլսն, բայց սակայն և նա ի լռութեան դադարեալ էր ընդ նոսա. և ահա համբառնայր զթեւս իւր տիրել երկրի և բնակչաց նորա: Եւ տեսանէի որպէս հնազանդէր նմա ամենայն ինչ

որ ի ներքոյ երկնից, և ո՛չ ոք ընդդէմ դառնայր նմա յարարածոց որ ի ներքոյ երկնից։ Եւ տեսանէի զի յառնէր արծուին և կայր ի վերայ ոտից իւրոց, և ասէր. Միանգամայն զամենեսեան կամիցիք արթուն կալ. այլ ի քուն մտցէ իւրաքանչիւր ի տեղւոջ իւրում, և ի ժամանակի իւրում զարթիցէ, և գլուխքն ի վախճան պահեսցին։

Եւ տեսի և ահա ո՛չ ելանէր բարբառ ի գլխոյ նորա, այլ ի միջոյ մարմնոյ նորա։ Եւ թուեցի զաւելորդ թեւս նորա, և այն է ութ. և տեսի յաջմէ կողմանէ նորա, զի կանգնէր թեւ մի, և իշխէր ի վերայ ամենայն երկրի. և իբրեւ այն լինէր, հասանէր նմա վախճան. զի ամենեւին մի՛ երեւեսցի տեղի նորա։ Եւ երկրորդն յառնէր, և տիրէր, և ունէր զբազում ժամանակս. և յետ տիրելոյն հասանէր վախճան նորա, զի կորիցէ իբրեւ զառաջինն։

Եւ լինէր բարբառ ընդ նմա և ասէր. Լո՛ւր դու զաւետիս քո որ այնչափ ժամանակս կալար զերկիր յառաջ քան զքո կորնչել. ո՛չ ոք յետ քո կալցի յայնչափ ժամանակս իբրեւ զքեզ, այլ ո՛չ զկէս քո։ Եւ յարեաւ երրորդն, և կալաւ զիշխանութիւն. և կորեաւ իբրեւ զառաջինն և նա։ Եւ այնպէս ունէր իշխանութիւն թեւոցն ամենեցուն. և դարձեալ կորնչել։ Եւ տեսի զամենայն թեւսն, և զայն ի ժամու իւրում կանգնեալ յաջմէ կողմանէ՝ ունել զիշխանութիւնն. ունէր ի նոցանէն և վաղվաղակի կորնչէր. և ոմն ի նոցանէ կանգնէր և չկարէր ունել զիշխանութիւնն։ Եւ յետ այնորիկ տեսանէի, զի երկոտասանեքին թեւքն կորնչէին, և երկու աւելորդ թեւոցն, և ոչինչ մնայր յանդամս արծւոյն, բայց միայն յերից գլխոցն դադարելոց. և վեց թեւն յորոց բաժանէին երկուքն, և երթային դադարէին առ գլխոյն յաջմէ կողմանէ, և չորքն մնացին ի տեղւոջ իւրեանց։ Եւ տեսանէի զի չորք թեւքն խորհէին կանգնել և տիրել. և ապա տեսանէի զմին, որ թէպէտ և կանգնեցաւ, վաղվաղակի կորեաւ. և տեսանէի և ահա երկուն մնային ի նոցանէ, որ խորհէին առաւել լինել և տիրել։

Եւ մինչդեռ զայս խորհէին, մի ի գլխոց անտի դօ-

զեւլոց որ էրն մեծագոյն. և ապա զերկուսին գլուխսն առնոյր ընդ իւր, և դառնայր գլուխն մարմնովն հանդերձ, և ուտէր զաւելորդ թեւսն՝ որ կամէին տիրել. և այն գլուխ տիրէր ամենայն երկրի. և հնազանդեցուցանէր զբնակիչս նորա աշխատութեամբ բազմաւ, և բռնանայր բնակութեանց երկրի՝ քան զթեւոցն բռնութիւն: Եւ տեսի յետ այնորիկ զգլուխն միջին կորուսեալ իբրեւ զթեւսն. Միայն երկու գլուխքն, և նոքա տիրէին երկրի, նոյնպէս և բնակչաց նորա: Տեսանէի և ահա զի ուտէր զգլուխն, և ապականէր որ յաջմէն էր զձախակողմն: Եւ լուայ բարբառ որ ասէր ցիս. Հայեա՛ց առաջի քո, և տես զի՞նչ տեսանես: Տեսի և ահա առիւծ զարթուցեալ յանտառէ գոչէր և մռնչէր, և աղաղակէր ի բարբառ մարդոյ. և լսէի զի ասէր ցարծուին. Լո՛ւր ինձ և խօսեցայց ընդ քեզ. այսպէս ասէ բարձրեալն. ո՞չ դու մնացեր ի չորից կենդանեացն զոր արարի տիրել ի վերայ երկրի իմոյ, զի ի ձեռն նոցա եկեսցէ վախճան ժամանակաց. և դու չորրորդ եկիր և յաղթեցեր նոցա, և բռնացար միշտ վաստակով բազմաւ, վարեցեր զաշխարհս այսչափ ժամանակս նենգութեամբ, և դատեցար զերկիր ո՛չ ճշմարտութեամբ. յափշտակեցեր զհեզս, և մնասեցեր խոնարհաց, ատեցեր զճշմարիտն, և սիրեցեր զսուտն, աւերեցեր զամրութիւն զօրաւորաց, և քակտեցեր ըզպարիսպս որ ո՛չ յանցեան քեզ. և ելին թշնամանք քո առ բարձրեալն, և ամբարտաւանութիւն քո առ հզօրն. և հայեցաւ բարձրեալն ի ժամանակս իւր, և ահա կատարեալ էին. վասն այնորիկ կորնչելով կորիցես դու, արծուի, և թեւք քո անպիտանք, և գլուխ քո չար, և մագիլք քո դժնդակք, և ամենայն մարմին քո ապիրատ. զի հանգիցէ երկիր, և թեթեւասցի ամենայն աշխարհ՝ վճարել ի քումմէ բռնութենէ. ակն ունել դատաստանի, և ողորմութեան որ արար զնա:

# ԳԼՈՒԽ Ժ.

Եւ եղեւ յորժամ խօսեցաւ առիւծն զբանս զայս ընդ արծւոյն. և ահա որ մնացեալ էր գլուխն՝ կորեաւ, և երկու թեւքն որ ընդ նմա էին՝ կանգնեցան և փոխէին առ ի տիրել. և էր իշխանութիւն նոցա վատթարութեամբ և չփոթութեամբ լի. և ապա նոքա եւս կորնչէին. և ամենայն մարմին արծւոյն կիզոյր. և ափշէր երկիր յոյժ։ Եւ ես ի շատ զարմանալոյն և ի բազում երկիւղէ զարթեայ՝ և ասացի ցանձն իմ. Ապաքէն դու արարեր ինձ քննել զճանապարհս բարձրելոյն. և ապա լուծեալ է անձն իմ, հոգի իմ, և տկար եմ յոյժ, և ո՛չ կայ յիս զօրութիւն ի բազում երկեղէն զոր երկեայ ի գիշերիս յայսմիկ. արդ աղաչեմ զբարձրեալն զի զօրացուսցէ զիս մինչեւ ի վախճան։

Եւ ասեմ. Տէր, Տէր իմ, եթէ գտի շնորհս յաչս քո, թէ արդարեւ երանացայ բազում անգամ ի քէն, և եթէ արդարեւ ել խնդիր իմ առաջի երեսաց քոց՝ զօրացո՛ զիս, և յայտնեա՛ ծառայի քո զպատգամս և զլոյս, և զմեկնութիւն ահաւոր երազոյն զոր տեսի. զի լիով մխիթարեսցես զանձն իմ. որովհետեւ արժանի արարեր ցուցանել ինձ զամաց վախճան և զժամանակաց կատարած։

Եւ ասէ ցիս. Այս է մեկնութիւն երազոյն՝ զոր տեսեր. արծուին որ ելանէր ի ծովէն՝ չորրորդ թագաւորութիւն է որ յայտնեցաւ եղբօր քում Դանիէլի. այլ ո՛չ յայտնեցաւ նմա այսպէս՝ որպէս և ես յայտնեմ քեզ։ Ահա աւուրք եկեսցեն՝ և յարիցէ թագաւորութիւն ի վերայ երկրի, և եղիցի ահեղ քան զամենայն թագաւոր որ յառաջագոյն էին, և առաջի նորա թագաւորեսցեն ի նմա թագաւորք երկոտասան մի ըստ միոջէ։ Իսկ երկրորդն ի թագաւորացն աւելի ժամանակս կալցի քան զերկոտասանս. այս է մեկնութիւն երկոտասան թեւոցն զոր տեսեր։ Եւ որում

լուար ձայնին որ խօսէր, որ ո՛չ ի գլխոյն բարբառէր, այլ ի միջոյ մարմնոյն իւրոյ. այդ բան է որ ի մէջ ժամանակի այնր արքայութեան, եղիցին որոշմունք ո՛չ սակաւք, մերձեսցի ի կործանել և ո՛չ անկցի երբէք, այլ կանգնեսցի կացցէ յառաջին իշխանութեանն: Եւ զի տեսեր զաւելորդ թեւսն բազում բուսեալ շուրջ զմեծ թեւովք նորա, այս այն բան է. յարիցեն ի նմանէ ութ թագաւորք, որոց եղիցին ժամանակք թեթեւք, և ժամք փութով. երկու ի նոցանէն կորիցեն ի մերձենալ ժամանակին, և ի հասանել իշխանութեան նորա. չորքն պահեսցեն ի ժամանակն, յորժամ կամեսցի մերձենալ առ նորա կատարած ժամանակին. երկուն ի վախճան պահեսցին: Եւ զի տեսեր ի նմա երիս գլուխս լռեալս և դադարեալս, այս այն բան է. ի վախճանի նորա յարուսցէ բարձրեալն երիս թագաւորս, և նորոգեսցեն բազում ինչ. խրատեսցեն զերկիր, և զբնակիչս նորա իշխանութեամբ բազմաւ, քան զամենայն ոք՝ որ յառաջն եղեալք էին. վասն այնորիկ անուանեցան նոքա գլուխք արծուոյն. նոքա եղիցին գլուխ թագաւորութեան իւրեանց, և լցցեն զվախճան նորա: Եւ զի տեսեր զգլուխն մեծ ջնջեալ և կորուսեալ, մին ի նոցանէն վախճանեսցի չարչարանօք, և երկուքն որ մնայցեն՝ զնոսա սուր կերիցէ. և ընդ նոսին և ինքն միանգամայն ի վախճանի ի սուր անկցի: Եւ զի տեսեր զերկուս աւելորդ թեւսն փոխեալ ի գլուխն յաջակողմն կոյս, այս այն բանքն են՝ զորս պահեաց բարձրեալն ի վախճան նորա. որոյ իշխանութիւն նորա անարգ և լի խռովութեամբ. որպէս հայեցար ընդ առիւծն, և տեսեր ելեալ ի մորւոյ, ըսթափեալ և զարթուցեալ ի քնոյ, մռնչելով խօսէր ընդ արծւոյն և յանդիմանէր զանիրաւութիւնս նորա, ըստ ամենայն բանիցն զոր լուարն: Նա է օծեալն, զոր առաքեսցէ բարձրեալն ի ժամանակս վախճանի յազգէ Դաւթի. Նա ինքն ծագեսցէ և եկեսցէ և խօսեսցի ընդ նմա, և զամբարշտութիւնս յանդիմանեսցէ, և վասն անիրաւութեան նորա խօսեսցի. և դիցէ առաջի նորա զնզովս, և ածցէ զնա յիւր դատաստանն կեն-

դանի. և յորժամ յանդիմանեսցէ զնա. յայնժամ կորուսցէ զնա. և զմնացեալ ժողովրդեանն նորա փրկեսցէ գթութեամբ, և զմնացեալսն ի սահմանսն նորա փոխեսցէ, և ուրախ արասցէ զնոսա մինչև եկեսցէ վախճան դատաստանին. վասն որոյ խօսեցաւ իսկզբանն: Այս է զոր տեսերն, և այս է մեկնութիւն նորա. դու միայն արժանի եղեր գիտել զխորհուրդս բարձրելոյն. գրեա՛ զայդ ի գիրս զոր տեսեր, և դիր զդա յանքոյթ տեղւոջ, և ուսուսցես զիմաստունս ժողովրդեան քո զԱստուծոյ, և դիցես զնա ի դէպ տեղւոջ, և լուսաւորեսցես նոքօք զիմաստունս և զերկեղածս իմ, զորոց գիտես զսիրտս թէ ընդունին զնա՝ առ ի պահել զխորհուրդս զայս: Բայց դու կա՛ց և մնա՛ աստէն այլ ևս աւուրս եւթն, զի ցուցից քեզ զայն զոր կամի բարձրեալն յայտնել քեզ: Եւ գնաց հրեշտակն յինէն:

Եւ եղև իբրև լուաւ ժողովուրդն, եթէ էանց եւթն օրն, ես չեւ ևս դարձեալ էի ի քաղաքն, ժողովեցաւ ամենայն ժողովուրդն ի փոքունց մինչև ցմեծամեծս. և եկին առ իս, և ասեն. Զի՞նչ մեղաք քեզ և կամ զի՞նչ յանցեաք, զի այսպէս լքեր թողեր զմեզ, և աստէն մնացեր յայսմ տեղւոջ. դու միայն մնացեր մեզ յամենայն մարգարէից իբրև ողկոյզ կթոց, և իբրև զճրագ յաղջամղջին տեղւոջ, իբրև զնաւահանգիստ մի միայն փրկութեան. ո՞չ է բաւական չարս որ եհաս ի վերայ մեր, այլ և դու ևս զմեզ թողեր լքեր. որչափ լաւ էր մեզ կիզուլ և այրիլ ի հուր ընդ Սիոնի. զի էր մեզ լաւ քան զհին մեռեալս նորա: Եւ յասել նոցա զայս՝ լացին մեծաբարբառ:

Ետու պատասխանի և ասեմ ցնոսա. Քաջալերեաց տունդ Յակոբայ, զի կայ յիշատակ մեր առաջի բարձրելոյն. և հզօրն ո՛չ մոռացաւ զմեզ իսպառ. այլ ես ո՛չ թողի զձեզ, այլ եկի ի տեղիս յայս՝ աղաչել զՏէր վասն աւերածոյն Սիոնի, և խնդրել զողորմութիւն վասն տառապանաց մերոց. և արդ երթիցեն իւրաքանչիւր ոք ի ձէնջ ի տուն իւր, և ես եկից առ ձեզ յետ այսց աւուրց: Եւ գնաց ժողովուրդն ի քաղաքն՝ որպէս ասացի նոցա. և ես նստայ ի դաշտին զեւթն օր,

որպէս և հրամայեաց ինձ հրեշտակն Տեառն. և ուտէի ի ծաղկանց և ի բանջարոց դաշտին, և եղեւ ինձ ի կերակուր այն զաւուրսն։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

Եւ դարձեալ տեսանէի ի տեսլեան գիշերոյ, և տեսանէի ի ծովէ կողմանէ հողմ մեծ՝ զի շարժէր զամենայն ալիս նորա. և հանէր ինքն հողմ ի սրտէ ծովուն ի նմանութիւն մարդոյ, և ընթանայր և թռչէր ընդ նոսա մարդն ամպովք հանդերձ. և ուր զերեսս իւր դարձուցանէր՝ դողայր յորս հայէրն. և ուր հասանէր բարբառ բերանոյ նորա, հաշէին և մաշէին ամենեքեան որ լսէին զձայն նորա, որպէս հալի մոմ յորժամ մերձեսցի ի հուրն։ Եւ տեսանէի յետ այնորիկ՝ ժողով լինէր բազմութեան մարդկան ի չորից կողմանց երկրի, որոց ոչ էր թիւ, զի մարտիցեն ընդ մարդոյն որ ելանէր ի ծովէ անտի, և տեսանէի թէ որպէս կափէր իւր գլեառն մեծ և մտանէր ի նա. և ես խնդրէի գտանել զերկիրն և զտեղին ուր փորեցաւն, և ո՛չ կարացի։ Եւ յետ այնորիկ տեսի և այս. ամենեքեան ժողովեցան առ նա՝ մարտնչել ընդ նմա. երկրնչէին յոյժ, բայց սակայն կռուէին կռուելով. և յորժամ եւտես զբազումս դիմել գալ հասանել բազմութիւն ի վերայ, ո՛չ համբառնայր զձեռն իւր առնուլ զզէն ի վեր, և ո՛չ այլ ինչ անօթ պատերազմի, բայց միայն տեսի ի պատերազմին, զի որպէս բոց հրոյ բղխէր ի բերանոյ նորա, և ի շրթանց իւրոց իբրեւ զփայլակն լուսոյ. և յարձակէր յարձակելով ի վերայ պատրաստ բազմութեան կռուել, և կիզոյր յանկարծակի զամենեսեան առհասարակ, առ ի չգտանել բնաւ ամենեւին յայնչափ ի բազմութենէ, բայց միայն աճիւն մոխրոյ և հոտ ծխոյ տեսի, և զարմացայ ի միտս իմ։

Եւ յետ այսորիկ տեսի այր մի՝ զի իջանէր ի

լեռնէ միոջէ, և կոչէր առ ինքն այլ ևս բազմութիւն խաղաղութեան, և գային առ նա տեսանել բազումք ի մարդկանէ. ոմանք ի նոցանէն ուրախութեամբ էին, և ոմանք տրտմութեամբ, և ոմանք ի նոցանէ կապեալս ածէին:

Եւ ես ի բազմութենէ ամբոխին զարթեայ և աղաչեցի զբարձրեալն, և ասեմ. Դու Տէր իսկզբանէ ցուցեր ծառայիս քում զսքանչելիս քո զայս, և արժանի համարեցար զիս ընդունել զխնդրուածս իմ. արդ և այժմ յայտնեա՛ ինձ զայսր երազոյ մեկնութիւն. որպէս կարծեմ միտք իմովք՝ եթէ այս իցեն որք մնասցեն յաւուրսն յայնս, ապա եղո՛ւկ են մնացեալք յաւուրսն յայնս: Տեսանեմ վիշտս մեծամեծս և տառապանս բազումս, որպէս և նշանակէ երազս այս. արդ ապաքէն օգո՛ւտ էր հասանել ի ժամանակն յայն, եթէ անցանել իբրև զամպ, և մի՛ տեսանել որ հասանելոցն իցէ վախճան ժամանակի:

Եւ պատասխանի հրեշտակն և ասէ ցիս. Ասացից քեզ և զայս երազոյ մեկնութիւն, այլ և վասն մնացելոցն, և վասն որոց խօսեցաւ նա՝ առ ի վախճան ժամանակաց, այս բանք են. Երանի՛ իցէ այնոցիկ որ հասանիցեն յաւուրսն յայնոսիկ, և որ պահիցեն ի համբերութեան՝ ընդհաւատսն և զճշմարտութիւն և զողորմութիւն. գիտեա՛ այսուհետև զի առաւել երանեցան մնացեալքն քան զանցեալսն. Իսկ մեկնութիւն երազոյն այս է. Զայրն զոր տեսեր որ ելանէր ի ծովէ անտի, այն է զոր առաքեսցէ բարձրեալն յետ բազում ժամանակաց, և ի ձեռն նորա փրկեսցէ զարարածս իւր. և նա դարձուսցէ զմնացեալսն. և զի տեսեր զի ելանէր շունչ հրոյ, և զի ո՛չ ունէր ի ձեռին զէն, և ո՛չ կազմ ինչ պատերազմի, և զի յաղթեաց բազմութեան յարձակելոցն որք գային կռուել ընդ նմա, այս այն բան է. զի ահա աւուրք եկեսցեն յորժամ կամեսցի փրկել բարձրեալն որ ի վերայ երկրի. հասցեն զարմանք ի վերայ ամենայն բնակչաց երկրի, խորհեսցին ընդ միմեանս տալ պատերազմ, տեղի ընդ տեղւոյ, ազգ ընդ ազգի, թագաւորութիւն ընդ թագաւորութեան,

ժողովուրդք ընդ ժողովուրդս, առաջնորդք ընդ առաջնորդս, քահանայք ընդ քահանայս, և հաւատք պաշտաման բաժանեցին յիւրաքանչիւր կողմանց. և եղիցի լինել նշանացս այսոցիկ, զոր ես քեզ ասացի. երեւեսցի բարձրեալն զօրութեամբ մեծաւ. սա է այրն այն զոր տեսեր երեւեալ ի ծովէ անտի. և փշրեսցէն ի հեթանոսաց զպատկերս պղծութեան իւրեանց։ Եւ յորժամ լուիցեն զնմանէ, հեռասցին չտալ ընդ միմեանս պատերազմ. և ժողովեսցին միանգամայն բազմութիւն այնչափ յամենայն բնակչաց երկրի, ծառայել տեառն հաւատովք. և առ ի մերձենալ վախճանին քակտեսցին ի միմեանց։ Այս է բազմութիւն զոր տեսեր, որ կամէր գալ և տալ պատերազմ ընդ նմա. այլ նա կացցէ ի վերայ լերինն գլխոյ որ է Սիոն. զի ի Սիոնէ եկեսցէ, և երեւեսցի ամենայն պատրաստողաց, և յանդիմանեսցէ զամբարշտութիւնս այլոց, և զչարաչար գործս նոցա. և ցուցցէ նոցա զդատաստանն որով դատեսցի զնոսա. և յետ այնորիկ առանց աշխատութեան կորուսցէ զնոսա։ Եւ զի տեսեր զնոսա, զի ժողովէր այլ բազմութիւն խաղաղութեան, նոքա են՝ որ յանարգ հեթանոսաց ժողովեալ վարեցան, և ի զաւակէն Աբրահամու խառնեցան ընդ նոսա. այս է բազմութիւն ժողովեալ և խաղաղական. և որք համբերենն ի նոցանէ՝ ցուցցէ նոցա բարձրեալն աւելի նշանս. և պաշտպանեսցէ նոցա։ Եւ ասացի՝ թէ երանի՜ իցէ այնմ ազգի, քան այժմու ժողովրդեանս։

Եւ ասէ ցիս. Այսպէս եղիցի որպէս տեսերն, և մեկնեցաւ քեզ։ Եւ ասեմ ցնա. Տէր, և զայս եւս յայտնեա՛ ինձ. Ընդէ՞ր տեսի մարդ յայտ եղեալ գալ ի ծովէ անտի։ Եւ ասէ ցիս. Որպէս ոչ ոք կարէ տեսանել, կամ քննել կամ գիտել զանդունդս խորոց. այնպէս այժմ ո՛չ ոք կարասցէ ի վերայ երկրի ճանաչել կամ գիտել զխորհուրդս բարձրելոյն, եթէ ո՛չ ի ժամանակի փառաւոր յայտնութեան նորա։ Այս է մեկնութիւն երազոյն զոր տեսեր. և վասն այնորիկ քեզ միայնոյ յայտնեցաւ այս յերկրի. թողեալ զքո հոգս որ հոգաբարձու եղեր վասն անուանն, և վասն օրինաց

նորա· խնդրեցեր դու վասն ժողովրդեան նորա, և աղաչեցեր· զի զկեանս քո վարեցեր իմաստութեամբ և գիտութեամբ, վասն այնորիկ եցոյց քեզ զայս ամենայն· զի յետ այլ երից աւուրց ասացից քեզ· և երեւեսցին քեզ զարմանալիքս։

Եւ իբրեւ շրջեալ գնայի ի տեղւոջ դաշտին, և փառաւորէի զմեծազօրն Աստուած, զի այնպէս զարմանէ և առաջնորդէ, և ոչ արհամարհէ զազգս մարդկան· և կացի անդ զերիս աւուրս։

## ԳԼՈՒԽ ԺԲ·

Եւ եղեւ յետ երրորդ աւուրն, ես ննջէի ի ներքոյ կաղնւոյ միոյ, և այլազգէմ յանդիման իմ ի մորենւոջ ելանէր բարբառ, և ասէր ցիս· Եզրա՛, Եզրա՛· և ասացի· Ահաւասիկ եմ ես։ Իբրեւ զայս ասէի՝ յոտն կացի ի վերայ ոտից իմոց· և ասէ ցիս· Երեւելով երեւեցայ ի մորենւոյս, և խօսեցայ ընդ Մովսէսի· յորժամ ժողովուրդն ծառայէր յԵգիպտոս· և առաքեցի զնա, և հանի զժողովուրդն իմ յԵգիպտոսէ· և ածի զնոսա ի լեառն Սինա և կալայ զնոսա աւուրս բազումս· և ցուցի նմա բազում սքանչելիս, և յայտնեցի նմա ըզխորհուրդս ժամուց, և ծանուցի նմա զվախճան ժամանակաց· և պատուէր ետու նմա ասել զբանս համարձակութեան յայտնի, և չէ՛ ինչ որ ծածկեալ է։ Եւ այժմ քեզ ասեմ զխորհուրդս այս զոր յառաջ նշանակեցի· և զերազս զոր տեսեր, և զմեկնութիւնն զոր իմացար, ի մտի քում պահեա՛· զի դու համբարձցիս ի մարդկանէ, և ընդ իս լինիցիս այսուհետեւ, և որ քեզ նման ոք իցէ մինչեւ ի կատարումն ժամանակաց· հրաման տուր այսուհետեւ և վասն տան քո, և մխիթարեա՛ զտառապեալս նոցա, և խրատեա՛ զժողովուրդ քո, և իմաստնացո՛ զիմաստունս նոցա։ Հրաժարեա՛ դու այսուհետեւ յապականական կենացս, և մերժեա՛ ի քէն զշփոթեալ միտս, և հեռացո՛ ի քէն զմարդկեղէն ծանօթութիւն,

և ի բաց ընկեա ի քէն զհոգս, և զյուզականն միտս. և փութա փոխել յայսմ երկրէ, զոր այժմ տեսեր զպահեալն չարն։ Դարձեալ ես քան զայս տեսցես, զի որչափ կեանքս այս անցանեն, նոյնչափ բազմանան չարիք ի վերայ երկրի. հեռացի յոյժ ճշմարտութիւնն որ առ Աստուած և որ առ մարդիկս էր, մերձեցի սրտմտութիւն և ատելութիւն. ահաւասիկ փութայ արծուին գալ՝ զոր տեսեր ի տեսլեան։

Ետու պատասխանի և ասեմ. Խօսեցայց սակաւիկ միւս ես առաջի քո, Տէր. ահա երթամ որպէս և հրամայեցեր ինձ, և խրատեցեր զմօտական ժողովուրդն. իսկ որ միւսանգամն ծնանիցեննն ո՞վ խրատեսցէ. զի կայ աշխարհս ի խաւարի, և բնակիչք սորա առանց լուսոյ. քանզի օրէնք քո այրեցան, և ո՛չ ոք յետ այսորիկ ծանիցէ զգործս զարմանալեաց քոց, և ո՛չ զպատուիրանս քո զոր պատուիրեցեր. զի եթէ գտի շնորհս առաջի քո, ա՛րկ յիս զՀոգի սուրբ, զի գրեցից զամենայն որ եղեւ իսկզբանէ յայսմ աշխարհի, և որչափ ինչ էր գրեալ յօրէնս քո. թերեւս կարասցեն մարդիկ զշաւիղս փրկութեան գտանել, ոյք կամին կալ ի սրբութեան ճանապարհին։ Ետ պատասխանի և ասէ ցիս. Երթ ժողովեա դու զժողովուրդն, և ասասցես ցնոսա՝ զի մի՛ խնդրեսցեն զքեզ աւուրս քառասուն. և դու պատրաստեա քեզ տախտակս բազումս, և առ ընդ քեզ զԳարիան և զԱրաբիան և զՀերմիան և զԵղկանա և զԵթեն, զնոսա հնգեսեան, զի պատրաստեսցեն ի գրել. և եկեսցես ի կարգի, և վառեցից բորբոքեցից ի սրտի քում ճրագ իմաստութեան, որ ո՛չ անցցէ մինչեւ ի կատարել զոր գրելոցն իցես։ Եւ յորժամ զայս կատարեսցես՝ է ինչ ի նոցանէն զոր յայտնեսցես, և է ինչ զոր գաղտնի ի ծածուկ իմաստնոց ուսուսցես։ Վաղիւ յայսմ ժամու սկսի՛ր գրել։

Եւ գնացի՝ որպէս հրամայեաց ինձ Տէր. և ժողովեցի զամենայն ժողովուրդն, և ասացի ցնոսա. Լո՛ւր Իսրայէլ զբանս զայս զիմ. պանդխտութեամբ պանդըխտեցան հարքն մեր յԵգիպտոս ի Նախնմէ, և փըրկեցան անտի, և ընկալան օրէնս կենաց՝ զոր ո՛չ պահե-

ցին, զորով և դուք անցէք. և տուաւ ձեզ երկիրն ի ժա-
ռանգութիւն, և յերկրի ձերում դուք և հարքն ձեր
անօրինեցայք, և ո՛չ պահեցէք զճանապարհս զոր պա-
տուիրեաց ձեզ բարձրեալն, և արդար դատաւորն, և
զերծ հան ի մէնջ ի ժամանակի զպարգեւեալն. և արդ՝
դուք աստ էք, և եղբարք ձեր ներքսագոյն քան զձեզ
են. Թէ դնիցէք ի մտի ձերում և խրատիցիք, և հնա-
զանդեցուցէք զմիտս ձեր, կենդանիք պահեսջիք. զի
դատաստանն յետ մահու եկեսցէ, յորժամ դարձեալ
կենդանասցուք, յայնժամ արդարոցն անուն յայտ-
նեսցի. և առ իս ոք մի՛ մերձեսցի այսուհետեւ, և մի՛
խնդրեսցէ ոք զիս մինչեւ ցքառասուն օր։

Եւ առի ընդ իս զհնգեսեան արսն զոր հրամայեաց ինձ,
և գնացի ի դաշտն և եղէ անդ. և եղեւ ի վաղիւ անդր,
և ահա ձայն բարբառոյ կոչեաց զիս և ասէ. Եզրա՛,
Եզրա՛, բա՛ց զբերան քո և կո՛ւլ զոր ես քեզ տամ։ Եւ
բացի զբերան իմ, և ահա բաժակ մի տուաւ ինձ, և
գոյն նորա էր ջրոյ, և առի արբի։ Իբրեւ արբի, սիրտ
իմ բխեաց զիմաստութիւն, և միտք իմ յաւելին ըղ-
հանճար, և հոգի իմ բխեաց զյիշատակս. և բացաւ
բերան իմ և ո՛չ փակեցաւ. և բարձրեալն ետ զիմաս-
տութիւն հնգեցունց արանցն, և գրեցին փոխանակաւ
զասացեալ նշանան գրով, զորս ո՛չ գիտէին. և նստայ
անդ աւուրս քառասուն, և նոքա ի տուընջեան գրէին
և ի գիշերի հաց ուտէին, և ես ի տուէ խօսէի և ի
գիշերի դադարէի. և գրեցին ի քառասուն աւուրն
գիրս իննսուն և չորս։ Եւ եղեւ յետ լնուլ քառասուն
աւուրն՝ խօսեցաւ ընդ իս բարձրեալն և ասէ. Զա-
ռաջինն զոր գրեցեր յայտ դիջիր, և կարդասցեն զնա
արժանիք. և զերկրորդն պահեսջիր առ յուսուցանել
զիմաստունս ժողովրդեանն. զի ի նոսա են առակք ի-
մաստութեան, և աղբիւր հանճարոյ և գիտութեան։
Եւ արարի այնպէս։ Ցամին չորրորդի շաբաթիւն ա-
մաց, յետ ամաց հինգ հազար արարածոց աշխարհի,
և երկուց ամաց աւուրց. և ինքն Եզր վերացաւ և
համբարձաւ ի գունդ նմանողաց իւրոց ընդ սուրբս և
ընդ արդարս։ Գրեցի զայս ամենայն. և յորջորջեցայ
դպիր բարձրելոյն. որում փառք յաւիտեանս, ամէն։

# ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԻՒՆ ԵԶՐԻ ՄԱՐԳԱՐԷԻՆ

## ԸՆԴ ՀՐՇՏԱԿՆ ՏԵԱՌՆ ՎԱՍՆ ՀՈԳՒՈՑ ՄԱՐԴԿԱՆ

ՏԵՍԱՆԷՐ Եզր մարգարէն զհրեշտակ Աստուծոյ, և հարցանէր ցնա բան առ բան. և հրեշտակն մատուցանէր նմա և ասէր զոր ինչ լինելոց է ի կատարածին։

Եհարց մարգարէն ցհրեշտակն և ասէ՝ թէ Զի՞նչ պատրաստեալ է Աստուած արդարոց և մեղաւորաց. և ի ժամանակին՝ յորում հասանէ օր վախճանին, ի՞նչ լինիցին կամ ո՞ւր երթան, ի պատիւ եթէ ի տանջանս։

Պատասխանի ետ հրշտակն և ասէ ցմարգարէն. Պատրաստեալ է արդարոցն ուրախութիւն մեծ և լոյս յաւիտենից, և մեղաւորացն պատրաստեալ է զխաւարն արտաքին և զհուրն յաւիտենից։

Ասէ մարգարէն ցհրեշտակն. Տէր, ո՞վ է որ ոչ իցէ մեղուցեալ Աստուծոյ ի կենդանեաց. և թէ այդ այդպէս իցէ, ապա երանի է անասնոց և թռչնոց՝ որ ոչ մնան յարութեան, և ոչ ակն ունին վախճանին։ Եթէ զարդարսն՝ որ ամենայն տանջանացն համբերեցին, և զմարգարէսն և զառաքեալսն և զմարտիրոսն պսակեցեր՝ յորժամ զգայլահազն առնոյին, և ծեծէին ռամք զերեսս նոցա՝ մինչեւ երեւէին երիկամունք նոցա. նոքա վասն քո չարչարեցան. մեզ մեղաւորացս ողորմեա, որ գրաւեալ եմք և ըմբռնեալ ի ձեռն սատանայի։

Պատասխանի ետ հրեշտակն և ասէ. Եթէ աք քան զքեզ ի վեր է, մի՛ յաւելուս խօսել ընդ նմա, եթէ ոչ մեծ չար լինիցի քեզ։

Ասէ մարգարէն ցհրեշտակն· Տէր, սակաւիկ մի յաւելում խօսել ընդ քեզ, արա ինձ պատասխանի։ Յորժամ հասանի օր վախճանին և առնու զհոգին, ի տեղի տանջանաց կարգէ զնա, եթէ ի տեղի պատուոյ՝ մինչեւ ի գալուստն։

Պատասխանի ետ հրեշտակն և ասէ· Մի՛ միայն մինչեւ ի յօր վախճանին· այլ որպէս արծիւ թռուցեալ փութացարուք գործել զբարիս և զողորմութիւնս։ Զի ահեղ է օրն այն ստիպող և պահանջող· ոչ զորդիս տայ հոգալ և ոչ զինչս։ Գայ հասանէ յանկարծակի, որպէս գերի վարէ անողորմ և անաչառ, յանկարծահաս անկասկած։ Եթէ լայ և եթէ ողբայ, ոչ ինչ լինիցի նմա ողորմութիւն։ Այլ յորժամ հասանի օր վախճանին, բարի հոգոյն բարի հրեշտակ գայ և չարին չար· որպէս առաքեալ ասէ ի Թագաւորացն առ չարագործսն և առ բարեգործսն, բարոյն բարի հատուցանէ և չարին չար· Նոյնպէս և բարի հոգոյն բարի հրեշտակ գայ, և չարին չար։ Ոչ եթէ հրշտակն է չար, այլ իւրաքանչիւր գործքն։ Առնու զհոգին՝ տանի ընդ արեւելս, ընդ եղեամն[1], ընդ ձիւն, ընդ խաւար, ընդ կարկուտ, ընդ սառն, ընդ մրրիկ, ընդ գունդս սատանայի, ընդ վտակս և ընդ հողմն սաստիկ անձրեւացն, ընդ ահեղ և ընդ զարմանալի ճանապարհսն, ընդ անձուկ կապանս և ընդ բարձրահամ լեռունս անցուցանեն։ Ո՛վ զարմանալի ճանապարհն· զի ոտնհետ ոտին է, և առաջի նորա հրեղէն գետք են։

Զարմանայր մարգարէն և ասէր· Ո՛վ զարմանալի և սոսկալի ճանապարհն այն։

Ասէ հրշտակն· Յայն ճանապարհն եւթն բանակք դիւաց կան, և եւթն աշտիճանք աստուածութեանն, եթէ ընդ այն կարեմ անցուցանել։ Քանզի առաջին օթեւանքն չար են և զարմանալի· երկուքն ահեղ և անպատումն· երեքն դժոխք են և սառամանիք· չորքն կռիւք են և պատերազմունք· ի հինգն ապա քննումն· եթէ արդար է՝ լուսաւորի, և եթէ մեղաւոր է՝ մթա-

1. Յօրինակին եղեմն։

նայ. ի վեցն ապա պայծառանայ հոգի արդարոյն իբրեւ զարեգակն. յեւթն ապա տարեալ հասուցանեմ զնա յերկրպագութիւն մեծի աթոռոյ աստուածութեանն, ընդդէմ դրախտին՝ յանդիման փառացն Աստուծոյ, ուր գերազանցիկ լոյսն է:

Ասէ մարգարէն ցհրեշտակն. Տէր իմ, երբ ընդ այնպիսի արհաւիրքն, ընդ կռիւքն, ընդ պատերազմունքն, ընդ տապախառինքն անցուցանես զնա, ընդէ՞ր ոչ հանդիպեցուցանես զնա աստուածութեանն՝ քան աթոռոյն միայն հասուցանես:

Ասէ հրեշտակն ցմարգարէն. Դու ի սնոտի մարդկանէ ես և զմարդկան բնութիւն խորհիս: Ես հրեշտակ եմ և հանապազ Աստուծոյ եմ ծառայել, և ոչ եմ տեսեալ զերեսս Աստուծոյ. դու զի՞րդ ասես հանդիպեցուցանել զմարդ մեղաւոր առաջի աստուածութեանն: Զի ահեղ և զարմանալի է աստուածութիւնն, և ո՞վ իշխեսցէ հայել ընդդէմ անեղին աստուածութեանն: Եթէ հայեսցի ոք, իբրեւ զմոմ հալեսցի յերեսացն Աստուծոյ. զի հրեղէն է աստուածութիւնն և զարմանալի. քանզի այսպիսի պահապանք կան շուրջ զաթոռոյ աստուածութեանն: Կայանք են, մանաւրբուանք են, խոռոչք են, հրեղէնք են, կամարազգեստք են, լապտերք են: Անդ որոտմունք են, անդ շարժմունք են, անդ կռիւք են, անդ պատերազմունք են, անդ տապախառինք են, շրջախոռոչք են, զեռունք են, հրեղենազգեստք են, բոցեռացք են, հրեղենագունդք են: Շուրջ զնովաւ սերոբէքն անմարմին, քերոբէքն վեցթեւեան. երկու թեւօքն զդէմսն ծածկեն և երկու թեւօքն զոտսն և երկու թեւօքն թռուցեալ աղաղակեն՝ սուրբ սուրբ (սուրբ) տէր զօրութեանց, լի են երկինք և երկիր փառօք քո: Այսպիսի պահապանք կան շուրջ զաթոռոյ աստուածութեանն:

Եհարց մարգարէն ցհրեշտակն և ասէ. Տէր, զի՞նչ լինիցիմք. զի մեղաւորք եմք ամենեքեան և ըմբռնեալ ի ձեռս սատանայի: Արդ ի՞ւ զերծանիմք, կամ ո՞վ հանէ զմեզ ի ձեռաց նորա:

Պատասխանի ետ հրեշտակն և ասէ. Եթէ ոք միայ

յետ մեռանելոյն, հայր, կամ մայր, կամ եղբայր, կամ քոյր, կամ որդի կամ դուստր, և կամ այլ ոք ի քրիստոնէից, և աղօթս մատուցանէ՝ պահօք տվօք քառասնօք, մեծ հանգիստ և ողորմութիւն լինի ի ձեռն զենմանն Քրիստոսի. զի Քրիստոս վասն մեր պատարագեցաւ ի վերայ խաչին, և զվեց դարուն զհոգիքն ի ձեռաց սատանայի կորզեաց: Ո՞րչափ ի ձեռն սրբամատոյց քահանային հոգին ազատի, եթէ քահանայն այսպէս կատարէ զքառասունսն՝ որպէս հաճոյ լինի Աստուծոյ. զքառասուն օր յեկեղեցին կացցէ և ոչ ի հրապարակս երթալով. այլ ի ժամէ ի ժամ զերգս մարգարէին Դաւթի կատարեսցէ հանդերձ օրհնութեամբ: Սա է՝ որ հանէ զմեզ ի ձեռաց սատանայի: Ապա եթէ ոչ՝ տալ ի յաղքատս: Զի աղօթքն ձեր այսպէս է. որպէս եղանէ մշակն՝ երթայ սերմանել, և եղանէ բոյս զուարթ և վայելուչ, և կամի առնել արդիւնս բազումս, և եղանէ փուշ և որոմն և հեղձուցանեն, և ոչ տայ ժողովեալ արդիւնս բազումս. Նոյնպէս և դուք յորժամ երթայք ի դուռն եկեղեցոյն և կամիք աղօթս մատուցանել առաջի աստուածութեանն, եղանեն հոգք աշխարհիս և պատրանք մեծութեան, և հեղձուցանեն զձեզ. և ոչ տայ սերմանել արդիւնս բազում: Զի եթէ աղօթքն ձեր այսպէս էր՝ որպէս Մովսէս ելաց աւուրս քառասուն, և բերան ընդ բերան խօսեցաւ ընդ Աստուծոյ, Նոյնպէս և Եղիա հրեղէն կառօք յերկինքն վերացաւ, Նոյնպէս և Դանիէլ եկաց ի գուբ առ.......[1]:

1. Աստանօր թուղթ անկեալ կայ. և յետ այնորիկ են եւս թուղթք վեց, ամենեքեան մաշեալք և պակասեալք կիսով չափ՝ ի շրթանց կողմանէ. և Մնացորդ հարցաքննութեանն իսպառ պակասէ ի վերջ կուսէ գրչագրին:

## …ԻՒՆ
## …ՆՆ ԱԴԱՄԱՅ*



ՈՐԺԱՄ ստեղծ Տէր Աստուած զերկինս և զերկիր, և արար նախ զզօրս հրեշտակաց ի ծառայութիւն աստուածութեանն իւրոյ։ Իսկ չարն Սատայէլ և Բելիար՝ դասագլուխ էին դասուց սատանայի, մեծափառք զարդարեալ, բարձր քան զամենայն հրեշտակս և զամենայն դասս հրեշտակաց. օրհնէին, գովէին, բարեբանէին և փառաբանէին զԱստուած։

Իսկ պիղծն սատանայ՝ ոչ կամեցաւ օրհնաբանել զԱստուած. և հպարտացաւ ի սրտի իւրում, և կամեցաւ զաթոռ իւր բարձրացուցանել հաւասար Աստուծոյ աթոռին։ Եւ հրամայեաց Տէր Աստուած յուռնաւոր սերովբէից՝ մեծին Գաբրիէլի և ահաւորին Միքայէլի, և ինն դասուց հրեշտակացն. դիմեցին ի վերայ Սատայէլի և ամենայն կամարարացն նորա, հարին զնոսա և ի վայր տուին, որպէս զկարկուտ ի յամպէն։

* Զայս մեղէն յարմարեցաք, զի գտաք ի թիւ 729 գրչագրի Մատենադարանի վանացս ասանց խորագրի, բայց ի միւս սատի գլխագիր Ա . . . ։ Սա բաժանեալ է՝ ուրոյն ուրոյն գլխակարգութեամբք կարմրադեղի՝ ի հինգ մասունս, որպէս տեսցի յառաջիկայդ ըստ կարգի։

Իսկ բարերարն Աստուած, վասն հպարտութեանն սատանայի, ստեղծ զԱդամ հողեղէն, զի լցուսցեն ըզտեղի անկելոց հրեշտակացն։ Եւ արկ Տէր Աստուած թմբրութիւն ի վերայ Ադամայ, և առ զմի ի կողիցն նորա՝ և ելից ընդ այնր մարմին. և իբրև զարթեաւ Ադամ ի քնոյ, տեսաւ զկին՝ հաւանեցաւ։ Եւ ասաց Ադամ. Ահա ոսկր ի յոսկերաց իմ, և մարմին ի մարմնոյ. սա կոչեսցի կին։

Եւ տարեալ զնոսա Տէր Աստուած, և եդ ի մէջ դրախտին Ադենայ, որ է փառօք մեծ. և ետ պատուէր նոցա Տէր Աստուած և ասէ. Ուտելով կերիջիք յամենայն պտղոց ծառերոյդ, բայց ի ծառոյն կենաց՝ մի՛ ուտիցէք և մի՛ հուպ լինիցիք. զի յորժամ ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռանիք։ Իսկ վասն այն եդ զԱդամ ի միջասահման դրախտին, (զի) եթէ պահեալ էր Ադամ զպատուիրանս Տեառն, վերանայր փառօք ի վերինն Երուսաղէմ՝ ի տեղի անկեալ հրեշտակացն։

Վասն այն սատանայ նախանձեալ եմուտ յօձն։ Յայնժամ օձն թեւաւոր էր, լեզու ունէր, մտանէր ի դրախտն. և սատանայ՝ յահէն հրեշտակաց՝ ոչ իշխէր ի դրախտն մտանել։ Իբրև ետես զօձն ի դրախտին, ուսուց օձին խաբել զԵւայ և զԱդամ։ Իբրև գնաց օձն և տեսաւ զԱդամ և զԵւայ, զի շրջէին և պտղոյն ուտելոյն զուարճանային ի մէջ դրախտին. Իսկ օձն խրախեալ (խրատեալ) էր ի սատանայէ. այնչափ որսաց, որ զԵւայ միայն գտաւ։

Ասէ օձն Եւայի. Ընդէ՞ր (յ)ամենայն ծառոյ պտղոյ ճաշակես, և (յ)այս գեղեցիկ պտղոյս ո՛չ ճաշակես։

Ասէ Եւայ. Զի Տէր Աստուած պատուէր ետ չուտել ի պտղոյդ. իբրև ուտիցէք, ասէ, մահու մեռանիցիք։

Ասէ օձն. Խաբել կամի զձեզ Աստուած. զի Աստուած իբրև զձեզ նման էր, քան զի չէր կերեալ ի պտղոյդ. իբրև կերաւ՝ աստուածութեան փառացն հասաւ։ Վասն այն ասաց ձեզ չուտել ի պտղոյդ, զի հաւասար լինիցիք՝ և փառակից և աթոռակից Աստուծոյ։

Յանժամ առեալ ի պտղոյն՝ և կերաւ. ընդ ուտել պտղոյն՝ մերկացաւ ի լուսոյն։ Իբրև եկն Ադամ և ետես զկինն մերկացեալ ի լուսոյն, տրտմեցաւ Ադամ և ասէ. Կերա՞ր ի պտղոյն։

Ասէ Եւայ. Զի քաղցրագոյն պտուղ է, առ՝ և դու ճաշակեա և տես զքաղցրութիւն պտղոյդ։

Ասէ Ադամ. Ո՛չ կարեմ ուտել ի դմանէ, և մերկանամ քեզ նման։

Ասէ Եւայ. Դու կերայ, վասն այն մերկացայ. դու սակաւ ճաշակեա։

Ասէ Ադամ. Ո՛չ կարեմ ճաշակել և քեզ նման մերկանալ։

Ասէ Եւայ. Թէպէտ ուտես՝ ո՛չ բարկանայ քեզ Աստուած, զի Աստուած զքեզ յոյժ սիրէ։

Եւ ապա առաւ զպտուղն՝ քննէր, և վախէր թէ կնոջ նման մերկանայր։ Թէ ոչ ճաշակէր, կինն լայր և աղաչէր՝ ասելով. Մեռանիմք՝ ի միասին, և թէ ապրիմք՝ ի միասին, մի՛ որոշիլ ի քէն։ Իսկ Ադամ, երբ հայէր ի կնոջ գեղեցկութիւնն, խելքն թափէր ի գլխոյն. (որ) թէպէտ ի լուսոյ էր մերկացեալ՝ բայց գեղեցիկ էր, զի մարմինն՝ որպէս մարգարիտ՝ սպիտակափայլ էր. քանզի նորաստեղծ էր, զի Աստուած իւր ձեռօքն էր ստեղծեալ և զարդարեալ։ Իսկ Ադամ բազում քըննութիւն արար, ասաց. Մի՛ թէ Աստուած ողորմի՞ ինձ և ո՛չ մերկացուցանէ. Ե՞րբ՝ թէ մերկանամ. զի լաւ է ինձ մեռանիլ՝ քան թէ բաժանիլ և որոշիլ ի կնոջէս։ Զի զայն ոչ իմացաւ, (զի) թէ պահեալ էր զպատուիրանն, կարող էր Աստուած՝ քան զայն և այլ գեղեցիկ կին ստեղծանել։ Մինչև երեք ժամ պտուղն ի ձեռն քննութիւն արար, ասաց՝ թէ ո՛չ կարեմ ապրիլ առանց կնոջս. և եթող զխօսքն Աստուծոյ և՝ կնոջ խօսքով՝ կերաւ զպտուղն, և մերկացաւ ի լուսոյն։ Զի ոչ թէ պտուղն չար էր, քան զի չար պտուղն ի դըրախտի մէջն ոչ կայր. այլ չարն այն էր, որ Եւայ՝ զԱստուծոյ խօսքն և զպատուիրանն եթող և զօձին լսեց. և Ադամ՝ զԱստուծոյ խօսքն և զպատուիրանն եթող՝ զիւր կնոջ խօսքն լսեց։

Վասն այնորիկ մերկացան ի լուսոյն. և գնացին ծածկեցան թզենի տերևովն. քանզի գիտէին տերեւի ծածկելովն կարէին ծածկել ի տեսութենէն Աստուծոյ. քանզի հանապազ երևէր Նոցա Աստուած, զի գայր հանդարտապէս, և քաղցր բարբառով խօսէր ընդ Նոսա: Բայց ի ժամուն՝ յորում կերեալ էին ի պտղոյն (և) մերկացեալ ի լուսոյն և տերևովն ծածկեալ էին զմերկութիւնս իւրեանց, ձայնն կեցաւ ի վերայ թզենւոյն, և ձայնեաց ասելով. Ո՞ւր ես Ադամ:

Ասէ. Տէ՛ր, զքո ձայնն լուայ, փախեայ, թաքեայ:

Ասէ Տէրն. Ընդէ՞ր փախեար և թաքեար:

Ասէ Ադամ. Վասն այն փախեայ և թաքեայ, զի մերկ էի և ամաչէի ի քէն:

Ասէ Տէրն. Զի լուսով ծածկեցի զձեզ, ընդէ՞ր մերկացայք ի լուսոյն. մի՛ թէ կերայ՞ք ի պտղոյն:

Ասէ Ադամ. Այս կինս, (զ)որ դու ստեղծեր, սայ խաբեաց:

Դարձեալ Տէր խօսեցաւ ընդ կնոջն, և ասաց. Կին, զի՞ւ արարեր զայդ:

Իսկ կին ասաց. Տէր, զօձն՝ զոր ստեղծեր՝ նա խաբեաց զիս:

Յայնժամ Տէր բարկացաւ Նոցա, և ասաց Ադամայ. Փոխանակ զի արարեր զայդ, ո՛չ լուար խրատոյ իմոյ, այլ փութապէս լսեցեր զխրատոյ կնոջ քո. փոխանակ անմահ տնկոյս՝ փուշ բուսանի քեզ. քրտամբ երեսաց քոց կերիցես զհաց քո. զի հող էիր և ի հող դարձցիս: Եւ դարձեալ ընդ Եւայի, ասաց. Փոխանակ զի արարեր զայդ, բազմացուցանելով բազմացուցից զտրտմութիւն քո, ծնունդ քո՝ մահու չափ եղիցի, և ցաւօք կերիցես զաշխարհս, և եղիցի քեզ տրտմութիւն զամենայն աւուրս կենաց քոց: Եւ դարձեալ ասաց օձն. Անիծեալ լիցիս յամենայն կենդանեաց մէջ, ի վերայ լանջաց և որովայնի քում սողասցիս, և հող կերիցես զամենայն աւուրս կենաց քոց. եդից զթշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջ՝ և ի մէջ զաւակի դորա, նա սպասեսցէ քում գլխոյ

և դու սպասեսցես նորա գարշապարի։ Եւ հրամայեաց հրեշտակաց հանել ի դրախտէն, և հրեղէն սրով պահել զճանապարհս դրախտին կենաց։ Եւ հանին զԱդամ և զԵւայ ի դրախտէն։

Եւ ելեալ արտաքս ի տեղի մութն և խաւար, զոր ողջոյն անդ մնացին, առանց ուտելոյ, անմխիթար լային և կոծէին զանձինս իւրեանց։ Իսկ զվեց օրէն հետ, ողորմեցաւ նոցա Տէր, և առաքեաց զհրեշտակ իւր՝ հանել զնոսա ի խաւարէն, և առաջնորդեալ եբեր զնոսա ի լոյս աշխարհս, և եցոյց նոցա զպտղաբերս այնով լինել և ապրել։ Իսկ իբրև տեսին Ադամ և կին իւր, ասացին. Թէպէտ չէ՛ բարութիւն, և աշխարհիս լոյս և պտուղ՝ չեն հաւասար՝ լուսոյ և պտղոյ դրախտին. բայց ոչ սովաւ (ի) մահ և կամ խաւար մնամք։ Այսպէս ուրախ կացին։*

* Աստ զհետ գոյ ի գրչագրին մեկնութիւն իմն այսոցիկ բանիցս՝ յանծանօթէ ումեքէ, նոյնագիր և նոյնալեզու ընդ մասանց Պատմութեանս, — յերկուս հատուածս մի զմիոյ կնի, որ ունին այսպիսի խորագիրս կարմրագրեալս. մին՝ Այս է յայտնութիւն որ յայտնեց Տէր զԵղիայի. իսկ միւսն՝ Դարձեալ մեկնութիւն պտղոյն Ադամայ. զորս՝ համարեալ յաւելուածս՝ ի բաց բարձեալ թողաք ի միջոյ մասանց Պատմութեանս, որպէս անդէպ իմն ի ծաղկաքաղս աստ Անանիայ երգոյ. ընծայելով միայն զխորագիրս իւրաքանչիւր իւրու-բոյն։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ԵԼԱՆԵԼՈՑՆ ԱԴԱՄԱՅ Ի ԴՐԱԽՏԷՆ

ԻՍԿ երբ անկաւ Ադամ ի դրախտէն յաշխարհս, ուրախութեամբ կացին ի վերայ արեգական և լուսնին՝ մինչև յերեկոյին։ Իսկ երեկուն, երբ որ արեգակն մտաւ, նոքա գիտացին թէ խաւար կալաւ զնոսա, (և) այլ ոչ տեսանեն զլոյս. քանզի դրախտն հանապազ լոյս էր, նոյնպէս գիտացին թէ աշխարհս ամենայն լուսաւոր եղիցի. զայն ոչ գիտէին թէ յաշխարհս գիշեր լինի, կամ ցերեկ կայ. վասն այն տրտմեցան իբրև մտաւ արեգակն, հանց գիտացին թէ այլ ո՛չ լուսանայ, (և) լացին և կոծեցան մինչև ցառաւօտն։

Իսկ առաւօտին հաւախօսին, եկն առ նա սատանայ ի կերպ հրեշտակի, և ասէ. Ընդէ՞ր տրտում էք։

Ասէ Ադամ. Վասն այն տրտմինք, քանզի ստեղծեալ էր զմեզ Աստուած և եդեալ ի մէջ լուսեղէն դրախտին, և պատրանօք օձին ճաշակեցաք ի պտղոյն և ելաք ի դրախտէն, և անկանք ի խաւար՝ ժամանակս ինչ։ Դարձեալ ողորմեցաւ Տէր և առաքեաց զհրեշտակ իւր, (որ) եհան զմեզ ի խաւարէն. և բերեալ ի լոյս աշխարհս, թէպէտ (սա) չէր հաւասար լուսոյ արքայութեան, բայց լոյս էր։ Իսկ ոչ գիտեմք թէ զի՞նչ գործեցաք, որ բարկացաւ ի վերայ մեր Տէրն և խափանեաց զայն սակաւ լոյսն. վասն այն կոծամք և լամք։

Ասէ սատանայ. Զի՞նչ ետուք այն հրեշտակին, որ զձեզ եհան ի մութ տեղուոջէն և եբեր ի լոյս։

Ասէ Ադամ. Եւ ոչ ինչ։

Ասէ սատանայ. Զի՞ է, ընդէ՞ր ոչ տասցիք զձեզ ծառայ նմա ամենայն ծնընդովք ձերովք։

Ասէ Ադամ. Ցիմարութիւն կալաւ զմեզ և զայդ ոչ իմացաք տեսել:

Ասէ սատանայ. Զի՞նչ տաք ինձ՝ (որ) տամ ձեզ աւետիք լուսոյ:

Ասէ Ադամ. Եթէ մի անգամ լոյս տեսանիցեմք, քեզ ծառայ լինիմք մեք և ամենայն ծնունդքն մեր:

Իսկ սատանայ ցուցանէր նոցա յարեւելից, և ասաց. Հայեցարուք և անդ տեսանիցէք լոյս:

Իբրեւ ասաց սատանայ զայս բանս, և ինքն սակաւ մի հեռացաւ. և հայէին Ադամ և Եւայ դէպ յարեւելից կողմն, տեսանէին զնշան լուսանալոյն. յոյժ ուրախացան և խնդացին: Իբրեւ սակաւ մի բարձրացաւ արեգակն, եկն առ նոսա պիղծն սատանայ, ասէ. Տեսա՞յք զաւետիսն՝ զի ուրախացուցի զձեզ:

Ասէ Ադամ. Ծառայ եմ քեզ և աւետեաց քոց, զի դու լուսաւորեցեր զմեզ. ամենայն ծնընդքն (ծնունդքն) մեր՝ ծառայ եմք:

Իսկ սատանայ բերեալ քար մի՝ և եդ առաջի Ադամայ, և ասաց Ադամայ. Դիր զձեռդ ի վերայ քարին և ասայ այսպէս. Ամենայն ծնունդքն իմ՝ ծառայ քո եղիցին: Եւ թէ ոչ ասես այսպէս, խոր խաւար բերեմ ի վերայ քո:

Իսկ Ադամ եդեալ ձեռն ի վերայ քարին, և ասաց. Մինչեւ անծինն ծնանի և անմահն մեռանի, մեք և ամենայն ծնունդքն մեր՝ ծառայ եղիցի քեզ:

Եւ առեալ սատանայ զքարն, և տարեալ թաղեաց ի գետն Յորդանան: Այն եղեւ ձեռագիր Ադամայ ի ձեռն սատանայի:

Մինչեւ յերեկոյն ուրախացան և խնդացին Ադամ և Եւայ. (և ապա իբրեւ իմացան) որ խաբեցան ի սատանայէ, լացին և ողբացին, մինչեւ եօթն օրն անօթի կացին և զՏէրն աղաչեցին: Եւ յետ եօթն աւուրն՝ ողորմեցաւ նոցա Տէրն, և առաքեաց զհրեշտակ իւր, և բերեալ ձեռնագիր յԱստուծոյ՝ ետ ի ձեռն Ադամայ, և ասէ. Մի՛ երկնչիր Ադամ՝ թէ խաբեաց զքեզ սատանայ. վասն այն ասաց քեզ՝ թէ մինչեւ անծինն ծնանի, զի անծին ես եմ՝ որ ոչ ոք ծնաւ.

անմահն՝ իմ աստուածութեան (ասաց), որ ոչ ունի զմահ. վասն այն այսպէս խաբէութեամբ էառ զձեռնագիրն ի քէն, որ մնաս դու գերի ի ձեռն սատանայի. բայց ոչ թողում զքեզ գերի ի ձեռն սատանայի, զի դու պատկեր իմ ես. ոչ կորուսից զքեզ և ոչ թողից ի ձեռն նորա։ - Զի այն եօթն օրն՝ որ պահեաց Ադամ, այն ասի առաջաւոր։ - Եւ ի մտանել վեց դարուն, առաքեցից ի լուսոյ աստուածութեան իմոյ՝ զորդի իմ սիրելի. որ եկեալ մարմնանայ ի զաւակէ քումմէ, ի սուրբ և յանարատ կուսէն. զի նայ եղիցի որդի որդւոյ։ Եւ որդին իմ ջնջեսցէ զձեռագիր քո, և ազատեսցէ զքեզ ի գերութենէ սատանայի, և տացէ քեզ զառաջին փառսն քո։

Իբրև զայս աւետիքս լուաւ Ադամ, ուրախացաւ յոյժ. վեց հազար դարն (տարի՞ն)՝ իբրև ժամ մի երևեցաւ։ Օրհնեալ է Աստուած։*

# ԱՅՍ Է ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՈՐԴԻՈՑՆ ԱԴԱՄԱՅ ԱԲԵԼԻ ԵՒ ԿԱՅԵՆԻ

ԻՍԿ յորժամ Ադամ յետ խաբէութեան սատանայի՝ երբ հինգ օր պահեաց ծոմով, յորժամ յառաջաւոր ասեմք. քաղցրացաւ նմա Աստուած և առաքեաց զհրեշտակ իւր՝ և պատմեաց նմա զմարդանալն Աստուծոյ և զփրկութիւն նորա ի ձեռաց սատանայի։ Եւ բերեալ զեզն հնազանդեցոյց նմա՝ նովաւ վարել և վաստակել և գործել զերկիր, և զպտուղ նոցա ուտել

* Ասա զհետ զայս երրորդ հատուած մեկնութեան, այսպէս կարմիրս մակագրեալ. Այս է Ծննդոցն, և այլն։ (Ծնունդ վէց)։

և լիանալ. և հրամայեաց ի պտղոյ անտի՝ բաժին հանել Աստուծոյ։

Զի Ադամայ առաջին զաւակն Կայեն էր. երբ Կայէն եղեւ երեսուն տարեկան, ապա ծնաւ Աբէլ և քոյր նորա։ Եւայ երեսուն տարի՝ մի փոր կու ծնանէր, ջուխտակ՝ մին աղջիկ և մին տղայ։

Երբ Աբէլ եղեւ քսան տարեկան՝ խաշանց հովիւ եղեւ, իսկ Կայեն հողագործ էր։ Զի ասաց նոցա Ադամ, թէ ի վաստակոց ձերոց տասանորդէն՝ մին բաժին հանեք Աստուծոյ. զի Աբելի ոչխարն (որ) ծնաւ՝ հազար և մի պուտ ունէր, զայն Հաբէլ ընտրեաց Աստուծոյ բաժին. բայց ոչ մատոյց վասն սիրոյ եղբօրն. քանզի ասէր. Երբ հասանէ հունձն եղբօրն իմ, ապա ի միասին մատուսցուք զբաժինն Աստուծոյ։ Իբրեւ հասին հունձքն ցորենոյ Կայենի, երբ հնձէր զցորեանն իւր, զորն որ քամի տուեալ էր՝ փունջ անէր, և զայն խուրձն կապէր և ուրիշ դնէր ի բաժինն Աստուծոյ։

Եւ երբեր Հաբէլ զգառն իւր, զոր ընտրեալ էր՝ և բաժին Աստուծոյ խոստացեալ։ Իսկ Կայէն կանգնեցաւ յաղօթս առ Աստուած, և ասաց. Դու, Տէր, ստեղծող ամենայնի, գիտութիւն լիցի քեզ. զամենայն ինչ զոր վաստակեցին և գործեցի՝ հանի քեզ բաժին և տասանորդ, ըստ արդար վաստակոց իմ՝ մատուցի քեզ. իսկ դու գիտես, որպէս հաճոյ է քեզ՝ այնպէս եղիցին կամք քո։ - Եւ բարկացաւ Տէր ի վերայ Կայենի. ափ մի հողոյ նման քամատարաց՝ զամենայն հունձսն Կայենի ցորենեացն՝ ցրուեաց, և կորոյս զամենայն ինչս նորա, և հասկ մի ոչ գտաւ. կարկտիւ եհար զԿայենի երեսն և սեւացոյց իբրեւ զգործելի[1], և այնպէս մնաց երեսն սեւ։

Իսկ Հաբէլ մատուց զանդրանիկ գառն՝ Աստուծոյ. ձեռնատարած աղօթէր առ Տէր և ասէր. Տէր Աստուած, ստեղծօղ և արարիչ ամենայն բարութեանց, աղաչեմ զքեզ՝ ընկալ զնուէրս, որ մատուցանեմ քեզ բաժին՝ ի բարեստեղծեալ պարգեւաց քոց, զոր բաշխեցեր մեզ. (ի) քո բաշխեալ բարեացդ ի քեզ մատու-

1. Ածուխ։

ցանեմ ի հաճոյս: — Իսկոյն քաղցր հողմն հնչեաց, և լոյս ծագեաց յերկնից և լուսաւորեցան երեսն Աբելի. և եկն յերկնից բարբառ որ ասէր. Լսելի եղեն աղօթքն քո, և ընդունելի եղեն ընծայն քո: Եւ լուսափայլ հովանի եղեւ ի վերայ Հաբելի, և ընկալաւ զպատն Աբելի և վերացաւ յերկինս:

Իսկ Կայէն ոխացաւ ընդ Աբելի, կամէր սպանանել զնա՝ բայց ոչ գիտէր սպանանել, զի այլ ըսպանումն ոչ էր եղեալ: Բայց Աբէլ ոչ գիտէր զչար խորհուրդն եղբօրն, և Աբէլ սիրէր զեղբայրն իւր, և համապազ ուտէին և ըմպէին ի միասին և շրջէին:

Իսկ ի միում աւուր՝ ասէ Կայէն ցեղբայր իւր. Գընասցուք ի դաշտն՝ շրջեսցուք: Եւ ելեալ գնացին ի դաշտըն, և կամէր Կայէն կապել զեղբայրն իւր. բայց Աբէլ ժիր էր աւելի քան զԿայէն, վասն այնորիկ ոչ յաղթել կարէր Կայէն զխորհուրդն իւր: Սկիզբն արար խաղալ ընդ եղբօրն իւր՝ և արար զօտամարտիլ, և կշտի բռնել փարձիլ, զի տեսցէ յուժն իւր՝ յաղթել կարէ՞ զնա. քանզի որ կշտի բռնեցին՝ վայր անկաւ և ոչ կարաց յաղթել զԱբէլ: Եւ ելեալ Կայէն հաւաքեցաւ աստ և անդ, և ետես մատն խաղողի բազում երկայն. իսկ Կայէն ասէր. Եկ եղբայր մատնաւ խաղաղասցուք[1]:

Ասէ Աբէլ. Ո՞րպէս խաղաղասցուք մատնեաւ:

Ասէ Կայէն. Դու գիւեայ[2] զծառս, և ես երեք մատնովս պատեմ զքեզ, տեսանեմ թէ կարե՞ս կտրել զնա և արձակիլ. ապա ես գրկեմ զծառդ, և դու պատես մատներաւդ ի վերայ իմ, տեսցուք զի ո՞վ կարէ կտրել զնա:

Եւ նա ուժով էր, այնու փորձեաց՝ թէ ո՞ւմ ուժն աւելի այ[3]: Իբրեւ գնաց Աբէլ ի ծառն՝ Կայէն առեալ զուռն որթի և պատէր երեք պատ ձեռներովն և քամակովն. և

1. Այսպէս յօրինակին, որպէս և միւսդ:

2. Ուղղագոյն ելջիեայ, որպէս և յստորև դնէ՝ ելջիմ զծառդ:

3. Գաւառաբար՝ այ, իմա՛ է:

ապա իմացաւ Աբէլ զչարութիւն եղբօրն. աղաչէր և ասէր. Եղբայր, արձակեա զիս ի կապէն։ Եւ Կայէն ոչ արձակէր, այլ պնդագոյն կապէր. այնչափ ուռով որթիւ պատեաց զնա ծառոյն՝ ոտից մինչեւ ցգլուխն։ Լայր Աբէլ և ասէր. Եղբայր, արձակեա զիս, այս անցաւոր աշխարհիս համար մի հեղուր զարիւնն իմ, ես քեզ ի՞նչ չարութիւն արի, ընդէ՞ր բարկանաս ինձ. աշխարհս ամէն քեզ լինի։

Իսկ Կայէն աստ և անդ շրջէր թէ իրք մի գտցէ, և այնով սպանանիցէ զեղբայրն, և ոչ գիտէր թէ ո՞րոյ տեղ է սպանելոյ։ Իսկ չարն սատանայ իբրեւ եղեւ երեւկոյն, սև. գայլաքարաւ և քարածեծուքար մի կայր, սուր իբրեւ ածելի, այնով սպանեին մինն զմիւսն, և զսուր քարն ի վայր ձգեաց։ Եւ Կայէն ուսեալ ի նմանէ և առեալ զսուր քարն, և եկեալ առ Աբէլ. իսկ Աբէլ լայր, և ասէր. Ո՞չ ողորմիս մեր ծնողացն։ Իսկ Կայէն ոչ ողորմեցաւ նմա։ Իբրեւ եկն ի սպանումն՝ լալով ասաց Աբէլ. Եղբայր, բեր զերեսդ համբուրեմ. կարօտ չմնայ ի սրտիս. դու գիտես՝ դատաստանն Աստուծոյ։ Իբրեւ քարիւն կտրէր զխըրճակն եղբօրն, յայնժամ եղբայրն ասաց. Իմ մօրս ասես՝ զի զկաթն իւր հալալ արասցէ ինձ։ Քանզի քարն փոքր էր, հազիւ մինչեւ օգուտ ժամ մի մորթեաց։ Դարձեալ ի ժամ մորթելոյ ասէր եղբայրն. Ես գնացի յաշխարհէս և դու չահեա զսիրտ ծնողաց մերոց։

Իբրեւ սպանեաց զեղբայրն, (և) սրտախութեամբ երթայր. երեւեցաւ Տէրն ի ճանապարհին յիսուն կանգնաչափ բարձր, ասաց Կայենի. Ո՞ւր է եղբայրն քո։

Եւ նա լրբութեամբ ասաց. Ո՞վ եդ ինձ պահ՝ որ խնդրես յինէն։ — Վասն այն հարցանէր Աստուած՝ թերեւս մեղայ ասիցէ։ Իբրեւ ետես Տէրն՝ որ այնպէս ասաց Կայէն, բարկացաւ ի վերայ Կայենի և եօթն պատուհաս եդ Կայենի։

ա. Մէկ պատուհասն այն է, որ երկու կոտոշ բուսաւ ի վերայ գլխոյն։

բ. Երկրորդ պատուհասն այն էր, որ կոտոշն ձայ-

նէր և տէր բարձր բարբառով. Թէ, Կայէն եղբայրասպան է։ Սար և քար և ձոր՝ ձայնէր և տէր. Կայէն եղբայրասպան է։

գ. Երրորդ պատուհասն այն է, որ ոտիւք և ձեռօքն և ամենայն բոլոր անդամօքն դողդողայր իբրև զուռ։

դ. Չորրորդ պատուհասն այն էր, (զի) քան որ ուտէր ոչ լիանայր։

ե. Հինգերորդն պատուհասն այն էր, որ ինչ սիրտըն ուզէր և յուտել չկարէր, և իբր թէ ուտէր, ի վայր հեղոյր։

զ. Վեցերորդն պատուհասն այն էր, որ քուն չունէր՝ ոչ գիշերն և ոչ ցերեկն։

է. Եօթներորդն պատուհասն այն էր, որ Աստուած նմա մահ ոչ հրամայեաց, այլ ասաց Տէրն. Ով որ սպանիցէ զԿայէն, նա նորա պատուհասն ի վերայ ըսպանողին անկանիցի։

Եւ այնպէս մնաց մինչև ութ հարիւր և վաթսուն տարի. յետ անճար մնաց մնաց, (զի) մահուն փափաք ունէր՝ և ոչ մեռանէր։ Իսկ մորթի(ւ) մի վերէն էած և ծածկեաց զինքն։

Իբրև եւ Ղամէք ի ձի, գնաց ի յորս. երեւեցաւ Կայէն ի հեռաստանէ կոտոշիւ և մորթիւ։ Իբրև տեսաւ Ղամէք, գիտաց թէ եղջիւր[1] է. եհար նետիւ աղեղան, և սպան զԿայէն։ Պատուհասն անկաւ ի վերայ Ղամեքայ։ Իսկ Ղամեքայ կինն բարի էր, աղաչեաց զԱստուած և ողորմեցաւ նմա Տէրն՝ վասն բազում արտասուելոյ կնոջն, բժշկեցաւ ցաւն և վերացաւ պատուհասն Ղամեքայ։

Իսկ Ադամ և Եւայ՝ (իբրև) իմացան զսպանումն Աբելի, լային և սգային բազում ժամանակս։ Քանի որ թաղէին զմարմին Աբելի՝ երևանէր յերեսս հողին. իսկ հանապազ արիւնն ոչ ցամաքէր, և ոչ հոտէր և ոչ որդնէր մարմինն։ Քանզի Աստուած Ադամայ ասաց հող լինի՝ և ապա իւր ծնունդն. պիտէր յառաջ Ադամ մեռանէր և

1. Այսպէս յօր. փոխանակ եղջերուի։

հող դառնայր, ապա ծնաւնդն նորա։ Մինչեւ ի մար֊մինն Աբելի՝ ոչ ոք էր մեռեալ, և այնու ոչ հողանայր և ոչ ցամաքէր արիւնն Աբելայ։ Մինչեւ Ադամայ մահն այնպէս անփորձ մնաց մարմինն, որպէս կենդանի ի քուն. (իսկ) երբ Ադամ մեռաւ, ապա թէ մարմինն Ա֊բելի ի գերեզմանն մտաւ։

Բայց յորժամ որ Կայէն զԱբէլ եսպան, Կայէն զեօթն ցաւով կոծէր՝ վայ և եղուկ լայր դառնապէս. իսկ ծնօղքն՝ Ադամ և Եւայ, տեսանէին զԱբէլ արեամբ շաղախեալ՝ և Կայէն պատուհասիւ վիրաւորեալ. իսկ Ադամ և Եւայ լային և ողբային վասն զաւակացն իւրեանց։ Մինչեւ երկերիւր տարի Ադամ ոչ մերձե֊ցաւ ի կինն, ասէր՝ թէ վախեմ թէ այլ չարագոյն զաւակ ծնի իւրեանց կոծաք։ Իսկ ողորմեցաւ Տէր, և առաքեաց աւետիք վասն Սեթայ, մխիթարեաց զԱդամ և զկինն իւր զԵւայ*։

## ՎԱՍՆ ԱԻԵՏԵԱՑՆ ՍԷԹԱՅ

### ԶՈՐ ՊԱՐՏ Է ՄԵԶ ՈՒՆԿՆ ԴՆԵԼ

Եւ քաղցրացաւ Տէրն ի վերայ Ադամայ, և ա֊ռաքեաց զհրեշտակ իւր առ Ադամ, և ասէ. Մերձեցիր ի կին քո, զի լինի քեզ որդի փոխանակ Աբելի։

Ասաց Ադամ. Զկարեմ մերձենալ կնոջս. զի երկու անգամ մերձեցայ ի կինս, այն մեծ պատուհաս էր ինձ, քան զդրախտէն ի դուրս ելանելն իմ. զի զԱ֊բէլ արեամբ տեսանեմ՝ սիրտս այրէ և կսկծայ. զայն թողի՝ և զԿայենի պատուհասն կու տեսանեմ, ար֊տասուք կու թափեմ. զի թէ այլ մերձենամ ի կինս, լինի ինձ կրկին նեղութիւն և տրտմութիւն։

* Դարձեալ աստ սկսանի՝ Միջնաբերդեան ձեռն տառանորդէ, որ է Բա֊ժին Աստուծոյ։ (Միանք ինն)։

Ասէ հրեշտակն․ Մի՛ երկնչիր Ադամ․ քանզի տալոց է քեզ Աստուած որդի, և կոչեսցես զանուն նորա Սէթ, որ թարգմանի մխիթարանք․ նա եղիցի զաւակ օրհնեալ և գլուխ նահապետաց, և մխիթարիս ի նմանէ․ զի որչափ տրտմեցար վասն չարութեան Կայենին, նոյնչափ մխիթարիս ի Սեթայ։ Եւ բազմանայ զաւակ քո և զաւակ Սէթայ, և նոքօք լցցին աշխարհս․ և ապա մի՛ խառնակեսցեն Սէթայ զաւակքն ընդ Կայենայ, կամ այլ զաւակացն քոց՝ ընդ ազգին Կայենայ․ (զի) երբ խառնիւին ընդ ազգս՝ բարի որդիքն քո չարանան, և զամենեսեան միատեղ պատուհասին։

Զի յայնժամ, որ հրեշտակն աւետիս ետ վասն Սէթայ, դեռ այլ զաւակ չունէր՝ բայց ի Կայենայ ազգէն։ Երեք հարիւր իննսուն կանայք կային, (և) քսանեւչորս այր՝ (երբ) որ Սէթ ծնաւ։ Երեսուն տարի էր ամուսնացեալ, երբ սպանեց Կայէն զԱբէլ․ և Աբէլ այն տարին կամէր ամուսնանալ, բայց ոչ եղեւ, (այլ) կոյս նահատակեցաւ։ Իբրեւ ծնաւ Սէթ և այլ եղբայրքն նորա, մխիթարէին զնմանէ ծնօղքն՝ որ(ոց) հրեշտակն աւետեաց։ Եւ բազմացան ազգն Սէթայ և այլ եղբարքն․ բայց հալածէին զազգն Կայենի և ոչ խառնակէին ընդ ազգին Կայենի, այլ սրբութեամբ կային։

Իսկ Սեթայ որդին՝ բարի պտուղն Ենովք, եհարց ի հօրէն՝ թէ պապն մեր Ադամ ընդէ՞ր տրտում (է)։

Ասէ Սէթ․ Վասն ճաշակելոյ պտղոյն, որ ելաւ ի դրախտէն, վասն այն տրտում է։

Իսկ Ենովք ասէ ցհայրն․ Հօր պարտքն պիտի որդին վճարիլ(–րել)։

Վասն այն ոչ ամուսնացաւ Ենովք։ Տնկեաց այգի, այգի մեծ՝ լի ամենայն բարութեամբ․ վաթսունեւչորս տարի սպասաւորեաց այգւոյն։ Ամենայն մարդ ճաշակէր ի պտղոյն․ իսկ ինքն Ենովք՝ ոչ ճաշակեաց ամենեւին․ այլ երկաթի սաղաւարտ ի գլուխն եդեալ, զի մի բարձր հայեսցի ի պտուղն ծառերոյն․ քանզի վաթսունեւչորս տարի այգեգործ եղեւ և ոչ ճաշակեաց ի նմանէ։ Իսկ Աստուած հրամայեաց հրեշտակին իւրոյ՝

զի զնա մարմնով վերացուցին և եդին ի մէջ դրախտին, և է մինչեւ ցայսօր։ Իսկ այլ որդիքն Սեթայ և Ադամայ, իբրեւ տեսին զԵնովք՝ որ հաւանութեամբ և պահօք մերացաւ ի դրախտն. բազումք հրաժարեցան և եկին ի լերինս (և) կուսութեամբ ճգնէին։

Բայց (յ)ազգն Կայենի յոյժ բազմացան աղջկունք նոցա. զի մի մարդոյ ճետ՝ հարիւր կանայս շրջէին և կռուէին ի վերայ մի մարդոյն՝ և խլէին ի միմեանց. զի մարդն սակաւ էր, (իսկ) կանայք և աղջկունք բազումք։ Ազգն Սեթայ և եղբայրք նոցա՝ ոչ խառնէին ընդ նոսա, և սրբութեամբ կային ազգն Սեթայ։ Այնչափ բարի մարդ կայր. հինգհարիւրեւքսան կոյս և ճգնաւոր կային ընդ նոսա, և ոչ գայր հնար խառնակելոյ ընդ ազգն Կայենի։

Իսկ աղջկունքն ազգին Կայենի, հնարիւք սաճմանեցին զկարմրաղեղն և զսպիտակաղեղն, (որովք) զերեսս կարմրացուցանէին և սպիտակացուցանէին. զունքն քաշեցին և զաչսն դեղեցին և ծարուր դրին, զծամն և և զվարս(ս)ն սաճմանեցին, և այլ պէսպէս սազ և երգարանս սաճմանեցին. զտուն և զձեռն խինեցին և կարմրացուցին, և այլ զարդարանօք զմարմինս իւրեանց զարդարեցին և պճնեցին։ Եւ այնպիսի պճնանօք զգետիւք և ազգի ազգի եղանակօք գնացին ի լեառն խնդալով և պարելով, ծափ տալով և փողս հնչեցուցանելով, երկայն ածելով և պէսպէս ձայնիւ եղանակելով՝ խառնեցան ընդ որդւոցն Սեթայ, զամենեսեան խաբեցին։ Հինգհարիւրեւքսան ճգնաւոր էին, (և) մի Նոյ միայն մնաց կոյս, և այլ ամենեքեան խառնեցան ընդ նոսա և չարացան քան զնոսա, և եղեն պղծագործ քան զշունս. այլ ոչ հայր զդուստրն ճանաչէր և ոչ մայր զորդին ճնէր, ոչ քոյր զեղբայր. և այնպիսի կենօք հանապազ շնային, և ոչ յիշեցին զԱստուած։

Իսկ վասն բազում մեղաց նոցա՝ բարկացաւ Աստուած ի վերայ նոցա, և կամեցաւ ջրով խեղդել զնոսա։ Հրամայեաց Աստուած Նոյի տապան շինել, և ամուսնանալ։ Իբրեւ եկն հրեշտակ և ասաց Նոյի ա-

մուսնանալ, և Նոյ ոչ կամէր ամուսնանալ, զի հինգ-հարիւր տարեկան էր։

Եւ ասաց հրեշտակն. ԶԱստուծոյ հրամանքն պի-տի կատարես. զի զաշխարհս ամենայն ջրով անցա-ցանելոց է, զամենեսեան խեղդելոց է, և (դու) լինիս նոր Ադամ. զի ի զաւակէ քումմէ լցցի աշխարհս։

Ասէ Նոյ. Ո՞րչափ է աւուրց կենաց իմ ապրել յաշ-խարհս։

Ասէ հրեշտակ. Հինգհարիւր տարի ապրեր ես, չորս հարիւր տարի այլ պիտի ապրիս։

Ասաց Նոյ. Զորս հարիւր տարին՝ իբրև զերազ գիշերոյ անցանի. վասն միոյ անցաւոր երազոյ՝ ըն-դէ՞ր ապականեմ զկուսութիւնս իմ։

Ասէ հրեշտակն. Հրամանք Տեառն է, ո՛չ կարես ար-գելուլ։

Ասէ Նոյ. Ո՞չ գիտեմ՝ եթէ մաքուր կին մնացեա՞լ է, զի առից զնա ի կնութիւն։

Ասէ հրեշտակն. Կայ մի կոյս մաքուր, անուն նո-րա Նոյեմզար. զնա առ քեզ ի կնութիւն։ Եւ սկիզ-բըն արար (արա՛) տապան շինելոյ. հարիւր յիսուն կանգուն երկայնութիւն և յիսուն՝ լայնութիւն, (և) երեսուն կանգուն բարձրութիւն։

Եւ գնաց ի նմանէ հրեշտակն։ Եւ Նոյ ամուսնա-ցաւ։ Եւ ի տապան շինելն, կացինն ձայնէր, ուրագն ձայ-նէր, սղոցն ձայնէր, փայտն ձայնէր՝ թէ Ահաւասիկ ջրհեղեղ ելանէ և ապականէ զաշխարհս։ Երբ լսաւ Նոյ զձայնն, յայնժամ յարտասուս հարեալ և աղա-չեաց զԱստուած, զի քառասուն օր համբերեսցէ նմա։ Եւ իբրև եղ Նոյ ի վերնատունն, երկու տախ-տակն եառ (եդ) ի վերայ մէկ մէկու. իսկ տախտակն ձայնէր՝ թէ Ջրհեղեղ կու գայ։ Ամենայն կենդանիքն երկու երկու եկին և մտան ի տապանն, և սուրբ ա-նասունքն եօթն եօթն։ Իսկ անբան անասունքն իմա-ցան զՋրհեղեղն, և մարդիկ ոչ իմացան։

Եւ եմուտ Նոյ ի տապանն, կինն և որդիք իւր. փակեաց զդուռն և զհերթսն կպրեաց և ծեփեաց. բա-ցան սահանք երկնից, և ջուրն ելանէր ի ներքուստ և

և վերուստ ի վայր Թափէր։ Բազումք կամեցան փախչել և մտանել ի տապանն, (այլ) ի ճանապարհին խեղդուեցան։ Մինչև քառասուն օր բարձրացաւ ջուրն և կոխեաց զծայրս լերանց․ (և) մինչև ի մի տարին տապանակն ի վերայ ջրոյն կեցաւ, և եկն դադարեաց ի վերայ լեառն Մասիսայ։

Եւ յետ քառասուն աւուր՝ Նոյ բացեալ զպատուհան տապանակին, և արձակեաց ագռաւ մի, զի գնացեալ նշան բերցէ․ և նայ գնացեալ ի ճաշակումն դէշերուն, այլ ոչ դարձաւ։ Իսկ (ապա) արձակեաց զաղաւնին, և գնացեալ աղաւնին, շրջեալ ի գլուխս լերանց և գտեալ երեք ծաղիկ և բերեալ նշան մատոյ (մատոյց) Նոյի։ Իսկ Նոյ արձակեաց զամենայն Թռչունս։

Եւ իբրև եղև երեք ամիս, բացեալ զտապանն, ետես զի լերինք և բլուրք ցամաքեալ էին․ բայց դաշտըք ջրով ծածկեալ էին։ Արձակեաց զամենայն կենդանիսն։ Իսկ (յ)անասնոց սրբոց և (ի) Թռչնոց, որ եօթն եօթն մտեալ էին, եօթնէն մին մատոյց բաժին Աստուծոյ․ և խնդրեաց յԱստուծոյ, զի այլ մի ջրով անցուցանել զաշխարհս․ (և) ընդունելի եղեն պատարագ նորա, և կատարեաց Տէր զխնդիրքն նորա։

Եւ խնդրեաց ի Տեառնէ և ասաց․ Տուր ինձ նշան հաշտութեան։

Եւ ասաց Տէրն․ Հայեաց ի յարևելից կողման։

Եւ ետես Նոյ նշան աղեղան՝ կարմիր, կանանչ իջեալ էին։ Եւ ասաց Աստուած Նոյի․ Այս եղիցի նշան հաշտութեան իմոյ ընդ որդիս քո․ երբ տեսանեն զաղեղն՝ գիտասցեն (զի) քաղցրացեալ է Տէր ի վերայ նոցա․ զի այս եղիցի ուխտ իմ ընդ քեզ և ընդ որդիքն քո, (որ) այլ ոչ ածից ջրհեղեղ ի վերայ աշխարհիս․ (իսկ) Թէ չար գործեն՝ այլ ուրիշ պատուհասիւ խրատեցից զնոսա։

Իսկ Նոյ առեալ զօրհնութիւն Աստուծոյ, էջ ի լեանէն և բնակեցաւ (յ)Ակոռի։ Երբ բազմացան զաւակ նորա՝ իջին (յ)իջևան և անդ ապրեցան երեք հարիւր տարի։ Եւ երկու որդիքն Անգուն և Մանետուն և (մնա)

The story of the repentance of Adam and Eve, etc.

# ԺԲ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

## ԱԴԱՄԱՅ ԵՒ ԵՒԱՅԻ ՆԱԽԱՍՏԵՂԾԻ ԹԷ ՈՐՊԷՍ ԱՐԱՐԻՆ,



ՅԵՏ ելանելոյն Ադամայ ի դրախտէն, առեալ զԵւայ, հրամանաւն Աստուծոյ, և բնակեցան յանդիման դրախտին. զի միշտ տեսանելով զդրախտն, հանապազ տառապէին փափաքանաւք ի դէմ դրախտին: Եւ աւր ըստ աւրէ կարաւտութիւնն յաւելոյր, և փափագ վայելչութեան դրախտին նեղէր զնոսա: Յորժամ եղեւ երեկոյ, եմուտ արեգակն և եղեւ մութն և խաւար գիշեր. յայնժամ անկաւ ահ մեծ ի վերայ նախաստեղծիցն, և այնպէս կարծեցին թէ այն էր մահն, որով մեռանելոց էին. և աշխ. մեծաւ տարաբեալ տագնապէին, մինչ որ լուսացաւ և ծագեաց արեգակն:

1. Ի տպագրել զՊատմութիւնս զայս, հարկ է մեզ յայտնել զերախտագին զոհութիւն մեր առ ազնուազարմ աւագեա անգղիացի Փրեդերիկ Կ. Կոնիբեար. որ ի 1893 ամի վերստին յայց եկեալ վանացս ընդ մեծուհի ամուսնոյ իւրոյ, — որ և սա հայասէր և հայագէտ է՝ հանդէպ առն իւրոյ, -- և տեղեկացեալ զի միաբանութեանս պատրաստեալ էր ի տպագրութիւն զԱնկանոն գիրս այսօսիկ, մասամբ մատուցիւր և զայս՝ որպէս և զԳիրքն Ադամայ ցամբողջութիւն հատորիս. զորոց էջս ինքն լուսանկարով հանեալ էր ի գրչագրէն մեծմիւռնին: Անտեղեաց եղև, զի ընդ մեզ և միաձայնու գտանաէր ընթերցողք շնորհապարտ գտցին ազնուութեան ասպետի առնս:

Ապա դիւրացան սակաւ մի յերկիւղէ մահուն։ Քանզի ասաց Աստուած՝ թէ մահու մեռանիցիք. և այն բաւթ, սաստիկ վտանգէր զնոսա. և էր այն ապաշխարութիւն Ադամայ և կնոջ նորա Եւայի։ Զմտաւ ածեալ՝ յիշէին զվայրն վայելչութեան, և զդրախտն փափկութեան. զգեղեցկութիւն ծառոցն, և զզուարճութիւն տնկոցն. զպայծառութիւն վարդիցն, և զանուշահոտութիւն ծաղկանցն. զանթառամութիւն տերևոցն, և զքաղցր ճաշակումն պտղոցն. զբարի հընչմունս հրեղինացն, և զքաղցրանուագ երգս հրեշտակացն. զախորժ բարբառ երկնաւորացն, և զհեշտալի եղանակս անմարմին զաւրացն։ Զայս ամենայն կորուսեալ Ադամայ. . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

առ Ադամ հրեշտակապետն Գաբրիէլ, և ասաց նմա, մերձենալ յԵւա վասն որդեծնութեան։ Եւ ետ Ադամայ ճիւղ մի ի ծառոց դրախտին, և ասաց. Այդ քեզ նշան, որ ծնանի քեզ Եւայ՝ որդի մխիթարութեան. և կոչեսցես զանուն նորա Սէթ, փոխանակ Հաբելի՝ զոր սպան Կային։

Եւ յառաջ քան զսպանանելն Կայենի՝ զՀաբէլ. յաւուր միում տեսիլս պատմեաց Եւայ Ադամայ և ասաց՝ թէ Տեսի գիշերս յերազի, որ զարիւնն Աբելի՝ Կայինն ի բերանն առեալ՝ ըմպէր։ Եւ Հաբէլ աղաչէր զնա թէ թո՛ղ յարենէդ և նա ոչ լսէր, և ոչ մնայր ի փորն, այլ փըրխէր ի դուրս զարիւնն Հաբելի։ Իբրև լուաւ զայս Ադամ յԵւայէ, ի կարծիս իմն անկաւ վասն բանին։ Եւ զի յառաջ քան զպատմելն Եւայի՝ զերազն, լուաւ Ադամ ի Կայենէ՝ որ ասէր ցՀաբէլ՝ թէ Եկ երթիցուք ի դաշտ անդ և տեսցուք զդրախտն իմ, զոր տնկեցի փոխանակ դրախտին, վասն որոյ ապաշաւեն և լան անդադար ծնաւղքդ մեր։ Եւ գնացեալ Ադամ փութանակի և ետես զի սպանեալ էր Կային զԱբէլ զեղբայր իւր. և ինքն Կային հեռացեալ էր ի տեղւոջէն։ Եւ թէ ո՞րպէս եսպան, և կամ զի՞նչ աւրինակաւ, այս է՝ զոր ասեմս. Տարեալ Կային զՀաբէլ յիւրատունկ դրախտըն, և կալեալ կապեաց զնա ձեռս յետս ընդ ծա-

առն մեռոյ, և առեալ քար մի գայլախազ, և այնքան քարշաքոշ արար զանմեղն պատանեակն, մինչ որ աւանդեաց զհոգին։

Եւ գնացեալ Ադամ, եգիտ այնպէս. և յոյժ սգացեալ՝ ելաց պատանայիւ։ Եւ՝ այսպէս ողբացեալ սրտիւ և դառնացեալ հոգով՝ գնաց Ադամ առ Եւայի, զի եկեալ ի միասին լալցեն զՀաբէլ, և ամփոփեալ Թաղեսցեն զնա։ Եւ յարուցեալ առեալ զԵւայ և եկն անդ, այլ ոչ եգիտ զմարմինն Հաբէլի, զի ամփոփեալ էր ի հրեշտակաց Աստուծոյ. և երկիր կլեալ էր զարիւն նորա, որ բնաւ ոչ երեւեցաւ։ Յայնժամ կալաւ ան-հնարին և սաստիկ տրտմութիւն զԱդամ և զԵւայ, վասն Հաբէլի որդւոյն իւրեանց։ Եւ յերկար աւուրս կացին ի տրտմութեան ամս հարիւր և քսան։ Մինչ որ հրամանաւն Աստուծոյ ծնան զՍէթ որդի մխիթարութեան։

Եւ ի սպանանելն Կայենի զՀաբէլ, եկն Գաբրիէլ առ Ադամ և ասաց նմա. Դուք մի՛ հարցանէք զԿայէն վասն Հաբէլի. այլ Աստուած հարցանէ զնա և պատժէ։ Որպէս և արարն իսկ։ Վասն զի եհարց Աստուած զԿայէն, Թէ՝ ո՞ւր է Աբէլ եղբայրն քո։ Եւ նա ստեաց Աստուծոյ և ասաց. Ո՛չ գիտեմ։ Եւ Աստուած վասն այն եհարց զԿայէն, որ զղջանայր և մեղայ ասէր։ Իսկ նա լրբութեամբ ասաց. Ոչ գիտեմ. մի՛ Թէ պահապա՞ն իցեմ եղբաւրն իմոյ։ Եւ ասաց նմա Աստուած. Պահապան չես, սպանանող ընդէ՞ր եղեր։ Եւ եւթն պատիժ եած ի վերայ նորա։ Նախ զի ասաց՝ Թէ Անիծեալ լիջիր։ Երկրորդ՝ ի վերայ երկրի՝ ուր հեղեր զարիւն եղբաւր քոյ։ Երրորդ՝ Գործել զերկիր վաստակաւք և աշխատանաւք։ Չորրորդ՝ Եւ երկիր ոչ տայ քեզ զպտուղ իւր, զի արեամբ արդարոյ ներկեր զնա։ Հինգերորդ՝ Երերեալ լիցիս որպէս զծառ ի հողմոց։ Վեցերորդ՝ Տատանեալ լիցիս իբրեւ զծով՝ որ ծփի յալեաց։ Եւթներորդ՝ զի նշան եդ ի վերայ նորա Աստուած՝ որ ամենայն ոք գիտէնայր զնա, և նշանն՝ պիտանի էր։ Այլ և եղջեւր բուսաւ ի ճակատն. զի ընդ որ գնայր, եղջեւրն

գոչէր և աղաղակէր, թէ՝ զայս կայքն եղբայրասպանութեանն:

Եւ այնպէս եկեաց Կայէն ամս աւթ հարիւր; Դողդո-ջէր միշտ, և երբեմն շրջէր ի վերայ երկրի՝ անդա-դար զցայգ և զցերեկ: Եւ այնու կնքեցաւ տասնակա-գուն սուգն Ադամայ և Եւայի. Նախ՝ զի մեղան Ա-ստուծոյ: Երկրորդ՝ զի մերկացան ի լուսոյն: Երրորդ՝ զի արտաքսեցան ի դրախտէն: Չորրորդ՝ զի յերկիր ա-նիծից անկան: Հինգերորդ՝ զի ընդ մահու գրաւեցան: Վեցերորդ՝ զի յԱստուծոյ աւտարացան: Եւթներորդ՝ զի ի շնորհաց դատարկացան: Ութերորդ՝ զի անա-սնոց հաւասարեցան: Իններորդ՝ զի որդեկորոյս եղեն, և ազգաց կսկիծ ընկալան: Տասներորդ՝ զի զանդրանիկ որդին իւրեանց տեսին եղբայրասպան, դատապարտեալ և զրկեալ յԱստուծոյ: Այս ամենայն անմխիթար սուգ էր Ադամայ և տան կսկիծ Եւայի, և աւելորդ՝ զղջման և ապաշխարութեան նախաստեղծիցն:

Որ հանապազ լային դէմ դրախտին զամենայն աւուրս կենաց իւրեանց և ասէին. Ո՜վ պանծալի դրախտ, ո՜վ գեղեցիկ ծաղկանց, ո՜վ անուշահոտ բուրաս-տան, ո՜ վայելչուչ այգի, ո՜վ աստուածատունկ դաստա-տան. ողորմեցարուք, ողորմեցարո՛ւք զրկելոյս ի ձէնջ. կարաւտելոյս ձերոցդ բարեաց. ողորմեցարո՛ւք վտ-արանդելոյս ի ձեր դիմաց: Ո՞վ տայ ինձ տեսանել զձեզ, ծառք բարերերք. ո՞վ տայ մեզ տեսանել զձեզ, ծաղ-կունք անուշահոտք: ո՞վ տայ մեզ տեսանել զձեզ տե-րեւք անթառամք. ո՞վ տայ մեզ ճաշակել ի ձէնջ, պտ-ուղք քաղցրահամք. ո՞վ տայ մեզ մտանել ի քեզ, դրախտ աստուածատունկ. ո՞վ տայ մեզ հանգչել ի քեզ, վայրդ վայելման: Ո՜վ աչք՝ որ հայեցայք ի պտ-ուղն, ընդէ՞ր ոչ խաւարեցայք: Ո՜վ ոտք՝ որ գնա-ցէք ի ծառն մահաբեր, ընդէ՞ր ոչ կոտորեցայք: Ո՜վ ձեռք՝ որ հատէք զպտուղն, ընդէ՞ր ոչ չորացայք: Եւ այսպիսի լալով և ողբով եկեաց Ադամ, սգով և տա-ռապանաւք ամս ինն հարեւր և երեսուն. և ապա հե-անգուցաւ ի փորձոյն.....

Եւ ժողովեցան առ Ադամ ամենայն ուստերք և դըս-տերք նորա վախճանին, զորս ծնեալ էր Եւայ Ադամայ,

ծնունդս երեսուն՝ արու և էգ, որ էին ամենեքեան վաթսուն։ Փողոփեցան որդիքն և դստերք ևրեանց՝ առ նախապատերըն մարդն Ադամ։ Եւ նա խիստ ի վտանկի կայր. և քաղէին ոգիքն ի սաստիկ ցաւոյն, որ կալեալ էր զանձն նորա։

Իսկ Եւայ և ամենայն ծնունդք նորա՝ լային և ողբային զԱդամ. և Ադամ կայր առաջի նոցա չարաչար տանջեալ ի հիւանդութենէ իւրմէ։ Յայնժամ ասէ Եւայ ցԱդամ. Տէր իմ, տուր զժամանակ իմ՝ թէ յամե՞մ ես յաշխարհիս, թէ չուտով մեռանիմ։ Զի՞նչ առնեմ զկնի քո, զի ես ոչ ինչ իմանամ։ Ասէ Ադամ. Ո՛չ յամես, այլ ի միասին մեռանիմք և դիցեն զիս և զքեզ ի միւն տեղի։ Բայց դու այժմ ե՛րթ աղաչեա՛ զՏէր, զի թերևս տացէ ի ծառոյն ածմանէ, որ այնու ածանէք զանձն իմ, զի դժուարանամ ի ցաւոցս։

Եւ յարուցեալ Եւայ ա՛ռ զՍէթ, և գնաց աղաչել զՏէր, տալ պտուղ իւղընձիւղ ի ծառոց դրախտին, վասն առողջութեանն Ադամայ։ Եւ հանդիպեալ նոցա աճապին գազանն Բեհեմովթ. յարձակեցաւ ի վերայ Սեթայ և կամէր ուտել զնա։ Յայնժամ ձիչ բարձեալ Եւայ, աղաղակեաց ընդդէմ գազանին և ասաց. Սանձեա զբերան քո և մի իշխեսցես մերձենալ ի ծառայդ Աստուծոյ. յիշեա՛ զի ընդ մերով իշխանութեամբ էիր, և մի համարձակիր վնասել զորդիդ իմ։ Յայնժամ եթող գազանն զՍէթ զոր կալեալ ունէր և ասաց Եւայի. Ձեզ հնազանդ յայնժամ էի, որքան դուք հնազանդ Աստուծոյ էիք, և ըզպատուիրանս նորա պահէիք. իսկ ի յանցանելն ձերում զհրամանն արարչին, յարձակիմք ի վերայ ձեր և խըռտանամք, և ընդդէմ դառնամք ձեզ։ Զայս հրամանաւն Աստուծոյ խաւսեցաւ գազանն և ասաց ընդ Եւայ մարդկային բարբառով, խօժոռ խոլոր և ահարկու դիմաւք. և ապա թողեալ զնոսա զանց արար և գնաց։

Եւ մինչ դեռ մայրն և որդին, Եւայ և Սէթ, աղօթէին յանդիման դրախտին, եկն առ նոսա հրեշտակապետն Գաբրիէլ և ասաց. Արի՛ք և գնացէք զի մեռաւ Ադամ յերեկոյին ժամուն ընդ մտանել արեւուն։ Եւ նոքա ելեալ գնացին լալով և հառաչանաւք, և տեսին զԱդամ

մեռեալ, և արարին կոծ մեծ ի վերայ նորա։ Եւ յետ երեք ժամու անցանելոյ ի վերայ մեռանելոյն Ադամայ, մինչ դեռ լայր և ողբայր Եւայ, նոյնժամայն ցաւեաց գլուխ նորա և ասաց. Վա՜յ գլուխս, վա՜յ գլուխս. և նա եւս մեռաւ ընդ Ադամայ։ Ի ստեղծանելն ընդ առաւաւ-տըս ուրբաթուն ստեղծաւ Ադամ, և յերրորդ ժամու աւուրն՝ ստեղծաւ Եւայ ի կողէն Ադամայ։ Իսկ ի մեռանելն, մեռաւ Ադամ յերեկի ժամու ուրբաթուն. և Եւա մեռաւ յերրորդ ժամու գիշերւոյն։ Իսկ որդիք և դստերք նոցա, սգացին զնոսա աւուրս երեսուն. և լուացեալ զսպեցին զնոսա, և պատեցին անոյշ խնկաւք և մաքուր կտաւօք և եդին ի փայտեայ տապանի։ Եւ պատուէին զաստուածաստեղծ մարմինս նախաստեղծիցն՝ որդիք նոցա, և որդւոց որդիքն՝ մինչեւ ի Նոյ։

Իսկ յետ մեռանելոյն Ադամայ հազար երեք հարիւր և երկոտասան ամաց, եկն ջրհեղեղն, և Նոյ . . . . . . . . . . . մի՛ ապականեալ կորիցեն ի ջուրցն հեղեղէ։ Եւ յելանել Նոյի ի տապանէն, ետ զմարմինս նախաստեղծիցն յաւագ որդին իւր ի Սէմ։ Եւ նա առեալ տարաւ ի վիճակն իւր, որ արդ եւս կոչի Շամայ տուն, որ է Սեմայ տուն։ Եւ անդ ամփոփեաց զնոսա, դնելով զԵւայ ի յայրն Բեթղահեմի, ուր յետոյ ծնաւ Քրիստոս ի սուրբ Կուսէն Մարիամայ ի վերայ գերեզմանին Եւայի։ Եւ զԱդամայն եդ ի Գողգոթայ, ուր խաչեցաւ Քրիստոս ի Հրէից ի վերայ գլխոյն Ադամայ. և արար զփրկութիւն ի մէջ երկրի։ Վասն այսորիկ կարգեցաւ և սահմանեցաւ յառաջին սրբոցն և ի հոգելի արանցն յաւուր ուրբաթու յիշատակել զննջեցեալսն ի Քրիստոս։

Որոյ ողորմութիւնն հասցէ մեզ և մեր ննջեցելոցն և ամենայն հաւատացելոց ի Տէր. մանաւանդ՝ ստացողաց սուրբ գրոցս Ստեփանոսին և Թումային, և իւրեանց քեռոյն Գրիգորին և հաւրեղբաւրն Զաքարին և Աւետիս քարտիս կոկողին, և ծնողաց նոցին. ամէն։

# ԲԱՆՔ ԱԴԱՄԱՅ ԱՌ ՍԷԹ*

Ասէ Ադամ ցՍէթ. Որդեակ, ո՞չ է այս բնակութիւնս մեր. զի այս բնակութիւն գազանաց և անասնոց էր. և մեր բնակութիւնն յեդեմ ընդ արեւելս ի դրախտն էր։ Զի ստեղծ զմեզ Աստուած և եդ ի դրախտին, և պատուիրեաց մեզ յորո՛յ ուտել ի պտղոյն և յորո՛յ չուտել. (իսկ) մեք ոչ պահեցաք զպատուիրանն (և) մերկացաք (յ)աստուածային փառացն (և) զրկեցաք ի դրախտէն։

Եւ Սէթ որդին մխիթարութեան զբանն զայն լուեալ ի հօրէն և ի միտ ա՛ռ, և երթեալ՝ գքառասուն տիւ և զքառասուն գիշեր հաց ոչ եկեր և ջուր ոչ էարբ։ Եւ ասէ առ Տէր յաղօթելն իւրում. Ամենակալ, ամենակարող Տէր, կատարեա ի բարի զխընդրուածս իմ։ Եւ առ ժամայն տեսանէր զհրեշտակն, զի գայր և ունէր ճիւղ մի ուրախութեան ի ձեռին իւրում. և ետ ի Սէթ, և ասէ. Այդ է մխիթարութիւն հօր քում։ Եւ Սէթ գոհանայր զտվողէն կենդանութեան զՔրիստոսէ, որ արար և կատարեաց զխընդրուածս նորա ի բարի։

Եւ առեալ զճեղն զայն Սէթ, տարաւ առ հայրն իւր Ադամ, և ասէ. Հայր, այս ի բնակութենէն քումմէ (է)։

Եւ առեալ Ադամ զճիւղն զայն՝ եդ ի վերայ աչաց և բացան աչք նորա, և հայեցեալ տեսանէ զճիւղն, զի

* Զայս եւս մեզէն յարմարեցաք, զի գտաք զայս պատառիկ ի թիւ 57 դրչագրի վանուցս (Ոսկեփ. Ա.) առանց ամենեւին խորագրի։ Զհետ սորա գան նոյնչափ ինչ բանք խրատականք, զոր ի բաց յապաւեցաք։

մոռանանայ, և Նոյ ոչ կամէր առանձնանալ, զի հինգ-հարիւր տարեկան էր։

Եւ ասաց Հրեշտակն. ԶԱստուծոյ հրամանքն պէ-տի կատարես. զի աշխարհս ամենայն ջրով անցա-ցանելոց է, զամենեսեան խեղդելոց է. և (դու) լինես նոր Ադամ. զի ի զաւակէ քումմէ լցցի աշխարհս։

Ասէ Նոյ. Ո՞րչափ է աւուրց կենաց իմ ապրել յաշ-խարհս։

Ասէ հրեշտակ. Հինգհարիւր տարի ապրեր ես, չորս հարիւր տարի այլ պիտի ապրիս։

Ասաց Նոյ. Զորս հարիւր տարին՝ իբրև զերազ գիշերոյ անցանի. վասն միոյ անցաւոր երազոյ՝ ըն-դէ՞ր ապականեմ զկուսութիւնս իմ։

Ասէ հրեշտակն. Հրամանք Տեառն է, ո՛չ կարես ար-գելուլ։

Ասէ Նոյ. Ոչ գիտեմ՝ եթէ մաքուր կին մնացեա՞լ է, զի առից զնա ի կնութիւն։

Ասէ հրեշտակն. Կայ մի կայ մաքուր, անուն նո-րա Նոյեմզարա. զնա առ քեզ ի կնութիւն։ Եւ սկիզ-բըն արար (արա՛) տապան շինելոյ. հարիւր յիսուն կանգուն երկայնութիւն և յիսուն՝ լայնութիւն, (և) երեսուն կանգուն բարձրութիւն։

Եւ գնաց ի նմանէ հրեշտակն։ Եւ Նոյ ամուսնա-ցաւ։ Եւ ի տապան շինելն, կացնին ձայնէր, ուրագն ձայ-նէր, սղոցն ձայնէր, փայտն ձայնէր՝ թէ Ահաւասիկ ջրհեղեղ ելանէ և ապականէ զաշխարհս։ Երբ լսաւ Նոյ զձայնն, յայնժամ յարատասուս հարեալ և աղա-չեաց զԱստուած, զի քառասուն օր համբերեսցէ նմա։ Եւ իբրև ել Նոյ ի վերնատունն, երկու տախ-տակն ես (եզ) ի վերայ մէկ մէկու. իսկ տախտակն ձայնէր՝ թէ Ջրհեղեղ կու գայ։ Ամենայն կենդանիքն երկու երկու եկին և մտան ի տապանն, և սուրբ ա-նասունքն եօթն եօթն։ Իսկ անբան անասունքն իմա-ցան զՋրհեղեղն, և մարդիք ոչ իմացան։

Եւ եմուտ Նոյ ի տապանն, կինն և որդիք իւր. փակեաց զդուռն և զձերթան կպրեաց և ծեփեաց. բա-ցան սահանք երկնից, և ջուրն ելանէր ի ներքուստ և

և վերուստ ի վայր Թափէր։ Բազումք կամեցան փախչել և մտանել ի տապանն, (այլ) ի ճանապարհին խեղդեցան։ Մինչեւ քառասուն օր բարձրացաւ ջուրն և կոխեաց զծայրս լերանց. (և) մինչեւ ի մի ամիսն տապանակն ի վերայ ջրոյն կեցաւ, և ապա դադարեաց ի վերայ լեառն Մասիսայ։

Եւ յետ քառասուն աւուր՝ Նոյ բացեալ զպատուհան տապանակին, և արձակեաց ագռաւ մի, զի գնացեալ նշան բերցէ. և նայ գնացեալ ի ճաշակումն գէշերուն, այլ ոչ դարձաւ։ Իսկ (ապա) արձակեաց զաղաւնին, և գնացեալ աղաւնին, շրջեալ ի գլուխս լերանց և գտեալ երեք ծաղիկ և բերեալ նշան մասոյ (մասոյց) Նոյի։ Իսկ Նոյ արձակեաց զամենայն Թռչունս։

Եւ իբրեւ եղեւ երեք ամիս, բացեալ զտապանն, եւտես զի լերինք և բլուրք ցամաքեալ էին. բայց դաշտքն ջրով ծածկեալ էին։ Արձակեաց զամենայն կենդանիսն։ Իսկ (յ)անասնոց սրբոց և (ի) Թռչնոց, որ եօթն եօթն մտեալ էին, եօթնէն մին մատոյց պատարագ Աստուծոյ. և խնդրեաց յԱստուծոյ, զի այլ մի ջրով անցուցանել զաշխարհս. (և) ընդունելի եղեն պատարագ նորա, և կատարեաց Տէր զխնդիրքն նորա։

Եւ խնդրեաց ի Տեառնէ և ասաց. Տուր ինձ նշան հաշտութեան։

Եւ ասաց Տէրն. Հայեաց ի յարեւելից կողման։

Եւ ետես Նոյ նշան՝ աղեղան՝ կարմիր, կանանչ իջեալ էին։ Եւ ասաց Աստուած Նոյի. Այս եղիցի նշան հաշտութեան իմոյ ընդ որդիս քո. երբ տեսանեն զաղեղն՝ գիտասցեն (զի) քաղցրացեալ է Տէր ի վերայ նոցա. զի այս եղիցի ուխտ իմ ընդ քեզ և ընդ որդիքն քո, (որ) այլ ոչ ածից ջրհեղեղ ի վերայ աշխարհիս. (իսկ) Թէ չար գործեն՝ այլ ուրիշ պատուհասիւ խրատեցից զնոսա։

Իսկ Նոյ առեալ զօրհնութիւն Աստուծոյ, էջ ի լեռնէն և բնակեցաւ (յ)Ակոռի։ Երբ բազմացան զաւակ նորա՝ իջին (յ)իջեւան և անդ ապրեցան երեք հարիւր տարի։ Եւ երկու որդիքն Անդուն և Մանեստուն և (միւս)

The story of the repentance of Adam and Eve, etc.

# ԺԲ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ

## ԱԴԱՄԱՅ ԵՒ ԵՒԱՅԻ ՆԱԽԱՍՏԵՂԾԻ ԹԷ ՈՐՊԷՍ ԱՐԱՐԻՆ,



ԵՏ ելանելոյն Ադամայ ի դրախտէն, առեալ զԵւայ, հրամանաւն Աստուծոյ, և բնակեցան յանդիման դրախտին. զի մինչ նստանելով ընդ դրախտն, հանապազ տառապէին փափաքանաւք ի դէմ դրախտին: Եւ առ քաղ առեալ կարաւտութիւնն յաւելոյր, և փափագ վայելչութեան դրախտին նեղէր զնոսա: Յորժամ եղեւ երեկոյ, եմուտ արեգակն և եղեւ մութն և խաւար գիշեր. յայնժամ անկաւ ահ մեծ ի վերայ նախաստեղծիցն, և այնպէս կարծեցին՝ թէ այն էր մահն, որով մեռանելոց էին. և ահիւ մեծաւ տարաեալ տագնապէին, մինչ որ լուսացաւ և ծագեաց արեգակն:

1. Ի տպագրել զՊատմութիւնս զայս, հարկ է մեզ յայտնել զերախտագիտութիւն մեր առ ազնուազարմ տիկին անգղիացի Ֆրեդերիք Կ. Կոնիբեար. որ ի 1893 ամի վերստին յայց եկեալ վանացս ընդ մեծուհւոյ ամուսնոյ իւրոյ, — որ և սա հայասէր և հայագէտ է հանդէս առն իւրոյ, — և տեղեկացեալ զի միաբանութեանս պատրաստեալ էր ի տպագրութիւն զԱնկանոն գիրս այսոսիկ, մասնաւորապէս և զայս՝ որպէս և զԹիւրոն Արտեմայ յամբողջութիւն հատորիս. զորոց էջս ինքն լուսանկարել հանեալ էր ի գրչագրէն [illegible]: Անկեղծ եմք, զի ընդ մեզ և միաբանութեան [illegible] ընծայեցուք շնորհակալութիւն [illegible] ազնուական [illegible] թեան տպագրի տանս:

Ապա դիւրացան սակաւ մի յերկիւղէ մահուն։ Քանզի ասաց Աստուած՝ թէ մահու մեռանիցիք. և այն բաւթ, սաստիկ վտանկէր զնոսա. և էր այն ապաշխարութիւն Ադամայ և կնոջ նորա Եւայի։ Զմտաւ ածեալ՝ յիշէին զվայրն վայելչութեան, և զդրախտն փափկութեան. զգեղեցկութիւն ծառոցն, և զզուարճութիւն տնկոցն. զպայծառութիւն վարդիցն, և զանուշահոտութիւն ծաղկանցն. զանթառամութիւն տերեւոցն, և զքաղցր ճաշակումն պտղոցն. զբարի հրնչմունս հրեղինացն, և զքաղցրանուագ երգս հրեշտակացն. զախորժ բարբառ երկնաւորացն, և զհեշտալի եղանակս անմարմին զաւրացն։ Զայս ամենայն կորուսեալ Ադամայ. . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

առ Ադամ հրեշտակապետն Գաբրիէլ, և ասաց նմա, մերձենալ յԵւա վասն որդեծնութեան։ Եւ ետ Ադամայ ճեւղ մի ի ծառոց դրախտին, և ասաց. Այդ քեզ նշան, որ ծնանի քեզ Եւայ՝ որդի մխիթարութեան. և կոչեսցես զանուն նորա Սէթ, փոխանակ Հաբելի՝ զոր սպան Կային։

Եւ յառաջ քան զսպանանելն Կայենի՝ զՀաբէլ. յաւուր միում տեսիլս պատմեաց Եւայ Ադամայ և ասաց՝ թէ Տեսի գիշերս յերազի, որ զարիւնն Աբելի՝ Կայինն ի բերանն առեալ՝ ըմպէր։ Եւ Հաբէլ աղաչէր զնա թէ թո՛ղ յարենէդ. և նա ոչ լսէր, և ոչ մնայր ի փորն, այլ փըլխէր ի դուրս զարիւնն Հաբելի։ Իբրեւ լուաւ զայս Ադամ յԵւայէ, ի կարծիս իմն անկաւ վասն բանին։ Եւ զի յառաջ քան զպատմելն Եւայի՝ զերազն, լուաւ Ադամ ի Կայենէ՝ որ ասէր ցՀաբէլ՝ թէ Եկ երթիցուք ի դաշտի անդ և տեսցուք զդրախտն իմ, զոր տնկեցի փոխանակ դրախտին, վասն որոյ ապաշաւեմն և լամ անդադար ծնողացդ մեր։ Եւ գնացեալ Ադամ փութանակի և ետես զի սպանեալ էր Կային զԱբէլ զեղբայր իւր. և ինքն Կային հեռացեալ էր ի տեղւոջէն։ Եւ թէ ո՞րպէս եսպան, և կամ զի՞նչ աւրինակաւ, այս է՝ զոր ասեմս. Ցարեալ Կային զՀաբէլ յիւրատունկ դրախտըն, և կալեալ կապեաց զնա ձեռս յետս ընդ ծա-

ունի՛ մերոյ, և առեալ քար մի գայլախազ, և այնքան քարավազոհ յարար զանմեղ պատանեակն, մինչ որ աւանդեաց զհոգին։

Եւ գնացեալ Ադամ, ետես այնպէս. և յոյժ սգացեալ՝ ելաց դառնապէս։ Եւ ապա աղեկիզեալ սրտիւ և դառնացեալ հոգով՝ գնաց Ադամ առ Եւայի, զի եկեալ ի միասին լացցեն զՀաբէլ, և ամփոփեալ թաղեսցեն զնա։ Եւ յորժամ առեալ զԵւայ և եկն անդ, այլ ոչ եգիտ զմարմինն Հաբելի, զի ամփոփեալ էր ի հրեշտակաց Աստուծոյ. և երկիր կլեալ էր զարիւն նորա, որ բնաւ ոչ երեւեցաւ։ Յայնժամ կալաւ անհնարին և սաստիկ տրտմութիւն զԱդամ և զԵւայ, վասն Հաբելի որդւոյն իւրեանց։ Եւ յերկար սգով կացին ի տրտմութեան ամս հարիւր և քսան։ Մինչ որ հրամանաւն Աստուծոյ ծնան զՍէթ որդի մխիթարութեան։

Եւ ի սպանանելն Կայենի զՀաբէլ, եկն Գաբրիէլ առ Ադամ և ասաց նմա. Դուք մի՛ հարցանէք զԿայէն վասն Հաբելի. այլ Աստուած հարցանէ զնա և պատժէ։ Որպէս և արարն իսկ։ Վասն զի եհարց Աստուած զԿայէն, թէ՝ ու՞ր է Աբէլ եղբայրն քո։ Եւ նա ստեաց Աստուծոյ և ասաց. Ո՛չ գիտեմ։ Եւ Աստուած վասն այն եհարց զԿայէն, որ զղջանայր և մեղայ ասէր։ Իսկ նա լրբութեամբ ասաց. Ոչ գիտեմ. մի՛ թէ պահապա՞ն իցեմ եղբաւրն իմոյ։ Եւ ասաց նմա Աստուած. Պահապան չես, սպանող ընդէ՞ր եղեր։ Եւ եաւթն պատիժ էած ի վերայ նորա։ Նախ զի ասաց՝ թէ Անիծեալ լիջիր։ Երկրորդ՝ ի վերայ երկրի՝ ուր հեղեր զարիւն եղբաւր քոյ։ Երրորդ՝ Գործել զերկիր վաստակաւք և աշխատանաւք։ Չորրորդ՝ Եւ երկիր ոչ տայ քեզ զպտուղ իւր, զի արեամբ արդարոյ ներկեր զնա։ Հինգերորդ՝ Երերեալ լիցիս որպէս զծառ ի հողմոց։ Վեցերորդ՝ Տատանեալ լիցիս իբրև զծով՝ որ ծփի յալեաց։ Եաւթներորդ՝ զի նշան եդ ի վերայ նորա Աստուած՝ որ ամենայն որ գիտենայր զնա, և նշանն՝ պիտակն էր։ Այլ և եղջեւր բուսաւ ի ճակատն. զի ընդ որ գնայր, եղջեւրն

ծնունդս երեսուն՝ արու և էգ, որ էին ամենեքեան վաթսուն։ Փողովեցան որդիք և դստերք իւրեանց՝ առ նախապատերձն մարդն Ադամ։ Եւ նա խօտ ի վտանկի կայր. և քաղէին ոգիքն ի սաստիկ ցաւոյն, որ կալեալ էր զանձն նորա։

Իսկ Եւայ և ամենայն ծնունդք նորա՝ լային և ողբային զԱդամ. և Ադամ կայր առաջի նոցա չարաչար տանջեալ ի հիւանդութենէ իւրմէ։ Յայնժամ ասէ Եւայ ցԱդամ. Տէր իմ, տուր զժամանակ իմ՝ թէ յամե՞մ ես յաշխարհիս, թէ չուստով մեռանիմ։ Զի՞նչ առնեմ զկնիքդ, զի ես ոչ ինչ իմանամ։ Ասէ Ադամ. Ո՛չ յամեա, այլ ի միասին մեռանիմք և դիցեն զիս և զքեզ ի միոյն տեղի։ Բայց դու այժմ ե՛րթ աղաչեա՛ զՏէր, զի թերեւս տացէ ի ծառոյն աւծմանէ, որ այնու աւծանէք զանձն իմ, զի դիւրանամ ի ցաւոցս։

Եւ յարուցեալ Եւայ առ զՍէթ, և գնաց աղաչել զՏէր, տալ պտուղ իւղընձիւղ ի ծառոց դրախտին, վասն առողջութեանն Ադամայ։ Եւ հանդիպեալ նոցա ահագին գազանն բեհմովթ. յարձակեցաւ ի վերայ Սեթայ և կամէր ուտել զնա։ Յայնժամ ձիչ բարձեալ Եւայ, աղաղակեաց ընդդէմ գազանին և ասաց. Սանձեա զբերան քո և մի իշխեսցես մերձենալ ի ծառայդ Աստուծոյ. յիշեա՛ զի ընդ մերով իշխանութեամբ էիր, և մի՛ համարձակիր վնասել զորդիդ իմ։ Յայնժամ եթող գազանն զՍէթ զոր կալեալ ունէր և ասաց Եւայի. Ձեզ հնազանդ յայնժամ էի, որքան դուք հնազանդ Աստուծոյ էիք, և ըզպատուիրանս նորա պահէիք. իսկ ի յանցանելն ձերում զհրամանս արարչին, յարձակիմք ի վերայ ձեր և խըռտանամք, և ընդդէմ դառնամք ձեզ։ Զայս հրամանաւն Աստուծոյ խաւսեցաւ գազանն և ասաց ընդ Եւայ մարդկային բարբառով, խոժոռ խոլոր և ահարկու դիմաւք. և ապա թողեալ զնոսա զանց արար և գնաց։

Եւ մինչ դեռ մայրն և որդին, Եւայ և Սէթ, աղօթէին յանդիման դրախտին, եկն առ նոսա հրեշտակապետն Գաբրիէլ և ասաց. Արի՛ք և գնացէք զի մեռաւ Ադամ յերեկոյին ժամուն ընդ մտանել արեւուն։ Եւ նոքա ելեալ գնացին լալով և հառաչանաւք, և տեսին զԱդամ

մեռեալ, և արարին կոծ մեծ ի վերայ նորա։ Եւ յետ երեք ժամու անցանելոյ ի վերայ մեռանելոյն Ադամայ, մինչ դեռ լայր և ողբայր Եւայ, նոյնժամայն ցաւեաց գլուխ նորա և ասաց. Վա՜յ գլուխս, վա՜յ գլուխս. և նա եւս մեռաւ ընդ Ադամայ։ Ի ստեղծանելն ընդ առաւաւտըն ուրբաթուն ստեղծաւ Ադամ, և յերրորդ ժամու աւուրն՝ ստեղծաւ Եւայ ի կողէն Ադամայ։ Իսկ ի մեռանելն, մեռաւ Ադամ յերեկի ժամու ուրբաթուն. և Եւա մեռաւ յերրորդ ժամու գիշերուայն։ Իսկ որդիք և դստերք նոցա, սգացին զնոսա աւուրս երեսուն. և լուացեալ զապեցին զնոսա, և պատեցին անոյշ խնկաւք և մաքուր կտաւօք և եդին ի փայտեայ տապանի։ Եւ պատուէին զաստուածաստեղծ մարմինս նախաստեղծիցն՝ որդիք նոցա, և որդւոց որդիքն՝ մինչեւ ի Նոյ։

Իսկ յետ մեռանելոյն Ադամայ հազար երեք հարիւր և երկոտասան ամաց, եկն ջրհեղեղն, և Նոյ . . . . . . . . . . մի՛ ապականեալ կորիցեն ի ջուրցն հեղեղէ։ Եւ յելանել Նոյի ի տապանէն, ետ զմարմինս նախաստեղծիցն յաւագ որդին իւր ի Սէմ։ Եւ նա առեալ տարաւ ի վիճակն իւր, որ արդ եւս կոչի Շամայ տուն, որ է Սեմայ տուն։ Եւ անդ ամփոփեաց զնոսա, դնելով զԵւայ ի յայրն Բեթղահեմի, ուր յետոյ ծնաւ Քրիստոս ի սուրբ Կուսէն Մարիամայ ի վերայ գերեզմանին Եւայի. Եւ զԱդամայն եդ ի Գողգոթայ, ուր խաչեցաւ Քրիստոս ի Հրէիցն ի վերայ գլխոյն Ադամայ. և արար զփրկութիւն ի մէջ երկրի։ Վասն այսորիկ կարգեցաւ և սահմանեցաւ յառաջին սրբոցն և ի հոգելի արանցն յաւուր ուրբաթու յիշատակել զննջեցեալսն ի Քրիստոս։

Որոյ ողորմութիւնն հասցէ մեզ և մեր ննջեցելոցն և ամենայն հաւատացելոց ի Տէր. մանաւանդ՝ ստացողաց սուրբ գրոցս Ստեփանոսին և Թումային, և իւրեանց քեռայն Գրիգորին և հարեղբաւրն Զաքարին և Աւետիս քարտիս կոկողին, և ծնողաց նոցին. ամէն։

# ԲԱՆՔ ԱԴԱՄԱՅ ԱՌ ՍԷԹ*

Ասէ Ադամ ցՍէթ. Որդեակ, ո՛չ է այս բնակութիւնս մեր. զի այս բնակութիւն գազանաց և անասնոց էր. և մեր բնակութիւնն յԵդեմ ընդ արեւելս ի դրախտն էր։ Զի ստեղծ զմեզ Աստուած և եդ ի դրախտին, և պատուիրեաց մեզ յորո՛յ ուտել ի պտղոյն և յորո՛յ չուտել. (իսկ) մեք ոչ պահեցաք զպատուիրանն (և) մերկացաք (յ)աստուածային փառացն (և) զրկեցաք ի դրախտէն։

Եւ Սէթ որդին մխիթարութեան զբանն զայն լուեալ ի հօրէն և ի միտ ա՛ռ, և երթեալ՝ զքառասուն տիւ և զքառասուն գիշեր հաց ոչ եկեր և ջուր ոչ էարբ։ Եւ ասէ առ Տէր յաղօթելն իւրում. Ամենակալ, ամենակարող Տէր, կատարեա ի բարի զխնդրուածս իմ։ Եւ առ ժամայն տեսանէր զհրեշտակն, զի գայր և ունէր ճիւղ մի ուրախութեան ի ձեռին իւրում. և ետ ի Սէթ, և ասէ. Այդ է մխիթարութիւն հօր քում։ Եւ Սէթ գուշանայր զտվողէն կենդանութեան զՔրիստոսէ, որ արար և կատարեաց զխնդրուածս նորա ի բարի։

Եւ առեալ զճեղն զայն Սէթ, տարաւ առ հայրն իւր Ադամ, և ասէ. Հայր, այս ի բնակութենէն քումմէ (է)։

Եւ առեալ Ադամ զճիւղն զայն՝ եդ ի վերայ աչաց և բացան աչք նորա, և հայեցեալ տեսանէ զճիւղն, զի

* Զայս եւս մեղէն յաւրմարեցաք, զի զատաք զայս պատառիկ ի թիւ 57 գրչագրի վանուցս (Ոսկիփ. Ա) առանց ամենեւին խորագրի։ Զհետ սորա զան նոյնչափ ինչ բանք խրատականք, զոր ի բաց յապաւեցաք։

(յ)այն ծառոյն էր՝ յորմէ զմահ ճաշակեաց։ Եւ ասէ ցորդին իւր. Որդեակ իմ Սէթ. այս ի այն ծառոյն է՝ յորմէ հրամայեաց մեզ Տէրն չուտել մեզ։

Եւ ասէ Սէթ ցհայրն. Հայր, գիտեմ՝ զի որպէս մահաբեր է, նոյնպէս կենդանատու և լուսաւորիչ եղեւ։

Եւ օրհնեաց Ադամ զԱստուած և զՍէթ զորդին իւր, և փոխեցաւ ըստ հրամանի Տեառն ի հող՝ յորմէ ստեղծաւ։

Եւ յետ ժամանակաց անցելոց, Սէթ զբանն ընդ Ենովս խօսեցաւ և ասէ. Այսպէս ասէր հայրն իմ Ադամ, թէ ոչ էր այս բնակութիւնս մեր, այլ այս բնակութիւնս գազանաց էր և այլ ստեղծուածոցն, և մեր բնակութիւնն յԵդեմ ընդ արեւելս էր։ Եւ յորժամ ստեղծ Աստուած զհայրն մեր և եդ զնա ի դրախտին, և պատուէր ետ նմա յորոյ ուտել ի պտղոյն և յորոյ չուտել. իսկ նորա ոչ պահեալ զպատուիրանն, մերկացեալ յաստուածային լուսոյն և արտաքս անկեալ ի դրախտէն և հաւասար եղեալ անասնոց անբանից։

Եւ Ենովք զբանս զայս ի միտ էառ, և զքառասուն տիւ և զքառասուն գիշեր ամենեւին ոչ ճաշակեաց։ Եւ յետ այնորիկ տնկեաց դրախտ վայելուչ, և զամենայն պտղաբեր տնկեաց ի նմա։ Եւ կացեալ ի դրախտին այնմիկ հինգհարիւր և քառասունեւերկու ամ, և (յ)ետ այնորիկ մարմնով յերկինս համբարձաւ, և աստուածային փառացն և լուսոյն արժանաւորեցաւ։



a brief history on the life of the prophet Elijah.

# ԺԳ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՄԱՌՕՏ

## ԵՂԻԱՅԻ ՄԱՐԳԱՐԷԻՆ



Եղիայ Թեսպացի էր ազգէ քահանայից, քանզի Թեսբի տուրք էր քահանայից։ Անուն հօր նորա Աստն, և մօրն նորա Սուբաքա։ Եւ յորժամ ծնաւ, տեսին հայր և մայր նորա՝ զի արք հրեղէնք ողջագուրէին զնա, և ի հրեղէն խանձարուրս պատէին զնա, և կերակուր հրոյ տային ուտել նմա։ Եւ եկեալ հայրն նորա Աստն՝ պատմեաց յԵրուսաղէմ քահանայից. և նոքա ասեն ցնա. Մի՛ երկնչիր, զի եղիցի բնակութիւն նորա լոյս, և նախանձ նորա ընդունելի առաջի տեառն, և հրաման նորա վճիռ հաստատուն։

Եւ յորժամ զարգացաւ Եղիա՝ հեռացաւ ի սիրոյ աշխարհիս, և զգեցաւ մաշկեղէն, և գնացեալ բնակեցաւ յանապատի՝ կուսութեամբ և ճգնութեամբ, սրբութեամբ, անհանգիստ աշխատութեամբ՝ պաշտէր զԱստուած կենդանի։ Եւ եղեւ ի ժամանակին այնմիկ Թագաւորեաց ի վերայ տանն ազգին Իսրայելի Աքայաբ որդի Զամբրեայ, ազգէն Եփրեմի. և էառ իւր կին զԵզաբէլ, դուստր Յուբաղա Սիդոնացւոց Թագաւորին, անօրէն և անհաւատ և կռապաշտ։ Եւ զի յառաջն աստուածապաշտ էր Աքայաբ, և զի կինն յաղթող էր կախարդութեամբ, խաբեաց զնա և դարձոյց ի կռապաշտութիւն։ Եւ փոքր համարեցաւ յաչս նորա երկու ոսկի երինջքն՝ որ կային ի Դան և ի Բեթէլ, զոր արար արքայ Յրոբովամ որդին Նաբատայ. այլ յաւել մեղս ի վերայ մեղաց, և շինեաց զբագինն Բա-

հաղու ի Սամարիա. ինքն մոլորեցաւ, եւ տուն ազգն մոլորեցոյց ի կռապաշտութիւն: Եւ արար մարգարէս Բահաղու՝ ութ հարիւր յիսուն. չորս հարիւր ուտէին ի սեղանոյ Թագաւորին, եւ չորս հարիւրն ուտէին ի սեղանոյ Եզաբելայ:

Եւ իբրեւ լուաւ զայս Եղիայ, էջ յանապատէն ի կարմեղոս լեռնէն, եւ եկն պատերազմել ընդ Աքայաբու: Եւ կոչեաց Աքայաբ զԱզան բեթելացին, եւ հրամայեաց շինել զԵրիքով քաղաք, զոր քակեաց Յեսու եւ անէծ զշինողս նորա, զի օրինակ էր դժոխոց:

Եւ ասէ Եղիա. Ընդէ՞ր տաս շինել զանիծեալ քաղաքն։

Ասէ Աքայաբ. Շատ մի՛ խօսիր. ձեր մեծն եւ առաջնորդն Մովսէս, նորա անէծքն ի՞նչ զօրութիւն ունի, որ աշակերտին՝ ի՞նչ զօրութիւն ունենայ: Մովսէս ասաց, թէ յերբ կուռք պաշտէք՝ զերկինքն քանց զերկաթ, զգետինն քանց պղինձ կապեմ, ոչ թողում երկինքն ցօղ տալ, եւ ոչ երկիր պտուղ: Ասաց Աքայաբ, թէ ես լաւ կուռք պաշտեմ. թէ ձեր հաւատք զօրութիւն ունի՝ թող այլ չիգայ անձրեւ:— Իբրեւ զայս լուաւ Եղիայ, դառնացաւ հոգով. Կենդանի է Տէր, եթէ եղիցի յայսմ ամի անձրեւ կամ ցօղ, թէ ոչ բան ի բերանոյ իմոյ:

Եւ անկաւ ի վերայ ծնկացն, եբաց զգլուխն՝ եւ ասաց առ Աստուած. Տէր Աստուած, քո հրամանաւ կապեմ զերկինքն, այլ մի՛ տալ անձրեւ մինչեւ խնդրեցից ի քէն:

Զի դարնանային էր ժամանակն, եւ կապեցաւ երկինքն երեք տարի եւ կէս, ամպ կամ անձրեւ կամ ցօղ այլ ոչ երեւաց, եւ աւերեցաւ ամենայն երկիր, եւ անցան ի սովոյ մարդ եւ անասուն: Եւ ասէ Տէր ցԵղիա. Արի՛ եւ գնա՛ ի հեղեղատն Յորդանանու անապատն, եւ ես կերակրեցից զքեզ անդ, զի կամի Եզաբէլ սպանանել զքեզ: Եւ գնացեալ եմուտ փոքրիկ այր մի, եւ կաթէր նուազ ջուր ի յայրէն, եւ նստաւ ի վերայ անձաւին. եւ երկու ագռաւք բերէին Եղիայի հաց եւ միս, օրն երկու անգամ, ի ժամ ճաշուն եւ ընթրեացն, եւ ինքն ուտէր, եւ ի փշրանացն տայր ագռաւցըն. եւ թէ ուստի՞ց բերէին, ի դրախտէն՝ ի ձեռն ագռաւուցն կերակրեցից. (յ)այտ է՝ ի տեղ ուրեք պատրաստէր

Աստուած, և ագռաւքն բերէին հրամանաւն Աստուծոյ, և կերակրէին զԵղիայ։ Եւ այնպէս եկաց անդ երեք տարի։

Եւ Եղիա՝ որ նախանձախնդիր էր օրինացն, ինքն էանց զօրէնքն, զի անսուրբ ագռաւքն կերակրէր. այլ օրէնսդիրն ընդ օրինօք ոչ մտանէ. երբ հրամանաւն Աստուծոյ էր՝ սուրբ և հալալ էր, և մեղք ոչ համարեցաւ նմա. այլ պեղծ ագռաւ՝ ի խորհուրդ հեթանոսաց (էր). որք անցեալ ընդ Յորդանան՝ սրբեցան մկրտութեամբ, յաւազանին խորհրդով, և մաքրեցան և կերակրեցին զԱստուած բարի գործովք, և ուրախացուցին զԱստուած աղօթիւք։ Եւ իբրև ետես Աստուած՝ թէ ինքն Եղիա կերակրի, և այլոց քաղցելոց ոչ ողորմի, կտրեաց զհացն և ցամաքեցոյց զջուրն, և այնպէս եկաց երեք օր անսուաղ. և աղաղակեաց առ Աստուած։ Եւ ասէ Տէր. Սովեցուցեր զքեզ՝ որ զսովելոց և զքաղցելոց զխիղճն իմանաս. արի գնա առ Աքայար, և զքո դուրս խառակէ[1]. զի տաց անձրև ի վերայ երկրի. դու ոչ ողորմիս, ասէ, այլ ես ողորմիմ ստեղծուածոց իմոց։

Եւ ասէ Եղիայ. Տէր, սոված ոչ կարեմ գնալ, տուր ինձ հաց, զի կերայց և գնացից։

Եւ ասէ Տէր. Ոչ տաց քեզ հաց. այլ գնա ի Սարեփթայ գիւղն՝ որ է ի Սիդոն երկիրն, և անդ այրի կնոջ հրամայել եմ կերակրել զքեզ։ Եւ տարակուսեաց Եղիայ. Թէ զգիւղն գտից, ասէ, զտուն այրոյն ո՞րպէս գտից։ Եւ խնդրեաց Աստուծոյ՝ զի ի մուտ գեղջն առաջ այրի կինն հանդիպեսցի նմա։ — Եւ գնացեալ հանդիպեցաւ այրոյն, և ետես զի ի սովոյն մաշեալ էր և եղեալ զարուլի[2]. զգեցեալ թամբատակ մի որ էր[3] և քաղէր կրկուտ։ Եւ ասէ Եղիայ ընդ միտս իւր. Սայ թէ հաց ունէր՝ ինքն ուտէր. և դարձեալ տարակուսեցաւ. Հրաման Տեառն է, ասէ, զիա՞րդ լինի սուտ։ Վասն որոյ ամաչեաց խնդրել ի նմանէ ջուր և հաց,

1. Դուրս (տուր՛ղ, տուա՛ղ), կարծեմ Թիւրքերէն իմանալըէ զկենդ. խոկ խառակէ - յատակէ. որպէս թէ ատիցէ. և զքո վերջ յարտակէտ՝ ուտարտես։ — 2. Գուցէ Թուրք ղողոան՝ վախս։ — 3. Թերեւս կամ փոշեր կամ ոչ(ոն)եր լեալ իցէ ի բուն օրին.։

այլ խնդրեսցիս (ասէ) ջուր. և յորժամ եբեր զջուրն՝ ապա խնդրեաց հաց. և նա երդուաւ և ասէ. Կենդանի է Տէր, եթէ գոյ հաց ի տան աղախնոյ քո. այլ կայ առ մի ալիւր ի սափորի, և սակաւ մի իւղ ի սրուակի, և քաղեմ կրկուռ՝ զի արարից հաց և ուտեմք, և մեռանիմք ես և որդի իմ։ Եւ ասաց. Եղիայի հօրն տունն աւերի. յորմէ հետէ կապեաց զերկինսն, անցաք ի սովոյ մարդք և անասուն։ Եւ Եղիայ ընդ միտս իւր ասէ. Վա՜յ քեզ Եղիա, թէ որչափ անարգեն զքեզ և զտուն հօր քո, վասն զի կապելոյն յերկնից։ Եւ ասէ. Ես եմ Եղիա, զնա՛ արա զալիւրն հաց, և նախ ինձ բե՛ր՝ իբրև քահանայի։ Այսպէս ասէ Տէրն. Ալիւրն ի սափորէ մի պակասեսցի, և իւղն ի սրուակէն։

Եւ հաւատաց կինն և փութացեալ արար բլիթ հաց, և եբեր կերակրեաց զԵղիա. և դարձաւ ի տուն իւր, և ետես՝ զի լցեալ էր ամանն ալևրոյն և եղոյն, և եկն մեծարեաց զԵղիայ, և տարաւ ի վերնատունն իւր. և վեց ամիս անդ եկաց Եղիայ։

Եւ որչափ ուտէին՝ ալիւրն և իւղն ոչ պակասէր. այլ դարձեալ տեսանէր զի(՞լր) զամանն ալևրոյն և իւղոյն իբրև զաղբիւր յորդախաղաց, և իբրև զծառ պտղաբեր՝ որ ուտեն զպտուղն (և) ոչ պակասի. այլ որպէս անապատին զկերակրիչս իւր զագռաւսն կերակրէր, նոյնպէս և աստ զկերակրիչս իւր կերակրէր։ Եւ զի այրի կինն (ունէր) ընտանիս, և վասն սովոյն առաքեալ էր այլ գաւառ ի Չրաբբի տեղիս. իբրև բազմացաւ հացն՝ առաքեաց և կոչեաց զնոսա, և զամենեսեան կերակրէր Աստուած ի ձեռն Եղիայի։

Եւ եղև զի հիւանդացաւ որդի այրոյն և մեռաւ։ Արդ որպէս տրտմեցոյց զնա Աստուած ի ձոր անդր վասն ցամաքելոյ աղբիւրն. այլ տրտմութիւն նորա ուրախութիւն փոխեցաւ, նոյնպէս և աստ ուրախութիւն փոխելոց է տրտմութիւն նորա, վասն ուրախութեան և յարութեան մանկանն։ — Եւ ասէ կինն մեղադրելով. Մտեր ի տուն իմ յիշել զանօրէնութիւնս իմ. իբր թէ՝ դուն եղար պատճառ մահուան մանկանն իմոյ։ Եւ ասէ Եղիայ. Տէր, դու չարչարեցեր և այա-

ներ զորդի նորա, և սա ինձ մեղադիր լինի: Եւ ասէ ցկինն. Տո՛ւր ցիս զորդին քո, և առեալ զմեռեալ մանուկն՝ տարաւ ի վերնատունն, և կողմնեցոյց ի մահիճս իւր, և երեք անգամ կչռեցոյց և խնդրեաց Աստուծոյ դարձուցանել զհոգի մանկանն ի մարմինն իւր, և յարոյց զնա խորհրդով սուրբ Երրորդութեանն, օրինակ Քրիստոսի՝ որ ի ձայն փողոյ դարձուցանելոց է զամենայն հոգի առ մարմինն իւր: Եւ կոչեաց զկինն այրի, և ետ ի նա կենդանի զորդին իւր: Եւ ասէ կինն, այժմ գիտացի ճշմարիտ՝ զի այր Աստուծոյ ես դու: Այս է. զամենայն զոր ինչ և կամիս՝ կարող ես առնել դու, իբրև իշխեցող մահու և կենաց, կապող և արձակող երկնից:

Ասեն՝ թէ Յունան մարգարէն էր մանուկն այն զոր յարոյց Եղիա. և այնպէս ի մէջ այլազգեաց փառաւորեցաւ. Յունայնն[1] Աստուծոյ ի ձեռն Եղիայի, և ճշմարիտ զօրութիւն աստուածութեան նորա յայտնի եղեւ ամենեցուն: Բայց տունն Աքայաբու այսմ չէին գիտակ, թէ անդ է Եղիայ. վասն որոյ ասաց նմա Տէր. Երթ և երեւեաց Աքայաբու, և տաց անձրև ի վերայ երկրի: Եւ նա ոչ երկեաւ յԵզաբելայ. այլ գնաց և երեւեցաւ նախ Աբդիու (յ)իշխանապետին Աքայաբու, զի ելեալն էին ի քաղաքէն (յ)եզր գետոց և առուաց շըրջէին գտանել խոտ անասնոց՝ ձիոց և ջորոց:

Եւ ասէ Եղիա ցԱբդիու. Գնա՛յ պատմեա զգալուստ իմ թագաւորին:

Եւ ասէ Աբդիու. Ընդէ՞ր առնես զիս գլխապարտ թագաւորին. զի ծառայ քո երկիւղած ի Տեառնէ է: Եւ պատմեաց Աբդիու վասն հարիւր մարգարէիցն՝ զոր կերակրեաց Աբդիու, և պահեաց ծածուկ յայրի միում ի սովի անդ. (և զի) իբրև իմացաւ Յեզաբէլ և կամէր կոտորել զնոսա, փոխեաց զնոսա Աբդիու այլ խորագոյն այր. այլ և պատմեաց վասն հարիւր մարգարէիցն՝ զոր եսպան Եզաբէլ:

Իբրև լուաւ Եղիայ, ասէ. Մի՛ հոգար, ես առնում զվրէժ արեան մարգարէիցն՝ կոտորելով զմարգա-

1. Այսպէս յօրին. այլ գուցէ ուղիղ էր՝ անուանն:

րէան Բահաղու. բայց դու երթ պատմեա Թագաւորին։

Եւ ասէ Աբդիու. Տէր, որ ոչ մնաց երկիր՝ գիւղ և քաղաք և անապատ, որ ոչ խնդրեաց զքեզ Թագաւորն։ Եւ ասաց. Թէ ես երթամ պատմեմ՝ ահա Եղիայ. դուցէ առնու զքեզ հոգին՝ և տարցէ յայլ անապատ տեղիս, որպէս ի հեղեղատն. և ես սուտ լինիմ և մահապարտ։

Եւ ասէ Եղիայ. Կենդանի է Տէր, որ ոչ փախչիմ կամ թագչիմ ես, այլ դու երթ պատմեա։

Յայնժամ գնաց Աբդիու առ Թագաւորն, և ասաց. Ահա Եղիա։ Իբրեւ լուաւ՝ թեկաւ ողն նորա, և եկն ընդ առաջ Եղիայի։ Արդ թէպէտ ընդ առաջն գնալոյն պատուէր մարգարէն, այլ բանիւ բերանոյ իւրոյ անարգեաց զնա։

Իբրեւ ետես զԵղիայ, ասէ. Ուստի՞ գաս խանգարիչ տանն Իսրայելի։

Եւ ասէ Եղիայ. Խանգարիչ դու և տունն հօր քո, զքո անունդ ինձ կու տաս։

Եւ ապա սկսաւ Թագաւորն աղաչել զնա, զի տացէ անձրեւ ի վերայ երկրի, և նա ասէ. Ո՛չ այդպէս. այլ առաքեա ժողովեա զամենայն Իսրայէլ ի Կարմեղոս։

Եւ իբրեւ ժողովեցան (, ասէ). Ընդէ՞ր կաղայք երկու կողմն. եթէ Տէր (է) Աստուած՝ գնացէք զհետ նորա, եթէ Բահաղ է Աստուած՝ գնացէք զհետ նորա։ Եւ ասէ. Ո՛վ ոք Տեառն իցէ՝ առ իս դարձցի։

Եւ եօթն հազար երիտասարդ դարձին առ Եղիա, եկին և ասեն, թէ մեք աստուածապաշտ եմք, և ոչ եմք պաշտել զԲահաղ, պաքել կամ համբուրել զնա։ Եւ ասեն եօթն հազարքն. Ընդ քեզ ի մահ եմք և ի կեանք. զմեր կեանքս եդեալ եմք ի ճանապարհս քո։

Եւ ասէ Եղիա առ Թագաւորն և առ ժողովուրդն. Արասցուք պատարագս զուարակ մի. թէ ի վերայ ձեր պատարագին՝ յերկնից հուր իջնու, իմ գլուխս եօթն հազարովս գնայ. և թէ (յ)իմ պատարագն իջնու հուր, տուք ի ձեռս իմ զմարգարէքն Բահաղու, զի կոտո-

րեցէց զնոսա. և ապա արձակեմ զերկինքն և տաց ձեզ անձրեւ ի վերայ երկրի։

Եւ նոքա ասեն. Այդպէս լիցի։ Ուխտ եդին, երդուան, և դաշինս կռեցին Թագաւորն և ժողովուրդն առ հասարակ։ Եւ ասէ Եղիայ ցմարգարէսն Բահաղու. Դուք բազում էք, նախ դուք արարէք զպատարագն։

Եւ նոքա սկսան կանգնել սեղան, և ի ժամ կանգնելոյ սեղանոյն՝ ոչ ետուն թոյլ ումեք մերձենալ. այլ փորեցին լաղմ[1] ծածուկ և թագուցին անդ այր մի կրակով, և եդին ծծումբ ի ներքոյ ողջակիզեաց փայտին և խուիւ ցողունին և ասեն ցայրն, թէ յորժամ աղաղակեմք, թէ լո՛ւր մեզ Բահաղ, դու գաղտաբար ի ներքուստ զխանձող հրոյդ ի ծծումբն հասցու։ Եւ յորժամ պատրաստեցին զողջակէզն, ապա սկսան աղաղակել ութ հարիւր յիսուն մարգարէքն Բահաղու. Լո՛ւր Բահաղ, լուր մեզ Բահաղ ի ձեռն հրոյ։

Եւ Աստուած յայտնեաց Եղիայի զծածուկ հնարագիտութիւն նոցա։ Եւ զոր օրինակ յաղօթս եկաց ի վերնատունն և դարձոյց զհոգի մանկանն ի մարմինն իւր, նոյնպէս և աստ աղօթս եկաց ծածկաբար և մերկեաց զհոգին ի մարմնոյն և մեռաւ այրն ի գետնափորին, որ կամէր կորուսանել զհաւատացեալս ճշմարտին Աստուծոյ։

Իբրեւ այրն մեռաւ և էանց ժամ մի և նոքա սուտ մարգար(է)անային, սկսաւ ունչս ունել Եղիայ, այպանէր և կատակէր զնոսա ասելով. Բարձր աղաղակեցէք, խոր ի քուն է Բահաղ, լինի թէ զարթնու, և կամ խուլ է, այլ բարձր կանչեցէք, լինի թէ լսէ և կամ թէ զբօսանս սէյրանս[2] իցէ երթեալ, համբերեցէք մինչեւ դարձցի ի զբօսանաց։ Եւ նոքա սկսան սրով խանչարով[3] կոտատել զինքեանք և հեղին բազում արիւն և ասեն. Ի զուր պաշտեցաք զքեզ Բա-

1. Թուրք բառ, փոխան հայոյն ական։

2. Թրքաձայնոյ հոմանիշ մերայս՝ զբօսանք։

3. Թուրք և այս, որ նշանակէ՝ երկսայրէ։

հաղ․ վասն քո զկեանս ատեցաք և զմահ սիրեցաք, ի տանց և ազգականաց հեռացաք․ զի՞նչ օգուտ է մեզ երբ այժմ ոչ լսես մեզ։

Եւ որպէս սուտ էր աստուածպաշտութիւն նոցա, նոյնպէս սուտ էր մարգարէութիւն նոցա․ և ոչ ունէին կանխագիտութիւն, զի թէ գիտացեալ էին թէ սուտ լինի բան նոցա և կոտորին սրով, ոչ գային նոքա անդ․ և այնպէս աղաղակեցին ի վեցերորդ ժամէ աւուրն մինչև ցինն ժամն․ և ոչ գոյր բարբառ և լսող աղօթից նոցա։

Եւ առեալ Եղիայ զձեռանէ Թագաւորին՝ և տարեալ եցոյց զայրն մեռեալ ի գետնափորին։ Եւ ապա սաստեաց ի քուրմս, և ասէ․ Այդ գործ առ իս հասեալ է․ և ի բաց եղեն, և ապա ասէ ցժողովուրդն․ Մատերո՛ւք առ իս, և մատեաւ առ նա Թագաւորն և ամենայն ժողովուրդն․ Տեսէ՛ք, ասէ, զի ոչ գոյ խաբէութիւն առ իս, որպէս առ քուրմս Բահաղու։

Եւ ա՛ռ Եղիայ երկոտասան վէմ, և շինեաց սեղան Տեառն՝ յանուն երկոտասան ազգին, և առ զուարակ մի և յօշեաց երկոտասան մասունս, և եհան ողջակէզս և եդ զչերդս ի վերայ սեղանոյն և զմիս զուարակին ի վերայ չերտիցն, և փորեաց շուրջ ու բոլոր սեղանոյն գրկաչափ, և ասէ․ Առէ՛ք ինձ չորս սափոր և բերէք ջուր․ և նոքա բերին և էարկ զջուրն ի վերայ ողջակիզին և ասէ․ Կրկնեցէ՛ք և նոքա կրկնեցին, և ասէ․ Երեքնեցէք, և երեքնեցին․ և լցաւ շուրջ ու բոլոր սեղանոյն իբրև զծով։ Եւ ասաց․ Այժմ ի զատ կացէ՛ք։

Վասն այնորիկ առաջի ժողովրդեանն կանգնեաց զսեղանն, զի աչօք տեսցեն և գիտասցեն, թէ ոչ գոյ խաբէութիւն առ նա։ Եւ ջուրն զի հակառակ է հրոյ՝ եցոյց զառաւել զօրութիւն ճշմարտին Աստուծոյ, եցոյց թէ ոչ է թագուցեալ հուրն ի ներքոյ սեղանոյն, նման մարգարէիցն Բահաղու։

Եւ եղև ժամ մատուցանելոյ պատարագին, աղաղակեաց Եղիա յերկինս ի վեր առ Աստուած և ասէ․ Տէր Աստուած, լուր ինձ ի ձեռն հրոյ, ՝և արարի ես զգործս

զայս, լուր ինձ և այժմ ի ձեռն հրոյ, զի ծանիցէ ժողովուրդս՝ թէ դու միայն ես Աստուած ճշմարիտ, և ես ծառայ քո. և դարձուցես զսիրտ մոլորեալ ժողովրդեանս առ քեզ: Եւ անկաւ հուր յերկնից սաստիկ որոտմամբ ի վերայ պատարագին, և զուարակն և զվէմն և զջուրն ի բաց լափեաց, և լցաւ երկիրն անուշահոտութեամբ:

Իբրև տեսին ժողովուրդն՝ անկան ի վերայ երեսաց իւրեանց և կանգնեցան աղաղակեցին և ասեն. Արդարև նայ միայն է ճշմարիտ Աստուած:

Եւ ասէ Եղիա. Կալարուք զմարգարէսն Բահաղու, զի մի՛ ոք փախիցէ. և կալան զնոսա եօթն հազար հաւատացեալքն, և իջոյց զնոսա ի հեղեղատն Կիսոնի, և կոտորեաց առ հասարակ: Հարիւրին գլուխն որ կտրեց՝ թուլացաւ ձեռքն, և ապա եկին հաւատացեալքն և ձեռամբն Եղիայի կտրէին զգլուխս նոցա, և այսպէս կոտորեաց ութ հարիւր մարգարէսն Բահաղու. և ոչ ետ այլոց սպանանել զի մի՛ Եզաբէլ սպանցէ զնոսա. միայն ինքն եսպան. Ես միայն լինիմ (,ասէ,) յարեան տէր Եզաբելի:

Եւ նա յետ կոտորածին ել ի լեառն Կարմեղոս արձակել զերկինքն, և աղօթս եկաց առ Աստուած, և ասաց աշակերտին. Նայեա՛ց ընդ ճանապարհս ծովուն արեւմտից. Նայեցաւ դարձաւ և ասէ. Ոչինչ է, և ասէ Եղիայ. Աղէ՛ դարձիր դու եօթն անգամ: Եդ ծունր յանդիման ժողովրդեանն և աղօթս եկաց առ Աստուած, զի գիտասցեն թէ աղօթից նորա արձակի երկինքն. զի յուսուսցէ ժողովրդեանն՝ թէ առ ո՞ պարտ է կալ աղօթս, և դարձեալ եօթն անգամ յաղօթս եկաց զի ուսուսցէ, թէ առաջին նուագին ոչ լինի լսելի՝ ոչ է պարտ յուսահատիլ կամ ձանձրանալ յաղօթից, այլ անչափ ժտել մինչև առնուցու զխնդրելին. և ապա եօթն նուագին՝ ասաց պատանին թէ տեսի ամպ որպէս զթաթ մարդոյ ձեռին՝ զի իջանէր ի ծովն և հանէր ջուր ի ծովէն:

Եւ ասաց Եղիայ պատանոյն. Ե՛րթ և ասա Աքայաբու, զի լծեսցէ զկառս և անկցին ի տուն իւր, զի մի՛ հասցէ նմա անձրև:

Եւ ասէ Աքայար. Որդեա՛կ, պարզ է երկինքն և ոչ գոյ նշան անձրեւի։ Եւ մինչ նոքա յայսր և անդր ընթանային ի լծել զկառսն՝ յանկարծակի մթացան երկինք և գայր անձրեւ սաստիկ հողմով, և երթայր Աքայար լալով ի տուն իւր։

Որոյ սուրբ մարգարէին աղօթիւքն ողորմի Քրիստոս Աստուած ստացողի գրոցս Խոճայ Աւագին և եղբօրն Խոճայ Վասլին. և խնդրեմք ի յԱստուծոյ որ զի՛ւր դեռաբոյս ծաղիկն՝ զորդին իւր զՄկրտիչն՝ անփորձ և անսասան պահէ Տէրն Քրիստոս. և զծնօղս ընդերկար ամօք վայելել ի խորին. ծերութիւնն հասացանէ. որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։ Հա(յր մեր։)



Jonah's preaching in Nineveh.

# ԺԴ

# ՔԱՐՈԶ* ՅՈՒՆԱՆՈՒ ՄԱՐԳԱՐԷԻՆ

## ՈՐ Ի ՆԻՆՈՒԷ ՔԱՂԱՔԻՆ



ի Նինուէ էր քաղաք մեծ և Ասորեստան, զոր շինեաց Նինոս Թագաւոր և կոչեցաւ ըստ անուան իւրոյ Նինուէ։ Եւ այս Նինոս Թագաւորս ունէր կին անուն զՇամիրամ. և երկուցեալ Նինոս ի կնոջէն վասն ան(յ)ագ պոռընկութեան նորա, եթող ըզթագաւորութիւնն և փախեաւ յԵլլադայ. և Շամիրամ թագաւորեաց ամս հնգետասան, և յետոյ սպանաւ յորդւոց իւրոց։

Եւ եօթն օրն գնայ(ր) մարդ ի Բաբելոնէ ի Նինուէ՝ ի կողմն հարաւոյ յարեւելից. և էր տեղին պարարտ և բարեկլի, նման երկրին Սոդոմայ. ուտէին և ըմպէին և բուէին զմարմինն՝ կերակուր անքուն որդանց. ի բաց թողին զսրբութիւնն, և զարդար ամուսնութիւնն, և հետեւեցան պոռընկութեանն. յԱստուծոյ աչացն ելան և բարկացուցին զԱստուած.(որ) և թէպէտ բարկանա(յ) մեղաւորին՝ խնայէ, և ոչ կամի պատուհասել, այլ մնայ դարձի և ապաշխարութեան, որպէս ասէ. Ոչ կամիմ զմահ մեղաւորին, այլ զդառնալն և զկեալն. վասն այն խնայեաց ի Նինուէ, և կամեցաւ նախ քարոզ առաքել, և թէ ոչ դառնան՝ ապա պատուհասել։

Եւ ասէ Տէր ցՅունան մարգարէ. Գնայ ի Նինուէ քաղաք մեծ, և քարոզեսջիր անդ ապաշխարութիւն, զի ել աղաղակ նոցա առաջի իմ։

Եւ Յունան ոչ կամեցաւ գնալ վասն երկու պատճառի. առաջին, զի ոչ կամէր քարոզել այլ ազգաց և լինել ընդ անթլփատս, (զի ասէր). Քարոզեմ, զիմ ծառն ծարաւ թողում զայլոցն ջրեմ՝ զի՞նչ օգուտ է ինձ. և երկրորդ պատճառ. Գիտեմ, ասաց, որ դու ողորմած ես, երկայնամիտ և զղջանաս ի վերայ մարդկան. ես գնամ, ասաց, քարոզեմ՝ թէ քաղաքս կործանի. նոքա զղջան և ապաշխարեն, և դու ոչ կործանես. իմ մարգարէութիւնն անկատար մնայ, և իմ անունս սուտ մարգարէ լինի. մեռած լաւ եմ՝ քանց անունս սուտ մարգարէ լինի։

Վասն այդ երկու պատճառիդ ոչ կամեցաւ գնալ, այլ էջ ի Յոպպէ և եմուտ ի նաւ ընդ վաճառականացն և կամեցաւ փախչել ի Թարսիս։ Եւ իբրեւ եմուտ ի նաւ, էարկ Տէր Աստուած խռովութիւն և ալէկոծութիւն ի ծովն, և սկսան իւրաքանչիւր աղաղակել առ չաստուածս իւր և ոչ դադարէր ծովն, այլ եւս առաւել շարժէր ի խռովութիւն. և Յունան իջեալ ի խորշ մի նաւուն ննջէր և խորդայր, և զարթուցին զնա և ասեն. Զի՞ ննջես, արի կարդայ ըզՏէր Աստուած քո, զի թերեւս ապրեցուսցէ զմեզ և մի կորիցուք։ Եւ ոչ դադարէր ծովն ի խռովելոյ, և արկին զկերակուրն ի ծովն և ապայ զբեռինս առ ի թեթեւացուցանել զնաւն, և ոչ լինէր խաղաղութիւն։

Եւ ասեն. Արկցուք վիճակս և տեսցուք վասն ո՞յր մեղաց է չարիքս այս ի վերայ մեր։ — Եւ արկին վիճակս, և ել վիճակն Յունանու։

Եւ ասեն ցնայ. Ի՞նչ մարդ ես, յորմէ՞ ազգէ կամ յորմէ՞ ժողովրդենէ։

Եւ ասէ Յունան. Ծառայ Աստուծոյ եմ ես և ըզՏէր յերկնից պաշտեմ, որ արար զերկիր։

Եւ նոքա երկեան երկիւղ մեծ, զի գիտացին թէ յերեսաց Աստուծոյ փախուցեալ է՝ քանզի պատմեաց նոցա, և ասեն ցնա. Ընդէ՞ր արարեր զայդ, և կա-

մեցան զնաւն յետ վարել և ի ցամաք հանել և ոչ կարացին, և ասեն. Քաւ լիցի, Տէր, մի՛ ածեր ի վերայ մեր արիւն անպարտ, զի դու որպէս կամեցար և արարեր։

Եւ ասէ Յունան. Արկէք զիս ի ծովդ և դադարի մրրիկդ ի ձէնջ։

Եւ առին զՅունան և արկին ի ծովն. և ապա խաղաղացաւ ծովն, և նոյնժամայն հրամայեաց Տէր կետին՝ մեծ վիշապ ձկանն, և եկուլ զՅունան։ Եւ արքն ելին ի ցամաք, զենին զոհս Տեառն և խնդրեցին զթողութիւնն յանցանաց։ Եւ առեալ վիշապըն զՅունան էջ ի խորս երկրի, և տարեալ ծովն պատեաց զաշխարհն խափշկաց, և հնդկաց գետովն եբեր ի Պարսից ծովն, և Պարսից ծովովն՝ եհան ի գետն Սարանկաս յական Թարթելն, (որ) հնգետասան աւուր ճանապարհ էր հեռաւակի։ Եւ էր Յունան ի փոր կետին զերիս տիւս և զերիս գիշերս, կանգնեալ բազկատարած կայր աղօթս կենդանի՝ զօրութեամբն Աստուծոյ։ Եւ յետ յերից աւուրց բերեալ վիշապն զՅունան ի դէմ Նինուէ քաղաքին, եթուք ի ցամաքն՝ երից աւուրց ճանապարհ հեռի ի քաղաքէն, և ինքն դարձաւ ի տեղի իւր։ Եւ Յունան զերկիրն ոչ ճանաչէր. զի գիտասցէ Յունան՝ թէ չկարէ մարդ փախչել ի յԱստուծոյ, զի (յ)ամենայն տեղիս հասանէ ամենայզօր ձեռն նորա։

Եւ եղեւ բան Տեառն կրկին անգամ առ Յունան և ասէ. Արի՛ գնայ ի Նինուէ քաղաք մեծ, և քարոզեսջիր անդ ապաշխարութիւն։ Իբրեւ գնաց Յունան երից աւուրց ճանապարհ, եհաս ի քաղաքն, սկըսաւ քարոզել և ասել. Ահա երեք աւուրք և Նինուէ կործանեսցի։ Եւ տեսին բնակիչք քաղաքին զերեսն Յունանու պայծառ քան զարեգակն, և հուր բոցածաւալ ելանէր ի բերանոյ նորա. և ընթացեալ պատմեցին թագաւորին և ասեն. Այր մի օտար և ահեղակերպ եկեալ է, և այսպէս քարոզէ։ Եւ ասէ թագաւորն. Ճըշմարիտ է բանք նորա։

Եւ իբրեւ նա զայս ասաց, սկսաւ քաղաքն երե-

րալ. և զառաջինն կամեցաւ փախչել, և իջեալ ամպ հրեղէն երբև զպարիսպ շրջապատեաց զքաղաքն, և ոչ ոք կարաց փախչել: Ասէ Թագաւորն. Մի երկընչիք. այն Աստուածն որ առաքեաց զմարգարէն, թէ կամէր զկորուստն մեր՝ իսկոյն կործանէր, և ոչ առաքէր մեզ քարոզ և մարգարէ. այլ վասն այնորիկ առաքեաց, զի քարոզութեամբ մարգարէին խրատեսցէ զմեզ, զի զղջասցուք ի մեղաց և ապաշխարեսցուք, մեք ի մեղաց դառնանք՝ Աստուած ի բարկութենէն:

Եւ քարոզեցաւ ի Նինուէ ի Թագաւոր(է)ն և ի մեծամեծաց իւրոց, թէ Ամենայն մարդ, այր և կին, ծեր և տղայ՝ զերիս աւուրս մի ճաշակեսցեն, և անասնոցն ճարակ մի տայցեն, և մայրքն տղայոցն ըստինք մի տայցեն: Եւ ամենեքին քուրձ զգեցան՝ Թագաւորն և իշխանքն, և բոլոր քաղաքն ամենայն:

Ամպն աղջամղջին՝ և որոտայր և կայծակունս տայր: Եւ նոքա սկսան քաջալերել զմիմեանս և ասէին. Աստուած գթած է, մարդկային[1], անտես չառնէ ըզգործս ձեռին: Տղայքն զմայրս հարցանէին՝ թէ ե՞րբ գայցէ օրն այն վերջին, որ մեր քաղաքս կործանի: Պատասխանեալ մայրքն ասէին, տղայոցն զայս յայս դնէին. Աստուած գթած է, ողորմած, անտես չառնէ իւր ծառային: Ծնողքն զաւակացն ասէին. Դուք աղաչեցէք զԱստուած՝ լինի թէ ձեր ողորմութենէդ մեք այլ ազատիմք: Եւ դարձան ամենեքին բոլոր սրտիւ առ Աստուած, և զղջացան ի չարեաց իւրեանց և ասէին. Ո՞ գիտէ ապաշաւեսցէ Աստուած և դարձցի ի բարկութենէ իւրմէ: Եւ այնպէս զկուրծսն ծեծելով լային և ողբային ի մէջ խաւարին:

Եւ ել Յովնան ի քաղաքէն ի մէջ հրեղէն ամպոյն և ոչ վնասեցաւ. և նստաւ հանդէպ քաղաքին, տեսանել զկատարածն և կամէր զի կործանեսցի քաղաքն և կատարեսցի մարգարէութիւնն իւր:

Իսկ բնակիչք քաղաքին, երեք օր զտիւ և զգի-

1. Այսպէս է ի միակ մեր օրինակին, ուր թէ ոչ պակասէ ինչ, գուցէ նշանակիցէ մարդասէր:

չեր զմխմեանս ոչ ճանաչեցին. այլ անսուաղ՝ մարդ և անասուն, զղջմամբ և (յ)արտասուս ապաշխարութեամբ՝ զաստուածասաստ պատուհասն յետ դարձուցին: Եւ յետ երից աւուրց վերացաւ ամպն և դադարեաց երերումն, և ծագեաց նոցա արեւ և փարատեցաւ մահուն երկիւղ և տրտմութիւն: Եւ նոքա սկսան օրհնել զԱստուած և գոհանալ զնմանէ:

Եւ տրտմեցաւ Յովնան և անկաւ տապ զգլխովն նորա և քաղէին հոգիք նորա: Եւ ասէ Աստուած ցՈւնան, թէ կարի՞ տրտմեալ ես: Եւ ասէ Յովնան. Ո՞չ այս այն բանք են մինչ ի յերկրին իմում ասէի ես. զի գիտէի ես, զի դու ողորմած ես և գթած ես և զղջանաս ի վերայ չարեաց մարդկան:

Տէրն կամեցաւ օրինակաւ յանդիմանել զանողորմ բարս նորա, և ի միւս առաւօտուն բուսաւ դդմենի մի, ել և արար հովանի գլխոյն Յովնանու. և նա նստաւ ընդ հովանեաւ նորա և մխիթարեցաւ փոքր մի, և իբրեւ անց այն օրն ի միւս այլ օրն հրամանաւն Աստուծոյ՝ որդն հողային եհար զդդմենին և չորացաւ և անկաւ տապ զգլխով նորա և քաղէին ոգիք նորա:

Եւ ասէր Յովնան. Լաւ էր ինձ մեռանել քան զայսպիսի կեանքս:

Եւ ասէ Տէր ցՈւնան, թէ կարի՞ տրտմեալ ես վասն դդմենոյն:

Եւ ասէ Յովնան. Կարի տրտմեալ եմ, զի այն էր իմ մխիթարանքն:

Եւ ասէ Տէր. Դու խնայեցեր ի դդմենին որ չեղեր ժամ մի աշխատ ի նմին, այլ ի գիշերի ել և ի միւս գիշերն կորեաւ. մի դդմենոյ կորուստն քեզ այնպէս դժարեցաւ և կսկիծ թվաց, ասաց բարերարն, ես ո՞նց չխնայեմ ի Նինուէ քաղաք մեծ, (յ)որ բնակեալ են աւելի քան երկոտասան բիւր մարդիկ, որ ոչ գիտեն զաջ կամ զահեակ, և անասուն բազում յոյժ: Թէ զմեղաւորքն պատուհասեմ, ասաց, (յ)անմեղ մանկտին ո՞նց չխնայեմ: Դու մի դդմենոյ կորստեանն համար

դառնացար, ասաց, քան զի՞ առաւել ինձ ցաւ է կորուստ ստեղծուածոց իմոց։

Եւ ապա կակղացաւ Յունան։ Իսկ բնակիչքն Նինուէի, որ զպատուհասն անցուցին ապաշխարութեամբ, կային առաջի սուրբ մարգարէին և աստուածապէս պաշտէին և պատուէին զնա։ Եւ եկաց մարգարէն վեց ամիս ի մէջ նոցա և կամէր գնալ, և ասէին բնակիչք քաղաքին. Դու ես մեր լուսաւորիչ վառ ճրագ և արեգակն, մի՛ երթալ և ի մեզանէ մի՛ հեռանար, զի մի՛ դարձեալ խաւար մեղաց և անհաւատութիւն պատեսցէ զմեզ. և թէ ոչ կամիս կեալ ընդ մեզ, տար զմեզ ընդ քեզ. և նա ոչ կամեցաւ մնալ ընդ նոսա՝ և կամ տանիլ զնոսա պատճառելով զօտարեկանս երկրին. Մեր երկրի հացն տարեկան է, ասէ, թէ ուտէ մարդ փորացաւ լինի և ոչ կարէ։ Եւ նոքա երթային լալով զհետ մարգարէին, և սիրով ճանապարհի եդին զնա. երանի տային ազգին Իսրայէլի և ժողովրդեան նորա։ Եւ ոչ կամեցաւ մարգարէն տանել զնոսա, զի մի ծանիցի խայտառակութիւն նոցա, անհաւատութիւն և հակառակութիւն իսրայելական ազգին (ընդ) Ասորոց. և ոչ գնաց յերկիրն իւր, այլ առեալ զմայր իւր մարգարէն և գնացեալ պանտխտեցաւ յերկիրն Իսմայելի, զի այսպէս բարձից, ասէ, զնախատինս իմ, զի ստեցի ի մարգարէանալն իմում վասն քաղաքին Նինուէի։ Եւ մեռաւ մայր նորա ի ճանապարհին և թաղեաց զնա մերձ առ կաղնին Ռուքելայ[1]։

1. Աստ ի գրչագրին յարեալ կայ յերկար զուգակշռութիւն Քրիստոսի ընդ Յովնանու, խրատորէն բանիւք, զոր ի բաց յապաւեցաք։

Life of Jeremiah.

# ԺԵ

# ՎԱՍՆ ԵՐԵՄԻԱՅԻ ՄԱՐԳԱՐԷԻ

## Ի ԳՐՈՑՆ ԲԱՐՈՒՔԱՅ[1]



ՅՈՐԺԱՄ հանդերձեալ էին քաղդէացիքն պաշարել զԵրուսաղէմ, խօսեցաւ Տէր ընդ Երեմիայ, և ասէ. Երեմիայ՝ ընտրեալդ իմ, ելէք ի քաղաքէս յայսմանէ՝ դու և Բարուք ընթերցողն. քանզի տալոց եմ ի գերութիւն զորդիսն Իսրայելի վասն բազում մեղաց իւրեանց. արդ փութացիք և ելէք նախ քան զգալ քաղդէացւոցն:

Ասէ Երեմիայ. Տէր, ընդէ՞ր մատնես զընտրեալ քաղաքս քո ի ձեռս քաղդէացւոց, և պարծի թագաւորն և զօրք իւր՝ եթէ յաղթեցաք սուրբ քաղաքին Աստուծոյ: Տէր, մի՛ արասցես զայդ. այլ եթէ յօժարկացար մեզ, ի ձեռաց քոց կործանեսցի:

Ասէ Տէր. Ոչ թագաւոր և ոչ զօրք իւր կարիցեն մտանել ի դա՝ մինչեւ ես բացից զդուռն դորա: Երթիջիր և պատմեսջիր Բարուքայ. և ի հասարակ գիշերիս ի պարիսպն ել, և ես ցուցից քեզ՝ զի առանց իմ ոչ կարեն առնուլ զքաղաքս:

Եւ յարուցեալ Երեմիայ՝ գնաց վաղվաղակի առ Բարուք, և պատմեաց նմա զամենայն: Եւ երթեալք ի միասին՝ մտին ի տաճարն Տեառն, հերձին զհանդերձս

1. Բ. Յիշատակ Երեմիայի մարգարէի ի գրոցն Բարուքայ:

իւրեանց[1], լցին զգլուխս իւրեանց հողով։ Եւ ի վեց ժամու գիշերոյն գնացին ի պարիսպն, և եղեւ յանկարծակի ձայն հնչման փողոյ. և տեսեալ հրշտակս իջեալս յերկնից[2], վառեալ ղամբարս ունելով, և պատեցան շուրջ զպարսպաւն։

Եւ ասեն Երեմիայ և Բարուք. Այժմ ծանեաք՝ եթէ ճշմարիտ է բան զոր ասացեր Տէր։ Եւ համբարձեալ զաչս իւրեանց յերկինս՝ ասեն. Այժմ ծանեաք՝ որ մատնեցեր զքաղաքս քո ի ձեռս թշնամեաց. զի՞նչ հրամայես զի արասցուք զպատուական անօթս սպասու տաճարի քո։

Ասէ Տէր. Առէք ի ձեզ և տուք յերկիր և ասացէք. Լուր երկիր ձայնի ստեղծողի քո, և առ պահեա զանօթս սրբութեան տաճարին Տեառն՝ մինչեւ ցգալուստ սիրեցելոյն ի նմա։

Ասէ Երեմիայ. Ասա ինձ[3] եթէ զի՞նչ արարից զԱբիմելէք եթէոպացին, զի յոյժ երախտաւոր է առ իս. զի նա եհան զիս ի գբոյ տղմոյն. և ոչ կամիմ զի տեսցէ զաւերումն սուրբ քաղաքիս քո և տրտմեսցի։

Ասէ Տէր. Առաքեա զնա յագարակն Ագրիպա, և ես ծածկեցից զնա՝ մինչեւ դարձուցից ի գերութենէ զժողովուրդն ի քաղաքս։ Եւ դու երթիջիր զհետ ժողովրդեանն ի Բաբելոն. իսկ զԲարուք թողցես ի քաղաքիս, և ես այց արարից նմայ։

Եւ զայս ասացեալ Տեառն վերացաւ յերկինս։ Եւ Երեմիայ և Բարուք մտին ի սրբութիւնն Աստուծոյ, և առին զանօթս սպասու տաճարին՝ ետուն յերկիր. և առժամայն եկուլ երկիր զանօթսն։ Եւ նստան երկոքեանն և ողբային[4] յոյժ։ Եւ ընդ առաւօտն ասէ Երեմի ցԱբիմելէք. Առ կթոց և երթիջիր յագարակն Ագրիպա ընդ ճանապարհ լերինն[5], և բեր ղալար

1 Բ. իւրեանց և [illegible] մահք ողբոյին։ Եւ է։ [illegible] ի ձեռս իւրեանց։
2. Բ. յերկնից, և [illegible]
3. Բ. չունի ասա ինձ։
4. Բ. լային։
5. Բն. մերին։

թուզ վասն հիւանդացեալ ժողովոյս[1]. և աջ Տեառն ծածկեսցէ զգլուխ քո։

Եւ գնաց Աբիմելէք կթոցովն՝ որպէս ասաց[2] նմա Երեմիայ։ Եւ ապա[3] հասին զօրք քաղդէացւոցն, և պատեցին շուրջ զքաղաքովն Երուսաղեմի։ Եւ հրեշտակն Տեառն հնչեաց[4] զփողն և ասէ. Մտէք ի քաղաքդ, ամենայն զօրք քաղդէացւոց. զի ահա բացան ձեզ ամենայն դրունքդ. և առէք գերութիւն զամենայն ժողովուրդդ Երուսաղեմի։

Եւ ընթացաւ Երեմիայ՝ փակեաց զտաճարն Տեառն և էառ զբանալիսն. և ելեալ ի քաղաքէն՝ ընկէց առաջի արեգականն, և ասէ ողբալով. Առ պահեա առ քեզ զփականս տաճարին Տեառն, մինչեւ խնդրեսցէ զդոսա Աստուած. մեք ոչ եմք արժանի պահել զդոսա։

Իսկ քաղդէացիքն մտին ի քաղաքն Երուսաղէմ, աւար արարին[5] զամենայն ինչսն, և կալան ի գերութիւն զորդիսն Իսրայելի և տարան ի Բաբելոն։ Եւ Երեմիայ գնաց[6] զկնի։ Եւ Բարուք ելեալ ի քաղաքէն մեծաւ ողբով, և հողով լցեալ զգլուխն, և երթեալ բնակեցաւ ի գերեզմանի[7] միայն. և հրշտակ Տեառն երեւէր նմա յամենայն օր և մխիթարէր զնա։

Իսկ Աբիմելէք[8] մինչդեռ տանէր զթուզն, ի ճանապարհին տօթացաւ ի խորշակէն. երթեալ առ ծառով մի նստաւ ընդ հովանեաւն և հանգեաւ, զի յոյժ աշխատեալ էր. խոնարհեցուցեալ զգլուխ իւր՝ եդ ի վերայ կթոցին, ննջեաց և եղեւ ի քուն զվաթսուն և վեց ամ. ոչ զարթեաւ ըստ հրամանի Տեառն[9] որչափ արարին ժամանակ որդիքն Իսրայելի ի Բաբելոն։ Եւ յետ վաթսուն և վեց ամացն զարթեաւ և ասէ. Քաղցր և սակաւ քուն եղէ. և գլուխս ծան-

1. Բ. ժողովրդեանն։
2. Բ. հրամայեաց։
3. Բ. ահա։
4. Բ. հնչեցոյց։
5. Բ. արին։
6. Բ. գնաց զհետ նոցա։
7. Բ. գերեզմանս։
8. Բ. Աբիմելէք երթեալ ժողեաց թուզ և մինչդեռ։
9. Բ. Տեառն Աստուծոյ։

*րացեալ է, զի ոչ յագեցա(յ) քնով։ Եբաց զկթոցն և եգիտ զթուզն դալար, զի դեռ եւս կաթէին զկաթնն. և ասէ. Եթէ դարձեալ ննջեցից, երկնչիմ՝ մի՛ գուցէ յամիցեմ ի քունն, և դժուարանայ ինձ հայրն իմ Երեմիայ. զի շտապով յղարկեաց զիս տանել զթուզս վասն հիւանդացն։ Եւ յարուցեալ եբարձ զկթոցն և երթայր զճանապարհն իւր։*

*Եւ յորժամ եհաս յԵրուսաղէմ, ոչ ծանեաւ զքաղաքն և ոչ եգիտ զտունն Երեմիայի և ոչ զոք ի ծանօթից. և ասէ. Օրհնեալ է Աստուած՝ որ մեծ զարմացումն անկաւ ի վերայ իմ. ուրեմն մոլորեալ եմ, զի ընդ ճանապարհ լերինն եկի՝ թմբրեալ ի քնոյն. և զի՞ արդ իշխեմ ասել ցԵրեմիայ՝ եթէ ի քուն եղէ, և մոլորեցայ ի ճանապարհէն։ Եւ դարձեալ ելեալ ի քաղաքէն, և նշմարեաց զնշան տեղեացն և ծանեաւ։ Դարձաւ եմուտ ի քաղաքն և ոչ զոք եգիտ, և կայր պշուցեալ. և դարձեալ[1] ի քաղաքէն և եդեալ զկթոցն՝ նստաւ. և[2] տեսեալ ալեւոր մի, եհարց[3] եթէ ո՞ր է քաղաքս։ Եւ նա ասէ՝ Երուսաղէմ։ Ասէ Աբիմելէք. Եւ ո՞ւր իցէ Երեմիայ քահանայ Աստուծոյ և Բարուք ընթերցողն և ամենայն ժողովուրդ քաղաքիս[4] զի ոչ գտի զոք։ Ասէ ալեւորն. Ոչ իցես դու յայսմ քաղաքէս՝ որ այսօր յիշես զԵրեմիայ յետ այսչափ ժամանակի. քանզի Երեմիայ ընդ ժողովրդեանն գերեվար գնաց[5] ի Բաբելոն, զոր տարաւ Նաբուգոդոնոսոր արքայն բաբելացւոց։ Ասէ Աբիմելէք. Եթէ ոչ էիր ալեւոր, որ չէ պարտ անարգել զքեզ. զի[6] ո՞րչափ ժամանակք իցեն՝ որ առաքեաց զիս Երեմիայ յագարակն Ագրիպա, զի քաղեցից սակաւ մի թուզ վասն հիւանդացն։ Տես զթուզս որ դալար է և դեռ կաթեն ըզկաթն։ Սակաւիկ մի ննջեցի ի ճանապարհին ընդ ծառով մի և քնով ոչ յագեցա(յ), այլ շտապով եկի։ Եւ*

1. Բ. դարձեալ եւ։
2. Բ. յաւելու և շնորհօք հոգւոյն Աստուծոյ։
3. Բ. եհարց զնա և ասէ, ո՞ր։
4. Բ. յաւելու սոր էջեն։
5. Բ. գերի գնաց։
6. Բ. զի՞ այսչափ ժամանակին են։

զու ասես՝ եթէ գերեցան ժողովուրդն և Երեմիայ ի Բաբելոն։

Եւ հանեալ (զ)Թուզս՝ եցոյց նմա։ Եւ յորժամ ետես ալեւորն, ասէ. Որդեակ, ուրեմն դու արդար ես. և ոչ կամեցաւ Աստուած ցուցանել քեզ զաւերումն քաղաքիս. ընկէց ի վերայ քո թմբրութիւն։ Գիտացիր, որդեակ, զի վաթսուն և վեց ամք իցեն[1]՝ յորմէ հետէ պաշարեցաւ քաղաքս, և տարան զԵրեմիայ և զժողովուրդն ի Բաբելոն։ Տես, որդեակ, որ թզոյ աւուրք չեն, և դեռ ոչ ծառք տերեւս[2] իսկ ունին, զի նիսան ամիս է։

Եւ համբարձեալ զձայն[3] իւր Աբիմելէք՝ ասէ. Օրհնեալ է Աստուած երկնի և երկրի, որ տայ հանգիստ արդարոց յամենայն տեղիս՝ յամենայն ժամ։ Եւ հանեալ Թուզ՝ ետ ալեւորին։ Եւ աղօթեաց Աբիմելէք առ Աստուած. և հրշտակ Տեառն կալաւ զաջոյ ձեռանէն, (և) կացոյց կթոցումն առ գերեզմանն՝ յորում էր Բարուք։ Եւ տեսեալ զմիմեանս զահի հարան. և զիրկս արկեալ միմեանց համբուրելով, լացին ուժգին։

Եւ տեսեալ Բարուքայ զԹուզն դալար, զի դեռ եւս կաթէին զկաթնն, աղօթեաց ասելով[4] այսպէս. Օրհնեալ է Տէր Աստուած, որ առնէ հատուցումն սիրելեաց իւրոց։ Զի[5] ինքնին պատրաստեսցէ քեզ, ով անձն իմ, և ցնծասցէ սիրտ քո. զի սուգն քո դարձաւ յուրախութիւն։ Այս վաթսուն և վեց ամք իցեն՝ զի[6] քաղեցաւ Թուզս, և ոչ թարշամեցաւ[7]. այլ կաթեն զկաթնն՝ որպէս առօրեայ[8] հատեալ ի ծառէ։ Եւ զայս ասացեալ՝ ասէ Բարուք ցԱբիմելէք. Աղաչեսցուք զԱստուած, զի ցուցանէ մեզ՝ եթէ որպէս արասցուք զայս աքանչելի գործս հասուցանել առ Երեմիայ և ժողովուրդն։

1. Բ. են։
2. Բ. տերեւս ոչ են հանեալ և չամ սոսս արջակեալ, զի։
3. Բ. զձայնս։
4. Բ. և ասէ։
5. Բն. պատրաստեա տեղ, ով անձն։
6. Բ. յորմէհետէ։
7. Բ. [illegible]յաւելու և ոչ նեխեցաւ։
8. Բն. առ օրէ։

Եւ յետ աղօթիցն երեւեցաւ նոցա արծուի մի՝ նստեալ ի վերայ ծառոյ։ Ասէ արծուին մարդկեղէն բարբառով. Ողջոյն քեզ, Բարուք, ընտրեալդ Աստուծոյ։ Ասէ Բարուք[1]. Պատմեա մեզ՝ վասն որո՞յ ես եկեալ։ Եւ ասէ. Որ առաքես ինեւ զեղեալ զաքանչելիսն առ Երեմիայ։

Եւ գրեաց Բարուք ի քարդիսի, և կապեաց ի նա Թուղս եւթնեւտասան, և կապեաց ի պարանոց արծըւոյն, և ասէ. Երթիջիր և տարջիր զպատասխանիդ[2] առ Երեմիայ և առ ժողովուրդն գերեալ՝ որդիսն Իսրայելի. և դարձեալ բերցես մեզ պատասխանի։

Եւ սլացեալ արծուոյն՝ գնաց[3] ի Բաբելոնն, և նըստաւ ի վերայ ծառի միոյ՝ արտաքոյ քաղաքին։ Եւ ելանէր Երեմիայ բազում ժողովրդով, արամբք[4] և կանամբք, առ ի թաղել զմեռեալս իւրեանց. քանզի խնդրեալ էր յարքայէն՝ արտաքոյ քաղաքին վասն իւրեանց ժողովրդեանն։ Եւ յորժամ մերձ եղեն ի ծառն, աղաղակեաց արծիւն մարդկային բարբառով և ասէ. Քեզ ասեմ, Երեմիայ՝ ծառայ Աստուծոյ բարձրելոյ[5], լուր պատգամացն Աստուծոյ՝ որ առաքեցին առ քեզ Բարուք և Աբիմելէք։

Եւ յորժամ լուան զձայն արծուոյն, փառաւորեցին զԱստուած։ Եւ իջեալ արծիւն ի վերայ մեռելոյն, եհար թեւօքն զերեսս մեռելոյն, և առժամայն կանգնեցաւ[6]։ Եւ յայժ զարհուրեցան ամենայն ժողովուրդքն[7], և ասեն՝ եթէ որպէս ի ձեռն Մովսէսի, այնպէս երեւեցաւ մեզ Աստուած ի ձեռն արծուոյս այսորիկ։

Եւ ասէ արծիւն ցԵրեմիայ. Լոյծ զքարդեզս ի պարանոցէս, և ընթերցիր ժողովրդեանդ. տես և զդալար թուղս։ Եւ յորժամ ընթերցաւ, ասեն ժողովուրդն ցԵրեմիայ. Արդ հրամայեա մեզ՝ եթէ զի՞նչ արասցուք։

1. Բ. յաւելու [illegible]
2. Բ. [illegible]
3. Բ. յաւելու խաղաղութեամբ։
4. Բ. չունի արամբք և կանամբք։
5. Բ. չունի բարձրելոյ։
6. Բ. յաւելու [illegible]
7. Բ. [illegible]

Ասէ Երեմիայ. կատարեցէք զհրամանս Տեառն Աստուծոյ. և տարցէ զմեզ վաղվաղակի ի քաղաքն մեր[1]: Եւ դարձեալ[2] գրեաց Երեմիայ հրովարտակ առ Բարուք և առ Աբիմելէք առաջի ամենայն ժողովրդեանն՝ զամենայն նեղութիւնս զոր արար նոցա արքայն Նաբուգոդոնոսոր. և կապեաց ի պարանոց արծուոյն:

Թռեաւ արծիւն՝ գնաց առ Բարուք և առ Աբիմելէք: Եւ առեալ զհրովարտակն[3]՝ ընթերցան, և լացին յոյժ՝ ի լսել զչարչարանս և զնեղութիւնս Երեմիայի և զժողովրդեանն: Իսկ Երեմիա առեալ զդալար թուզն՝ տայր հիւանդացն և բժշկէին: Եւ պատուէր տայր ժողովրդեանն՝ հրաժարել[4] ի գարշելի կերակրոցն հեթանոսաց: Եւ[5] հրամայեաց Աստուած ելանել ժողովրդեանն ի Բաբելոնէ, և ելին[6] խաղաղութեամբ: Եւ Երեմիայ անցոյց զժողովուրդն ընդ Յորդանան, և գնացին յԵրուսաղէմ:

Եւ տեսեալ զնոսա Բարուք և Աբիմելէք, կալան[7] զոտից Երեմիայի և երկիր պագին նմա: Եւ համբուրեցին զմիմեանս, և փառս մատուցին Աստուծոյ մեծաւ գոհութեամբ. և մատուցին պատարագ Աստուծոյ զաւուրս ութ: Եւ յաւուրն տասներորդի միայն մատոյց Աստուծոյ զոհս, և աղօթեաց առ[8] Աստուած: Եւ վերացան միտք իւր, և ասէր. Սուրբ, սուրբ, սուրբ, լոյս ճշմարիտ՝ որ լուսաւորեաց զիս ի գալս իմում առ քեզ: Եւ զայս ասացեալ՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց[9] որպէս մեռեալ: Եւ կարծեցին[10] Բա-

1. Բ. յաւելու Երուսաղէմ:
2. Բ. չունի դարձեալ:
3. Բ. Բռնալքն:
4. Բ. յաւելու է ղեկծ խառնա- կաբենեն:
5. Բ. և այս:
6. Բն. եկին:
7. Բ. կալան զոտից որբոյն Երեմիայի, և երկիր պագին նմա. և փառս մատուցին Աստուծոյ մեծաւ գոհութեամբ և մատուցին պատարագ:
8. Բ. առ Աստուած, մինչև վերացան միտք... սուրբ ծառա կենդանի, լոյս... որ լուսաւորեցեր:
9. Բ. յաւելու յերկիր:
10. Բ. կարծեցին:

րուք և Աբիմելէք՝ եթէ մեռաւ, և յոյժ լացին. և հա-
ղորդ լցին զգլուխս իւրեանց, և ժողովեցան առ ի թա-
ղել[1]: Եւ եղեւ ձայն առ նոսա և ասէ. Մի՛ թաղէք
զկենդանիդ: Եւ թոյլ ետուն[2] զերիս աւուրս:

Եւ ապա եբաց Երեմիայ զաչս իւր և կանգնեցաւ.
և բարձրաձայն ասէ. Փառս տուք Աստուծոյ, և որդ-
ւոյ իւրում օծելոյ՝ որ զարթուցանէ զմեզ: Զի նա
է անշէջ ղամբար[3], որ զկնի այլ եւս աւուրց և ա-
մաց երկերիւր եւթանասուն եւ հնգից եկեսցէ յեր-
կիր. ծառն կենդանի՝ որ տնկեցաւ ի մէջ դրախտին.
և արասցէ զանպտուղ ծառս պտղաբերս. և զՅոր-
դանան իբրեւ զասր սպիտակ[4] արասցէ, և իբրեւ
զձիւն սպիտակացուսցէ. և օրհնեսցէ զկղզիս, և ա-
րասցեն զպտուղս ի բանից բերանոյն Քրիստոսի: Եւ
ինքնին մտցէ և ելցէ. և ընտրեսցէ երկոտասան ա-
ռաքեալս, զի աւետարանիցեն ի հեթանոսս, զոր ես
տեսի զարդարեալ ի հօրէ իմմէ: Գալոց է յերկիր, և
լցցէ զքաղցեալ անձինս:

Եւ յորժամ լուան ժողովուրդն զբանս զայս, բար-
կացեալ ասեն[5]. Այս բանքս են՝ զոր Եսայի որդի Ա-
մովսայ խօսեցաւ և ասէ. Տեսի զԱստուած և զորդին
իւր: Արդ մի՛ սպանցուք զսա որպէս զԵսայի. այլ
քարկոծ արասցուք[6] զսա:

Եւ յոյժ տրտմեցան Բարուք և Աբիմելէք. վասն զի
դեռ եւս կամէին լսել[7] զոր ետես: Եւ ասէ ցնոսա Երե-
միայ. Մի՛ լայք և մի՛ տրտմիք. զի ոչ սպանցեն զիս՝ մին-
չեւ պատմեմ ձեզ զամենայնն: Եւ ասէ. Բերէք վէմ մի
մեծ. և նոքա բերին: Եւ ասէ Երեմիաս. Տէր Աստուած,
լոյս ճշմարիտ գիտութեան, անստուեր ճառագայթ, լուր
ինձ. և արա զվէմս զայս ի նմանութեան[8] իմոյ, մին-

1. Բ. յաւելու զնա:
2. Բ. յաւելու նմա:
3. Բ. չիջանէ հասարակոյ, որ յետ այլ եւս:
4. Բ. չարմեր.
5. Բ. ասէին:
6. Բ. քարկոծեսցուք:
7. Բ. կամէր ասել պատմել իւր- հաւրցուն զոր ետես:
8. Բ. ի նմանութեան իմ մարդ կեն- [illegible]:

չեւ պատմեցից Բարուքայ և Արիմեղեքայ զամենայն խորհուրդս՝ զոր ծանուցեր ինձ։

Յայնժամ հրամանաւ Աստուծոյ եղեւ վէմն[1] ի կերպըս Երեմիայի, և սկսան ժողովուրդն քարկոծել ըզվէմն, կարծել եթէ Երեմիայ իցէ։ Եւ Երեմիայ պատմեաց զամենայնն, և գրեաց Բարուք ի գիրս իւր։ Եւ ապա երթեալ Երեմիայ՝ եկաց ի մէջ ժողովրդեանն. և վէմն զաղաղակ բարձեալ ասէր. Յիմարք և անմիտք՝ որդիք Իսրայելի, ընդէ՞ր քարկոծէք զիս զվէմս՝ կարծելով[2] եթէ ես իցեմ Երեմիայ. ահա[3] ի միջի ձերում կանգնեալ կայ։ Եւ դարձեալ եղեւ վէմն ապառաժ[4] քար։ Եւ յորժամ տեսին զԵրեմիայ, դիմեցին առ հասարակ ի վերայ նորա (և) քարկոծեցին զնա։ Եւ կատարեցաւ[5] ի նոցանէ, որ օր մի էր մայիս ամսոյ։ Եւ թաղեցին զնա Բարուք և Արիմեղէք, և կանգնեցին[6] զվէմն՝ թէ Այս վէմս օգնական եղեւ Երեմիայի։

Եւ[7] Նեփթաղիմ թագաւորն աղեկսանդրացի տարաւ զոսկերսն Երեմիայի ի քաղաքն Աղեկսանդրիա պատուով[8], և թաղեաց մի մի ոսկր շուրջ զպարսպովն քաղաքին. և սատակեցան[9] վնաս արարողքն, և փառաւորեցին տեսողքն Աստուծոյ. ամէն։

1. Բ. վէմն մարդ ի կերպարանս։
2. Բ. կարծէք։
3. Բ. յաւելու Երեմիա։
4. Բ. չունի ապառաժ։
5. Բ. և կատարեցաւ Երեմիա ի նոցանէ ի մայիս ամսոյ միոջ։
6. Բ. յաւելու ի վերայ գերեզմանի նորա զվէմն, և գրեցին ի վերայ նորա թէ այս։
7. Բ. յաւելու յետ ժամանակի։
8. Բ. և պատուով թաղեաց։
9. Բ. սատակեցան ամենայն [illegible] և փառաւորեցին Աստուծոյ տեսողք սքանչելեացն։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՍՐԲՈՅՆ ԵՐԵՄԻԱ ՄԱՐԳԱՐԷԻՆ ԵՒ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՆՈՐԱ ԲԱՐՈՒՔԱՅ ԵՒ ԱԲԻՄԵԼԵՔԱՅ

ՅՈՐԺԱՄ կամեցաւ Աստուած մատնել զԵրուսաղէմ ի գերութիւն, խօսեցաւ ընդ Երեմիայի և ասաց. Ել ի քաղաքէս դու և Բարուք դպիրն քո. քանզի տալոց եմ ի գերութիւն զքաղաքդ Երուսաղէմ և զորդիսն Յուդայ։

Ասէ Երեմիայ. Քաւ լիցի քեզ Տէր իմ, մի՛ արասցես զայդ. այլ թէ յոյժ բարկացար մեզ Տէր, ի ձեռաց քոց կործանեսցի քաղաքս մեր. զի մի՛ պարծեսցին ատելիք քո և թշնամիք մեր։

Ասէ Տէր. Դու փութայ պատմել Բարուքայ, և ի մէջ գիշերին երթա(յ)ք ի պարիսպն, և ցուցից ձեզ զի՛նչ լինելոց է. զի առանց իմ ոչ ինչ կարասցեն առնել։

Եւ վաղվաղակի յարուցեալ Երեմիայ գնաց առ Բարուք դպիրն՝ և պատմեաց զամենայն։ Եւ երթեալ ի միասին, մտին ի տաճարն Տեառն, և պատառեալ զհանդերձս իւրեանց՝ անկան առաջի Տեառն մեծաւ հառաչմամբ, և արկին հող զգլխովն իւրեանց. և ապա ելեալ գնացին ի պարիսպն։ Եւ եղեւ յանկարծակի ձայն հնչմամբ փողոյ, և տեսանէին զհրեշտակսըն Աստուծոյ, որ իջանէին յերկնից վառեալ ղամբարօք, և պատէին շուրջ զպարսպաւն։

Յայնժամ Երեմիայ և Բարուք համբարձին զաչս իւրեանց յերկինս, և ասեն. Ահա ծանեաք Տէր, որ մատնեսցեր զքաղաքս մեր ի ձեռս թշնամեաց մերոց. զի՞նչ արասցուք զանօթսն սպասուց սրբութեան քո։

Ասէ Տէր. Առ ի քեզ Երեմիայ և տուր յերկիր և ասա՛յ. Լուր երկիր բանից ստեղծողին քո. և ա՛ռ պահեայ զանօթս տաճարին Տեառն քոյ՝ մինչև ցգալուստ նորա յերկնից։

Ասէ Երեմիայ. Աղաչեմ զքեզ, Տէր, ցոյց ինձ թէ զի՞նչ արարից զԱբիմելէք եթովպացին. քանզի յոյժ երախտաւոր է ինձ և նայ եհան ի գբոյ տղմւոյն, և ոչ կամիմ տեսանել նմայ զաւերումն սուրբ քաղաքի քո։

Ասէ Տէրն. Առաքեայ զնայ յագարակն Ագրիպեայ, և ես ծածկեցից զնայ անդ, մինչև դարձցի ժողովուրդն ի գերութենէ անտի ի քաղաքս։ Եւ դու երթ գնայ զհետ ժողովրդեան քո ի Բաբելոն, և զԲարուք թողցես ի քաղաքի աստ. և ես այց արարից նմայ։

Եւ զայս ասացեալ Տէր, փութացոյց զԵրեմիայ առնել զամենայն՝ զոր հրամայեաց նմայ։ Եւ մտին Երեմիայ և Բարուք ի տաճարն և առին զանօթսն և ետուն յերկիր. և իսկւոյն եկուլ երկիր զանօթս սրբութեան, և նստեալ Երեմիայ և Բարուք լային և աղօթէին։

Եւ ի վաղիւն ասաց Երեմիայ Աբիմելէքայ. Որդեակ, ա՛ռ դու զկթոցն և երթ գնայ յագարակն Ագրիպայ. և բե՛ր դալար թուզ վասն հիւանդեացն որ են առ մեզ. և աջ Տեառն պահեսցէ զքեզ։ Եւ գնաց Աբիմէլիք։

Եւ աճայ հասին զօրքն քաղթէացւոյցն և պատեցին շուրջանակի զքաղաքն Երուսաղէմ։ Եւ քաղթէացիքն յիւրաքանչիւր դիմաց մտին ի քաղաքն. և առին զամենայն առ և աւար, և հեղին բազում արիւնս, և արկին զմարմինս սրբոց գէշ գազանաց և թռչնոց շուրջ զքաղաքաւն. և ոչ ոք էր որ թաղէր զնոսա։ Եւ ա՛ռ ի գերութիւն զորդիսն Յուդայ և զամենայն Իսրայեղի և տարան ի Բաբելոն։ Եւ Երեմիաս ընկեց զհուր տաճարին ի ջրհորն, և զբանալին յարեգակն, և ասաց. Առէք պահեցէք դուք զայդ հրամանաւ արարչին ձերւոյ. և ինքն Երեմիայ գնաց զհետ գերելոցն ի Բաբելոն։ Եւ Բարուք ելեալ ի քաղաքէն մեծակական ողբովք, և բնակէր միայն ի գերեզմանսն.

և հրեշտակ Տեառն երևէր նմայ օր ըստ աւուրց, և մխիթարէր զնոսա հանապազ։

Եւ Աբիմելէք մինչդեռ բերէր զթուզն. ի ճանապարհին տօթացաւ ի խորշակէն, և նստաւ ընդ ծառով միւոյ և հանգեաւ, զի յոյժ աշխատեալ էր. և եդ զգլուխն ի վերայ կող(ո)վին, և ննջեաց ի քուն զամս վաթսուն և ութ. և ոչ զարթեաւ։ Եւ ապայ զարթուցեալ ասաց. Քաղցր և անուշ սակաւ ի քուն եղէ։ Եբաց զկողովն և ետես զթուզն դալար, զի դեռ ևս կաթէր զկաթն. և ասաց՝ թէ գլուխս ծանրացեալ է, զի ոչ յագեցայ քնով. և թէ այլ ննջեցից՝ վախեմ թէ յամեցից ի քունն և դժուարանայ ինձ մարգարէն Երեմիայ, զի յուշացայց, (զի) յուղարկեաց զիս այսօր ի թզոյ վասն հիւանդեացն։

Եւ յարուցեալ առ զկողովն, և երթայր ի ճանապարհն և ոչ ճանաչէր զքաղաքն և ոչ զճանապարհն։ Եւ ոչ զոք տեսանէր ի ծանօթիցն, զոր յերէկն և յեռանդն տեսանէր, և ասէր. Փառք Աստուծոյ, ուրեմն մոլորեալ եմ։

Եւ տեսեալ ալեւոր մի, և ասէ ցնայ. Ո՞ր է քաղաքս այս։ Ասէ ալեւորն. Քաղաքս Երուսաղէմ է։ Ասէ Աբիմելէք. Ո՞ւր է մարգարէն և քահանայն Երեմիայ։ Ասէ ալեւորն. Մոլիս եղբայր և յիմար ես դու, և կամ զմեզ յիմար համարիս։ Ո՞ւր է Երեմիայ՝ որ արդ հարցանես. նա գնաց ընդ գերեալ որդիս թագաւորին ի Բաբելոն։

Ասէ Աբիմելէք. Եթէ ոչ էիր ալեւոր՝ անարգէի զքեզ. զի այսօր առաքեաց զիս Երեմիաս ի թզոյ վասն հիւանդեաց. և արդ տես զթուզս որ դեռ դալար է և կաթէ զկաթսն. և ես սակաւ մի ննջեցի ի ճանապարհս և քնով ոչ յագեցայ, այլ շտապով եկի. և հանեալ զթոյզն եցոյց նմայ։

Եւ ալեւորն տեսեալ զթուզն, ասաց. Որդեակ, դու այր արդար ես. վասն այսորիկ ոչ կամեցաւ Աստուած տեսանել զքեզ զաւերումն քաղաքիս. այլ ընկէց ի վերայ քո քուն, և ծածկեաց զքեզ ընդ հովանեաւ թեւոց իւրոց։ Գիտացիր, որդեակ, որ վաթսունեւութ

ամ է, որ գերեցաւ քաղաքս. և դու տես, որդեակ, զի ահայ ձմեռն է և չէ ժամանակ թզոյ: Եւ ամբարձ Աբիմելէք զձայն իւր և ասաց. Օրհնեալ է Աստուած, որ տայ հանգիստ արդարոց յամենայն ժամ. և հանեալ զթուզն ետ ալեւորին:

Եւ ազդմամբ հրեշտակի Աստուծոյ գնաց առ Բարուք դպիրն, և գիրկս արկեալ միմեանց լացին. և ապայ նստեալ հարցանէին զիր(ե)արս: Եւ տեսեալ զթուզն Բարուք և ասաց. Օրհնեալ է Աստուած, որ սիրէ զերկիւղածս իւր և պահէ զնոսա: Եւ ասաց Բարուք. Ո՞րպէս կարասցուք հասուցանել զայս զսքանչելիս առ Երեմիայ քահանային:

Եւ մինչ նայ զայս ասէր, ահայ արծիւ մի եկն և նստաւ ի վերայ ծառոյն հանդէպ նոցա: Յայնժամ գրեաց Բարուք զսքանչելիսն, և այն թղթոյն պատեաց հնգետասան թուզ և կապեաց ի պարանոցն արծուին, և ասաց. Երթ և տար զայդ ·ի Բաբելոն առ Երեմիայ քահանայն Աստուծոյ, և դարձեալ եկ և բեր մեզ պատասխանի: Եւ թռուցեալ արծիւն գնաց ի Բաբելոն և նստաւ ի վերայ ծառոյն՝ որ մերձ առ գերեզմանս էր:

Եւ ահայ Երեմիայ մարգարէն զայր բազում ժողովրդովք ի թաղել զմեռեալ մի յորդւոցն Իսրայելի: Յայնժամ էջ արծիւն ի վերայ մեռելին, և եհար թեւօքն զերեսս մեռելոյն և առժամայն կենդանացաւ մեռեալն: Ընդ որ հիացեալ ժողովրդեանն ետուն փառս Աստուծոյ: Եւ տեսեալ զթուղթն ի պարանոցն արծւոյն և առեալ ընթերցան և զարմացան: Եւ գրեաց Երեմիայ պատասխանի առ Բարուքայ, և եցոյց զնեղութիւնս իւրեանց, զոր կրէին յանօրինացն ի Բաբելոն, և կապեաց ի պարանոց արծւոյն, որ թռուցեալ եհաս առ Բարուք: Եւ առեալ ընթերցաւ Բարուք. և լացին յոյժ յորժամ լուան զնեղութիւնս ժողովրդեանն:

Եւ Երեմիաս առեալ զթուզն ետ հիւանդեաց, և առժամայն առողջացան:

Եւ ի նոյն աւուրսն եղեւ դարձ Երեմիայի և ժո-

ղովրդոցն գալ յԵրուսաղէմ։ Եւ եկեալ ուրախութեամբ պատարագ մատուցանէին գոհութեամբ զաւուրս տասն։ Եւ ի կատարումն պատարագացն՝ աղօթեաց Երեմիայ առ Աստուած ա(յ)նքան՝ մինչ զի վերացան միտք իւր յերկինս, և ասաց. Սուրբ, սուրբ, սուրբ, Տէր զօրութեանց, ծառ կենդանի և լոյս ճշմարիտ, որ լուսաւորես զիս՝ ի գալս իմում առ քեզ։ Եւ զայս ասացեալ անկաւ որպէս մեռեալ, և կարծեցին Բարուք և Աբիմելէք եթէ մեռաւ։

Յայնժամ պատառեցին զհանդերձս իւրեանց և պատրաստեցան ժողովուրդքն ի թաղել զԵրեմիայ։ Եւ ձայն եղեալ առ Նոսա և ասէ. Մի՛ թաղէք զկենդանիդ. և Նոքա թոյլ ետուն զաւուրս երիս։

Եւ յետ երից աւուրց՝ եբաց Երեմիայ զաչս իւր, և յարուցեալ կանգնեցաւ և ասաց բարձ(ր)աձայն. Ամենեքեան միաբան տուք փառս Աստուծոյ և որդւոյ Նորա օծելոյն, որ զարթուցանէ զմեզ, զի Նայ է կեանք մեռելոց։ Եւ արդ, այլ եւս երեք հարիւր և եօթանասուննեւհինգ ամ, և եկեսցէ ծառն կենաց յերկիր, և արասցէ զանպտուղ ծառ(ս)ն պտղաբերս։

Եւ ընդ այն աւուրսն իջին չարք ի Թագորդացն ժողովրդեանն յԵգիպտոս. էջ ընդ Նոսին և Երեմիայ մարգարէն, և բնակեցաւ ի Տափնաս։ Եւ անդ մարգարէացաւ՝ եթէ եկեսցէ Տէր յերկնից յերկիր, և ընտրեսցէ իւր ի մարդկանէ երկոտասան առաքեալս, որ աւետարանեն զՆայ ի հեթանոսս։ Իսկ յորժամ լուան ժողովուրդքն զբանս զայս բարկացան և ասեն. Այդ այն բանք են զոր ասաց Եսայի, թէ Տեսի զԱստուած և զորդի Նորա։ Եկայք սպանցուք զսայ, և ոչ որպէս զՆա, այլ քարեամբք քարկոծեսցուք զսայ։ Եւ տրտմեցան Բարուք և Աբիմելէք, զի դեռ եւս կամէին լսել ի Նմանէ զծածկեալ խորհուրդն՝ զոր ետես. և լային դառնապէս։

Եւ ասէ ցնոսա Երեմիայ. Մի՛ լայք և մի՛ տրտմիք, զի ոչ կարեն սպանանել զիս՝ մինչեւ պատմեցից զամենայն. բերէք ինձ վէմ մի մեծ. և բերին, և ասէ Երեմիայ. Տէր Աստուած, Նոր լոյս Իսրայելի. արա՛յ

զվէմս զայս յիս նման, մինչեւ պատմեցից զամենայն Բարուքայ և Աբիմելեքայ, զխորհուրդս զոր ծանուցեր ինձ։

Եւ կամաւն Աստուծոյ եղեւ վէմն մարդ նմայ(ն) Երեմիայի, և սկսան ժողովուրդն քարկոծել զվէմն, կարծելով թէ Երեմիայ իցէ։ Եւ Երեմիաս պատմեաց նոցա զամենայն. և ապայ գնաց ի մէջ նոցա, և վէմն աղաղակեաց մարդկային բարբառով և ասէ. Ո՜վ յիմարք, ահայ Երեմիայ կայ ի միջի ձերում, զիս ընդէ՞ր քարկոծէք. և դարձեալ եղեւ վէմն քար։ Եւ ամբոխն տեսեալ զԵրեմիայս, քարկոծեցին[1] զնա, և նայ ծունր եդեալ կայր յաղօթս, և հա(յ)ցէր զթողութիւն քարկոծողաց իւրոց։ Եւ այնու կատարեցաւ ի նոյն տեղւոջն և թաղեցաւ յաշակերտաց իւրոց՝ յԱբիմելեքայ և ի Բարուքայ։ Եւ կանգնեցին զվէմն զայն ի վերայ գերեզմանին, ի վկայութիւն նահատակութեան մարգարէին, և գրեցին ի նմայ, թէ Այս է վէմն որ օգնական եղեւ Երեմիայի և քարկոծեցաւ ընդ նմա։

Եւ յոյժ պատուեցին զնա և փառաւորեցին Եգիպտացիքն, բարիս գտեալ ի նմանէ, և յԱստուծոյ ողորմութիւն ի ձեռն նորա. վասն զի մինչ կենդանի էր սատակեաց զքարբն ստին աղօթիւնքն, և զկոկորդիլոս գազանն ջրային, որ վնաս ինչ էին բնակչաց աշխարհին։

Իսկ Աղէքսանդր արքայ մակեդոնացին, գիտացեալ զաքանչելիքն զայն, և տարեաւ զոսկրս մարգարէին ի քաղաքն իւր յԱղէքսանդրիայ, և անդ եդ փառօք և պատւով փառաւորապէս։ Եւ զմինն ի կողից սուրբ մարգարէին տնկեաց պատւով շուրջ զպարսպաւ քաղաքին, և անդ եւս սատակեցան քարբքն և կոկորդիլոսքն։

Սայ նշան ետ եգիպտացւոցն զշարժումն կռոց նոցա և զանկումն և զխորտակումն ի ձեռն մանկան միոյ ծնելոյ ի կուսէն, փրկչին Իսրայելի։

1. Ի գրչագրին եդեալ էր հարքոծեցին, հարքոծողաց, զորս ուղղեցաք։

Որոյ աղօթիւքն ողորմի Քրիստոս Աստուած, ըստ-
սացողի գրուցս, տէր Յակոբ եպիսկոպոսին, և ծնօ-
ղաց նորին, հօրն Աւգուլին և մօրն Ուսլունին և եղ-
բարցն և ամենայն ազգա(յ)նոց սոցին. ամէն:

## Ի ՄՆԱՑՈՐԴԱՑ ԳՐՈՑ

### ՁՈՐ ԳՏԻ Ի ԳԻՐՍ ՀՈՌՈՄՈՑ*

Եւ եղեւ յորժամ գերեցան որդիքն Իսրայէլի ի ձեռս Թագաւորին քաղդէացւոց, խօսեցաւ Աստուած ընդ Երեմիայ և ասէ. Երեմիա, ընտրեալդ իմ, արի ել ի քաղաքէս յայսմանէ դու և Բարուք, քանզի կորուսանեմ զքաղաքս վասն բազմութեան մեղաց բնակչաց դորա: Քանզի աղօթքդ ձեր իբրեւ զսիւն հաստատեալ է ի մէջ դոցա, որպէս պարիսպ ամուր պատել զդոսա: Այժմ արիք ելէք յառաջ, մինչեւ զօրք քաղդէացւոց պատեալ է զդովաւ:

Եւ խօսեցաւ Երեմիա այսպէս. Աղաչեմ զքեզ, Տէր, հրամայեա՛ ծառայի քում խօսել առաջի քո: Եւ ասէ Տէր. Խօսեաց, ընտրեալդ իմ Երեմիա:

Եւ խօսեցաւ Երեմիա և ասէ. Տէ՛ր ամենակալ, մատնե՞ս զքաղաքս ընտրեալ ի ձեռս քաղդէացւոցն, որ պարծի Թագաւորն ի բազում զօրս իւր և ասասցէ, եթէ յաղթեցի սուրբ քաղաքին Աստուծոյ: Մի՛, Տէր. այլ եթէ կամ է քո՝ ձեռօք քովք ապականեա՛:

Եւ ասէ Տէր ցԵրեմիա. Որովհետեւ ընտրեալ իմ ես դու, արի՛ ել ի քաղաքէս՝ դու և Բարուք, քանզի ապականեմ զդա վասն բազմութեան (մեղաց) բնակչաց դո-

* Այս երրորդ օրինակ առաւ յԱրարատ ամսաթերթէ, 1895, Մարտ:

րա. զի ոչ եթէ Թագաւորն և ոչ եթէ զօրք իւր կարող են մտանել ի դա, եթէ ոչ ես բանամ զդրունս դորա: Արի՛ և գնա առ Բարուք և պատմեա՛ զբանս զայս. և ի վեցերորդ պահու գիշերոյս՝ ելէ՛ք ի վերայ պարըսպի քաղաքիդ և ցուցանեմ ձեզ, եթէ ոչ ես յառաջ ապականեմ զքաղաքդ՝ ոչ ոք կարէ մտանել ի դա: Եւ զայս ասաց Տէր, և գնաց յԵրեմիա(յ)է:

Եւ ընթացաւ Երեմիա և գնաց պատմեաց զայս Բարուքայ. և եկին ի տաճարն Աստուծոյ: Եւ պատառեաց զհանդերձս իւր Երեմիա և արկ մոխիր զգլխով իւրով:

Եւ տեսս զնա Բարուք զի արկեալ էր մոխիր զգլխով իւրով և զհանդերձս իւր պատառեալ, գոչեաց ի ձայն մեծ և ասէ. Հա՛յր Երեմիա, զի՞նչ լեալ է քո կամ զի՞նչ մեղս մեղուցեալ է ժողովուրդդ: Վասն զի սովորութիւն էր նորա յորժամ մեղանչէր ժողովուրդն՝ արկանել մոխիր զգլխով իւրով և աղօթս մատուցանել վասն ժողովրդեան, մինչեւ թողեալ լինէին մեղք նոցա: Ասէ ցնա. Պահեա՛ դու զհանդերձ քո և մի՛ պատառեր. այլ պատառեմք առաւել զսիրտս մեր, և փոխանակ ջրոյ՝ արտասուք մեր իջցեն ըմբել ի մեզ. ոչ ըմբեմք ջուր, այլ արտասուօք մերօք լնումք զծարաւ մեր. քանզի ոչ է յողորմիլ Աստուած ժողովրդեան իւրում: Եւ ասէ Երեմիա. Աստուած մատնէ զքաղաքս ի ձեռս արքային բաբելացոց և գերէ զժողովուրդն ի Բաբելոն:

Եւ իբրեւ լուաւ զայս Բարուք, պատառեաց զհանդերձս իւր և ասէ. Հա՛յր Երեմիա, ո՞ պատմեաց քեզ զայդ: Եւ ասէ Երեմիա. Մնա՛ սակաւ մի ընդ իս՝ մինչեւ ցվեց ժամ պահու գիշերոյս, և գիտասջի՛ր՝ զի ստոյգ է բանս այս:

Եւ կային ի միասին ի խորանին և լային, և էր հանդերձն նոցա պատառեալ: Եւ եղեւ ի պահու վեցերորդին, որպէս ասացեալ էր Տեառն Երեմիա(յ)ի, ելին ի միասին ի վերայ պարսպի քաղաքին՝ Երեմիա և Բարուք: Եւ ահա եղեւ ձայն իբրեւ սրնգի և ելին հրեշտակք յերկնից և ունէին ղամբարս ի ձեռին իւ-

րեանց և յանկուցին ի վերայ պարսպի քաղաքին։

Իբրեւ տեսին զնոսա Երեմիա և Բարուք, լային և ասէին. Այժմ ծանեաք զի ստոյգ է բանս։ Եւ աղաչեաց Երեմիա զհրեշտակն և ասէ. Մի՛ ապականեր զքաղաքս մինչեւ հարցանեմ զՏէր բանս։ Եւ հրամայեաց Տէր հրեշտակին և ասէ. Մի՛ ապականեր զքաղաքս զայս, մինչեւ խօսեսցի ընտրեալդ իմ Երեմիա։ Յայնժամ խօսեցաւ Երեմիա և ասէ. Աղաչեմ զքեզ Տէր, հրամայեա ինձ խօսել առաջի քո։ Եւ ասէ. Խօսեաց ընտրեալդ իմ Երեմիա։

Եւ ասէ Երեմիա. Աւասիկ, Տէր, ծանեայ որ մատնես զքաղաքս ի ձեռս թշնամեաց իւրոց և տանեն զժողովուրդ քո ի Բաբելոն, և զի՞նչ կամիս առնել զսպաս սուրբ պատարագի քո։ Ասէ ցնա Տէր. Ա՛ռ զնա և տո՛ւր ցերկիր, և ասա ցնա. Լո՛ւր երկիր ձայնի արարչի քո վկայութեամբ ջրոյ, որ կնքեաց զեօթ դարն, և զկնի այնորիկ առնու զզարդ քո. պահեա՛ զսպաս պատարագի՝ մինչեւ ի գալուստ սիրելոյն։

Եւ խօսեցաւ Երեմիա և ասէ. Աղաչեմ զքեզ, Տէ՛ր, ծանո՛ զիս, եթէ զի՞նչ առնեմ զԱբդամելէք եթեովպացի, զի բազում բարեգործութիւն արարեալ է ծառայի քո Երեմիա(յ)ի, և նա եհան զիս ի գբոյ տղմոյն, և ոչ կամիմ, եթէ տեսանիցէ նա զաւերումն քաղաքիս և զապականութիւն սորա. այլ ողորմեսցիս նմա, որ ոչ տրտմի։ Եւ ասէ ցնա Տէր. Առաքեա՛ զնա յագարակն Յագրիպպա(յ)ի, և ի հովանի լերինն ես ծածկեմ զնա, մինչեւ դարձուցանեմ զժողովուրդն ի քաղաքս։ Եւ ասէ Տէր ցԵրեմիա. Գնա՛ դու զհետ ժողովրդեանն ի Բաբելոն. կա՛ց առ նոսա և աւետարանեա՛ նոցա, մինչեւ դարձուցանեմ զնոսա ի քաղաքս, և թո՛ղ ըզԲարուք աստ՝ մինչեւ խօսեցայց ընդ դմա։ Զայս ասաց Տէր և վերացաւ յԵրեմիա(յ)է յերկինս։

Եւ Երեմիա և Բարուք մտին ի սրբութիւնն և առին զսպաս սուրբ պատարագին և ետուն յերկիր, որպէս և խօսեցեալ էր ընդ նոսա Տէր։ Յայնժամ երկիր, եկուլ զսպասն. և նստեալ երկոքեանն լային ի միասին։ Եւ յորժամ եղեւ վաղիւն, առաքեաց Երեմիա առ Աբ-

դամելեք և ասէ․ Ա՛ռ զսակառին և գնա՛ ի գեղն Ցագրիպա ընդ ճանապարհ լերինն և բե՛ր սակաւ մի թուզ հիւանդաց ժողովրդեանն, որք են ծաղկեալ, և ի վերայ գլխոյ քո փառքն Տեառն։ Եւ զայս ասացեալ առաքեաց զնա։

Եւ ի վաղիւն զօրքն քաղդէացոց պատեցին զքաղաքն Երուսաղէմ, և փողեաց հրեշտակն և ասէ․ Մըտէ՛ք ի քաղաքդ ամենայն զօրութեամբք քաղդէացոց, աւասիկ բացեալ են ձեզ դրունք․ մտէ՛ք ժողովուրդք բազումք և գերեցէ՛ք զժողովուրդն։ Եւ Երեմիա առ զբանալիք տաճարին և ել արտաքոյ քաղաքին և ընկէց առաջի արեգականն և ստորասուզեաց, և ասէ․ Քեզ ասեմ երկիր, ա՛ռ զբանալիս տաճարին Աստուծոյ և պահեա՛ զդա մինչեւ յօրն, յորում քննէ զքեզ Տէր վասն դորա։ Եւ երթայր Երեմիա և լայր զհետ ժողովրդեանն, զոր տանէր ի Բաբելոն թագաւորն բաբելացոց։

Եւ Բարուք արկ մոխիր զգլխով իւրով և լայր, և հեծեծելով երթայր և ասէր․ Վասն այսորիկ ապականեցաւ Երուսաղէմ, վասն զմեղս սիրելոյ ժողովրդեանն։ Բայց մի՛ պարծեսցին անօրէնքն և ասասցեն, եթէ յաղթեցաք առնուլ զքաղաքն Աստուծոյ զօրօք մերովք, բայց վասն մեղաց մերոց մատնեաց Աստուած ի ձեռս ձեր։ Այլ Աստուած մեր գթայ ի մեզ և դարձուցանէ զմեզ ի քաղաքս մեր, և դուք կեանս ոչ կրէք։ Երանելի են հարքն մեր Աբրաամ և Սահակ և Յակոբ, որ ելին յերկրէս յայսմանէ և ոչ տեսին զապականութիւն քաղաքիս։ Զայս ասաց Բարուք և ել արտաքոյ քաղաքին լալով, և ասէ, եթէ վասն քո (Երուսաղէմ ելի ?)[1] ի քէն։ Եւ եկաց նստելով ի վերայ գերեզմանի, և հրեշտակք գային և պատմէին նմա զամենայն՝ զոր ինչ Տէր հրամայէր նմա։

Եւ Աբդամելէք մինչդեռ գայր ունելով զթուզն, տապ եղեւ ի վերա(յ) նորա․ և գնաց առ ծառով միով,

1․ Աստ ծանօթս տայ Արարատ, եթէ եղծեալ և դժուարընթեռնլի են այս բառք ի գրչագրին իւրեանց։

զի ի հովանի նորա հանգիցէ սակաւ մի, և խոնարհեցուցեալ զգլուխն ընդ սակառաւն՝ յորում էր թուզն, և ննջեաց։ Եւ կաց անդ ի քուն ամս վաթսուն եւ վեց։ Եւ զկնի այսորիկ զարթեաւ ի քնոյ անտի, և ասէ. Քաղցր ի քուն եղէ սակաւ մի և ծանրացեալ է գլուխ իմ՝ զի ոչ յագեցայ քնով։ Եւ ետես զթուզն, զի կաթէր կաթնն և ասէ. Կամիմ սակաւ մի ննջել, բայց երկնչիմ, եթէ ննջեմ՝ և յամեմ զգնալն, և աշխատի ինձ Երեմիա հայրն իմ։ Եւ եթէ ոչ երկարեաց[1] այսր իրացս, ոչ յուղարկէր զիս. բայց յառնեմ երթամ յայս խորշակէս, և ոչ արգելու զիս խորշակ աւուրս և ոչ դատումնս։

Եւ յարուցեալ առ զսակառին թզովն և եդ յուս իւր և եմուտ յԵրուսաղէմ. և ոչ ճանաչէր զնա և ոչ ըզտուն իւր և ոչ զտեղի իւր. այլ և ի յազգէ իւրմէ ոչ զոք եգիտ։ Եւ ասէ. Օրհնեալ է Տէր, մեծ զարմանք գայ ինձ այսօր. չէ այս քաղաքն, մոլորեալ եմ, զլեռինն ճանապարհաւն եկի և եթէ՝ էի դեռ եւս քնով և ծանր գլուխ իմ, և չէի յագեալ քնով, վասն այսորիկ մոլորեցայ ի ճանապարհէն և զիա՞րդ իշխեցից ասել առաջի Երեմիա(յ)ի թէ մոլորեալ էի։ Եւ ելեալ ի քաղաքէն, և պշուցեալ հայէր ընդդէմ քաղաքին՝ զի տեսցէ նշան ինչ, և ասէ. Այս ոչ է քաղաքն և ես մոլորեալ եմ։ Եւ կրկնեալ անդրէն եմուտ ի քաղաքն, և յուզէր յազգականաց իւրոց և ոչ զոք գտանէր։ Եւ ասէ. Օրհնեալ է Աստուած, մեծ զարհուրումն գայ ինձ։ Եւ ել արտաքոյ քաղաքին և ասէ. Նշանս քաղաքին է։ Եւ կայր տրտում և ոչ գիտէր եթէ ընդ ո՛ր երթիցէ։ Եւ եդ զսակառին ի վայր, և ասէ. Նստեմ աստ՝ մինչեւ վերանայ այս զարհուրումն յինէն։

Եւ մինչդեռ նստէր, ետես զոմն ծեր, զի գայր յագարակէ. և ասէ Աբդամելէք. Քեզ ասեմ ծեր, ո՞ր է քաղաքս այս։ Եւ ասէ ծերն. Երուսաղէմ։ Եւ ասէ

1. Գուցէ մարթ էր ընթեռնուլ՝ ուր եր չոր չէր, և կամ լաւ ևս՝ ուր եւ չոր եր։

ցնա Աբդամելէք. Ո՞ւր է Երեմիա քահանայ այն, և Բարուք ընթերցողն և ամենայն ժողովուրդ քաղաքիս այսորիկ, զի ոչ գտի ոք ի նոցանէ։ Եւ ասէ ծերն ցԱբդամելէք. Զե՞ս դու ի քաղաքէս, որ այսօր յիշես զԵրեմիա և հարցանես վասն նորա զկնի այսչափ տարեաց։ Երեմիա է ի Բաբելոն զհետ ժողովրդեանն, զոր գերեաց Նաբուքոդոնոսոր թագաւորն. արդ առ նոցա է և աւետարանէ նոցա և ուսուցանէ նոցա զբանն Աստուծոյ։

Յորժամ լսեաց զայս Աբդամելէք ի ծերոյն, ասէ. Եթէ չէիր ծեր՝ և չէ պարտ անարգել զմարդ Աստուծոյ՝ մեծ ծաղր արարեալ էի զքեզ վասն այսր, զի ասացեր՝ եթէ Երեմիա զհետ ժողովրդեանն ի Բաբելոն է. եթէ սահանք յերկնից անկանէր ի վերայ քաղաքիս, ոչ կարէր զնոսա ի գերութիւն տանել ի Բաբելոն, և զի՞րդ ասես դու, եթէ գերեցաւ ժողովուրդն ի Բաբելոն։ Քանզի պահ մի է զի առաքեաց զիս հայրն Երեմիա յագարակն Ագրիպա վասն սակաւ մի թզոյ, զոր տանք հիւանդաց ժողովրդեանն. զոր գնացի, և ի բերելն՝ վասն խորշակին՝ նստայ առ ծառաշուքն, զի սակաւ մի հանգեայց, և խոնարհեցուցի զգլուխ իմ ի վերայ սակառոյն, յոր թուզն էր։ Եւ այսպէս կարծեմ, եթէ սակաւ մի եմ յամեալ, և դեռ եւս կաթն թզոյն իջանէր, զիարդ և որպէս ի քաղելն իմ։ Եւ դու զի՞րդ ասես, եթէ ժողովուրդն ի Բաբելոն ի գերութեան է։ Ա՛ռ և տե՛ս զթուզդ, զի դեռ եւս կաթամ(բ)ն կաթնն իջանէ. և եցոյց զսակառին թզոյն՝ ծերոյն։

Եւ ետես ծերն, որ դեռ եւս իջանէր կաթնն, և ասէ ծերն. Որդեակ, արդար մարդոյ ուրեմն որդի եղեալ ես, և չկամեցաւ Աստուած որ տեսանէիր զաւերումն այսորիկ, և վասն այսորիկ եբեր զայդ զարհուրումն ի վերայ քո։ Ահաւասիկ վաթսուն և վեց ամ է, մինչ է ժողովուրդն ի գերութեան ի Բաբելոն. և գիտա՛ որդեա՛կ որ ստոյգ է այս՝ որ ասեմս քեզ։ Դարձի՛ր յագարակն և նայեա և տե՛ս՝ զի ոչ իսկ է ժամանակ թզոյ, և տե՛ս զթզենին, որ չեն նոցա ժամա-

նակ պտղոյ և գիտասցես։ Յայնժամ գոչեաց Աբդա֊
մելէք ձայնիւ մեծաւ և ասէ. Օրհնեմք զքեզ Աստուած
երկնի և երկրի, որ հանգիստ ես ոգւոց արդարոց յա֊
մենայն տեղիս։ Յայնժամ ասէ ցծերն. Ո՞ր ամիս է
այս։ Ասէ ծերն. Նիսան, որ է առաջին։ Եւ ա՛ռ ի թզ֊
զոյն և ետ ծերոյն, և ասէ ցնա. Աստուած լուսա֊
ւորեսցէ զքեզ ի վերինն Երուսաղէմ։

Եւ զկնի այսորիկ ել Աբդամելէք յարտաքս քաղա֊
քին և աղօթս մատուցանէր առ Տէր։ Եւ եկն հրեշ֊
տակ Տեառն և բուռն եհար զաջոյ ձեռանէ նորա և
եդ յայն տեղին՝ ուր Բարուք նստէր ի վերայ գերեզ֊
մանին։ Եւ յորժամ տեսին զմիմեանս, լացին ի միա֊
սին և համբուրեցին զմիմեանս։ Եւ նայեցեալ Բա֊
րուք աչօք իւրովք և տեսեալ զթուզն ծաղկեալ ի սա֊
կառին Աբիմելէքի, և համբարձեալ զաչս իւր յեր֊
կինս՝ ասէ. Դու ես Աստուած, որ շնորհես և հատու֊
ցանես վարձս սիրելեաց քոց. պատրաստ լեր սիրտ
իմ և ցնծա և ուրախ լե՛ր ի տեղւոջ քո և ասա՛ մար֊
մնական տան քո, եթէ դարձաւ տրտմութիւն քո յու֊
րախութիւն ի գալ հզօրին և առնուլ ի բնակութենէ
քումմէ. զի ոչ ելեալ[1] առ քեզ մեղք։ Ե՛լ ի բնակու֊
թենէ քումմէ և կուսական հաւատից քոց, և հաւատա՛
և կեցցես։ Եւ նայեա՛ ի սակառիս յայս թզոյ. ահա֊
ւասիկ վաթսուներորդ ամ է կացեալ և ոչ թարշա֊
մեալ և ոչ նեխեալ, այլ կաթն իջանէ ի սմանէ. այս֊
պէս լինի մարմին քո, եթէ առնես զհրամանս հրեշ֊
տակին արդարութեան, որ պահեաց զսակառի թզոյս
և դարձեալ պահեաց զքեզ զօրութեամբ իւրով։

Եւ ասէ ցնա Աբդամելէք. Արի՛ք կացցուք յաղօթս, որ
ծանուցանէ մեզ Տէր, թէ որպէս առնեմք ազդ զաւե֊
տիսս զայս ի Բաբելոն առ Երեմիա, թէ ո՛րպէս ծած֊
կեաց զքեզ Տէր և զիս ի ճանապարհին։ Եւ յաղօթս
կացին Բարուք և Աբդամելէք և ասեն. Զօրութիւն
իմ, Տէ՛ր Աստուած, ընտրեալ լոյս որ ելանէ ի բե֊
րանոյ քումմէ. աղաչեմք և խնդրեմք ի քաղցրաբարու֊

1. Գուցէ ուղիղ եւս իցէ ընթեռնուլ՝ ե լեալ։

թենէդ քումմէ և ի մեծ անուանէ քումմէ, զոր ոչ ոք կարէ գիտել. լո՛ւր ձայնից մերոց և տո՛ւր իմաստութիւն սրտից մերոց, եթէ ո՛րպէս առնեմք և կամ ո՛րպէս առաքեմք ի Բաբելոն յԵրեմիա զաւետիսս զայս:

Եւ մինչդեռ կայր Բարուք յաղօթս և ասէր զամենայն բանս զայս, խորհրդակիցն լուսոյ հոգաց՝ թէ ո՛րպէս կամ զիա՛րդ առաքեն յԵրեմիա: Եւ ասէ ցնոսա. Գայ առ ձեզ ի պահ լուսանալոյն արծուի մի. զնա գտանէք և տանի զաւետիսդ զայդ յԵրեմիա: Եւ գրե՛ թուղթ և ասացէ՛ք որդւոցն Իսրայելի, եթէ օտարք, որ ի ձեզ են, բաժանեցէք ի ձէնջ, զի զկնի յիսունեւհինգ աւուր արկանեմ զձեզ ի քաղաքս ձեր, ասէ Տէր, և որ ոչ բաժանին ի բաբելացոցն, ոչ մտանէ ի քաղաքս: Եւ պատուիրե՛ նոցա, որ ոչ խառնակին ընդ բաբելացիսն, ասէ Տէր: Եւ զայս ասաց հրեշտակն ցԲարուք, և գնաց ի նմանէ:

Եւ առաքեաց ի սփիւռս հեթանոսաց և ետ բերել թուղթ և գրեաց զայս Բարուք ծառայն Աստուծոյ առ Երեմիա, որ ի գերութիւն գնաց ի Բաբելոն. Կամօք Տեառն ուրախ լե՛ր և ցնծա՛, զի Աստուած ոչ բաժանեաց զմեզ ի յիմաստնոց մերոց. տրտմեալ էաք վասն քաղաքին, որ աւերեալ և անարգեալ էր, վասն այսորիկ գթացաւ Տէր ի մեզ և յարտասուս մեր, և յիշեաց զուխտ իւր՝ որ ընդ հարսն մեր եդեալ էր, ընդ Աբրահամու և Սահակայ և Յակովբայ: Առաքեաց յիս զհրեշտակ իւր և պատմեաց ինձ զբանս զայս, զոր առաքեցի առ քեզ: Նա է Տէր Աստուած Իսրայելի, այն որ եհան զմեզ յԵգիպտոսէ ի մեծ հրոյն, ասէ. Զի ոչ պահեցէք զարդարութիւնս իմ և բարձրացան սիրտք ձեր և խստերախ եղերուք առաջի իմ, և բարկութեամբ և սրտմտութեամբ մատնեցի զձեզ ի հուրն Բաբելոնի: Եթէ լսիցէք ձայնի իմում, ասէ Տէր, զոր խօսի բերան Երեմիա ծառայի իմոյ. որ լսէ, հանեմ զնա ի Բաբելոնէ, և որ ոչն լսէ, օտարացուցանեմ զնա յԵրուսաղէմէ. և փորձեմ այս֊

պէս ջրովն Յորդանանու զայնոսիկ որ ոչ լսեն ։ Յայտ առնէ այս նշան մեծ կնքոյ ։

Եւ յարեաւ Բարուք ի գերեզմանէն և եգիտ արծուի մի նստեալ արտաքոյ գերեզմանին ։ Պատասխանի ետ նմա արծիւն մարդոյ ձայնիւ և ասէ . Ուրախ լե՛ր, Բարուք, հաստատի՛չ հաւատոյ ։ Ասէ ցնա Բարուք . Դու միայն ես խօսող յամենայն թռչունս երկնից՝ յաչացդ պայծառութենէն երեւիս . ասա՛ ինձ, եթէ զի՞նչ առնէիր աստ ։ Ասէ ցնա արծուին . Տէր առաքեաց զիս, զի զաւետիսդ տարայց ի Բաբելոն ։ Ասէ ցնա Բարուք . Եւ կարե՞ս դու զաւետիսս զայս տանել ի Բաբելոն առ Երեմիա ։ Ասէ ցնա արծուին . Վասն այդորիկ առաքեցայ ։

Եւ առ Բարուք զթուղթն և հնգետասան թուզ ի սակառոյն Աբդամելէքի և կապեաց ի պարանոց արծուին ։ Եւ ասէ . Քեզ ասեմ, որ թագաւորդ ես թռչնոց, գնա՛ խաղաղութեամբ և ողջ, և տար զաւետիսդ և դարձի՛ր առ իս . և մի՛ նմանիր ագռաւուն, որ առաքեցաւ ի Նոյէ և ոչ դարձաւ առ նա ի տապանն . այլ նմանեա՛ աղաւնոյն, որ երիցս անգամ աւետիս եբեր արդարոյն . Նոյնպէս և դու տա՛ր զբարի զաւետիսդ զայդ Երեմիայի և որ ի կապանս են ընդ նմա, և բարի լինիցի քեզ ։ Եւ տա՛ր զուրախութիւնդ զայդ ժողովրդեանն և ընտրելոցն Աստուծոյ . և եթէ պատեսցեն զքեւ ամենայն ազգք թռչնոց երկնից և կամիցին մարտնչել ընդ քեզ, մարտիր ընդ նոսա, Տէր տայ քեզ զօրութիւն, և մի խոտորիցիս յաջ կամ յահեակ, այլ որպէս զնետ, զի գնայ ուղղորդ, այսպէս և դու գնա զօրութեամբն Աստուծոյ, և ընդ քեզ լինիցին փառքն Տեառն ի ճանապարհդ յոր գնաս ։

Յայնժամ թռեաւ արծիւն, որ ունէր զթուղթն ի պարանոց իւր, և գնաց ի Բաբելոն ։ Եւ գնաց և հանգեաւ ի վերայ սեան միոյ, որ կայր արտաքոյ քաղաքին յանապատն և լռեաց, մինչ գայր Երեմիա և անցանէր առ նա ։ Քանզի ոմանք ի ժողովրդենէն ելեալ էին արտաքոյ թաղել զմեռեալս իւրեանց, զոր խնդրեալ էր Երեմիայ ի թագաւորէն Նաբուգոդոնոսա֊

րայ՝ տեղի թաղելոյ զմեռեալս ժողովրդեան իւրոյ, և տուեալ էր թագաւորին: Եւ մինչդեռ երթային և լային զկնի մեռելոյն, եկին ընդդէմ արծւոյն: Ասէ ձայնիւ մեծաւ արծուին. Քեզ ասեմ Երեմիա՛, ընտրեալդ Աստուծոյ, գնա՛ և ժողովեա զժողովուրդդ քո և եկ այսր և ընթերցի՛ր զթուղթս, զոր բերի քեզ ի Բարուքայ և յԱբդամելեքայ:

Զայս իբրև լուաւ Երեմիա, փառս ետ Աստուծոյ գնաց ժողովեաց զժողովուրդն և զկանայսն և մանկունսն և եկն ուր էր արծուին: Եւ նստաւ արծիւն ի վերայ մեռելոյն և կենդանացաւ մեռեալն: Եւ այս եղև վասն այնր, զի հաւատասցեն: Զարմացաւ ամենայն ժողովուրդն վասն նշանին որ եղև և ասեն. Նա է Աստուած հարցն մերոց, որ յանապատի երեւեցաւ ի ձեռն Մովսիսի և արդ երևեցաւ մեզ: Եւ ասէ արծուին. Քեզ ասեմ Երեմիա, ե՛կ լոյծ զթուղթս զայս և ընթերցիր յականջս ժողովրդեանդ: Եւ արձակեաց զթուղթն և ընթերցաւ ժողովրդեանն, և լըւաւ ամենայն ժողովուրդն և լացին: Եւ առին մոխիր և արկին ի վերայ գլխոց իւրեանց, և ասեն ցԵրեմիա. Կեցո՛ զմեզ և պատմեա մեզ զիա՛րդ կարեմք առնել, կամ զիա՞րդ մտանել ի քաղաքն մեր:

Գրեաց Երեմիա ի Բարուք և յԱբդամելեք առաջի ամենայն ժողովրդեանն զտրտմութիւնն, զոր լեալ էր նոցա, թէ որպէս առեալ էր զնոսա թագաւորին Բաբելացոց, կամ որպէս տեսանէր ամենայն ոք զհայր իւր ի տանջանս, կամ որպէս տեսանէին զհարս իւրեանց և մխիթարէին. և հարքն տեսանէին զորդիս իւրեանց ի տանջանս և ծածկէին զերեսս իւրեանց. և Աստուած ծածկեաց զձեզ և ոչ տեսիք զտանջանս մեր: Եւ յիշէի և հեծէի և դառնայի ի տուն իմ և երկնէր սիրտ իմ: Եւ արդ աղաչեա ի տեղւոջդ յորում ես դու և Աբդամելեք՝ վասն ժողովրդեանս, որ լսելի լինին աղաչանք մեր առաջի Տեառն և ելանեմք աստի: Ասեմք ձեզ, և զայս ժամանակս՝ զոր առնեմք աստ՝ նեղեն զմեզ և ասեն, թէ օրհնեցէք զմեզ յօրհնութեանցն Սիոնի: Ասեմք մեք ցնոսա. Զիա՞րդ զի-

տեմք օրհնել զօրհնութիւնս Տեառն յերկիր օտար։

Եւ զկնի այսորիկ կապեաց զԹուղթն ի պարանոց արծուոյն Երեմիա և ասէ. Երթ ի խաղաղութիւն, հագասցէ զմեզ և զձեզ Տէր։ Եւ թռաւ արծուին և եկն յԵրուսաղէմ և ետ զԹուղթն ի Բարուք, և կարդաց և համբուրեաց զԹուղթն, վասն որոյ լսեաց զտրտմութիւն ժողովրդեանն։ Եւ առ Երեմիա զԹուղթն[1] և ետ հիւանդաց ժողովրդեանն. և ուսուցանէր զնոսա ի բաց կալ ի միաբանութենէ ազգին Բաբելացւոց։

Եւ եկն օր, յորում եհան Տէր զժողովուրդն ի Բաբելոնէ։ Խօսեցաւ Աստուած ընդ Երեմիայի և ասէ. Արի՛ դու և ժողովուրդն, եկէք ի Յորդանան և ասա ցժողովուրդն, թէ ո՞ր կամի թողուլ զգործս Բաբելացւոց. և արքն, որ առեալ էին ի նոցանէ կանայս, և կանայքն, որ առեալ էին ի նոցանէ արս, և լսեն քեզ և անցանեն ընդ Յորդանան՝ տա՛ր զնոսա յԵրուսաղէմ. և որ ոչ լսեն քեզ և ոչ անցանեն ընդ Յորդանան, մի՛ տանիր զնոսա։ Եւ Երեմիա խօսեցաւ զբանս ընդ ժողովրդեան. և յարեան եկին ի Յորդանան անցանել։ Եւ ասէր Երեմիա զբանն Տեառն ընդ նոսա։ Եւ ոմանք ի նոցանէ, որ առեալ էին զկանայսն, ոչ կամեցան լսել Երեմիայի, այլ ասեն ցնա. Ոչ թողումք զկանայս մեր յաւիտեան, այլ դառնամք ընդ նոսա ի Բաբելոն։ Եւ անցին ընդ Յորդանան և եկին յԵրուսաղէմ։

Եւ կաց Երեմիա և Բարուք և Աբդամելէք ի մէջ նոցա և ասէ, թէ՝ Ամենայն մարդ, որ հաղորդակից լեալ իցէ Բաբելացւոցն, ոչ մտանէ ի քաղաքս։ Եւ ասեն ոմանք ի ժողովրդենէ անտի. Եկա՛յք որ դառնամք ի տեղի մեր ի Բաբելոն, և գնացին։ Եւ ընդ դառնալն նոցա ի Բաբելոն, ելին Բաբելացիքն ընդդէմ նոցա և ասեն. Ո՛չ մտանէք ի Բաբելոն ի քաղաքս մեր. քանզի ատեցիք զմեզ և գաղտութեամբ ելիք ի մէնջ, վասն այդ ոչ բնակիք ընդ մեզ։ Երդուեալ երդուեալ է մեր իրերաց յանուն աստուածոց մերոց՝ ոչ

1. Անշուշտ վրիպակաւ եդեալ՝ փոխանակ զԲարուքն։

զձեզ և ոչ զզաւակ ձեր թողումք ի քաղաքս մեր, քանզի գաղտապէս ելիք ի մէնջ։ Յայնժամ դարձան և եկին ի տեղի մի յանապատ, հեռի յԵրուսաղէմէ, շինեցին իւրեանց քաղաք և անուանեցին զանուն նորա Սամարիա։ Եւ առաքեաց առ նոսա Երեմիա և ասէ. Զղջացարուք, զի գալոց է հրեշտակն արդարութեան և արկանէ զձեզ ի տեղին ձեր բարձր. և ոչ լսեցին նմա։

Կայր Երեմիա և մատուցանէր զպատարագս ժողովրդեանն զինն օր. և եղեւ ի տասներորդում աւուրն և մատոյց Երեմիա միայն պատարագ և աղօթս։ Եւ մինչդեռ մատուցանէր՝ համբարձաւ ասելով. Սուրբ, սուրբ, սուրբ, խունկս ի ծառոց կենդանի, լոյս ճշմարիտ, որ լուսաւորեսցես զիս, մինչեւ համբառնամ առ քեզ. վասն ողորմութեան քո՝ աղաչեմ զքեզ, վասն քաղցրաբարբառ սուրբ սրովբէիցն և կարդամ առ Միքայէլ հրեշտակապետն արդարութեան, մինչեւ արկանէ զիս ի տեղի արդարոցն։ Աղաչեմ զքեզ, Տէ՛ր արդարութեան, ամենակալ ամենայն արարածոց, որ անեղդ ես և անիմանալի, որ ամենայն դատաստան առ քեզ ծածուկ է, և յառաջ քան զամենեսեան եղեալ էիր։

Զայս ասաց Երեմիա մինչդեռ կանգնեալ էր ի խորանին ընդ Բարուքայ և ընդ Աբիմելեքի։ Եւ նոքա լային և գոչէին մեծաձայն և ասէին. Հայրն Երեմիա, քահանայ, այրն Աստուծոյ, եթող զմեզ և գնաց։ Լսեցին ամենայն ժողովուրդքն զլալն նոցա և դիմեցին ի նոսա ամենեքեան, և տեսին զԵրեմիա՝ զի անկեալ դնէր իբրեւ զմեռեալ։ Եւ պատառեցին զհանդերձն իւրեանց և արկին մոխիր զգլխով իւրեանց և լացին լաց դառնապէս։ Եւ զկնի այսորիկ պատրաստեցան առ ի թաղել զնա։ Եւ մինչդեռ անկեալ կայր իբրեւ զմի ի մեռելոց, ի մօտ եկին Բարուք և Աբդամելէք, և ահա եկն ձայն և ասէ. Մի՛ թաղէք, զի դեռ կենդանի է և հոգի ի մարմինդ իւր դառնայ։ Եւ լսեցին և ոչ թաղեցին զնա, այլ կային շուրջ ըզ-

մարմնով նորա զերիս աւուրս և մնային թէ յորում աւուր յառնէ ։

Եւ զկնի երեք աւուր դարձաւ ոգի նորա ի մարմին իւր, և արձակեաց ձայն մեծ ի մէջ ամենեցուն և ասէ. Փառս տուք Աստուծոյ և որդւոյ նորա, որ յարոյց զիս Յիսուսի Քրիստոսի. որ է լոյս յաւիտենական, ամենեցուն անանց ճրագն, կնիք հաւատոյ. և զկնի այսր ամաց, այլ եւս երեքհարիւր եօթանասուն և հինգ ամ և գայ երկիր՝ որ է ծառ կենաց բուսեալ ի մէջ դրախտին և առնէ զամենայն ծառ անպտուղ պտղաբեր, աճին և ծաղկին. և ծաղկեալքն՝ որ ամբարձեալ էին, ասեն՝ եթէ տուաք զծայրս մեր մինչև յամբս. չորացուցանէ զնոսա, իւրեանց բարձրացեալ ոստօքն՝ խոնարհեցուցանէ զոսսա, ծառն հաստատուն, և զորդանն՝ որպէս ասր սպիտակացուցանէ, և զձիւնն թխացուցանէ, և զքաղցր ջուրսն՝ աղ խառնէ մեծ լուսաւորութեամբն Աստուծոյ ։ Օրհնէ զկղզիս և առնէ զնոսա պտղաբերս բանիւ բերանոյ Աստուծոյ Օծելոյն, որ նա ինքն մտանէ և ելանէ ընդ իւր երկոտասան առաքելոյն, որ աւետարանեն ընդ ամենայն հեթանոսս, զոր՝ տեսեալ և կազմեալ ի հօրէ իւրմէ՝ գայ ի լեառն Ձիթենեաց և յագեցուցանէ զքաղցեալ անձինս ։

Զայս մինչդեռ ասէր Երեմիա վասն Քրիստոսի. թէ գայցէ յաշխարհս, բարկացան ամենայն ժողովուրդքն և ասեն. Այս այն բանք են, զոր ասաց Եսայի, որդի Ամովսայ, եթէ՝ Տեսի զԱստուած և զորդի նորա. եկա՛յք ոչ սպանանեմք զսա մահուամբ նորա, (այլ) քարկոծ առնեմք զսա ։ Եւ տրտմեցան Բարուք և Աբդամելեք, զի կամէին լսել զխորհուրդս, զոր տեսեալ էր Երեմիա ։

Յայնժամ ասէ Երեմիա ցԱբդամելեք և ցԲարուք. Լռեցէ՛ք, մի՛ լայք, զի ոչ մեռանիմ, այլ զոր տեսանեմ՝ պատմեմ ձեզ. և ասէ. Բերէ՛ք այսր քար մի և կանգնեցէք ։ Եւ ասէ. Լո՛յս յաւիտենական, հրամայեա՛ քարիս այսմ լինել նման պատկերի իմում, մինչ զոր տե-

սեալ եմ զխորհուրդն պատմեմ Բարուքայ և Աբդա-մելէքայ։

Յայնժամ քարն հրամանաւն Աստուծոյ առ զկեր-պարանս Երեմիայի, և նոքա քարկոծ առնէին կարծե-լով Երեմիա է։ Եւ Երեմիա աւարտեաց զխորհուրդն, զոր տեսեալ էր, Բարուքայ և Աբդամելէքայ։ Եւ զկնի այսորիկ եկաց ի մէջ ժողովրդեանն՝ կամէր կատարել զկամս նոցա։ Յայնժամ գոչեաց քարն և ասէ. Ո՛վ մսրոաք, որդիք Իսրայելի, զիս քարկոծ առնէք և հա-մարէք եթէ Երեմիա եմ. ահա՛ Երեմիա կանգնեալ կայ ի միջի ձերում։ Եւ յորժամ տեսին զնա, ըն-թացան ի վերայ նորա բազում քարիւ, և կատարե-ցաւ կամքն նոցա։ Եւ եկին Բարուք և Աբդամելէք և թաղեցին զնա, և առին զքարն և եդին ի վերայ գերեզմանին և գրեցին ի վերայ. Սա է օրինակն Երեմիայի։

Եւ զայլ խօսքն Երեմիայի և զզօրութիւն մնացոր-դաց բանիս՝ չէ գրեալ ի թղթի Բարուքայ։ Քրիստո-սի փառք յաւիտեանս. ամէն։



Enoch's vision.

## ԺԶ

# ՏԵՍԻԼ ԵՆՈՎՔԱՅ ԱՐԴԱՐՈՅՆ[1]



ԵՐԵՒԵՑԱՒ ինձ այր մի յանդիման Լիբանան լերինն ի վեցերորդ ժամու աւուրն և տեսի նորա ի բոց հրոյ, և ասէ ցիս. Ի միտ առ, այր դու, զոր պատմեմ քեզ, զոր ինչ լուայ ի Տեառնէ զօրութեանց։ Եւ ես կացի զգիշերն ամենայն դէմ յանդիման լերինն յարևելից կողմանէ և երեաք իմ ի ծովն արևմտից յանդիման քրովբէին։

Եւ ահա ի վերայ ծովուն արծուի մի սոս և բարձրաթռիչ, ութ թևք և երեք գլուխք ի վերայ նորա, և կայր ի վերայ ջուրց ծովուն և դիտէր ընդ հարաւ. և ծովն փրփրայր ի հողմոյն հարաւոյ և կուտակէր զալիսն ընկղմել զարծուին, և բախէին ալիքն զթևս նորա և ձայն ալեացն իբրև զձայն երիվարաց՝ անցելոց ի կողմ ա-

1. Թէպէտ առ ի լնուլ զպակաս հատորոյս հրատարակեցաւ Տեսիլս յԷջմիածին (տես Արարատ, 1894, դեկտ.), բայց ի խնդրելս մերում զներողամտութիւն ընդ յամել ի տիպ հատորոյս՝ յըղձակաթ բանասիրաց, բուռն է մեզ ծանօթս տալ միանգամայն, զի հազիւ ուրեմն յետ ամի միոյ (ի դեկտ. 1895) ստացաք զսա յազնուամիտ Տեսչութենէ խմբագրութեան Արարատի, բազում խնդրանօք և ընդ երկար ժամով. ընդ որ իսկ զուցէ արժան է գոհանալ։ — Որպէս տեսցի՝ ուրեք ուրեք հարկեցաք նշանակել փակագծիւ զերկբայական՝ մերթ և զյայտնի վրիպակ ընթերցուածս։

րեւելից հիւսիսոյ։ Եւ ահա գլուխ վիշապի և աչք նորա ինն, ոտք նորա իբրեւ զմագիլս առիւծու և վազք նորա իբրեւ ընձու։ Եւ հասանէր արծուոյն ի մէջ հողմոյն և ալեացն և ածէր զթերան իւր ի կլանել զնա. ճչէր արծուին առ բարձրեալն և ոչ լինէր լսելի աղաղակ նորա՝ վասն ուրոյ(ա՞յն) բռնութեան իւրոյ։ Դարձուցանէր արծուին զերեսս իւր ի փախուստ ի վերջին հիւսիսոյ և ոչ լինէր նմա հանգիստ անդ։ Եւ վիշապն կլանէր զազգս ամենայն և կիզոյր որպէս հրով և ոչ ինչ գտանէր յորովայնի նորա և տիրէր ի վերայ երկրի վեշտասանից և վեց, որ լինի իննսուն և վեց[1] ամ. և ի կատարածի ժամանակի նորա՝ եղեւ դարձ արծուոյն ի նոյն տեղի սաստիկ զօրութեամբ ընդդէմ վիշապին ի հարաւային հողմոյն։ Եւ կայր գլուխ վիշապին ի վերայ մոխրակոյտ հողոյ, և կայր արծուին ի վերայ կառաց ճարմակ ձիոց, և հասանէր առ վիշապն ի վերայ լերին մոխրակուտին. և հարկանէր զվիշապն սաստկութեամբ, և ոչ գտանէր զօրութիւն վիշապին իբրեւ զառաջինն, և հոսէր զգլուխ վիշապին ընդ ազգս ամենայն. և իջանէին ձիքն ճարմակքն ի մոխրակոյտն և հոսէին զնա. և ելանէր փոշին և ցանէր ընդ երկինս և ոչ էր լուսաւորութիւն ի վերայ երկրի, այլ աղջամուղջ եւ մէգ անհնարին։ Եւ արք վեց նստէին յաթոռս իւրաքանչիւր, երեքն զագրաւեսիկք և սեւք և երկուքն սպիտակք և գեղեցիկք և վեցերորդն նեղեալ և սգաւորեալ և [illegible]–(տխ)րեալ ի վերայ կանանց և որդւոց իւրոց, և ամենեքին երկուացեալք ի վիշապէն՝ որ կայր ի մոխրակուտին, և ասէին. Հուր ելանէ ի վիշապէդ և այրէ զերկիր։

Եւ յետ այսորիկ աղաղակեաց քրոմբէն և ասէ ցիս. Այր դու, առե՞ր ի միտ զտեսիլդ։ Եւ ասեմ, ոչ. և ասէ ցիս. Արի՛ և լուր, և պատմեցից քեզ (զխորհուրդս) ամենայնի այդորիկ։

Արծուին տեսանէիր նորաթռիչ, որոյ էին թեւք ութ և գլուխք երեք. նա է թագաւորն Հռոմոց և Յու-

1. 6×16=96։

նաց. և զի կայր ի վերայ ծովուն, կացցէ նա թագաւոր սաստիկ իբրև զերկաթ. և որպէս վանէ արծուի զամենայն թռչունս և հարեալ ընկենու յերկիր. նոյնպէս թագաւորն Հռոմայեցւոց սպառեսցէ զամենայն թագաւորութիւնս երկրի և որսա(յ) վարմօք զօրութեամբ բարձրելոյն որպէս զթռչունս երկնից, և ոչ ոք իցէ որ կարիցէ ընդդէմ կալ նմա: Եւ զի դիտէր ընդ հարաւ, առաւել զօրասցի ի վերայ Հարաւային ազգին. և զի ծփայր ծովն վասն սաստիկ զօրութեամբ հողմոյն, և զի բախէին ալիքն զթևս արծւոյն առ ի ընկղմել զնա. ի ժամանակս յետինս յաւուրս թագաւորացն այնոցիկ յետ հարիւր և ութ յոբելինին, յարիցէ ազգն յետին հարաւու՝ որդիքն Իսմայելի բնակեալքն ի ծովեզերին Արաբեա(յ). յարիցեն նոքա ի վերայ երկրի և կալցին զնա, և մարտիցեն առ աւին ծովուն՝ լուծանել զիշխանութիւնն Հռոմայեցւոց և ոչ կարիցեն՝ զի տեղապահ մեծի արքային է. զի թէպէտ և լինի ի վերայ նորա յարուցմունք պատերազմաց և ալէկոծութիւնք չարեաց՝ ընկղմել զնա ոչ կարեն, այլ խափանեալ փոխանորդէ զնա թագաւորութիւնք անմահ. բայց նուազեալ է վասն յանդիմանութեան մեղաց իւրոց և վասն լնլոյ մեղաց Հարաւային ազգին: Եւ ձայն ալեացն իբրև ըզձայն երիվարաց արշաւելոց ի կողմանս արեւելից հիւսիսոյ և արեւմտից. քանզի վանեսցեն զմեծութիւնս ազգաց և մաշեսցեն որպէս հող երկրի և ոչ գոյ ուրախութիւն ի վերայ երկրի, այլ ձայն լալոյ և աղաղակի և խռովութեան. և զի բախէին ալիքն զթևս արծւոյն, հարցեն և վանեսցեն ազգն Իսմայելի զզօրս Հռոմայեցւոց և հիւսիսոյ, այլ ոչ կարիցեն բառնալ ի միջոյ: Եւ գլուխ վիշապին զի կայր ի վերայ մոխրակուտին, ի մէջ ալեացն և հողմոյն, աչք նորա ինն, որ ոտք իւր իբրև զմագիլս առիւծու և վագր իւր իբրև զընձու. նա ինքն է առաջին իշխանն ի վերայ ազգին Իսմայելի և զօրութիւն նորա իբրև զալիս ծովու յարուցեալ ի վերայ երկրի: Եւ ինն աչքն և ոտքն իբրև զառիւծու. ինն թագաւորք յարիցեն յետ նո֊

րա և կալցեն զերկիր և բեկցեն զնա որպէս զորս առիւծուն: Եւ զի հասանէր ի մէջ հողմոյն և ալեացն արծւոյն և ածէր զբերան իւր առ ի կլանել զնա. յարիցէ ի վերայ Թագաւորին Հռոմայեցւոց, նեղիցէ զնա և առցէ զօրութիւն: Եւ զի ճչէր արծւին առ բարձրեալն և ոչ լինէր լսելի. զի դարձաւ Աստուած ի նմանէ վասն անօրէնութեան նորա, և ոչ կարասցէ կալ ընդդէմ վիշապին. այլ եղիցի սիրտ նորա լքեալ և խորտակեալ յահէ երկիւղի, և առցէ զիշխանութիւն նորա ծառայ նորա, որ ունի զանուն գազանի, և կործանեսցէ զզօրութիւն նորա, և նա զերծեալ փախիցէ ի վերջին հիւսիսոյ . . . . և արասցէ անդ դաշն խնամութեան ընդ իշխանին հիւսիսոյ և անու(ն) Թագաւորին Բերջեա:

Եւ զի կլանէր վիշապն զազգս ամենայն և կիզոյր որպէս հրով և ոչ գտանէր յորովայնի նորա. յայնմ ժամանակի առաւել բորբոքեսցի սրտմտութիւն հարաւային ազգին ի վերայ երկրի. որպէս ոտէ(ուտէ՞) հուր զամենայն նիւթ և մղեղեալ վանէ և ոչ գոյ յագումն ի նա. նոյնպէս և նա նեղեալ ընչասիրութեամբ ոչ լցցի, այլ ապականեսցէ զերկիր սրով և հրով և գերութեամբ. մինչեւ ի կատարել մեղաց և լնուլ անօրէնութեան իւրեանց՝ են ամք իննսուն և վեց: Ապա եղեւ դարձ արծւոյն ի հիւսիսոյ՝ գալ ունել զնոյն տեղի սաստիկ զօրութեամբ ընդդէմ վիշապին, հրամանաւ բարձրելոյն. որք և յարեան ի վերայ նորա՝ սատակեսցեն յերեսաց նորա. և զի կայր գլուխ վիշապին ի վերայ մոխրակոյտ հողոյն. քանզի սնոտի է զօրութիւն նորա և արհամարհեալ է իշխանութիւն նորա, զի յուսացաւ ի մեծութիւն գանձուց և ոչ յԱստուած: Եւ արծւին կայր ի վերայ ճարմակ ձիոց և հասանէր առ վիշապն. եկեսցէ նա ի վերայ իշխանին հարաւոյ սաստիկ զօրութեամբ հիւսիսային ազգաւ և ամենայն ժողովրդովք Մնացորդաց, և հարցէ զնա անհնարին հարուածովք, և ոչ գտցի զօրութիւն ի վիշապն իբրեւ զառաջինն, այլ լքեալ պարտեսցի յերեսաց Թագաւորին հիւսիսոյ, որպէս եղէգն առաջի հրոյ և որպէս

մոխիր հնոցի՝ առաջի հողմոյն հիւսիսոյ։ Եւ զի հոսէր զգլուխ վիշապին ընդ ազգս ամենայն. սրով և հրով և գերութեամբ վատնեաց զնոսա, և ոչ ողորմեցի կանանց և մանկանց նոցա՝ մինչև սատակեալ սպառեցին, և լցցի սրտմտութիւն Տեառն ի նոսա. զի յանխնայ կոտորեաց զժողովուրդն Աստուծոյ, վասն այնորիկ կրկին հասին նմա չարիք իւր. և նեղեսցի նա ի սով և ի ծարաւ և ի մերկութիւն և ոչ(ոչ) գտցէ մխիթարութիւն, և այրեսցի մարմին նորա յարեգականէ՝ և ոչ գտցէ ծածկոյթ մերկութեան, ի բազում կարօտութեան իւրմէ, այլ մորթով խաշանց ծածկեսցէ զմերկութիւն իւր։ Եւ զի իջանէին ձիքն ճարմակք ի մոխրակոյտն և հոսէին զնա և ելանէր փոշին և ցանէր ընդ երկինս. այլ(այն) են զօրքն Հոռոմոց, իբրև զձիս ի կառս զայրագնեալք, հոսեցին զմեծութիւն ազգին հարաւոյ ընդ ամենայն Թացորդս ազգաց, իբրև զմոխիր հնոցի սփռեցին ընդ երկիր։ Եւ զի բարձրացեալ փոշին ցանէր ընդ երկինս. այն է ծուխ անօրէն դառնութեամբ ազգին հարաւոյ, և՝ զի ի ձեռն վրէժխնդրութեան նորա լինելոց է կատարած ամենայն աշխարհի։ Եւ զի ոչ գոյր լուսաւորութիւն ի վերայ երկրի, այլ աղջամուղջ. այն են գործք ամբարշտութեան նոցա, որ արգելուն զողորմութիւն Աստուծոյ յարարածոց, որ լուսաւորէ և մխիթարէ ըղխորտակեալս սրտիւք՝ իբրև զլոյս առաւօտոյ և զցօղ ի վերայ երկրի ի զուարճութիւն բուսոց։

Եւ զի նստէին արք վեց յաթոռ իւրաքանչիւր, երեքն զազիրք և սեւք. նոյն ինքն է ժամանակ ազգին հարաւոյ. երեք տանուտեարք, երեք երեսուն՝ որ լինի իննսուն ամ. և այլ եւս ամք վեց իշխանութեան նորա, որ լինի նեղութիւնք ի վերայ նեղութեանց. անբերութիւնք անդաստանաց, նուազութիւնք աղբերաց. երաշտութիւնք երկրի, անպտղաբերութիւնք տնկոց, գօսումն անտառաց, անկումն մայրից, խամրումն ծաղկանց, բորբոքումն և տոչորումն հրոյ, ցնդումն օդոց, մահ թռչնոց, պակասումն ձկանց, կործանումն անասնոց և երէոց, անբերութիւնք անձրևի և ցյն ցղյման(զեանք եղե-

ման) և կարկտի. մարդկան անծնելութիւն և ամլութիւն և կարճակեցութիւն, և ամենայն իրաց պակասութիւն. քանզի ծերացաւ երկիր ի չարեաց մարդկան և եկաց ի ծննդոց իւրոց. վասն զի ոչ արարին բնակիչք նորա պտուղ կենաց, վասն այսորիկ ոչ յղասցի նա ի զօրութիւն սերմանց իւրոց և ոչ բացցի արգանդ նորա ի բոյսս պտղոց. այլ նեխութիւն և աղտեղութիւն գտցի ի նմա, հրահոսութիւնք երկնիք և ապականութիւնք ի ծովու և ի ցամաքի:

Իսկ յետ անցանելոյ իշխանութեանն հարաւոյ և լնուլ բարկութեան սրտմութեան Տեառն ի նոսա, յետ այնորիկ զի նստէին արք երկու սպիտակք և գեղեցիկք և կարմիրք և բարետեսիլք. այն են, զի յորժամ սպառեսցեն Հռոմայեցիք զազգն հարաւոյ, զառաջին պատերազմն հարցին ի ծովու, և հողմ ի Տեառնէ յարուցեալ՝ ընկղմեսցէ զնոսա. և թագաւորն զօրասցի յԱստուած և նուիրեսցէ Աստուծոյ զյաղթութիւնն և դարձեալ հարցէ զնոսա վեցիցս ի ցամաքի, զմնացեալսն հալածեսցէ յաշխարհ բնակութեան իւրեանց, և զկանայս և զորդիս նոցա գերեսցեն յԵլլադա և ի Սիկիլիա, և արասցէ խաղաղութիւն հրամանաւ բարձրելոյն. և կացցէ ինքն յետ այնորիկ ամս երկոտասան և փոխեսցէ զկեանս իւր խաղաղութեամբ:

Եւ ապա յետ նորա յարիցէ միւս եւս թագաւոր խաղաղական, և անուն նորա Փուլիվ, որ թարգմանի Տիբէր, և տիրեսցէ նա ամս երեսուն և երեք: Այս են երկու տանուտեարքն սպիտակք և գեղեցիկք. զի յաւուրս սոցա եղիցի խաղաղութիւն և լիութիւն, մոռացումն ամենայն չարեաց և նեղութեանց առաջնոց. քաջաբերութիւնք անդաստանաց, լիութիւն պտղոց, կալո(յ) և հնձանի. յայնժամ տացէ երկիր զզօրութիւն իւր յուրախութիւն մարդկան իբրև զառաջինն, անդաստանք յորդեսցին ցորենով և գինով. և տացեն երկինք անձրևս շա(հ)եկանս, և ոչ եղիցի կարկուտ և հրահոսութիւն և ցնդմունք օդոց. այլ արասցէ հատ մի ցորենո(յ)՝ հարիւր հասկ, և տաշտ մի այգոյ՝ հազար ողկոյզ. և եղիցին ի լերինս տունկք ոչնոց(որ-

թոց) քաջուղեղ(-ղէշք) և պտղաւէտք, և պարարտասցին ձիթենիք եօթնպատիկ յուրախութիւն մարդկան. և հանգիցեն մարդիկ և մոռասցին զնեղութիւնս զառաջինս: Յայնժամ երեւեսցի նշանաւոր աստղ, զարեւմտից կողմամբքն ունելով գէսս, որ նշանակէ առաւել խաղաղութիւն զկողմամբքն զայնոքօք լինել. և եղիցի հաւաքումն Հրէից ազգին զՄիջագետօք և զկողմամբքն Պաղեստինա(յ) և քաղաքն Դամասկեա(յ) լքեալ եղիցի ի բնակչաց և հանգրուանք երէոց և գազանաց կացցէ:

Եւ այրն վեցերորդ սգացեալ ի վերայ կանանց և որդոց. նա է կատարած ժամանակի կենաց աշխարհի: Քանզի յետ մահուան խաղաղական թագաւորին, որո(յ) անունն Տիբեր է, յարիցէ թագաւոր ի նաստ ազգէ, և անուն նորա Հրձիք և իշխանութիւն նորա արհամարհեալ, և կալցէ ամս երիս. յայնմ ամի խառնակեսցի թագաւորէն(ութիւնն), ի տասն թագաւորէ(ութիւն) բաժանեսցի: Քանզի յորժամ հարցէ արքայն հիւսիսո(յ) զազգն հարաւային և գերեսցէ զնոսա. ընդ նոսա տարցէ և զանօրէն իշխանն գերի հանդերձ մարբն իւրով, մանուկ ամաց ծնեալ ի քաղաքին Բիշանիա, և անուն նորա Ումդ: Երթիցէ ի Բիւզանդիոն և կացցէ անդ ամս երեսուն և ուսցի անդ փիլիսոփայական արհեստ ի Հելլենս. և ի նոյն առաւելեալ քան զամենեսին, ընկալցի պատիւ ի թագաւորացն. քանզի զօրավար եղեալ կատարեսցէ [illegible](արութիւն) ի պատերազմի և առցէ պատիւ ի թագաւորէն: Յետ այսորիկ ի տասն բաժանեսցի թագաւորութիւնն. և յայնմ հետէ ոչ դադարեսցին տիեզերք յալեկոծութենէ պատերազմաց. և եղիցի սով յերկրի զհինգ (զԵ) ամ և արգելցեն երկինք զանձրեւ և ոչ տացէ երկիր զպտուղ իւր. նուազեսցին գետք և հոտեսցի ծով, և սատակեսցին գազանք և անասունք. և անկցին մարդիկ և մեռցին ի մէջ քաղաքաց, և ոչ ոք իցէ որ թաղիցէ. արհամարհեսցի ոսկի և արծաթ, և ոչ ոք իցէ որ ժողովիցէ զնոսա. արհամարհեսցի գեղեցկութիւն կանանց: Այս է ժամանակ տանուտեառն

վեցերորդի, որ սգացեալ էր ի վերայ կանանց և որդոց, և որ երկուցեալք ասէին. Հուր ելանէ ի վիշապէդ և այրէ զամենայն երկիր. զի յետ մահուան Թագաւորին, որո(յ) անուն Հրձիք է, խառնակեսցի Թագաւորչն(ութիւնն) և բաժանեսցի ի տասն ի միում ամսեան. և զկնի ԱԾ-երորդ(?) Թագաւորեսցէ ապստամբն և զաւրացի ի վերայ տասն Թագաւորացն. և հարցէ զկրկին ի նոցանէ և քակեալ կործանեսցէ զիշխանութիւն տասանցն, և առեալ յինքն զԹագաւորութիւնն խաղաղասցէ ի վերայ Պաղեստինի և ի վերա(յ) իշխանութեան որդոցն Իսմայելի, և դարձեալ յաղթութեամբ և բազում աւգնականաւք հարաւային ազգին ի վերա Պաղեստինա եկեսցէ և հարցէ զնա. և բորբոքեսցի սրտմտութիւն նորա որպէս աւձի ընդ ամենայն երկիր, ապա անուանեսցէ զանձն իւր Աստուած, և խաւսեսցի ամբարհաւաճութիւն առաջի բարձրելոյն, և երկիր պագցեն նմա ամենայն անաւրէնք:

Այն է հուրն՝ որ ելանէր ի վիշապէն և այրէր զերկիր. զի ոչ գտանի յայնժամ արդարութիւն ի մարդիկ, այլ լիցին ամենեքին որպէս փուշք ի կիզնուլ յանաւրէնութե–նէց(Թեանց) իւրաքանչիւր. ընդ նմին վառեալ բորբոքեսցի վրէժխնդրութիւնք ի մարդիկ, սովք և սուրք և հրկիզութիւնք, սուտ նշանք և արւեստք. որովք զարհուրեցուցանէ զերկրպագուսն ուր (իւր) և չարչարանաւք կատարեսցէ զսուրբս բարձրելոյն, որք ոչ համարեցան նմա պաշտաւն տալ իբրև Աստուծոյ, և լինի ողորմութիւն բարձրելոյն ի վերա երկիւղածաց իւրոց. և որչափ առաւելեալ չարչարեսցին՝ եւս առաւել պայծառասցին, իբրև զդրախտք պայծառացեալք կենդանի Ջրովք և ծաղկեալք՝ ոմանք սպիտակք, ոմանք կարմիրք, ոմանք ծիրանիք, կատարեալք պէս(պէս) տանջանաւք և չարչարանաւք. և են աւուրք իշխանութեան ապստամբին (ՌՄԿԵ) հազար երկերիւր վաթսուն և հինգ:

Յետ այնորիկ ապա յարիցէ Թագաւոր բարեպաշտ ի Հռոմ, և ժողովեսցին առ նա ամենայն Մնացորդք

յուխտէն Աստուծոյ. և յարուցեալ խաղացէ և եկեսցէ ի վերայ ապստամբին և զաւրաց նորա, և խընդրեցէ Տէր ինքնին վրէժ ի նմանէ: Քանզի հուր ի Տեառնէ իջեալ՝ սատակեսցէ զնա և զզաւրս նորա, և զամենայն մեղաւորս կերիցէ. և ոչ մերձեսցի հուրն ապականել զծառայս բարձրելոյն, և շրջիցին ի հուրն իբրեւ ի մէջ սառնիկ անձրեւաց. և կերիցէ Չէ(զէ.= զեաւթն) աւր զամենայն երկիր՝ ապականեալ ի չարեաց մարդկան, կիզցէ զլերինս և զբլուրս, և հալեսցէ զըքարինս, և ցամաքեցուսցէ զաղբիւրս և զգետս. և ծախեսցէ զամենայն ինչ մինչեւ ի սպառ: Եւ յետ եաւթն աւուրն՝ երեւեսցի նշան փայտին՝ իբրեւ զլոյս թափանցիկ յարեւելից կողմանէ, յաւուր ուրբաթու յերրորդ ժամու, և կացցէ աւուրս երկու: Եւ յաւուրն երրորդի ընդ այգն ընդ առաւաւտն, եկեսցէ Տէր սըրբովք հրեշտակաւք իւրովք՝ հատուցանել սրբոց իւրոց և յանդիմանել զամբարիշտս երկրի. հարցեն փող հրեշտակապետքն երիցս անգամ, և յարիցեն ամենայն ազգք մարդկան՝ յանդիման լինել առաջի Տեառն Յայնժամ զապստամբն կապեալ և զզաւրս նորա և որք երկիր պագանէին նմա և կռոց պատկերաց, և տարցին նիւթ անշէջ հրոյն և անքուն որդանն, ի տարտարոսն Եփեստոսի ի կողմանս արեւմտից հարաւս յովկեանոս ծովուն. և վարեալ ծծըմբով և ձիւթով այրեսցեն զամենայն մեղաւորս և ոչ շիջանիցեն: Յայնժամ ամենայն սուրբք՝ ընդ հրեշտակս՝ կացցեն հանապազ առաջի բարձրելոյն Աստուծոյ, թագաւորեալք և ուրախացեալք, փառաւորելով զԱստուած յաւիտեանս յաւիտենից:



# ԺԷ

# ՏԵՍԻԼ ԴԱՆԻԷԼԻ ԵՕԹՆԵՐՈՐԴ



ՅԵՏ երրորդ ամի, զկնի ամենայն յայտնութեանն՝ որ տուաւ Դանիէլի մարգարէի, առաքեցաւ Գաբրիէլ հրեշտակ՝ առաքեալ առ նա յառաջագոյն, և ասէ ցնա. Դանիէլ, այր ցանկալի. առաքեցայ ի Տեառնէ ասել քեզ բանս, և ցուցանել քեզ զկատարումն աւուրց՝ որ լինելոց են զկնի գալստեան բանին, որ ի ձեռն իմ աւետարանի: Եղիցի կոյս յԻսրայեղէ, և ընկալցի բան ի բանէ. և նա մարդասցի վասն աշխարհի, և կեցուսցէ զբազումս ի մէջ Իսրայելի: Եւ դիր զմիտս քո՝ և լուր զառաջիկա զպատահումն ի կատարումն աւուրցն՝ յամենայն քաղաքս և ի գաւառս՝ վասն անօրէնութեան մարդկան: Եւ ասացի Դանիէլ. Տէր ասա ցիս: Եւ կատարելոյ զամենայն զբանս իմ զմարգարէականս վասն ամենայն քաղաքաց և գաւառաց, Ասիա, Պունիու, Փռիւգիա, Գաղատիաս, Կապուդիկիս, Կարպաթաս, Միւռնիս, Անդռքիա, Աղէքսանդրիա, Եգիպտոս, Նիկիա, Նիկոմիդի, Քաղկեդոնիա, Բիւզէս, Բաբինոմինոաս, Հռոմա. սուգ որդւոցն և աճումն սովոյ ապականէ զերկիր պտղաբեր. իշխանք քո որդիք հեծմանց. որ շուրջ զքեւ լի ստացուածք՝ յապականութիւն եղիցին, և փոխեսցին ի քէն ի Բաբելոն յԵօթնաբլուրն. և ի Պունտոս իշխանն անկցի, և սուր ծախեսցէ զորդիս նորա, զորս նորա անկցին ի բերան սրոյ, և զբազումս տար-

ցեն ի Բիւզէս՝ և անդ թաղեսցեն զնոսա։ Եւ Փռիւգեցւոց մանկունքն ծախեսցին ի սովոյ հացի և ի ջրոյ, և երկիր նոցա պատառեսցի, և ի կերակուր թռչնոց եղեցին. և բազումք ի նոցանէ փախիցեն ի Քաղկեդոն և ի Գաղատեայ. և յերկնից հուր երեւեսցի, և որոտմունք և փայլատակունք ծախեսցեն զնա. և աթոռք իշխանաց նոցա յերկիր կործանեսցին, և հարաւային կողմն նոցա յարիւն և ի հուր այրեսցի. և բազումք փախիցեն յայնժամ ի Հռոմ, ի փոքր Կապադովկիա. և որդիք նոցա զմիմեանս կոտորեսցեն և ի պարտութիւն մատնեսցին. և որ շուրջ զնովաւ իցեն՝ ի նեղութեան եղիցին և ի հառաչման։

Ի Փոքր Բաբելոն և ի Կարպադիաս՝ որդիք նոցա ի նեղութեան եղիցին, հրկիզութիւնս տեսցեն՝ և մի՛ հաւատասցեն. պատառումն եղիցի, և ամենեքեան ի դժոխս իջցեն, և բազումք փախիցեն յԵօթնաբլուրն։

Զմիռնէ բարկութիւն յաճախեսցէ, լցցի որպէս բաժակ արեամբ, և անկումն ի բարձանց եղիցի. իշխանք քո բարձցին և մեծամեծք քո անկցին, վասն զի օր բարկութիւն Տեառն եղիցի քեզ։

Եւ Անտիոյ մանկունք ապականեսցին, և յօրինեալ շինուածն՝ ի կործանումն եղիցի և իշխանք նորա մի՛ վայելեսցեն. անկումն շարժման եղիցի քեզ, և բազմութիւն մեծութեան քո՝ կորուսցէ զքեզ։

ՅԱղէքսանդրիա յուզմունք պատերազմաց եղիցին բազումք, և պարանոց ստահակութեան նորա՝ մինչև ի նետակալս նորա պարապացն, իշխանք նորա հալածեսցին։

Եգիպտացւոց մանկունքն փախիցեն ի սովոյ հարեալք, ստացուած քո եղիցին յոչինչ, և Նեղոս ցամաքեսցի, և իշխանք քո կորիցեն։

Նիկիացւոց դատերք ի սուգ և ի տրտմութիւն եղիցին՝ վասն ազգականաց և արանց գերութեան՝ ի զօրաւոր մարդկանէ, և իշխանք քո ծառա այնմ՝ որում ոչն գիտիցեն։

Վա՜յ քեզ Նիկոմիդիա, որ բարձրացեալ ունիս զեղջիւր քո և կերար զմարմինս սրբոց՝ որ են ի քեզ.

ապականեսջիր արեամբ արդարոցն, որք հատուցանեն զվրիժարէնս քո, և ի դժոխս յատակեսջիր. լա՛ց ողբա՛, Թշուառացեալ, զի ընկեցին հանդերձ որդովք։ Քանզի իշխանք քո՝ իշխանք հեծութեանց, և քահանայք քո՝ ոսկեսէրք և արծաթասէրք, և գեղեցկութիւն պայծառութեան քո ընկղմեսցի։

Կարգեդոնէ, ազգ Պարսից, զի՞նչ հասանէ քեզ ի վախճանի աւուրցս՝ դու ոչ գիտես, և ի կատարածին յաւիտենից՝ քանի՞ ինչ եղիցին ժամանակք քո զկնի ամենայն քաղաքաց և գաւառաց։ Ի սովոյ ապականեսջիր, քաղաքդ պանծացեալ յոսկւոյ և յարծաթոյ, ազգ պճնեալ և զարդարեալ. անառակութիւնք բազումք եղիցին ի քեզ, և տղայք քո զբօսեսցին ոսկւով, և ապա ի սովոյ ապականեսցին։

Բուզէս և Բաբեղոնի երկիր ընկղմեսցի, ի զօրաւորացն ըմբռնեսցի, և հիմունք նորա ապականեսցին և զօրութիւն նորա անկցի։

Հռոմա իշխան մի եղիցի ի ժամանակին յայնմիկ, բայց սուրն նորա սրեալ է, և նետն նորա ախտացեալ, նենգութիւն նորա բարձրացեալ. բազում անգամ իշխան յարիցէ՝ և դարձեալ անկցի. բազումք երկիցեն ի քէն՝ վասն բազմանիստ իշխանացդ պայծառութեան և վասն հպարտացեալ պարանոցի քո և առաւել հպարտութեան քո։

Բիւզա որդիք ի սքանչելագործութեան երեւեսցին. վասն զի երթիցեն ի նմանէ յԵօթնաբլուրն։ Այր Բուզացի, և հաստատեսցէ զհիմունս նորա, եղիցի անուն նորա ընդ ամենայն բնակիչս աշխարհի, մինչեւ ցորոշումն լեզուաց. և դարձեալ զնա այր նշանագործ ծնեալ՝ և ի ժամանակի իւրում ցանկութիւն նորա կատարեսցի, և գտցէ փայտ կենաց. և եղիցի գաւազան մեծ, և գտցէ բեւեռս՝ որ ի նորին նշանին էին, և դիցէ զնա ի սանձս իւր՝ վասն փրկութեան պատերազմաց յաղթութեան։ Եւ եղջիւր նորա բարձր և հզօր, և անուն նորա ընդ ամենայն լեզուս. և պարգեւեսցի քաղաքիդ յիշատակ յաւիտենական։

Եւ զկնի նորա յարիցէ երկրորդ գաւազանն՝ որ

զարիւն արանց արդարոց հեղցէ, կարդացէ զպատուիրանս՝ և ոչ գիտացէ զԱստուած, և չօշափեսցէ զգիրս սուրբս կուրացեալ սրտիւ։ Եւ զկնի նորա եկեսցէ այր իմաստասէր ի քեզ, Եօթնաբլուրդ Բաբեղոնի, և պատկեր կանգնեսցէ ի քեզ, վասն որոյ մի՛ բռնադատեսցիս դու։

Եւ զկնի այսր ամենայնի՝ յարիցեն եղջիւրք բարձունք և գաւազանք մեծամեծք, և զօրասցին ի վերայ քո. և յիշատակ սոցա եղիցի մեծ յոյժ։ Եւ միւս եւս գաւազան զօրասցի աքանչելապէս, և բարձրասցեալ վասն անուանն Տեառն. վասն զի Աստուծոյ սուր[1] է ի նմա։ Ի ձեռն նորա կեանք եղիցին մեծ, և ի խնդութենէ նորա ուրախասցին ամենայն մարդիկ. և ի քաղաքաց և ի գաւառաց ի քեզ ժողովեսցին, և հանցեն ի քեզ յԵօթնաբլուրդ, և իւրաքանչիւր ոք զիւր գործ գործեսցեն։ Եւ զօրասցի գաւազան թագաւորութեան՝ մինչեւ վախճանեսցի։ Եւ ելցեն երկու գաւազանք ի միոյ գաւազանէ, և եղիցի մի գաւազան ծեր, գաւազան երրորդ՝ գաւազան անաստուն, երկոտասանն ի փոքունս. յԵօթնաբլուրն Հռոմէ ի քեզ հասցէ ընդարձակութիւն բարձրութեան, զօգ ունելով և բաժակ լիութեամբ, մինչեւ հասցէ ժամանակք քո. առաջի նուագ քաղաքին՝ խնամութիւն երգոց, և երկրորդն՝ հարստութիւն քո, աղբիւր բղխման ամենեցուն եղիցի. որպէս զարգարեալ և որպէս զարի[2] երեւեսցի։ Ողկոյզք քաղցրաբերք՝ որ էին երբեմն՝ նուազեսցին, և փառք քո մեծ՝ բաժանեսցին, և անկցի թագաւորութիւն նորա ի քեզ։

Եւ այլ գաւազան յարիցէ որ անուանեալ կոչի Թէոդոսիոս՝ եղեալ ի սրբութեան, և անուն նորա ուխտաւորեալ ի քեզ, Եօթնաբլուրդ. և ի ծննդեան նորա՝ որդիք քո ուրախ եղիցին, և գործեսցին իւրաքանչիւր ոք զինչ և խորհեսցին։ Ծառայեսցէ քեզ ամենայն քաղաք և գաւառ, և լիութեան քում՝ վայելչութիւն երկրի՝ բազում եղիցի, և Նեղոս եգիպտացւոյ՝ արբուսցէ քեզ, և պարիսպ եկեղեցայ՝ եղջիւր՝ դու,

1 և 2. Այսպէս էր ի գրչագրին.

և երկեղ և դողումն եղիցի ի գաւազանի քում մեծապէս. և այս է սկիզբն հեծմանց թագաւորութեան քում:

Եւ ժամանակ գաւազանի նորա՝ բազում և մեծ յոյժ, և կալցի գաւազան նորա մինչև ի ծագս երկրի, և յարեւելից և յարեւմտից և ի հիւսւսոյ և ի հարաւոյ. և պարանոց նորա՝ հաստատուն, և աջ նորա՝ զօրաւոր, և աչք նորա՝ բազում, որպէս ոչ ուրուք եղեւ այլ թագաւորաց: Եւ զկնի այսր ամենայնի՝ դարձուցէ զերեսս իւր առ հայր իւր, և համար ամաց նորա՝ բազում, և անուն նորա՝ ահեղ, և թագաւորութիւն նորա՝ պայծառացեալ յոյժ:

Եւ երրորդ այլ թագաւոր եղիցի ի Հռոմ, ով Եօթնաբլուրդ. և Եօթնաբլուրդ անուանեցար, վասն զի Պարսկաց ամենայն ազգ մտցեն առ քեզ. Հռոմէ մի թագաւորեսցէ մինչև ի կատարած յաւիտենից. և երկրորդ քո թագաւորեսցէ ծեր, և անուն նորա Մարկիանոս, և գաւազան նորա՝ սակաւ ժամանակեան. և եղիցի քան զառաջին գաւազանն ահեղութեամբ յոյժ, և եղիցի ժամանակն այն ոմանց ի բարի և ոմանց ի չար. և եղիցի թագաւորութիւն ի ժամանակս և ի կէս ժամանակի: Եւ պարգեւեալ նմա ի շինողէն զքեզ Եօթնաբլուրդ, առ ինքն վերացուցէ զրով հաւատոյն. և եղիցի հերձուած մեծ ի թագաւորութեան նորա, քահանայք յաթոռոց իւրեանց անկցին, և անկումն քաղաքաց բազմաց եղիցի, և փոփոխմունք մարդկան բազում եղիցին, և վայելչութեանդ քո, Եօթնաբլուրդ. և ընդարձակութիւն մի պակասեսցէ. և զկնի այսր ամենայնի և նա վախճանեսցի ընդ հարս իւր.

Եւ թագաւորեսցէ միւս գաւազան ի քեզ, և նա եղիցի գազան, և ընկալցի զառաջին գաւազանն՝ որ երբեմն հարկանելոց է ի շանէն. և եղիցի այս գազան՝ որպէս զառաջին գաւազանն, և մեծ և զօրաւոր բանիւք և իմաստութեամբ, և մի արհամարհեսցի ի մեծամեծաց նորա. և պարանոց նորա՝ պարանոց զօրականի, և աչք նորա՝ որպէս աչք առիւծու. և ահեղութեամբ գոչեսցէ, և յեղջերաց նորա դողասցի ամենայն

քաղաքք և գաւառք։ Եւ ի ժամանակս նորա աղեղն երեւեսցի յերկինս, և նշանք ազգի ազգի յերկինս և յերկիր, ձայն որոտման և անկումն քաղաքաց բազմաց լսիցեն. և երկիր պատառեսցի և շինուածք ի հիմանէ կործանեսցին, և ճանապարհք նորա հրեղէնք։ Պատերազմունք եղիցին ի նմա և ի քեզ Եօթնաբլուրդ. և յայնժամ հրով այրեսցին շինուածք վայելչութեան քո, և բարձրութիւն քո յերկիր յատակեսցի, և որդիք քո ողբասցեն ի քեզ, և բազմութիւն ուրախութեան քո՝ ի սուգ դարձցի։ Եւ որդիք քո քարշեսցեն զմարմին մեծամեծաց ի վերայ երկրի. և յանկարծակի փոթորիկ անկցի յերկնից և ծածկեսցէ զերկիր։ Եւ ազգ վիշապաձեւ յերկրի երեւեսցին, և բազումք աղքատասցին և բազում տնանկք մեծասցին, և ամբոխ մեծ եղիցի ի քեզ։ Աղաղակեցէք զօրք զինուք և սուսերօք ի Թիրակս և ի Կիլիկիս։

Եւ ի ժամանակին յայնմիկ առաքեսցէ յարեւելս գազանն զսուր իւր, և ոչ կարասցէ յաղթահարել. և արհամարհեսցէ զնովաւ այր ոմն՝ վիշապաձեւ ի մէջոյն և ի վեր։ Առաքեսցէ ի ձեռն նորա զերրորդ սուր իւր յարեւմուտս, և մի ժուժեսցէ յաղթահարել զնա. և արհամարհելով արհամարեսցի ի շանէն վիշապն. բազում ընծայիւք և ոսկւով նեղեսցի ի շանէն գազանն, և յարուսցէ զկորիւն իւր ի վերայ աթոռոյ գազանին և գաւազանացն՝ ի կործանելն զգազանն ի շանէն և առնուլ զդարանս նորա. և շունք կացուսցեն զգազանն արտաքոյ, և ծանիցեն մարդիկ՝ թէ շունն զառիւծն հալածէ, և դարձեալ անդրէն դարձուսցէ զառիւծն՝ և սպանցէ զշունն և զկորիւնս նորա։ Եւ գոչեսցէ առիւծն գոչիւն մեծ յոյժ, և գոչիւն նորա լսեսցի յամենայն քաղաքս և ի գաւառս, և երկեղ նորա ի դարանս նորա։ Եւ եղիցին մարգիկ չփոթեալք ի միմեանց՝ վասն գոչման առիւծուն և վասն մահուան շանն. և հալածեսցէ երկրորդ շունն, շրջեսցէ զլեզուն իւր յայլաձեւութիւն մինչեւ ցդարան առիւծուն, և մեկնեսցին ի նմանէ՝ իբրեւ ոչ ժուժեսցեն նմա. և թաքիցէ կորիւն շանն ի ժամանակս և ի ժամանակս և ի ժամ մի.

և ի ժամանակի իւրում թագաւորեսցէ, և եղիցի անուն նորա կորիւն շան, որ թարգմանեալ կոչի՝ թագաւոր ազգաց։ Եւ գաւազանն ջնջելով ջնջեսցէ զյիշատակ շանն. յառաջ գիտացեալ՝ երգեսցեն զնմանէն չարախօսութիւն ի քաղաքի նորա՝ զպատկեր նորա ջնջեսցեն, և բազումք ի դարանս գազանին խորհեսցին՝ սպանանել զնա, և մի՛ ժուժեսցեն նմա։ Եւ գաւազանակիցք ի միւս քաղաքի սրով մեռցին, և մեծապէս ծանիցեն զխնդրուածս քահանային ի վերայ անծանօթիցն. և միումն ի մեծամեծաց երիտասարդի միոջ՝ որ ի զօրաց գազանին, զբազումս կապեալս ոտիւք և ձեռօք և առաքեալ առ գազանն, զբազումս յազգաց ազգաց ծառայս կոչելով առ ինքն՝ իբրեւ զտէր, և կացեալ այր յանդիման նորա, և ընկալցի ի գոգ իւր։ Եւ հալածեսցէ զարս պատերազմողս, և ինքն հալածեսցի ի նոցանէ. և փախիցեն ի նմանէ հետի ե. մի՛ ոք հասցէ նմա՝ զի արագ է ոտիւք։ Եւ փախիցէ առ գազանն և ի գոգ նորա, մտցէ առ նա և ելցէ՝ գազանն։ Փոքր էր գազանն և մեծ նստուսցէ զնա յաթոռ իւրում, և արասցէ գաւազանակից և աթոռակից փոխանակ ինքեան։ Եւ երկու գազանք ի միում այրի բնակեալք. կորիւն քաջալերեսցի ի գործ պատերազմի, և մեծ գազանն դարձցի յերկիր իւր՝ ուստի էր. և փոքր գազանն ընկալցի զտեղի նորա մինչեւ ի ժամանակ մի։ Ոչ ումեք թագաւորեալ՝ այլ յանձին բռնութենէ. եկեսցէ ի դատաստան թագաւորութեան, և գազանն փոքր դարձցի առ գազանն մեծ։ Եւ թողեալ զդարանս իւրում արարողին՝ իշխանասցի քեզ Եօթնաբլուրդ և կալցի ի նեղութեան. խնդութիւն նորա մեծապէս եղիցի, խաղալով խաղասցէ, և ի մեծամեծաց սիրեսցի և ատեսցի ի բազմաց, զկեանս և զլրութիւն տացի, և վիշապն խաղասցի նովաւ, և որսողական գաւազանաւ գազանին քարշեսցէ զնա։

Տա՛յ[1] քեզ յայնմ ժամանակի, Եօթնաբլուրդ Բաբելոն, յորժամ այրին թագաւորեսցէ և վիշապն հալա-

1. Այսպէս էր ի դրչագրին փոխանակ՝ Վա՜յ։

ծեսցէ զայլազգին՝ որ անուանեալ կոչի Սաղամանդար, ի փախուստ դարձի՝ դարձուցեալ զերեսս իւր հետեւեսցէ, և զտեղի սրբութեան հալածեսցէ և ապականեսցէ վիշապն լեզուաւ իւրով. ի վերայ արանց աղղարոց և վերայ նշխարաց սրբոց. և զառաջնորդութիւն հազարապետացն խափանեսցէ և գերեսցէ զեկեղեցի սրբութեան: Եւ որ ի ծերոյս և յայրս և ի փապարս բնակեալ իցեն և յանապատի մոլորեալք՝ եկեսցեն առ քեզ, Յօթնաբլուրդ, բանաւորեալք ի վիշապէն. և զկնի այսր ամենայնի զփոշի ոտից իւրեանց թօթափեսցեն ի քեզ՝ վկայեալ ի քեզ: Յայնժամ հրովայրեսցեն զեղեցկութիւն վայելչութեան քո, և մի ոմն փախուցեալ յերիտասարդաց՝ պատանեանօք որսողական գաւազանաւն բերեալ զառաջին զաւազանն, որ անուանեալ կոչի Թէոդոսիոս: Այս յայնմ ժամանակի նեղեսցի վիշապն և յառաջնորդաց իւր ըմբռնեսցի, և յաՀկէորդացն[1] կապեսցի, և մի՛ ոք ընկացի զնա զի եհեղ զարիւն սրբոցն ի քաղաքս և ի գաւառս. և փախիցէ ի տաճարն սուրբ՝ զոր գերէր յառաջագոյն և մի ոք ընկալցի զնա. զի երկնաւոր հարուածք եղիցին ի նմա: Եւ երիտասարդն հասցէ առ Սաղամանդար, և յառաջ ուսուցէ զայլազգին յանդիման վիշապին. փախիցէ և ի նմանէ, այլազգին մի՛ ապանցէ զվիշապն. որոշեսցէ զնա յերեսաց իւրոց. և երիտասարդն անկցի անկմամբ, և այլին մի՛ ապրեսցի. և ցուցանէ նմա զայլազգին և զաթոռակից նորա, և եղիցի հարկատու ի տաղաւար նորա՝ ուր ստեղծ զնա. և յաթոռ նորա խնդրեսցի արիւն հօր նորա: Եւ այլազգին եղիցի մեծ, ի ժամանակս նորա եղիցի լրութիւն ի քեզ, Յօթնաբլուրդ. և մահ բազում մարդկան՝ որ ժողովեալ են առ քեզ ի քաղաքաց և ի գաւառաց:

Յայնժամ ի տեղիս տեղիս շարժմունք եղիցին, և հարստութիւն քո և փառք քո տխեցուցին[2] զքեզ՝ ի

1. Այսպէս էր ի գրչագրին:
2. Անշուշտ՝ տխրեցուցին:

ըմպել քեզ հպարտ և ամբարտաւան, և փառասիրութեան քո խոնարհեցոյց զքեզ. բայց լիութիւն և վայելչութիւն բազում եղիցի քեզ։ Կատարած ժամանակի հասցէ քեզ, և եկցէ ի քէն որսողական գաւազանն՝ որ է ի զազանէն, և երթիցէ յայլազգեացն տեղին. և դատերք քո զարդարեսցեն զինքեանս ի գայթագղութիւն երխտասարդաց՝ ապականել զբազումս, և մեծամեծք քո անկցին, նեղութիւն և յուզմունք բազումք եղիցին։ Յայնժամ մահարեր հրեշտակն հարցէ զքեզ ամենայն քաղաքօք և գաւառօք, և մահք բռնաւորք առաքեսցէ յերկնից, յանկարծակի բարկասցի ի վերայ երկրի. և երկիր շարժեսցի և անկցին մեհեանք, և տունք նոցա եղիցին գերեզմանք, և ծով եռացուցէ զալիս իւր ի վեր և ծածկեսցէ զմարդիկ, և ի ձորս փախիցեն։ Յայնժամ հրեշտակաց ամբոխ եղիցի, և յանդիման կացցեն և աղաչեսցեն առաջի աթոռոյն։

Յայնժամ, Նօթնաբլուրդ Բաբեղոնի, զորդիս քո լացցեն՝ քուրձ զգենլով և մոխիր ի վերայ գլխոյ ցանելով, տեսանելով զմարդիկ՝ զի վասն մեղաց և յանցուածոց անկանին. արք ողջայրք և կանայք ստնդիեցովք հանդերձ կորիցեն, զի բարկութիւն Տեառն (է) ի վերայ։ Պարիսպք քո պատառեսցին և յատակեսցին տաղաւարք քո. մանկունք ստնդիայք խարշեալք՝ բերանովք իւրեանց աղաղակեն առ Տէր, և քահանայք քո ցտելով կոծեսցին։ Զգաւազանս քո՝ մեծամեծք քո լացցեն և քաղաքիցը[1] քո՝ յոյժ տրտմեսցին, և ճանապարհորդք քո՝ ի նեղութեան եղիցին. և ողկոյզք քո անկցին, այգիք քո պակասեսցին։ Դղորդմամբ պատառեսցի երկիր և կորուսցէ զմարդիկ՝ մինչեւ ստնդիայս և ի ծերս. բայց մինչեւ խպառ մի կորուսցէ զքեզ Աստուած, վասն զի չեւ հասեալ է ժամանակ կորստեան քո. բայց ի խորխորատի ծածկեալ զմարդիկ՝ և ոչ ծածկեսցէ, զի չեւ է հասեալ ժամանակ քո։ Պատրաստեալ են քեզ տանջանք, զի զամենայն անօրէնութիւն գործեցեր ի քեզ՝ ընդունելով զերկիր ի գոգ քո։ Յուզմունք խորհրդոց

1. Անշուշտ՝ փողոցներից։

մարդկան բազում եղիցին, մինչեւ Տէր ի վերուստ հրամայեսցէ կորուսանել զմարդիկ։ Բայց խորհուրդ Տեառն երեւեսցի, ուստի պատահումն լինելոց է։ Ապաւինեալք ի քեզ՝ ընկալցին զտանջանս, ազգն այն՝ որ յուսացաւն ի քեզ։ Եւ կորիւն զկորիւնն փոխուսցէ՝ խնդրելով զարիւն հարց նորա, եւ ինքնակամ կամօք մատնեսցի այլազգեացն, չանն եւ ընկերաց նորա. եւ յարուսցէ լեզուս եւ ազգս, եւ տիրեսցէ ի վերայ ազգաց բազմաց. եւ երկու շունքն մարտիցեն ընդ միմեանս եւ զմիմեանս կորուսցեն։ Վայ՝ յորժամ այրին թագաւորեսցէ եւ նեղութեամբ խաղասցէ ի վերայ այլազգեացն, եւ միւս այլազգին խնդրեսցէ զկորուստ նորա՝ եւ ջնջեսցէ զնա. եւ եղիցին դժնդակ եւ չար՝ աւուրքն այնոքիկ։ Որդիք գաւազանացն ի խռովութեան եղիցին՝ ընդ միմեանս պատերազմելով. յայնժամ բազում նեղութիւն եւ չար եղիցի մարդկան, որպէս զի չէ եղեալ երբեք. եւ մի փախստական իշխան հաւատացեալ ի Սաղամանդար՝ զի այլազգի է, եւ յազգէ նորա ընկալցի նա՝ զոր ոչ խնդրեսցեն. եւ կամիցի փախչել ի Սաղամանդար՝ եւ մի՛ կարասցէ, եւ հասցէ եւ սպանցէ զնա Պակիտաս, եւ տիրեսցէ միագաւառն ի քեզ, Եօթնաբլուրդ, եւ եղիցին երկունք բազում։

Յարիցէ այր աղքատ՝ որ ոչ ճանաչիցէ զհնարս իւր, ամբարտաւան, հպարտ, ոսկեսէր, պատերազմասէր, եւ անուն նորա Դուկիտս. եւ աթոռ նորա անկաւաւորց եւ բարկացող, եւ մեծամեծք նորա ատեցեն զնա, եւ քաղաքակիցք նորա նեղեալք ի նմանէ։ Երկնային բարկութիւն եղիցի յաւուրսն յայնոսիկ; եւ բազում անգամ նեղեսցէ զԲաբելոն։ Ի ժամանակս թագաւորութեան նորա՝ ձայն գուժոյ հասցէ առ քեզ, զոր բարբառոյ խռովեցուսցեն զքեզ եւ մի՛ պատերազմեսցին։ Եւ յարիցէ այլ թագաւոր ընդդէմ նորա՝ պատերազմել եւ հալածեսցէ, եւ բազում արիութեամբ եւ հզօրութեամբ հանցէ զօգի նորա եւ որ ի քեզ, Եօթնաբլուրդ. եւ եղիցի յաթոռս մեծամեծս եւ պայծառս, եւ այրն կորովի յաջմէ եւ յահեկէ։ Եւ ի ժամանակս նորա սով մեծ եղիցի եւ ոչ փոքր. եւ ապականեսցի երկիր ի մարդ-

կայնէ, և յորձանք ջրոց հասցեն, և օթք սեւաթիւրք խառնեսցին, և այգիք քո սակաւասցին, և վայելչութիւնք քո նեղեսցին։ Եւ պակասեսցին աւուրք, և եղիցի օրն՝ վեց ժամեան, վասն մարդկան որ եղիցին ի ժամանակին յայնմիկ. և դարձուսցէ զերեսս իւր ի թագաւորն յարեւմուտս։ Ցայնժամ վա՜յ քեզ, Եօթնաբլուրդ, յայնժամ թագաւորն երիտասարդ. ի ժամանակին յայնմիկ եղիցի քեզ նեղութիւն մեծ. այր՝ յորժամ ունիցի զկին եղբօր իւրոյ, որդի՝ զմայր իւր, դուստր՝ ելցէ յանկողին հօր իւրոյ, եղբայր՝ զքոյր իւր, և յոլով ելցեն հայհոյութիւնք, երդմունք, չարախօսութիւնք, ստութիւնք, մարդասպանութիւնք, պղծութիւնք, յափշտակութիւնք, եղբայրատեցութիւնք, խռովութիւնք, հեղումն արեան ի տաճար սրբոց սպասաւորաց. և թագաւորք ընդ թագաւորս, իշխանք ընդ իշխանս, հզօրն յաղքատին վերայ յարիցէ, և անկումն եղիցի հարստին և աղքատին։ Եւ Բիւթինեայ՝ որ ի ծովեզր՝ շարժմամբ յատակեսցի, և բարձրացեալ կուտակեսցին ալիք ծովու և ծածկեսցէ զհիմունս Բիւթինիա՝ մինչեւ ցկրտսեր քաղաքն Նիկոմիդա։ Եւ ապա դարձեալ յարիցէ այլ թագաւոր և ժամանակ նորա սակաւ աւուրս, չար և ամենեւին ահեղ. և ապա յայնմ հետէ ոչ եղիցին ժամանակք բարիք՝ այլ չարք, ընդ որում պատերազմեսցի իւր որդին և ծախեսցէ զնա սրով։

Եւ միւս թագաւոր յարիցէ յայլմէ պաշտմանէ՝ որ է Արիանոս՝ ձգել առ ինքն զամենեսեան. յայնմ ժամանակի վա՜յ քեզ, Եօթնաբլուրդ, զի քան զամենեսեան առաւել սգաս զքեզ և զսահմանս քո։ Ապա յարիցեն՝ թագաւորք և իշխանք և առաջնորդք և նահատակք՝ ի վերայ քաղաքաց և գաւառաց, և խոնարհեսցի երկիր՝ ի բազմութենէ ազգաց՝ ի կանգունս եօթանասուն և երիս, և մի նեղեսցիս յայնժամ Եօթնաբլուրդ ի նոցանէ. բայց առանձին պատերազմ եղիցի ի քեզ և վայելչութիւն երկրի սակաւասցի ի քեզ, բայց բարկութիւն յերկնից եղիցի ի քեզ և հարումն յոյժ, և երեւեսցի սիւն հրեղէն յերկնից յերկիր. յայնժամ փոխեսցի թագաւորութիւն քո և եղիջիր Մա-

ցեալ յապականութիւն յաւիտենից. և ի սորոյ յայնժամ այսպէս սպառեսցի։ Եւ բերցէ զերկրորդ գաւազանն ի միւս քաղաքն՝ յոչինչ իշխանէն, և նետս հրեղէնս տեղասցի յերկնից, նշանք և արուեստք բազումք եղիցին։ Յայնժամ տիրեսցէ նեռնն և մարդիկ յաստուածպաշտութենէ խոտորեսցին յանհաւատ գալըստեան, զորս ոչ խնդրէին և ոչ ակն ունէին, այնք որ ոչ հաւատային ի նա՝ որ ամենայնի ընդդիմակացն էր։ Սա յղասցի և ծնցի ի կուսէն պղծոյ, և կալցի գաւազան խաբէութեան զազգս մարդկան՝ ժառանգակից լինել գեհենին յաւիտենից։ Յայնժամ յուզմունք եղիցին հրեշտակաց, տեսանելով զնշանսն՝ զոր յառաջագոյն գնացուցանէր։ Եւ զայս իմացեալ աստուածասէր մարդկան, ծանուցեալ և տեսեալ ամենայնի զընդդիմակացն, որ է ազգի մարդկան՝ որոյ է նշանս այս. զօդք անկրկնելի՝ ծնկացն, հաշմ անձամբ՝ որ ոչ կայցէ, մանգաղամատն, օրագլուխ, շնորհաւոր, մեծաբան, իմաստուն, քաղցրածաղր, տեսանող, խորհրդական, սափ, հեզ, հանդարտ, նշանագործ, մեւտ ունելով զոգիս կորուսելոցն, ի քարանց հաց հանելով, կուրաց տեսանել, կաղաց գնալ, և զլերինս տեղւոջէ ի տեղիս փոփոխել, առ աչօք արասցէ զայս ամենայն, և որ սանուցուն զնշան նորա՝ զաչս նոցա կապեալ, որ ոչ դառնա անդրէն՝ յոր յուսացանն յառաջագոյն։

Յայնժամ եղիցի սով մեծ, և մի տեղասցին երկինք զանձրեւ և երկիր մի բուսուսցէ զդալարի, և եղիցէ չորացեալ ամենայն պտուղք, և վասն այնորիկ քաղաքք և գաւառք ողբասցեն զինքեանս, փախչելով փախչիցեն յարեւելից յարեւմուտս և յարեւմտից յարեւելս։ Իսկ որ բնակեալ են ի լերինս և յայրս և ի ծերպս և ի փապարս երկրի, նոքա միայն կարեն փախչել մինչեւ յերկրորդ գալուստն՝ որ ծնաւ ի սուրբ կուսէն։ Յայնժամ ընտրեալքն նորա յայտնի եղիցին, տեսանելով զյաւիտեան Տեառն զգալուստն, կացցեն յառաջ և բազումք դատեսցին. յերկնից յուզմունք եղիցին, յայնժամ նեղութիւն ահագին եղիցի ի վերայ տիեզերաց։ Վա՜յ յղեաց և ստնդուաց յաւուրսն յայնոսիկ. վա՜յ

անժուժացն և որ հաւատայցեն ի հակառակորդն. վայ այնոցիկ՝ որ երկիր պագանեն նմա, և վասն գալստեան նորա յայտնեցան։ Եւ յետ լինելոյ այսր ամենայնի և կրելոյ զչարչարանս. Աստուած՝ արդար մարդկանն՝ որ ի հարկատրութենէ նեղեալ իցէ՝ հասցէ, և ապա կատարած։ Եւ ոմանց ի մարդկանէ նշանս ցուցցեն՝ ծանուցեալ զԵօթնաբլուրն, և ասիցեն՝ Արդեւք քաղաք լեալ իցէ՞ աս։ Եւ կին մի երկրակոխեալ յարեւելս և յարեւմուտս, ի հիւսիս և ի հարաւ՝ և մի գտցէ պտուղ, բայց միայն գտցէ ձիթենի մի, և գիրկս արկցէ ձիթենւոյն, յոգւոց հանիցէ և ասիցէ. Երանի այնմ՝ որ տնկեալ իցէ զծառս զայս. և ոգի նորա վերասցի ի նմանէ անդ ի տեղւոջն։ Յայնժամ արեգակն դարձցի ի խաւար և լուսինն՝ յարիւն և աստեղք՝ որպէս տերեւ անկցին և երկինք՝ որպէս մագաղաթ գալարեսցին, և ծով յանդընդոց յեռասցի և ելեալ և ծածկեալ զերկիր, և ամենայն ինչ՝ յօդոյ այրեցեալ չորասցի։ Եւ հրեշտակք հրեղէնք յերկնից իջցեն և հուր բորբոքեալ ընդ տիեզերս. մանկունք հրաձեւ եղիցին. որ նման նոցա գազանք գիշակերք ի լերանց ելցեն և մի՛ երկիցեն. զոր խնդրէին՝ երկիրն ամպարշտաց՝ սատակեսցի, արդարքն յափըշտակեսցին առ հայր՝ զի հրաման ել ի Տեառնէ։ Աթոռք դնին և գիրք բացցին, դատաստանք յօրինեսցին, հրեշտակք փող հարցեն, արդարք պարեսցեն, հօր օրհնութիւն հանցեն, և ըստ իւրաքանչիւր գործոց դատեսցին։



# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

# ՑԱՆԿ ԱՆՈՒԱՆՑ

